ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ե.

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

# ՍՏՈՅՆ-ԿԱՂԻՍԹԵՆԵԱՑ

## ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

-5-

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

# ՄՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ

## ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ե.

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՍՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ

ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

Usumnasirut'iwnk' Stoyn-Kalist'eneay varuts' Aghek'sandri

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

# ՍՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ

## ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

Այս տեղ՝ թէեւ ակամայ՝ պէտք ենք յիշել մեր այս գրութեան վրայ եղած այն քննադատական ակնարկը, որ Մեծ. Հ. Բարսեղ Սարգսեան ըրած է մեր այս ուսումնասիրութեան վրայ[1]։ Այս տեղ կ'ըսուի (էջ 16—17.) “Տարիներ յառաջ լոյս տեսած Հ. Ար. Սիւքրեանի մէկ յօդուածն՝ Արշակայ 31 ամեայ պատերազմին եւ խորնոյ ծերոյն մասին դեռ նոր կարդալով, (կ'ըսէ ակնարկելով մեր այս գրութիւնը,) ձեռք կը զարնուի Սոդոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի անվերջենալի ուսումնասիրութեանն, եւ կը ծանուցանէ (!) իսկ թէ նա ինքն (այսինքն՝ մենք) է որ առաջին անգամ (!) կը յայտնէ զՄ. Խորենացին իբրեւ թարգմանիչ եւ բանաքաղ այն պատմագրութեան, մինչդեռ Հ. Ներսէս Սարգսեան (նախ !) եւ Հ. Ար. Սիւքրեան արդէն ի վաղուց նոյն գիւտն ըրած են եւ հրապարակ հանած։„ — Առ այս կ'ըսենք՝ նախ՝ թէ Հ. Ար. Սիւքրեանի յօդուածը չէր որ դրդեց զմեզ մեր այս ուսումնասիրութեան, այլ Կիլտէմայսթէր գերմանացւոյն յօդուածը. (տես վարը՝ էջ 9. 64 եւն։) Սակայն այս ամէն աւելորդ եւ աննպատակ խնդիր է։ Այսպիսի ուսումնասիրութեանց մէջ թէ ի՛նչ դրդիչ է կամ ո՛չ՝ խնդրէ դուրս է. ինչպէս ոչ ոք կրնայ խօսել քննադատին Ագաթանգեղեայ քննութիւնը միայն այն պատճառաւ որ՝ ըստ հեղինակին վկայութեան՝ Կութշմիտի գրութիւնը կարդալէն դրդուած է (Ագաթանգ. էջ ԺԱ, 10 եւն,) որով “տարիներ„ վերջը գրել ձեռնարկուած է իւր ընդարձակ ուսումնասիրութիւնը. (որ կրկին ծաւալն ունի քան այս մեր “անվերջենալի„ ուսումնասիրութիւնը։)

Դարձեալ բոլորովին սխալ է թէ մենք լսելով մեզմէ յառաջ գրողներն եւ յականէ յանուանէ զՀ. Ար. Սիւքրեան եւ զքննադատն, մեզ սեպհականած ըլլանք Խորենացւոյ բանաքաղութեան գիւտը։ Քննադատին աւելորդ երեւցած կ'երեւայ կարդալ (կամ գոնէ յիշել) մեր գրութեան 44—70 էջերը, ուր նշանակուած են բոլոր այն անձինքն՝ որ գրած են մեզմէ շատ յառաջ նոյն համեմատութիւնքն, այսպէս՝ Հայկազնեան Բառարանն (էջ 44 եւն.) Քննօղքն (էջ 45. 48—56 եւն.) Հ. Ա. Վ. Սէտրեան (էջ 57,) Հ. Բարսեղ Վ. Սարգսեան (էջ 58—60,) Կիլտէմայսթէր (էջ 64 եւն), Պաումկարթներ, Կալիսթենեայ Հայ Հրատարակութեան յառաջաբանն եւն։ Կը հաստատենք որ քննադատին գրածն ոչ լոկ յիշած ենք, այլ մինչեւ անգամ քանի մ'ըստ մեզ անճիշդ նախադասութեանց դէմ գրել ստիպուած ենք այն տեղ։ Եւ սակայն կ'ըսուի թէ լսած ըլլանք մեր նախորդներն եւ մեզ խորած անոնց կարծիքն։ Կարծենք այլ եւս աւելորդ է ուրիշ մեկնութիւն փնտռել։

Վերջապէս յայտնապէս խօսելով չենք կրնար համամիտ ըլլալ՝ թէ նախ “Հ. Ներսէս Սարգսեան եւ (ապա) Հ. Ար. Սիւքրեան . . . նոյն գիւտն ըրած ըլլան։„ Սիւքրեանն է արդեամբք (1878ին) “որ սուր դիտողութեամբը յերեւան հանած է այս կտորներուն փոխառութիւնն եւ

[1] Տես “Բազմավէպ„ 1891, Դեկտ. Յաւելուած “Երկու խօսք Ամսօրեայ Հանդիսի Թիւ 8 մատենախօսականին առթիւ։„

խօսքի քննադատած.„ (տես վարը՝ էջ 58։) Իսկ քննադատն 1883ին (հինգ տարի ետքը) ուրիշ բան ըրած չէ, բայց միայն յիշել այն գիւտն, եւ ջանալ՝ որչափ հնար է՝ նուազեցընել անոր յարգը, "պատահական„ եւ "աննշանակ բառից եւ ոճոյ մէջ„ հրապարակելով այն համաձայնութեան շատ մասերը. (տես վարը՝ էջ 59։) — Այսու կը յուսանք այս խընդիրն ալ պարզուած կ'ըլլայ։

Կը յաւելու քննադատը. (էջ 17.) "Խ. Կեչառեցւոյ յիշատակարանին մէջ տեսնելով Զաքարիա պրօշեանի անունն եւս կամ իրմէ եւ կամ մի ուրիշ ձեռքէ (!) ներմուծուած, կ'ընդդիմաբանէ (տես՝ էջ 126) Արարատի հեղինակին թէ Զաքարիային է այն յիշատակարանն եւ ոչ Կեչառեցւոյն, եւ թէ սա էր աշակերտ վարդապետին Եսայեայ Նչեցւոյ (°)՝ որուն համար գրելով իւր գործն ի Հռովմ՝ բերաւ իբրեւ պարգեւ։ Իսկ Կրաւֆորթեան ձեռագրի յիշատակարանին մէջ չի գտնելով բնաւ Զաքարիայի անունը Կեչառեցւոյն քով՝ զարմանք կը յայտնէ թէ ինչպէս հոն "Զաքարեան խմբին յատուկ կտորը թէ ի Հռովմ գացած եւ գրած է սոյն գիրքը„ չի գտնուիր։ Եւ փոխանակ ուղղելու իւր սխալն (!) եւ Արարատի հեղինակին իրաւունք տալու, վերստին (տես՝ էջ 88—91) ի համեմատութեան կը դրկէ ընթերցողն, կարծես իւր հակառութիւնն աւելի եւս յայտնի ընելու համար։„ — Առ այս կարծենք աւելորդ է կրկնել Զաքարեան յիշատակարանին արդեամբք գոյութիւնը, (որուն վրայ հմմտ. էջ 88—91 եւն) զոր ուրանալ անհնար է՝ քանի որ առջեւնիս ունինք։ Բայց աստ ըսուած չ'ըլլար թէ Կեչառեցի ալ չունի յիշատակարան, (ինչպէս կը մեկնէ քննադատը,) որ հիմն է Զաքարիայի յիշատակարանին, ինչպէս կրկնած ենք շատ անգամ. (տես էջ 91, 22 եւն։) Բայց Արարատայ հեղինակն արդեամբք անճշդութեան մէջ է, երբ Զաքարիայի յաւելուածոյ յիշատակարանը տալով՝[1] Կեչառեցւոյ կը համարի զայն այն ձեւով, ուստի եւ Հռովմ երթալն եւն Կեչառեցւոյն կը վերագրուի։ Այս տեղ յետս առնելու ոչինչ չկայ։ Բոլորովին սխալ հասկըցած է նոյնպէս քննադատն՝ կարծելով թէ զԶաքարիա աշակերտ կը համարինք Եսայեայ Նչեցւոյ, մինչդեռ Զաքարիայի յիշած որեւիցէ "Եսային„ չենք համեմատած "Նչեցւոյն„ հետ. — "որովհետեւ այն ատեն Զաքարիա հասակակից կ'ըլլայ Խաչատրոյ (որուն ժամանակակից է Նչեցի, ապրելով ԺԳ դարու վերջը,) որուն (Խաչատրոյ) շարունակողն է„ Զաքարիա ըստ իւր իսկ խոստովանութեան. (տես՝ էջ 126։) Ըստ այսմ նոյն "Եսայի„ անձին "Նչեցի„ ըլլալը գոնէ իրաւամբ խնդրական համարած ենք եւ պէտք ենք համարիլ։

Իսկ Կրաւֆորդեան օրինակին մէջ զաքարեան խմբի յատուկ կտորը (Հռովմ երթալն եւն) չգտնուիլն զարմանալի էր արդարեւ, եթէ բուն Զաքարիայի իսկական ձեռագիրն ըլլար, ինչպէս սխալմամբ կը կարծէինք. (էջ 158 եւն։) Սակայն այս սխալ տեսութիւնը պարզուեցաւ Մեծ. Պա-

---

[1] "Արարատ„ էջ 267—268։

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ
## ՍՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ
### ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

---

## 1.

*Ստոյն-Կալիսթենեայ գիրքն ընդհանրապէս:*

*Հայոց հին մատենագրութիւնն՝ յանձուկ միտս՝ թարգմանութեան մատենագրութիւն է, որ սակաւ ժամանակի մէջ այնչափ գործ յառաջ բերած է, եւ այնչափ բազմաթիւ գրոց մթերք հայ լեզուաւ ամբարած, որ զարմանալի չէ թաղուած խորշերէն հետզհետէ նոր գրոց լոյս ելլելը։ Սակայն այս թարգմանութեան ոգին իւր գործունէութեան շրջանը շատ որոշ գծերով սահմանած է. այն է՝ եկեղեցական-աստուածաբանական եւ միշտ քրիստոնէական. որով դասական մատենագրութեան կամ ընդհանրապէս հեթանոս մատենագրութեան հետքն անգամ չենք գտներ մեր հնագոյն թարգմանութեանց մէջ։ Այս է պատճառն՝ որ քանի մը շատ դոյզնագիւտ բացառութիւնք ա՛յնչափ զարմանալի կ'երեւան, ինչպէս է ա՛յն մատեանն, որուն ուսումնասիրութեան կը ձեռնարկենք։*

*Ստոյն-Կալիսթենեայ գրոց հայ լեզուաւ, եւ այն՝ հինգերորդ դարէն գտնուած թարգմանութիւնն աւելի զարմանալի կ'երեւայ նաեւ հետեւեալ պատճառաւ: Հինգերորդ դարու կրտսերագոյն*

թարգմանչաց անհպելի մնացած չեն հեթանոսական մատենագրութեան քանի մը նշխարք, բայց սոսոնց թարգմանութիւնքն հազիւ քանի մը կտոր են. այս դրից մէջ միշտ զարմանք է որ նախամեծարութիւն տրուեր է այնպիսի գրքի մը՝ որ Մակեդոնացի մեծ աշխարհակալին անձին առասպելոց հաւաքումն կամ ճշդիւ՝ ըստ քմաց կարկատումն է։ Կ'աճի մեր զարմանքն երբ տեսնենք որ նոյն իսկ գրոյս հաւանական թարգմանիչն՝ այլեւայլ ակնարկութեանց մէջ կը ցուցընէ՝ թէ հաւատք չուզեր ընծայել այս առասպելաց. եւ սակայն գտեր է արժանիք մ'այս գրոց վրայ ոչ միայն թարգմանելու, այլ եւ յաճախ անկէ փոխառութիւն ընելու իւր այլեւայլ գրոց մէջ. մինչդեռ հնութեան մեծայարգ պատմական, ճարտարախօսական եւ բանաստեղծական գլուխք-գործոց դժբախտութեամբ անծանօթ մնացած են կամ կարեւոր չեն երեւցած հայ հին գրագիտաց։ Նուազ յարգ չէ վայելած այս մատեանն նաեւ յաջորդ դարերու մէջ, թէեւ շատ մը կերպարանափոխութիւն կրելով, ինչպէս պիտի տեսնենք։

Նոյն իսկ թարգմանութեանս այս նորանշան հանգամանքը պէտք էր դրդել՝ որ նոյնը մանրամասն քննութեան ենթարկուի. վասն զի եթէ չըլլան նաեւ ուրիշ պատճառք՝ բաւ է միայն գիտնալ թէ ինչ ոճով կը յեղու ի հայ գործոյս ճարտար թարգմանիչը՝ հեթանոս Յունաստանի գաղափարներով գրուած երկասիրութիւն մը. մանաւանդ որ այնպիսի ճարտար եւ կորովի գրչէ բղխած է թարգմանութիւնն, որուն լեզուն՝ թէպէտ օտարացած շատ տեղ հելլենաբանութեամբ՝ դեռ միշտ կը ցուցընէ հայ լեզուին կենդանութիւնն ու ոգին, զոր զուր է փնտռել յաջորդ դարուց մէջ։ Քննութեան դրդող կայ եւ այն պարագայն՝ որ գրոյս թարգմանիչն՝ որչափ կ'երեւայ՝ է նոյն ինքն Մովսէս Խորենացի։ Այս մեծավաստակ հանճարոյն գրեթէ բոլոր գրութիւնքն եւ խմբագրութիւնքն բաւական

քննուեցան եւ քննադատուեցան յօտարաց եւ յազգայնոց. մինչ իւր Թարգմանութեանց վրայ շատ դոյզն դիտողութիւնք միայն եղած են։ Այս Թարգմանութեանց մտադրութիւն նուիրելը պէտք ենք գոնէ երախտագիտութեան պարտք համարիլ այս Ե. դարու մեծավաստակ գրչին։ Նաեւ Հայ մատենագրութեան բաւական լուսաւորութիւն կը մատուցանէ այս խնդիրը. վասն զի Ստոյն-Կալիսթենեայ գիրքը նոյն իսկ Խորենացւոյ Պատմութեան աղբիւրներէն մին է, զոր ինքն իբրեւ գրութեան կամ գեղեցիկ գրելու օրինակ առած է եւ նմանած անոր ոճոյն։ Բաց ասկէ՝ գիտնալու արժանի է թէ Աղեքսանդրի վրայ գրուած առասպելք, որ բովանդակ աշխարհք գրաւած են, որ հին եւ նոր աշխարհի գրեթէ ամէն ազգաց ծանօթ են, եւ ունեցած են բազմաթիւ գրութիւններ արձակ եւ չափական, որոնց հիմն է նոյն իսկ այս Ստոյն-Կալիսթենեայ գործը, ինչ արձագանգ գտած են Հայոց մէջ։

Հայ բնագրին (texte) քննութիւնն Եւրոպական գիտնոց համար ուրիշ կարեւոր կէտ մըն է։

Աղեքսանդրի վրայ անչափ են կուտուած վէպք եւ առասպելք, եւ շատ մեծ է Աղեքսանդրի քաջագործութեանց վիպական մատենագրութիւնը թէ՛ արեւելեան եւ թէ՛ արեւմտեան ազգաց քով՝ սկսեալ նոյն իսկ Աշխարհակալին օրերէն մինչեւ մերձաւոր ժամանակներս. այնպէս որ այս վիպաց գրեթէ ամէն կերպարանափոխութիւնը կրնանք քննել այս կամ այն աղբիւրներուն մէջ, թէպէտ առանձնականի մը գրեթէ անհնար է այս բոլոր աղբիւրները, կերպարանափոխ գրութիւնքն, համառօտութիւնքն եւ այլն, որ շատ անգամ շատ անմատչելի լեզուներով գրուած են եւ ճիւղաւորած՝ ի մի հաւաքել եւ մի առ մի քննել։ Նաեւ յոյն բնագիրն, որմէ բաւական ձեռագիրք կան ցայսօր պահուած, այսպիսի ձեռնմխութեանց, կերպարա-

նափոխութեանց եւ յաւելուածոց նշաւակ եղած է, այնպէս որ դժուարաւ կրնան գտնուիլ երկու օրինակք Կալիսթենեայ որ կէտ առ կէտ միաբանին։ Դժբախտաբար հնագոյն եւ բնիկ կերպարանքը ներկայացընող յունական լոկ մի օրինակ կայ, եւ այն՝ դեռ ոչ բոլորովին զերծ ի ձեռնմխութեանց եւ յաղաւաղմանց։ Եւ այսպէս ամէն մէկ կէտին հնագոյն ձեւը գտնելու համար ուրիշ համակարգ աղբիւրներու դիմելու է, որոնք են՝ ինչպէս առհասարակ ընդունուած է՝ լատիներէն հին թարգմանութիւն Վալերեայ եւ Հայ եւ ասորի թարգմանութիւնք. թէեւ ասոնցմէ դեռ եւ ո՛չ մին բոլորովին անխառն նախնական աղեքսանդրեան աւանդութիւնը կը ներկայացընէ։ Ասկէ յայտնի է արդէն հինգերորդ դարու մէջ թարգմանուած Հայ բնագրին յարգը, որուն համար կը գրէ եւրոպական քննիչ մ՚այսպէս[1]. "Սոյն-Կալիսթենեայ բովանդակութեան եւ ձեւոյն նախնաբար ինչ ըլլալն այն ատեն միայն կրնանք մերձաւորապէս գիտնալ, երբ քննադատօրէն համեմատուին եւ ի մի ձուլուին երեք (աւելի ճշդիւ՝ չորս) համադաս աղբիւրները, որ են յունական A բնագիրը, լատինականն Վալերեայ եւ Հայ թարգմանութիւնը. (պէտք ենք յաւելուլ եւ ասորին.) բայց մանաւանդ թերի պիտի մնայ միշտ այս, քանի որ Հայ թարգմանութիւնը չէ առնուած յօգնութիւն։ Բաղձալի է որ Նայման կամ Փեդերման[2] կամ այլ հայերէնագէտ մը Հայ բնագիրը բառական թարգմանութեամբ մատչելի ընէ արեւմտեան քննչաց, գործածելով Կ. Միւլլէրի Կալիսթենեայ հրատարակութիւնն եւ միշտ մտադիր ըլլալով յունական A բնագրին. կամ գոնեայ այնպէս ընդարձակ ծայրաքաղ մ՚ընէ նոյն թարգմանութեան, որ

[1] J. Zacher, Pseudocallisthenes, էջ 104։ Այս գրոց վրայ քիչ մ՚ետքը։

[2] Հեղինակը կը գրէր 1867ին, եւ իրեն օգնական եղած են այս մասին նոյն գիտնականք։

գոնեայ ի հարկին ամբողջական թարգմանութեան պակասորդը լեցընէ: Ի հարկէ շատ բաղձալի էր որ Հայ գործոյն վրայ եղած կարեւոր քննական դիտողութիւնք ալ աւելցուէին, զոր միայն Հայ լեզուի եւ մատենագրութեան հմուտ մը կրնայ ընել:„

Այս թերին ըստ մասին լրացընել է մեր ջանքն, որով կը ձեռնարկենք ուսումնասիրութեանս. առ այս թելադիր եղան վանացս մատենադարանին երեք ձեռագիրքն, որոնք թէեւ աղաւաղ՝ կրնան կարծենք ինչ ինչ խնդրոց վրայ լոյս սփռել: Բայց նաեւ այս պարագայն կը ստիպէ զմեզ խոստովանելու՝ թէ գործոյս մէջ կան շատ թերի մասեր. ասոնց լրացումն կը սպասենք անոնցմէ, որոնք Հայ ձեռագրաց հարուստ հաւաքածոյից մերձ են կամ դիւրութիւն ունին օգտուելու: Գոհ ենք եթէ մերովսանն աջակցած ըլլանք խնդրոյս հետազօտութեան:

Հայ թարգմանութեան վրայ շատ սակաւ եւ համառօտ են ցայժմ եղած գրութիւնք, որոնցմէ ինծի ծանօթ են լոկ հետեւեալները: Առաջին գրութիւնն այն դոյզն ծանօթութիւնն է՝ զոր Կայեր տուած է, եւ զոր ամբողջապէս կրկին հրատարակեց Կարոլոս Միւլլեր[1]: Թէպէտ համառօտ՝ բայց կ'արժէ այդ ծանօթութիւնը դնել հոս ամբողջ, որ կը ցուցընէ թէ ի՛նչ գաղափար ունէր Կ. Փեթերման Հայ բնագրին վրայ: "Չեմ ուզեր հոս լռել զայն՝ որ երբ Փերդինանդ Ռանքէի նամակներէն իմացայ թէ այժմ իսկ ի Վենետիկ լոյս տեսած է Մեծին Աղեքսանդրի վարուց հայերէն թարգմանութիւնը, զոր ինքը (Ռանքէ) տեսած էր Կ. Փեթերմաննի քով, որ հմուտն է եւ տեղեակ սոյն մատենագրութեան, նամակաւ դիմեցի առ Փեթերման, խնդրելով որ եթէ իմ գործոյս նկատմամբ կայ բան Հայ գրոց մէջ, ինծի հաղորդել հաճի: Ինքն ամենայն մարդասիրու-

[1] Geier, Script. Alexandr. p. 230: Հմմտ. C. Müllerի քիչ մ'ետքը յիշելի գիրքը. (Ներած. էջ 10, ծան. 1:)

թեամբ պատասխանեց. Հայ կենսագրութիւնն, ինչպէս լաւ գուշակած էիք, Սուտ-Կալլիսթենեան է, բայց աւելի հնագոյն ձեւով կամ հնոյն աւելի մերձաւոր, առանց այն բազմաթիւ շատ անգամ հակասական յետնագոյն յաւելուածոց, թէպէտ նաեւ աստ՝ ինչպէս բոլոր միւս բնագրաց մէջ՝ շատ կան հրաշալի դէպքեր: Այս կենսագրութիւնն, ինչպէս հրատարակիչք բացայայտ կը ծանուցանեն Յառաջաբանութեան մէջ, թարգմանուած է արդէն Ե. դարուն Յ. Ք. — եւ Մխիթարեանք այս նիւթոյս մէջ պէտք են իբրեւ ատակ դատաւոր ճանչցուիլ (գիրքը լոյս տեսած է ի Վենետիկ 1842), — եւ նաեւ կ'ենթադրեն թէ հռչակաւոր հայ պատմագիրը՝ Մ. Խորենացի է թարգմանիչը, որ ըստ իրենց կարծեաց թարգմանած ըլլալու է եւ Եւսեբեայ քրոնիկոնը[1]: — Էջ 73 (ամբողջն է 198 էջ) կայ այսպիսի վերջաբան մը. Կատարեցան ծնունդք եւ գործք Աղեքսանդրի Մակեդոնացւոյ գրեալ յԻմաստնոյն յԱրիստոտելէ եւն: [Յայտ է ուրեմն, կը յաւելու Կայեր, որ գրոց բաժանումն նոյն է A բնագրին եւ Վաղերեայ հետ:] — Էջ 186 կը փակի բուն կենսագրութիւնը. կը յաջորդեն "Ներբողեանք (!)[2] Աղեքսանդրի մահուան ի Խաչատրոյ Կեչառեցւոյ (?), որ են ողբք Ողոմպիադայ, Հռոքսիանեայ, զօրավարաց եւ զօրաց, եւ յորդորակ Աղեքսանդրի առ իւր բարեկամս: Զասոնք լաւ եւս կրնայինք մեկնել իբրեւ Բանք ի մահն Աղեքսանդրի:" Յոյն վայր Կայեր ըստ թղթոյն Փեթերմաննի:

Հայերէնագէտ մը, որոյ անունն անծանօթ մնացած է, քիչ մ'ետքը հրատարակեց համառօտ հատուած մը հայ թարգմանութեան վրայ ի Հալլէ

[1] Այսօր խնդիր չի կրնար ըլլալ այս երկրորդ կարծեաց սխալ ըլլալուն:

[2] Գերմանացի գիտնականը հայ բնագրին "բարառնութիւնք" բառը Lobreden թարգմանած է վրիպմամբ, որով զարմանաց առիթ տուած է հեղինակին:

լոյս տեսնող Ընդհանուր Մատենագրական Թերթին մէջ[1]։ Աւոր յաջորդեց աւելի երկար նշանաւոր հատուած մը հայերէնագէտ Կ. Փ. Նայմանէն՝ Պաւիերայի Գիտութեանց Ճեմարանին անդամոց հրատարակած Գիտնական Յայտարարութեանց տարեգրոց մէջ[2]։ Այս հատուածն (ըստ Zacherի, էջ 85) որչափ ճոխ է նիւթովք, նոյնչափ անծանօթ մնացած։ Այս երկու հատուածք ալ ինծի անմատչելի մնացին, բայց ասոնց բովանդակութիւնը ծանօթ է յիշեալ Zacher գիտնականին գրքէն, որուն վերնագիրն է. "Սոտ-Կալլիսթենէս. Հետազօտութիւնք քննադատութեան եւ պատմութեան հնագոյն յիշատակարանաց վիպոց Աղեքսանդրի." որ ի Հալլէ 1867ին լոյս տեսաւ[3]։ Այս գրոց մէջ առանձին գլուխ մը նուիրուած է հայ թարգմանութեան. (էջ 85—101։) Հեղինակը չէ հմուտ հայերէնի. եւ որովհետեւ ցաւով կը տեսնէր որ Մխիթարեանք հայ բնագրին կցած չեն եւրոպական լեզուաւ թարգմանութիւն մը,ստիպուած էր իւր գրոց մէջ ամփոփել յիշեալ երկու հատուածոց բովանդակութիւնը. բայց նաեւ ունէր իւր առջեւ "ինչ ինչ շատ յարգի գրաւոր տեղեկութիւններ, զոր Փրոֆ. Փեթերման Միւլլէրի Ստոյն-Կալիսթենեայ հրատարակութենէն տարիներ յառաջ" տուած էր իրեն։ Իւր գրոց մէջ բաւական կտորներ համեմատելով բնագրին՝ այս հետեւութեան հասած է[4]. "Հայ թարգմանութիւնը, որչափ համեմատութեան առնուած սակաւաթիւ կտորներէն կ'երեւայ, շատ

[1] Hallische Allgemeine Literatur-Zeitung, 1845 Juni, Nr. 129, S. 1027—1029.

[2] Gelehrte Anzeigen, herausg. von Mitgliedern der k. bayer. Akademie der Wissenschaften. München, 1844. December, Nr. 250—252. Sp. 961—965; 969—974; 977—983.

[3] Julius Zacher, Pseudocallisthenes. Forschungen zur Kritik und Geschichte der ältesten Aufzeichnung der Alexandersage. Halle, 1867, 193 pp. 8o.

[4] Zacher, S. 101.

հաւատարմութեամբ կը թարգմանէ յոյն նախատիպ բնագիր մը՝ որ ապահովութեամբ Կալիսթենեայ հնագոյն աղեքսանդրեան բնագրախմբին կը վերաբերի։ Բնականապէս նաեւ հոս գործոյն նախնական կերպարանքը չէ պահուած բոլորովին անեղծ, բայց հինն ու բնիկը շատ տեղ եւ կարեւոր տեղերն աւելի կատարեալ եւ լաւ պահուած են քան յունական A ձեռագիրը կամ նաեւ Յուլեայ Վալերեայ լատիներէն թարգմանութիւնը. եւ միւս կողմանէ կը հաստատէ յուրախութիւն մեր՝ Վալերեայ պահած նախնական բնագրին այն մասերը, որոնք բոլոր յոյն ձեռագրաց մէջ անհետ կորսուած են»։

Նոյն կարծիքն ունէր ուրիշ գերմանացի գիտնական մը Ռէօմհէլտ, որ բարեբախտութեամբ հմուտ էր նաեւ հայ եւ ասորի լեզուաց, եւ կը խոստանար ընդարձակ գործք մը հրատարակել Կալիսթենեայ քննութեան։ Բայց դժբախտաբար չկրցաւ կատարել իւր այս խոստումը, եւ մնաց իրմէ լոկ փոքր գրութիւն մը, թէեւ այն եւս միշտ յարգի է եւ հիմնական, որ հրատարակուեցաւ Հերսֆելտի արքունի Կրթարանին տարեկան տեղեկագրոյ մէջ այսու անուամբ. «Ուսումնասիրութիւնք քննադատութեան եւ պատմութեան վիպոյ Աղեքսանդրի[1]»։ Այս յիսուն էջ գրութեան մէջ շատ մանր քննութեանց ենթարկեց հեղինակը Կալիսթենեայ բաւական մաս մը. հայ եւ ասորի բառերն լատինատառ գրութեամբ կը դնէր առ ի չգոյէ նոյն տառերու ի Հերսֆելտ։

Մինչեւ 1886 ծանօթ չէ ինձի ուրիշ գրութիւն մը հայ թարգմանութեան վրայ։ Նոյն տարին Ատոլփոս Պաումկարթնէր Խորենացւոյ տրուած Պիտոյից Գրքին վրայ գրած հմտալից հատուածին մէջ շօշափեց քանի մը կտորներ, զորոնք Խորենացի

[1] Jahresbericht über das königliche Gymnasium zu Hersfeld **1873**, von Dr. Georg Friedrich Eysell. — S. **3—52**: Römheld, Beiträge zur Geschichte und Kritik der Alexandersage.

ի Կալիսթենեայ առեալ մուծեր է իւր գրոց մէջ։ Այս հատուածը լոյս տեսաւ Գերմանական Արեւելագիտաց Ընկերութեան Ուսումնաթերթին մէջ[1]. որուն հայերէն թարգմանութիւնը հրատարակեց Բազմավէպ[2], բայց մի մասը միայն. Մնացեալն (որուն մէջ էր այս խնդրոյս վերաբերեալ կտորը,) թողուեցաւ ի բաց։ Այս թարգմանութիւնն ընդհանրապէս մթին էր եւ տեղ տեղ անյաջող։ Նոյն տարին՝ բայց քանի մ'ամիս յառաջ միեւնոյն գերմաներէն թերթին մէջ ուրիշ կարեւոր հատուած մը զետեղեց Յ. Կիլտէմայսթէր[3] "դրդեալ արտաքուստ", ինչպէս կը գրէ։ Այս հատուածին մէջ հրապարակ հանեց Խորենացւոյ Պատմութեան (Գ, իզ, իը) բանաքաղութիւնն ի Հայ Կալիսթենեայ, եւ ասոր կցեց համառօտիւ այլեւայլ դիտողութիւններ։ Այս հատուածն առիթ կ'ունենանք յետոյ տեսնելու։

Վերջապէս եւրոպական հռչակաւոր ասորագէտ եւ արաբագէտ գիտնականը Թ. Նէօլտէքէ այս օրերս հրատարակեց Վիեննայի Գիտութեանց Ճեմարանին Յիշատակագրոց Փիլիսոփայական-Պատմական Բաժնին մէջ ընդարձակ գրութիւն մը "Ուսումնասիրութիւնք Պատմութեան վերայ Աղեքսանդրի[4]"։ Հեղինակն այս գրութեան մէջ ի մասնաւորի ասորական թարգմանութիւնը կ'առնու ի քննութիւն, եւ անոր ազդեցութիւնն արաբական մատենագրութեան վրայ։ Շատ տեղ համեմատու-

---

[1] Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, XL Band, 1886, Heft III, S. 457—515: Adolf Baumgartner, Über das Buch "die Chrie", (մանաւանդ էջ 504—506։)

[2] Բազմավէպ 1887, Դ. էջ 306—314; 1888, Ա. էջ 20—30; Գ. էջ 203—211; Դ. 329—338։

[3] J. Gildemeister, Pseudocallisthenes bei Moses von Khoren, ի թերթին ZDMG, 1886, Heft I, S. 88—91.

[4] Denkschriften der kais. Akademie der Wissenschaften. Philosophisch - historische Classe, XXXVIII. Wien, 1890.—V. Beiträge zur Geschichte des Alexanderromans von Prof. Dr. Th. Nöldeke. 56 pp. 4⁰.

թեան կը բերէ եւ զՀայն, բայց Հայերէնագէտ չըլլալով՝ օգտուած է լոկ Zacher եւ Römheld գիտնականաց գործերէն. կը յաւելու "բայց իմ բարեկամս Փրոֆ. Հիւպշման, շատ կտորներու վրայ տեղեկութիւն տուաւ":

Ցայս վայր եւրոպացի գիտնոց գրութիւնքն յիշեցինք: Հայ լեզուաւ առաջին անգամ գրեց այս խնդրոյս վրայ Հ. Ռափայէլ Թրեանց[1] ի Յառաջաբանի Հրատարակութեան Հայ բնագրին, որուն վերնագիրն է. "Պատմութիւն մեծի աշխարհակալին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ[2]": Այս Հրատարակութիւնը՝ թէեւ Համեմատութեամբ իւր նմաններուն՝ աւելի լաւագոյն է, բայց միշտ անբաւական, մանաւանդ որ տարբերութիւնք ձեռագրաց (թուով իբր տասն) խմբովին նշանակուած են, եւ ոչ իւրաքանչիւր ձեռագրինն ուրոյն ուրոյն: — Վերջապէս քանի մը տարի յառաջ փորձեց Քննասէրը[3] "Մովսէս Խորենացի եւ Թարգմանութիւնք իւր" խորագրով ցուցընել "ոչ իբր կարծիս, այլ իբր Հաւաստիս" թէ Կալիսթենեսս Խորենացւոյ թարգմանութիւն է, յենլով այն կէտին՝ թէ Խորենացի իբրեւ իւր գործը՝ չէ խղճած Պատմութեան մէջ գործածել շատ տեղ այս թարգմանութիւնը: Քննասէրն ի մէջ կը բերէ 26 այսպիսի Համեմատութիւնք, որոնց ոմանք՝ իրմէ անկախ՝ դիտած են եւ այլք (այսպէս Պաւմկարթներ, եւն), ինչպէս պիտի տեսնենք: Այս Հատածն է Հայ լեզուաւ մի միայն գրուած Հիմնական քննութիւնը. դոյզն ինչ է զոր կը գտնենք գրուած ի "Մատենադարանի Հայկական Թարգմանութեանց Նախնեաց[4]", ուր շփո-

---

[1] Հմմտ. Քննասէր, Բ. էջ 31:

[2] Պատմութիւն Աղեքսանդրի մակեդոնացւոյ. ի Վենետիկ, 1842, 12 եւ 204 էջ 8⁰: Հրատարակութիւնը շատ սակաւաթիւ օրինակ ունի:

[3] Նորայր Բ., Քննասէր, Պրակ Բ: Ստոքհոլմ, 1887, էջ 29—45:

[4] Հ. Գարեգին Զարբ. Մատենադարան Հայկական

թութիւնք եւ վրիպակք անպակաս են։ Կը բաղձայինք հոս գոնէ աւելի ընդարձակ ծանօթութիւն գտնել հայ ձեռագրաց, բայց կը գտնենք լոկ այս դիտողութիւնը. «Ի մեր մատենադարանի պահուած գրչագրաց նկարագիրը տրուած է արդէն յընդարձակ եւ ի հմուտ յառաջաբանի տպագրին»։

Հայ թարգմանութեան յոյն բնագիրը ծանօթ էր յԵւրոպա, բայց ամբողջական հրատարակութիւն մը կը պակսէր[1] մինչեւ 1846, երբ առաջին անգամ գեղեցիկ հրատարակութիւն մ'ըրաւ Կարոլոս Միւլլէր[2] Արրիանու պատմագրութեան եւ այլ հին մատենագրաց հատակոտորոյ հետ՝ «Սուտ-Կալիսթենէս» անուամբ, եւ որուն կցեց «Ուղեգրութիւն Աղեքսանդրի» (Itinerarium Alexandri) անանուն գրութիւնը։ Բազմահմուտ հրատարակիչն երեք ձեռագրաց ճշգրիտ բաղդատութեամբ ի լոյս հանեց գործքը, դնելով նաեւ Յուղեայ Վաղերեայ լատիներէնը, եւ ի սկզբան ընդարձակ հմտալից ներածութիւն մը։ Լայտէնի գրատան յոյն օրինակը յետոյ ըստ ընդօրինակութեան Zacherի լոյս հանեց Մեւզէլ «Տարեգիրք դասական բանասիրութեան» պարբերականին մէջ[3]։ Վաղերեայ լատիներէնը հրատարակած էր նաեւ Ծիրանաւորն Մայի (ի Միլան) 1817ին, եւ ապա կրկնագիր Դուրինեան ձեռագրին մասերը 1842ին[4]։ Յուղեայ Վաղերեայ ժամանակէն

---

թարգմանութեանց Նախնեաց։ Վենետիկ, 1889. էջ 704—714. «Վարք Աղեքսանդրի»։

[1] Բայց հատակոտորք հրատարակեալ էին։ Հմմտ. Jules Berger de Xivrey, Notices et Extraits des Manuscrits. Paris, 1838, Tome XIII, Par. II, p. 162—306 եւն։

[2] Carolus Müller, Arriani anabasis et indica, reliqua Arriani, et Scriptorum de rebus Alexandri Magni fragmenta. — Pseudocallisthenis historia fabulosa, Itinerarium Alexandri. Parisiis, 1846. 4ᵒ. XXXII, 327. VI, 162 եւ բուն Կալիսթենեայ մասը՝ XXXII, 180 pp.

[3] Meusel, Jahrb. für class. Philologie, Supplementband, V. 701 ff.

[4] Angelo Mai, Julii Valerii res gestae Alexan-

դարեր ետքն ուրիշ անկախ թարգմանութիւն կամ լաւ եւս կերպարանափոխ խմբագրութիւն մ'ըրաւ Աւագերէց Լեւոն (Archipresbyter Leo) Ժ դարուն մէջ։ Բազմաթիւ են նման այլ գործեր թէ՛ արեւմտեան թէ՛ արեւելեան ազգաց քով[1]։ Վերջապէս նաեւ ասորի բնագիրն ամբողջապէս ի լոյս հանեց անգղիացի գիտնական մը հանդերձ անգղիական թարգմանութեամբ, ներածութեամբ, ծանօթութեամբք եւ կարեւոր յաւելուածներով[2]։ Արեւելեան ազգաց քով Աղեքսանդրի վրայ եղած վիպաց քննութիւն գրեցին նաեւ Շպիկել, Սէնթ-Քրուա, Շդեռն եւ այլք[3], ինչպէս նաեւ Աղեքսանդրու վարուց վիպաց քննութեան զբաղեցան Ֆավր, Լըդրոն, Կրէսսէ, Ֆրոշէօր, Ռոտէ, Պուրիան եւ այլք բազումք[4], զորոնք յիշել մեր նպատակէն դուրս է։

---

dri. Mediolani, **1817**. — Classicorum Auctorum e Vaticanis codicibus editorum Tomus VII, Romae, **1835**, pp. **1—246**. եւ իւր հրատարակած Spicilegium Romanum, Tom. VIII, Romae, **1842**, pp. **513—522**.

[1] Հմմտ. բաց ի Zacherի, Römheldի, Nöldekeի եւ այլոց գրութիւններէն հետեւեալը. Paul Mayer, Alexandre le Grand dans la Littérature française du Moyen âge. Paris, **1886**, Tom. II.

[2] Ernest A. Wallis Budge, The history of Alexander the great, being the syriac version of Pseudo-Callisthenes. Edited from five manuscripts, with an english translation and notes. Cambridge, **1889**.

[3] Spiegel, Die Alexandersage bei den Orientalen, Leipzig, **1851**. — Sainte-Croix, Examen critique des anciens Historiens d'Alexandre le Grand. Paris, **1804**. — Dimetrius P. de Gobdelas, Histoire d'Alexandre le Grand etc. — M. E. Stern, Zur Alexander-Sage, Wien, **1861**, եւն եւն։

[4] Guillaume Favre, Recherches sur les histoires fabuleuses d'Alexandre le Grand, **1829—1830**, եւ նաեւ յետոյ ի Genève, **1856**. — Letronne, ի թերթին Journal des Savants, **1818**. — Th. Grässe, Lehrbuch einer allgemeinen Literärgeschichte, Leipzig **1842**, II Band, III Abtheilung. — Florian Frocheur, Histoire romanesque d'Alexandre etc. Gand. **1847**. IV Livraison, p. **393—436**. — Erwin Rohde, Der griechische Roman etc. — Bouriant, ի թերթին Journal Asiatique, **1887**, I, եւն եւն։

Բայց ի հարկէ նախ քան մեր քննութիւնը սկսիլն, կարեւոր է ի լուսաւորութիւն խնդրոյս համառօտիւք տեսնել թէ ով է հեղինակն, երբ գրած եւ ինչ է այս գիրքն։

Ա. Թէ ով է այս վէպին բուն հեղինակը, յայտնի չէ։ Շատ սակաւ եւ յետնագոյն աղբիւրներ միայն "Կալիսթենէս" անուամբ կը յիշեն, ինչպէս կը գտնենք B ձեռագրին մէջ այս վերնագիրը. "Καλλισθένης ἱστοριογράφος κτλ." բայց B գրուած է յամի 1469 Յ. Ք., մինչ ոչ A հնագոյն օրինակն, ոչ հայն եւ ոչ այլք գիտեն նոյն անունը։ Ըստ Միւլլերի (Ներած. ԻԶ) այս անուամբ կը յիշուի նաեւ Ցեցէսի (Tzetzes) պատմութեան մէջ երեք անգամ[1], բայց ընդհակառակն ուրիշ տեղ մ'ալ Սեսոստրեայ պատմութեան վկայ կը կոչէ զԿալիսթենէս (Tzetzes, III. 100), որ չի գտնուիր Աղեքսանդրի վարուց մէջ. տեղ տեղ ալ առանց անուն յիշելու կը գործածէ նոյն պատմագիրը մեր այս գիրքը։ (Հմմտ. Tzetzes, XI, 97. Կալիսթ. I, 13, ըստ Հայոյն ԻԸ։) Միով բանիւ՝ ամէն գիտնականք կը միաբանին յայնմ՝ որ Կալիսթենեայ Ողինթացւոյ այն գործքը՝ որ կը յիշուի շատ տեղ՝[2] չէ այս մատեանս. բայց վասն դիւրութեան սովորաբար "Սուտ-Կալիսթենէս" (Pseudo-Callisthenes) անուամբ կը կոչեն քննիչք։

Հայ բնագրին մէջ զարմանալի եղանակաւ կը գրուի. (էջ 73.) "Կատարեցան ծնունդք եւ գործք Աղեքսանդրի Մակեդոնացւոյ գրեալ յիմաստնոյն յԱրիստոտելէ։" Բայց ի հարկէ չենք կրնար ընդու-

---

[1] Tzetzes Hist. I, **323**; III, **550**, III, **885**. Հմմտ. Müller, XXVI.

[2] Callisthenes Olynthius ծնած կը համարուի իբր **368—365** Ն. Ք. աշակերտ Արիստոտելի եւ ազգական. որմէ կը յիշուին այլեւայլ գրութիւնք. Հելլենական, Աղեքսանդրի վարք եւն։ Ասոնցմէ հատակոտորք հասած են մեր ձեռքը։ Կալիսթենեայ հատակոտորքն եւ իւր վրայ ծանօթ տեղեկութիւնքը տես ի Müller, Fragmenta, pp. **1—32**.

նիլ որ նոյն գրչէն ըլլայ այս առասպելաց գիրքը: Միւլլեր կը յիշէ որ առ Եւստաթեայ (ad Dionys. Per. 440) կը յիշուի *Ἀριστοτέλης ἐν πέμπτῳ Περὶ Ἀλεξάνδρου.* բայց այս վրիպակ կոչումն է փոխանակ *Ἀρριανός* գրելու, որուն գրութիւնը կը յիշուի հոս: Եւ արդէն Եւստաթիոս կը յիշէ յաւելլով “որպէս ասեն„ (*ὥς φασιν*). եւ թէ անշուշտ Արիստոտէլի անուամբ ծանօթ առասպելական պատմութիւնն էր պատճառ այս շփոթութեան: Տեղ տեղ Եսովպայ կը տրուի այս գրութիւնը, զոր կը մեկնեն քննիչք այնու՝ որ Կալիսթենեայ այս գիրքը սովորաբար ձեռագրաց մէջ Եսովպայ առակներէն անմիջապէս ետքը կ'օրինակուի, որով առաջնոյն անունը կը կցորդի նաեւ ասոր: Պտղոմեայ Լագիդացւոյ կ'ընծայուի (Առիան, Արշաւ. Աղեքս, Ե, 26 եւն) պատմութիւն մ'Աղեքսանդրի, որմէ հատակոտորք կան[1]: “Ամենէն աւելի Պտղոմեայ անունը յարմար էր, կ'ըսէ Միւլլեր, եթէ գրութեան նկարագիրն ի նկատ առնունք՝ ասոր ճակատը դնելու. որ եւ արդեամբք եղած կ'երեւայ, թէեւ յայտնի բառերով չենք գտներ: Վասն զի A ձեռագրին սկզբան նախընթաց թուղթը պատռուած է այժմ. կ'երեւայ թէ Պտղոմեայ արքայի պատկերը կար վրան, որուն համար գրուած է նախընթաց էջի վրայ քանի մը տող ոտանաւոր (օտար ձեռքէ) այսպէս. *Οὗτος βασιλεὺς ὁ Πτολεμαῖος, ξένε, κτλ.* Անշուշտ անոր համար դրուած են ասոնք՝ վասն զի Պտողմէոս հեղինակ կը դրուէր Աղեքսանդրի “առասպելական եւ ի խաբս մարդկան յօրինուած պատմութեան[2]:„ Ինչպէս որոշ չի գիտցուիր գրոցս հեղինակը, նոյնպէս գրութիւնն ալ անվթար չէ պահուած:

Նախ Միւլլեր (Ներած. ԺԹ եւն) եւ ապա ամէն այլ քննիչք կը դիտեն՝ որ Աղեքսանդրի քա-

[1] Հմմտ. Müller, Fragmenta, pp. 86—93.
[2] Müller, Ներածութիւն. ԻԷ:

ղաքին հետ շատ մեծ կապ ունի վէպը. ուստի աղեքսանդրիացի էր սոյն գրոց հեղինակը։ Աստ գլխաւոր կէտն այն է՝ որ կը ջանացուի ցուցընել՝ թէ Աղեքսանդր է որդի վերջին թագաւորին Եգիպտոսի Նեկտանեբայ. (Հայ. Ա—ԼԴ. ԴԶ.) Աղեքսանդր կը զոհէ Ամոնայ "հայրենի աստուածոյն." (ՀԸ.) եգիպտական Սարապիս դիք զԱղեքսանդր իւր պաշտպանութեան կ'առնու եւ Աղեքսանդրի կը հրամայէ կանգնել Աղեքսանդրիա քաղաքը, (ԴԱ—ԴԴ.) եւն։ Աղեքսանդրիա քաղաքը մասնացոյց կ'ընէ եւ այն յիշուածը՝ թէ "առիւծ" էր բիբղոս-կնքոցին դրոշմ (ԺԶ, էջ 10, 5), զոր համեմատենք Ստեփանոսի Բիւզանդացւոյ խօսքին հետ, որ կը վկայէ թէ ատոր համար Աղեքսանդրիա Λεοντόπολις (= առիւծաքաղաք) կը կոչուէր.[1] Թող որ բաւական յայտնի ալ կը խոստովանի հեղինակն իւր հայրենիքը զԱղեքսանդրիա, այնպէս մանրամասն ստորագրելով իւր քաղաքն, իւրաքանչիւր մասին հին եւ նոր անունները, նշանաւոր շէնքերն յիշելով եւն, (ՀԸ—ՁԹ.) եւ յաւելլով թէ Աղեքսանդր եկաւ "յայս յատակ եւ տեսանէր վայր մեծ. (ՀԹ. 37, 9.) թէ "շիրիմ Պրոտեայ առ մեզ է...։ Ի վերայ լերին միոյ բարձու եկեալ բերին զնա, այդ որ այժմ կոչի Դիւցազգի գերեզմանն." (ՁԴ, 39, 26.) թէ "արարեալ դէմ յանդիման դիւցազինն տաճարի բագին մեծ, զոր ցորդ խոս ասեն բագին Աղեքսանդրի, (ՁԹ, 42, 3)։ Ամսոյ անուանք իսկ եգիպտական են. այսպէս "Ի Տոբի քսան եւ հինգ." (ՁԷ. 41, 17.) "Ի Պարմութիր որ օր չորս էր." (ՄՁԶ. 186, 16.) թէեւ աղաւաղեալ ձեւով, եւն եւն։ Ասկէ դրդեալ ոմանք քննիչք կ'ուզեն ընդունիլ՝ որ գրոցս գոնէ ինչ ինչ

---

[1] Ըստ Müllerի (Ներած. Ի) Ստեփանոս այս տեղեկութիւնն առած է ի Յաստմէ Արգիւացւոյ, որմէ մնացած հատակոտորոց մէջ կը գտնենք սոյնը։ (Հմմտ. Müller, Fragmenta, p. 160, 2.) Ի Ստեփանոսէ Բիւզանդացւոյ առած է Եւստաթէոս ad Dion. v. 254. Հմմտ. Nöldeke, 3.

մասերն ոչ լոկ աղեքսանդրեան՝ այլ նաեւ բնիկ եգիպտական ծագում ունենան. իսկ այլք այս պէտքը չեն տեսներ։ (Հմմտ. Nöldeke, 10։)

Բ. Թէ երբ գրուած է այս գիրքն՝ որոշ ըսել չեն կրնար քննիչք. բայց նորագոյնք կ՚ընդունին՝ թէ գոնէ Դ. դարուն Ց. Ք. վերջերէն ետքը գրուած չի կրնար ըլլալ։ Առ այս կը բերեն վկայութիւն ի մէջ այլոց եւ զայն՝ որ գրոցս մէջ դեռ կանգուն կը յիշուի Սարապեայ տաճարն յԱղեքսանդրիա, զոր 387ին Ց. Ք. քանդել տուաւ Թէոդոս. կը յիշուի նոյնպէս Աղեքսանդրի տապանը կանգուն. (ՄՁԴ.) սակայն Ոսկեբերան (ի ճառին ԻԶ. Մեկնութեան Երկրորդ Թղթոյն Կորնթացւոց՝) արդէն ի բաց բարձեալ կը յիշէ նոյնը, եւ թէ ա՛լ անոր տարեկան տօնն իւր ժամանակն արդէն մոռցուած էր[1]։ Հինգերորդ դարու Հայերէն թարգմանութիւնն անգամ նախնական ձեւը չէ ունեցած իւր առջեւն. ուրեմն շատ կանուխ էր այն նախնական բնագրին գրութեան ժամանակը։ Նոյնը կը տեսնուի նաեւ անկէ՝ որ Itinerarium Alexandri գրութիւնը կը քաղէ շատ տեղ Ստոյն-Կալիսթենեայ լատինական թարգմանութենէն.[2] եւ որովհետեւ այս Ուղեւորութիւնն իբր 340—345 տարեաց մէջ գրուած է, ապա Վալերեայ թարգմանութիւնն այս ժամանակէն յառաջ է։ Նաեւ Վալերեայ բնագիրը նախնական կերպարանքը չէ պահած, որով աւելի կանուխ իբր

---

[1] Հրտր. B. de Montfaucon, Paris, 1732, Tom. X, ll ad Corinth. XXVl, 5. Հայ թարգմանութեան դժբախտաբար նշխար մը միայն կայ այս ճառէն. (Ոսկեբերանի Մեկն. ի Պաւղ. Վենետ. 1862, Հտր. Բ. էջ 430—431։)

[2] Հմմտ. Zacher, S. 48—84. որ կը ցուցընէ թէ նախ քան 340 տարին եղած է Վալերեայ գրութիւնը։ Իսկ Միւլլէր (Ներ. ԻԶ) Դ. դարու կէսերը կը դնէ, մինչ ոմանք ի հնոց՝ չափէն աւելի նոր ժամանակի գործ կը համարէին։ Այսպէս Վալերեայ գրութիւնն ապահովութեամբ Հայ թարգմանութենէն յառաջ է ժամանակաւ։ Իսկ թէ ինչ անձ էր այս Յուլիոս Վալերիոս՝ որոշ չէ. ոմանք կեղծ անուն կը կարծեն։

200ին կը դնեն Ստոյն-Կալիսթենեայ յօրինումն, այլ քիչ մ՚աւելի ուշ։ Աւելի կանուխ դնել անհնար է. վասն զի այս գրոց մէջ այնպիսի աղբերք գործածուած են, որոնց ժամանակը գիտենք։ Այսպէս ի մէջ այլոց յանուանէ կը յիշէ զՊաւորինոս (Հայն եւ Վաղերիոս միայն. Հայ՝ ԻԹ, 15, 23։) Այս անուամբ յիշուածն (ըստ Zacherի, 91) է Favorinus Arelatensis հեղինակն Տրայանոսի եւ Ադրիանոսի ժամանակակից։

Գ. Այս խօսքերէն ինքնին կը հետեւի որ Ստոյն-Կալիսթենեայ գիրքը չէ հաւաքուած ժողովրդական զրոյցներէ, այլ մեծաւ մասամբ ֆրաֆէրական վէպ է, այսինքն՝ գրքերէ եւ գրաւոր աղբիւրներէ քաղեալ, որոնց մէջ տեղ տեղ շփոթութիւնք ալ մեծ դեր խաղացեր են: Գրոցս այս նկարագիրն ի մանաւորի քննութեան առաւ Նէօլտէքէ[1], որ շատ հետաքրքրական տեղեր լուսաբանեց, եւ ցուցուց թէ ո՛ր աւանդութիւնն ո՛ւր արդէն կայ գրուած: Ցիշենք օրինակ մը: Աղեքսանդրի դայեակն է "Լակրինէ . . . քոյր Մելանոսի." (ԻԹ, 15, 15:) Լակրինէն է արդարեւ պատմականն Λανίκη (Առիան. Գ. 9, 3 եւն.) որուն Մելանոսի քոյր (ἡ Μέλανος A կամ Μέλαντος BCL ἀδελφή) ըլլալն անկէ ծագած է՝ որ Լանիկէ քոյր էր Մելաս (= սեաւ) կոչուած Կղետոսի (Κλεῖτος ὁ μέλας ըստ Պղուտարք. Աղեքս. 16 եւն:) "Այսպիսի դիպաց մէջ ղբռոցի վրայ խօսք իսկ չ՚ըլլար," կը յաւելու Նէօլտէքէ: Գրաւոր աղբերէ են նամակները, որոնցմէ ոմանք շատ մեծ հնութիւն ունին, եւ կը ցուցընեն՝ որ Աղեքսանդրի վրայ խօսող նամակաց ճոխ մատենագրութիւն մը կար. ոմանք առ Կիկերոնի իսկ կը յիշուին[2]: Եւս առաւել բանաստեղծական կտորները, քերթուածք, (ինչպէս ՃԻԹ, 66. եւն եւն) գրաւոր

[1] Nöldeke, S. 2—11.
[2] Zacher, S. 92, 93.

աղբիւրներէ մուծուած են։ Ի հարկէ նաեւ ժողովրդական զրոյցներ ալ կան մէջը, ինչպէս նաեւ Եսովպայ առակք,[1] եւն. զորոնք քննել մեր նպատակէն դուրս է։

Զարմանալի եղանակաւ՝ գրոց սորի թարգմանութիւնը Հայոյն հետ կապ չունի, եւ շատ վերջ է ժամանակաւ։ Նէօլտէքէ[2] կը ցուցընէ՝ որ յոյն օրինակէ չէ բղխած սորին, այլ պահլաւ բնագրէ մը. եւ պահլաւի տառերու անորոշութիւնն պատճառ տուած է շատ մը սխալմանց, մանաւանդ յատուկ անուանք անճանաչելի եղած են սորւոյն քով։ Ըստ Նէօլտէքէի՝ այս պահլաւ բնագիրն Է դարէն ուշ չի կրնար դրուիլ, որով գոնեայ Ը դարուն թարգմանուած է սորին։ Զարմանալի է տեսնել այն սորի թարգմանութեան մէջ՝ օրինակի աղագաւ Քսէրքսէս անուան տեղ Խոսրով, Մարքիանոսի տեղ Մերվ, Պորքնի-էա անուան փոխանակ Աճարշահր դնել եւն եւն, զորոնք կը թուէ Նէօլտէքէ։

Ինչպէս ըսինք՝ սորին ալէքսանդրեան բնագրախմբին կը վերաբերի, որմէ են եւ Հայն եւ Վաղերիոս։ Յոյն օրինակաց մէջէն (ստոյգ ծանօթ՝ աւելի քան 12) լոկ A կը ներկայացընէ այս խումբը։ A է Փարիզի գրատան Թիւ 1711, ԺԱ դարէն, մագաղաթեայ. որ դժբախտութեամբ շատ աղաւաղ ու թերի է, եւ տգէտ գրչի արդիւնք, որով նոր ձեռագրի մը պէտքն զգալի է։ Աղեքսանդրեան նկարագիրն շատ քիչ կը կրեն այլ ձեռագիրք, որոնց մէջ եգիպտական աւանդութիւնը մեծաւ մասամբ զեղչուած է, շատ մը դէպք՝ որ յոյն ընթերցողաց անախորժ էին՝ փոփոխուած, միով բանիւ՝ յունացուցեալ են. այսպէս կը գտնենք ի B. եւ սոր նման են շատ օրինակք։ Այս տեսակը հիմն է գրոց գրեթէ բոլոր արեւմտեան խմբագրութեանց։ B է Փարիզի գրատան Թիւ 1685, Թղթեայ, 1469ին գրուած։

[1] Nöldeke, S. 10.
[2] Nöldeke, S. 11—24.

Այն օրինակաց, որոնք շատ աւելի կերպարանափոխ եղած են, ներկայացուցիչն է C (թիւ 113 Supplément ի Փարիզ, թղթեայ, 1567ին գրուած։) Այս երեք տեսակ ձեռագիրներն հիմն առած է Միւլլէր իւր հրատարակութեան։

Յոյն ձեռագրաց պէսպիսութիւնքն յետոյ առիթ կ'ունենանք տեսնելու, երբ զբաղինք հայ թարգմանութեան համեմատութեամբ։ Բայց նախ քան այս մասին սկսիլն՝ պէտք ենք քննել հայ բնագրին նախնական ձեւն, թարգմանութեան ժամանակն եւ անձն, հայ օրինակին կերպարանափոխութիւնն ի ձեռն Կեչառուեցւոյ եւ այլոց. նաեւ հայ թարգմանութեան ոճն ու կերպն, լեզուն եւն։

Դիւրութեան համար մեր գրութեան մէջ կը գործածենք այս համառօտութիւնները։

A. B. C = Փարիզի թիւ 1711, 1685 եւ 113 Suppl. ձեռագիրք՝ ըստ հրատարակութեան Միւլլէրի։ Այս ձեռագրաց ներկայացուցած բնագրին տեսակն՝ ուր պէտք է՝ α β γ կը նշանակենք։

Ա. Բ. Գ. = Ձեռագիրք հայ բնագրին մեր Մատենադարանին՝ թիւ 90 Դ. 68 եւ 57 Ա։ Առաջինն է գրեալ ի Կ. Պոլիս, թղթեայ, նոտրգիր եւ լի նկարներով. եւ գրուած յամի ՌՃԽԳ (= 1694։) Այս առաջին օրինակէն զատ՝ որ Կեչառուեցւոյ խմբագրուած օրինակին խմբէն է, միւս երկուքն համառօտ ձեւով են. ասոնցմէ երկրորդն բուն համառօտութիւն է հայ բնագրին, մինչ երրորդն արդէն աղաւաղման ծայրն հասած է։

L = Ձեռագիր Լայտէնի, (որչափ ծանօթ է Zacherի, Nöldekeի եւ Müllerի գործքերէն։)

Հ = Հայ բնագիր, տպ. Վենետ. 1842։

V = Լատիներէն թարգմանութիւն Վաղերեայ (ըստ հրատարակութեան Միւլլէրի։)

Աս. = Ասորական բնագիր. (որչափ ծանօթ է Նէօլտէքէի գրուածքէն։) Ուրիշ քանի մ'այլ համառօտութիւնք ինքնին կը հասկցուին։

## 2.

### Հայ թարգմանութեան նախնական օրինակը նախ քան ԺԳ դար:

Առանց պատճառի չէ որ հոս կը ստիպուինք գրոցս Հայ թարգմանութեան արդի օրինակաց հարազատութեան վրայ խնդիր յարուցանել, եւ հետազօտել թէ ա՞յնպէս եղած է արդեօք թարգմանչին գրչէն թարգմանութեանս օրինակը, ինչպէս կը ներկայացընեն մեզ արդի Հայ օրինակք: Այսպիսի քննութիւն մ'եթէ որեւէ հին գրոց համար ընելու պէտք կայ, եւս առաւել պէտք կայ այսպիսի անպատմական եւ առասպելայօդ գրոց համար, ինչպիսի է Ստոյն-Կալիսթենեայ մատեանը:

Սովորաբար մեր մէջ շատ քիչ կը հետազօտուի՝ թէ արդեօք այս կամ այն խնդրական կտորը հարազա՞տ է թէ ոչ, բնիկ գրոց մա՞ս է թէ յետագայ յաւելուած. նաեւ չի քննուիր շատ անգամ՝ թէ գտնեայ ձեռագրաց մէջ միակե՞րպ աւանդուած է այն թէ ոչ: Ասոր կը նպաստէ այն պարագայն, որ ամէն քննիչի մատչելի չեն միշտ նոյն խնդրոյ վերաբերութիւն ունեցող ձեռագիրք. եւ Հայ մատենագրութեանց հրատարակութեանց մեծագոյն մասին մէջ ձեռագրի տարբերութեանց հիմնական եւ քննադատական բաղդատութիւնք ի զուր կը խնդրուին: Ասով նաեւ քննիչը կը ստիպուի իւր դիտողութիւնքն հիմնել՝ կամաւ թէ ակամայ՝ միայն այս կամ այն հրատարակութեան վրայ, որուն ճշդութեան շատ դիպաց մէջ երաշխաւոր չի կրնար ըլլալ: Սակայն Հայ մատենագրութեան հետամտին շատ իսկ ծանօթ է՝ որ մեր մանաւանդ պատմական գրքերը կերպարանափոխ եղած են, եւ այն՝ ա՛յնչափ որ ինչ ինչ գրոց կարծես նոր խմբագրութիւնք եղած ըլլային. ինչպէս կը գտնենք արդեամբք նա-

եւ այնպիսի նոր խմբագրութիւններ։ Այս կերպափոխութեանց աւելի ենթակայ են այնպիսի գրութիւնք, որոնք շատ սովորական էին եւ գրեթէ իբր դասագիրք կը գործածուէին. բայց ոչինչ նուազ նաեւ անոնք, որոնք կարծես անտէր ինչք կը նկատուէին. այսպէս են մանաւանդ ճառընտիրք, յայսմաւուրք, հաւաքածոյք մանր եւ անգոյն գրութեանց, ոսկեփորիկք, բժշկարանք, եւ նոյնչափ առակք եւ առասպելք։ Նկատմամբ Կալիսթենեայ գրոց Հայ բնագրին՝ կասկածելու աւելի պատճառ ունինք. վասն զի գրոց ներքին պատմական արժէքը չէր բռնադատեր Հայ գրիչը որ ազատութեամբ չվարուի, մինչ միւս կողմանէ գրոցս նկարագիրն անգամ խորթ կ'երեւար անշուշտ մեր մեծաւ մասամբ վանական գրչաց. եւ գիտենք որ "անվայելուչ" եւ "շաղփաղփ" երեւցած է արդեամբք՝ իբրեւ "հեթանոսական գրեալք։" Բայց այսպիսի ցուցմանց պէտք չկայ. սոյն գրոց բնագրին հարազատութիւնն անհրաժեշտ է քննել, վասն զի ստոյգ գիտենք որ նոր խմբագրութիւն մը կրած է. եւ այն՝ իբր ԺԳ դարու վերջերը։

Հայ Կալիսթենեայ ձեռագրաց վերջը գրեթէ միշտ կայ յիշատակարան, յորում Խաչատուր ոմն Կեչառուեցի կը յիշեցընէ՝ թէ շատ տարօրինակ երեւցած է իրեն այս գիրքն, եւ պէտք զգացեր է նոր խմբագրութեան։ Այս յիշատակարանն ամբողջ յետոյ կը տեսնենք, երբ սկսինք հետազօտել թէ ինչ նկարագիր ունէր այս խմբագրութիւնը. առայժմ բաւ է գիտնալ որ Կեչառուեցի կը յիշեցընէ իւր աշխատանքն "ի յարմարումն սակաւ բանիցս եւ ի գրչութիւն գրոցս." թէ "հեթանոսական գրեալքն անմիաբան են եւ անվայելուչ." եւ թէ իւր օրինակը "թէպէտ էր յընտիր եւ ի հին օրինակէ, այլ անյարմար եւ շաղփաղփ." ապա կը յաւելու թէ "ղրեալ եւ տերեալ տերողօրէն (արդեօք տերնողօրէն?) արարի անխոտորնակ ճանա-

պարհ[1]։„ Այս ըստ ինքեան մթին տողերը շատ աւելի կը կնճռին այլեւայլութեամբ ընթերցուածոց ուրիշ ձեռագրաց, որով ոչ դոյզն խնդիր կը յառնէ հոս թէ ինչ մտօք առնելու ենք այս խօսքերը։ Հայ բնագրին հրատարակիչն այսպէս կը լուծէ խնդիրը.[2] "Սակայն խնդիր այն է թէ զինչ գրեալքն իցեն եւ ձեւեալ փոփոխութիւնքն. բառից կազմութիւն խանգարեալ արդեօք, եթէ ի հատածայն զեղչեալ եւ ի նորոյ այլ յաւելեալ։ Յաղագս շարագրածոյ բառիցն չմարթի ոք հաւաստեաւ ասել ծայր ի ծայր խանգարեալ զմատեանն, որ լին է հնոց բացատրութեամբ. եւ որ եւսն է, պատառիկ մի զոր ի սմանէ յառաջ բերէ ի պատմութեան իւրում Թովմա Արծրունի, նման է շարագրածոյ բառիցն այժմու Աղեքսանդրի քերեալ օրինակացն. եւ Արծրունին երէց է ժամանակաւ իբր երկերիւր ամօք քան զԿեչառուեցին։„ Այս մեկնութիւնը շատ դիպող է, եւ իբրեւ ստոյգ իսկ կրնանք ընդունիլ յընդհանուրն։ Հրատարակիչն այս մեկնութեամբ ծագած միւս դժուարութիւնը՝ թէ ինչ ուրեմն կը նշանակէ այն "քերել„ բառը, կը ջանայ մեկնել այսպէս. "Այլ զի սա գտեալ ասէ զմատեանն եւ քերեալ, հարկ է ասել ապա թէ գուցէ ի տեղիս տեղիս արարեալ նորա փոփոխումնս նմանս, եւ այն պատառիկ ըստ բախտի անարատ իցէ մնացեալ„։ Այս մեկնութեան առաջին մասն ուղղութեամբ դատուած է. միայն երկրորդ մասն ոչ լիովին ընդունելի է. վասն զի ոչ լոկ այս պատառիկն, այլ շատ եւ մեծամեծ պատառիկներ կը գտնենք անարատ մնացած։

Այս մեկնութիւնը լաւատես կ'երեւայ այլոց, որոնք աւելի մեծ սխալանք կը գտնեն Կեչառուեցւոյ վարմանց մէջ։ Ասոնց նպաստաւոր կ'երեւայ ձեռագիր մը՝ որ Սայ յետագիր կը կոչուի, եւ որուն մէջ շատ տարբեր է այս յիշատակարանին խօսքը. վասն

---

[1] Հմմտ. տպ. Վենետ. էջ 195, ծն. 1 ը.։
[2] Անդ, Յառաջբ. էջ 8—9։

գը կը կարդանք ի մէջ այլոց. "զի հեթնոսական գրեալքն անմիաբան են եւ անվայելուչ... զայս Պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրու... արտագրեալ է գրոց հնոցն„ եւն: Հ. Գ. Ալիշան՝ որ այս ձեռագրին յիշատակարանն[1] ընտրեր է դնելու իւր "Այրարատին„ մէջ, կը գտնէ որ Խաչատուր Կեչառեցի "զՊատմութիւն (Աղեքսանդրի)՝ զեր֊կասիրեալն (?) կամ զթարգմանեալ ի քաղցր նախնեաց՝ ըստ իւրոց խելամտութեան յարգարեալ կամ խանգարեալ է„: Ուրիշ գրոց մէջ ալ այն խօսքը կը հասկընայ այսպէս. "Խաչատուր Կեչառեցի վե֊րագէն յերի֊րող Պատմութեանս Աղեքսանդրի, ռամկաբար, քերող եւ քերթող[2]:„

Այս երկու կարծիքն ալ յեցեալ են, ինչպէս կ'երեւայ գոնէ առաջին ընթերցմամբ, ձեռագրաց ընթերցուածոց այլեւայլութեան վրայ. խնդիր կը մնայ ուրեմն թէ որն է ընդունելի: Առաջինը շատ աւելի հիմնական է յընդհանուրն խօսելով. բայց թէ առաջնոյն եւ թէ վերջնոյն մէջ նախ պէտք է բոլորովին ապահով ըլլալ յիշատակարանիս խօսքերուն իմաստին. եւ այս կարծենք կրնայ ուրիշ մեկնութիւն ալ առնուլ: Մենք նախ քան յայտ֊նելը մեր կարծիքն խնդրոյս դրական մասին վրայ, այսինքն՝ թէ ինչ է արդեամբք այս նոր խմբագրու֊թիւնը, պէտք ենք հետազօտել ժխտական կողմն, այսինքն՝ թէ ինչ չէ փոփոխուած գոնէ մերձաւո֊րական ապահովութեամբ:

Խնդրոյս լուծման համար պէտք է ի հարկէ համեմատել հայ բնագիրն այն քանի մը հատուակո֊տոր նշխարաց հետ, որոնք բարեբախտութեամբ պահուած են ուրիշ գրոց մէջ, եւ որք Կեչառեցիէն դարեր յառաջ ըլլալով անոր խմբագրու֊թենէն չէին կրնար ազդուիլ: Յախտն այն է՝ որ այս հատակոտորքն մինչեւ Ե. դար իսկ կ'ելլեն, ո֊

[1] Այրարատ, էջ 267—268:
[2] Սիսուան, էջ 399, ծն. 1:

րով թարգմանութեան ժամանակակից փորձաքար կ'ունենանք ձեռքերնիս՝ հետազօտելու անոր հարազատութիւնը։ Դոյզն բախտ մ'ալ չէ այն պարագայն, որ ամէնէն շատ այսպիսի հատակոտորք կուտան մեզի նոյն իսկ Մ. Խորենացւոյ գործքերը, զոր կրնանք ըսել հասարակաց կարծիքը թարգմանիչ կ'ուզէ ճանչնալ գրոցս։ Ասով կրնանք իմանալ թէ նոյն իսկ հաւանական թարգմանիչն ի՞նչպէս կ'ուզէր որ պահուէր իր թարգմանութեան բնագիրը։

Հայ մատենագրաց շատերուն ծանօթ է այս գիրքն, ինչպէս կը տեսնենք այլեւայլ ակնարկութիւններէն։ Բայց մեր խնդրոյն համար անոնք նշանակութիւն չունին. վասն զի մեզ բուն պէտք են հատակոտորներ։ Երբ Մխիթար իր դատաստանագրոց մէջ կը գրէ. "մարդակեր՝ որպէս զուարակագլուխ ձին Աղեքսանդրի.[1]" այս թէպէտ կը ցուցընէ որ ծանօթ է հեղինակին մեր այս թարգմանութիւնը, վասն զի "զուարակագլուխ" ուրոյն եւ սեպհական թարգմանութիւն մըն է գրոցս, մինչ սովորաբար Ցլագլուխ կը թարգմանուի հոս եւ այլուր քով յոյն Βουκέφαλος բառը։ Բայց այս վկայութենէն լոկ այս բառին անարատ պահուիլը կրնանք հետեւցընել, եւ ուրիշ ոչինչ։ Բաց աստի այսպիսի մանր վկայութիւնք ուրիշ աղբիւրէ ալ կրնան ըլլալ. վասն զի այլ խնդիր է թէ այս կամ այն առասպելը ծանօ՞թ է մատենագրի մը, եւ այլ՝ թէ սոյն այս ծանօթութիւնը հայ թարգմանութեան միջնորդութեամբ է. եւ սակայն այս միայն մեզ համար նշանակութիւն ունի հոս։ Երբ օրինակի աղագաւ Յովհան Կաթուղիկոս կը յիշէ թէ "Հրամանաւ Աղեքսանդրի որդւոյ Նեկտանեբայ[2]" թարգմանուած

---

[1] Մխիթար Գօշ, Դատաստանագիրք, Հրտ. Վ. Բաստամեանց. Վաղարշապատ, 1880, Մասն Բ, էջ 418, ճժ։

[2] Յովհաննու Կաթուղիկոսի դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին։ Մոսկուա, 1853, էջ, 11, 4։

է կատինայ համարուած մատեանը, զոր կը գտնենք կրկնեալ եւ այլուր, այս պարագայն միայն առանձինն չի կրնար ցուցընել թէ ի հարկէ զհայ թարգմանութիւնը գործածած է այս խօսքին մէջ Յովհան Կաթուղիկոս։ Վասն զի ճշդիւ այս տեղ բոլորովին ուրիշ աւանդութիւն մը կը ներկայացընէ հեղինակը, այսինքն կը պատմէ՝ թէ Ամասիա քաղաքը շինուած ըլլայ «յԱմասեայ եղբօրորդւոյ Նեքտանիբայ հրամանաւ Աղեքսանդրի՝ որդւոյ Նեքտանիբայ[1].» իսկ այս բոլորովին ուրիշ աղբիւր կ'ենթադրէ։ Նոյնը պէտք ենք ըսել ուրիշ նման ակնարկութեանց համար ալ, որ աստ անդ կը գտնուին՝ թէեւ ցանցառ՝ հայ մատենից մէջ. աստնցմէ նշանաւորները յետոյ առիթ կ'ունենանք տեսնելու։

Ցանցառ չեն նաեւ այնպիսի կոչմունք, որոց նախնական աղբիւրն թէեւ Սուտն-Կալիսթենեայ գիրքն է, բայց միայն անուղղակի. վասն զի ուրիշ գրոց միջնորդութեամբ ծանօթացած են ասոնք։ Զոր օրինակ Ներսէսի Շնորհալւոյ «Վիպասանութիւն» գրոց մէջ կը կարդանք Վարազդատայ վրայ այս տողերը[2].

«Որ ընդ Եփրատ անդրաքայլեալ,
Եւ զաւազակսըն սատակեալ։
Նոր Աքիլլէոս աստ երեւեալ,
Ընդ Սկամանդրոս գետըն վարեալ։»

Այս տողերը տեսնողը կրնար թերեւս կարծել, որ Շնորհալին առջեւն ունէր Աղեքսանդրի վարուց այս խօսքը[3]. «Եւ տեսեալ զՍկամանդրոս գետ, ընդ որ վարեցաւ Աքիլլէոս»։ Կարծեացս իբրեւ ցուցումն կրնար առնուիլ եւ այն՝ որ երկու տեղն ալ «վարել» անսովոր խնդրառութեամբ («ընդ գետ») կ'երեւայ։ Սակայն այս երկու նախադասութեանց մէջ կամուրջ

---

[1] Անդ. էջ 19, 3—5։

[2] Ներսէսի Շնորհալւոյ Շարադրութիւն հոմերական վիպասանութեան, տպ. Վենետ. 1830։

[3] Պատմ. Աղեքս. ՃԻԲ, էջ 60, 25։

ձգողն է Խորենացւոյ ի Կալիսթենեայ փոխ առած մէկ խօսքը[1], որ նոյն անձին վրայ կը գրէ. “Անդ էր տեսանել նոր զոմն Աքիլլեւս ընդ Սկամանդրոս գետ վազելով։„ Հոս “Նոր Աքիլլէս„ խօսքը մեր այս դիտողութիւնը կը հաստատէ ամենայն ապահովութեամբ։ Նման դէպքեր կարելի է ուրիշներուն քով ալ գտնել։

Յամենայն դէպս ցաւալի է որ Հեթմոյ Թաթարաց պատմչի ընտիր գործքին հին հայ բնագիրը դեռ չելաւ ի լոյս անծանօթ խորշէ։ Այս գրոց մէջ, զոր Հեթում տուն տուած կ՚ըսուի Նիկողայոս Սալկոնի անուն մէկուն եւ որ գրած կը պատմուի նախ գաղղիերէն եւ ապա փոխած ի լատիներէն յամին 1307[2], կը գտնենք յիշատակութիւններ որոնք աներկբայ կը ցուցնեն թէ ունէր ծանօթութիւն հեղինակն՝ Աղեքսանդրի վարուց պատմութեան։ Գրոցս Զ գլուխը Հնդկաց թագաւորութեան վրայ կը խօսի, յորում կը գրուի թէ “ի հիւսիսոյ կողմանէ է երկայն եւ մեծ անապատ Հնդկաց, ուր օձս բազումս եւ ազգի ազգի կենդանիս եգիտ, ասէն, Աղեքսանդր[3] ինքնակալ։„ Այս կտորը կ՚ակնարկէ անշուշտ Ստոյն-Կալիսթենեայ Հնդկաց աշխարհի նոյն իրաց ընդարձակ ստորագրութիւնը, զոր զետեղած է ի նամակին Աղեքսանդրի առ Արիստոտէլ՝ Մերկիմաստասիրաց վիճաբանութենէն ետքը[4]։ Հայ բնագրին քննութեան համար ի հարկէ արժէք չունի այս, եւս առաւել յաջորդ նկարագրութիւնը Հնդկաստանի եւ իւր բերքերու, որոնք ուրիշ աղբիւրէ են անշուշտ։ Իսկ Երկաթի դրան աւանդութիւնը, զոր կը պատմէ նաեւ Հեթում[5], յետոյ առիթ կ՚ունենանք տեսնելու։ Չի կրնար հաստա-

[1] Խոր. Պատմ. Գ. գլ. Խ։

[2] Հմմտ. Հեթում պատմիչ Թաթարաց. թրգմ. ի լատինէ Հ. Մ. Աւգերեան, Վենետ. 1842, էջ 4 (Յիշատակարան։)

[3] Հեթում Պտմ. Գլ. Զ. էջ 10—11։

[4] Պտմ. Աղեքս. ՄԻԴ, էջ 138—143 եւն։

[5] Հեթում, Գլ. Թ, էջ 13—14։

տութեամբ ըսուիլ նոյնպէս՝ թէ Հայ թարգմանութեան ակնարկութիւն մ'ըլլայ Համշէմ գաւառին ստորագրութիւնը[1]. “Շրջապատ նորա երեքօրեայ. եւ որչափ տարածի գաւառն այն, տեղին այն այնչափ մառախլապատ է եւ խաւարչուտ այնպիսի նսեմութեամբ, զի ոչ ոք է՝ որ կարիցէ նշմարել ինչ անդ. եւ ոչ ոք է՝ որ համարձակեսցի մտանել յայն երկիր. զի ոչ գտանէ շաւիղ գնալոյ ընդ այն: Բնակիչք կողմանցն այնոցիկ ասեն, թէ բազում անգամ լուեալ իցէ նոցա զձայն գոչման մարդկան, զխօսել հաւու հաւախօսի, զխրընջիւն երիվարայ յանտառի, եւ զխոխոջիւն գետոյ իբրք՝ որ անտի ելանէ:„ Այս ամէնը կը յիշեցընեն նաեւ յանկամս Ստոյն-Կալիսթենեայ “Երջանկաց„ կոչուած տեղեաց վրայ գրածներ՝ Աղեքսանդրի առ մայրն եւ առ Արիստոտէլ գրած նամակին մէջ[2], որուն մէջ կը պատմէ թէ ինկան այնպիսի տեղեր, ուր “զարեգակն ոչ եւս տեսանէաք,„ մանաւանդ թէ քիչ մ'ետքը հասան տեղ մ'ուր “արեգակն ոչ ծագէ.„ եւ պատահեցան “հաւք երկու„ մարդկադէմ, որոնք “հելլենական խօսիւք„ յորդորեցին զԱղեքսանդր յետս դառնալ: Աներեւոյթ մարդկան գոչման ձայնը կը յիշեցընէ Կալիսթենեայ ճշդիւ նման պատմութիւնը, որուն անմիջապէս կից է յիշատակութիւն այն գետին, որուն ձկները ոչ թէ հրով, այլ “ցուրտ ջրով աղբերացով„ կ'եփուէին, եւ որուն մէջ կային հուր ժայթքող թռչուններ: Բայց այս ամենամեծ միաբանութիւնը կ'իյնայ երկբայութեան ներքեւ, երբ մտածենք որ առասպելաց եւ զրուցաց շտեմարան են Կովկաս եւ իւր շրջակայք ի հնութեան, եւ այս համբաւն բոլորովին ուրիշ աղբիւր կրնայ ունենալ: Այս երկբայութիւնը կը հաստատուի անով, որ ինչպէս ըսինք՝ Հայ բնագիր

---

[1] Հեթում, Գլ. Ժ, էջ 15, 13—28 եւն:
[2] Պտմ. Աղեքս. ՄԹ, մանաւանդ էջ 126—128:

չունինք Հեթմոյ գործքէն, եւ չենք կրնար ըսել թէ Կալիսթենեայ գիրքը նաեւ յայտնապէս յիշած տեղն ալ այնպէս կէտ առ կէտ տուն տուած է Հեթում, ինչպէս այժմ մեր առջեւ կը գտնէ այս գիրքը։ Այս խորհրդածութիւնը կը զօրէ նաեւ հոն, ուր յայտնապէս կ'ըսուի[1]. "Աշխարհն այն, յորում կանխաւ բնակէին Թաթարք, է յայնկոյս մեծի լերինն Բելգեկնայ, որ յիշի ի Պտղոմէոսեան Աղէքսանդրէ։" Հոս "Պատմութիւն Աղեքսանդրի" անուամբ այնպիսի աւանդութիւն մը կը բերուի յառաջ, որուն Հայ Կալիսթենեայ մէջ հետքն անգամ չկայ. եւ արդէն ակնյայտնի հիմնովին այլ աւանդութիւն է եւ ուրիշ աշխարհագրական տեսութիւն։

Քիչ մ'աւելի մխիթարական է այս կողմանէ Գրիգոր Մագիստրոսի գործքերը խուզարկելը։ Այս անձին արդիւնքը պէտք է անմոռաց պահուի Հայ մատենագրութեան մէջ, ոչ թէ իւր անիմանալի լեզուաւ գրած ոտանաւորաց համար, այլ Հայ մատենագրութեան մէջ իւր իրաւամբ աննման նամակներուն պատճառաւ։ Աննման կ'ըսենք անոր համար, որ չկայ մեր մէջ ուրիշ հին գրող, որմէ մնացած ըլլան այնչափ նամակներ մեծաւ մասամբ զուտ տեղագրական նկարագրաւ եւ լի անգին տեղեկութեամբք այլեւայլ թարգմանութեանց. որոնց շատք անհետ կորսուած են այժմ կամ դեռ անյայտ մնացած։ Բայց դժբախտ ենք նաեւ հոս՝ որ այս գեղեցիկ նամակաց լեզուն այնչափ խրթնաբան է. որուն նպաստամատոյց կ'ըլլան գլխաւորաբար տգիտագոյն անձերէ գրուած ձեռագիրք. այնպէս որ լաւագոյն օրինակք, եթէ կան, շատ աւելի պարզ եւ դիւրիմաց պիտի ներկայացընեն մեզ զասոնք։ Այս պատճառաւ է անշուշտ, որ ցարդ անտիպ մնացած են մեծաւ մասամբ այս գրութիւնները։

---

[1] Հեթում, Գլ. ԺԶ, էջ 31։

Առջեւս ունեցած օրինակն է բոլորովին նոր՝ բայց անյայտ ժամանակի գրչութիւն եւ տգէտ գրչի արդիւնք, եւ ընդօրինակութիւն ուրիշ ձեռագրէ մը. (Մեր Մատենադարանի Թիւ՝ 50։)

Մագիստրոս ինք զինք շատ հմուտ կը ցուցընէ հին հեթանոսական մատենագրութեան. բայց ի հարկէ ոչ ամէն իւր կոչմունքն ուղղակի յոյն բնագրէ են, այլ տեղ տեղ միջնորդութեամբ հայ թարգմանութեանց։ Հինգերորդ Նամակին մէջ, (որ "Առ Աբրեհիմ ամիրայ Վասն հաւատոց Գրիգորայ որդւոյ Վասակայ ասացեալ" վերնագիր կը կրէ[1],) կը յիշէ ի մէջ այլոց. "Իսկ Հովմերոս յԵլլադա եւ յԵգիպտոս պատուեալ՝ յԱրամազդայ անհարկութիւնն, ասէ, զՈլոմպոս փափանեալ...։ Եւ Արիստոտելէս ստագիրացին ճշմարտախոհ քան զայլսն եղեալ ծանեաւ սուղ իմն... եւ որ ի սմանէ Աղեքսանդրոս որդի Նեքտանեբեայ։" Այս անհարկութիւնը կը կրկնէ եւ այլուր, (Նամակ Ի. "Առ Գագիկ որդի Աբասայ, Յաղագս Գիտնական կրօնաւորին հնծացւոյ.") եւ կը գրէ թէ "զքեզ մակտառեսցէ զօրէն Արիստոտէլի որ առ Աղէքսանդրոս.., թողում զՀոմերոսին որ... առ Արամազդ, որ զՈլոմպիոս գրէ շարժեալ ի խիզախել դիւցազանն եւ յանհարկել յօնից[2]։" Ի մասնաւորի Հովմերայ այս խօսքը կարծենք միջնորդութեամբ Ստոյն-Կալիսթենեայ հայ թարգմանութեան մուտ գտած է Մագիստրոսի գրոց մէջ։ Ճարտար հայ թարգմանն այս տողերը թարգմաներ[3] է այսպէս.

"Եւ կապուտակային յօնօքն անհարկեաց Զրուանեանն.
Եւ աքանչելի աստուածային վարսքն շարժեցան
    յանմահ գլխոյ թագաւորին.
Եւ մեծապէս շարժեալ փափանեցաւ Ողիմպոս։"

[1] Ձեռ. 50, էջ 45—46։
[2] Անդ. էջ 127։
[3] Պամ. Աղեքս. Դ.Դ. էջ 45, 28—32։

Նոյնը կ'ակնարկէ Մագիստրոս եւ այլուր[1], (Նամակ ԻԹ. “Պատասխանի„ թղթոյն Աբրեհիմի ամիրայի զոր խնդրեաց մի վասն իմաստասիրութեան եւ մի վասն հաւատոց։)

Այս կտորէն աւելի յարգ ունի մեզ համար Մագիստրոսի ուրիշ մէկ ակնակութիւնը, զոր կը գտնենք ԻԷ. Նամակին մէջ, որուն վերնագիրն է. “Պատասխանի Սարգսի վարդապետին եւ ողբս„ եւն[2]։ Հոս կը գտնենք այս խօսքը. “Յորժամ Աղեքսանդրոս զմահացուցիչն կամէր արտաքսել դարձուցանելով՝ կրկին թոյն թաթախեալ ի ժահր սպանութենէն եղեւ փութացուցիչ։„ Ըստ Ստոյն-Կալլիսթենեայ[3] երբ զգաց Աղեքսանդրոս իւր թունաւորուիլը “դարձուցեալ կամեցաւ զկարի շատ գինին՝ խնդրեաց թեւ, քանզի սովոր էր այսպէս առնել. եւ Յուղղոս շաղախեալ դեղովն մատոյց նմա„ երկրորդ անգամ դեղախառն բաժակը։ Հոս կարեւորն այն է որ այս դէպքն եւ այս մասերը չկան BCL բնագրաց՝ նաեւ ոչ արդի A բնագրին մէջ, յորում անընթեռնլի են այս կտորները։ Բայց միաբան է եւ Ասորին յայսմ թէ Աղեքսանդր ուզեց փետրով (ըստ Հայ. “թեւ„) յետս դարձընել գինին, եւն։ Ունի այս կտորը նաեւ Աւագերէցն Լեւոն[4]։

Ստոյն-Կալլիսթենէս ընդարձակ պատմած է Նեկտանեբոսի “խոյեղջիւր„ Ամոն ձեւանալն եւ այլ անոր յարակից պարագայքն[5]։ Զայս կը յիշեցընէ Մագիստրոս՝ երբ ուրիշ թղթի մը մէջ (Նամակ ԼԹ. “Առ Հայր Անանիա„) կը գրէ[6]. “այլ եւ զԱմոնն (յօր. ղամմոն) յօրան եղջերօքն առնի (= անդրի?) պատկանեալ[7] (= պատկերեալ?) պաշտէին,

[1] Ձեռ. 50, էջ 177։
[2] Անդ, էջ 154։
[3] Պատմ. Աղեքս. ՄԿՋ, էջ 174, 26—28։
[4] Համմտ. Nöldeke, էջ 23, 10—15։
[5] Պատմ. Աղեքս. Ա—ԻԷ եւն։
[6] Ձեռ. 50, էջ 209։
[7] Ձեռագրին մէջ աղաւաղ է այս մասը՝ այսպէս. “առն

որովք Նեկտանեբոսն կիւսոյ պատրանս պատշաճէր մոլութեան եւ զուարակեղջերօքն կիսագնդակ յարմարեալ ըստ լուսնական հմայահաւանութեան վարկանէին:»

Մթին բայց ամենակարեւորն է այս կողմանց՝ Մագիստրոսի ուրիշ մէկ խօսքը, (եթէ սխալ չենք հասկցած խօսքին իմաստը,) յորում կ'երեւայ թէ իմացած է սոյն հեղինակը Խորենացւոյ ի Կալիսթենեայ ըրած մէկ բանաքաղութիւնը: Ի Նամակին ԽԵ. («Առ Գրիգ. եպիսկոպոսն Մոկաց վասն շինութեան դղեկի կանգնելոյ մահարձան.») կը յիշեցընէ թէ «ոչ միայն արիական առաքինութիւնս իմանամք սակս Աքիլլեայ, այլեւ շինո–նի–նս քաղաքաց. վասն որոյ պորտոպամարք անուանել հաւանեցաւ. իսկ մերն Մովսէս զԱրտաշէսին եւ զՏիգրանայն[1]:» Այս խօսքին մթարութիւնը կը պարզուի կարծենք այսպէս: Ըստ Կալիսթենեայ[2] Աղեքսանդրոս ի Հերակլեայ պատգամ ընդունելէն ետքը կը կործանէ զԹեբէս, որոնք պատգամին դիմեցին եւ առին պատասխան թէ «Հերմէս եւ Աղկիդէ եւ պորտոպամարքն Պողիտեւկէս[3]» այն քաղաքը պիտի կանգնեն: Այս կտորէն է անշուշտ Մագիստրոսի այն տեղ անդէպ «պորտոպամարք» բառը. վասն զի Աքիլէս, կ'ըսէ, քաղաքաց շինո–նեանց համար պորտոպամարք կը կոչուէր:

Սակայն այս չէ միայն հոս խնդիրը: Թեբայ առման այս նկարագիրը[4] բառ առ բառ օրինակած է Խորենացի՝ Տիգրանակերտի առման յարմարելով, լոկ անուանց փոփոխութեամբ[5]: Այս նկարագրութեան այն խօսքը թէ «որ յԱմփիոնայ եւ ի

---

իպտկանեալ.» քիչ մը վերջն ալ է «զուարակ եղջերօքն կիսագնտակ. հարմարեալ» եւն: «Անդրի» թերեւս = ἀνδριὰς.

1 Զէո. 50, էջ 221—222:
2 Պատմ. Աղեքս. ՃԻԽ—ՃԼԲ, էջ 63—72:
3 Անդ, ՃԼԳ, էջ 72, 10, եւ ՃԼԴ, էջ 73, 21:
4 Անդ, ՃԻՁ, էջ 64—65 եւն:
5 Խոր. Գ. գլ. ԻԲ:

Ջեթուսէ եղբարցն ի քնարէ յարմարեալ. . . . քաւ րինք„ առ Խորենացւոյն եղած է՝ "որ ի Հայկազնոյն Տիգրանայ . . . յարմարեալ որմունք։„ Զայս տեսեր է, եւ զայս կ'ակնարկէ Մագիստրոս՝ գրելով. "մերն Մովսէս զԱրտաշէսին եւ զՏիգրանայն.„ ուր մեր խնդրոյն հետ կարծենք կապ չունի Արտաշիսի յիշուիլը։

Ստեփանոս Տարօնեցի Ասողիկ երկու տեղ գլխաւորաբար իւր պատմութեան մէջ կը հիւսէ Աղեքսանդրի վարուց կտորներէն։ Խոսրովայ վրայ խօսելով կը յաւելու դիտողութիւն մը՝ թէ "էր մարմնով փոքր՝ այլ ոչ որքան Մակեդոնացին Աղեքսանդր, որ միայն երից կանգնոց ունէր զչափ հասակի[1]։„ Թէպէտ նաեւ Սուտ-Կալիսթենէս կը պատմէ սոյն հանգամանքը, եւ այն երկու տեղ ուր վերջին յիշատակութեան մէջ յայտնապէս "Աղեքսանդրոս երիս կանգունս„ կը գրէ[2]. սակայն ի հարկէ Ասողիկ հոս կապ չունի Սոայն-Կալիսթենեայ հետ. ինքն բովանդակ այս կտորն եւ յաջորդմասերը քաղած է բառ առ բառ ի Խորենացւոյ[3], ուստի անուղղակի է ծանօթացած այս կտորը Ստեփանոսի։ Այս ուրեմն չի կրնար ցուցընել թէ Ասողկայ ծանօթ է հայ թարգմանութիւնը Կալիսթենեայ. մանաւանդ թէ ուրիշ խորհրդածութեանց առիթ կու տայ Ասողկան ուրիշ մէկ յիշատակութիւնը[4], զոր յետոյ կը տեսնենք։

Այս ամէնը՝ խատիւ խօսելով՝ շատ լուսաւորութիւն չտուաւ մեր խնդրոյն բուն ծանրակէտին, այսինքն հայ թարգմանութեան բնագրին անարատ պահուելուն։ Առ այս մեծ արժէք ունի Թովմայի Արծրունւոյ իւր Պատմութեան մէջ ըրած ակնար-

---

[1] Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական։ Ս. Պետր. 1885 Գիրք Բ. գլ. ա. էջ 67։

[2] Պտմ. Աղեքս. ՃՀԹ, էջ 100, 15—17 եւ ՄԺԹ, էջ 135, 476։

[3] Խոր. Գ. գլ. Ը։

[4] Ասողիկ. Պտմ. Գիրք Գ. գլ. ԺԳ. էջ 194։

կութիւններն եւ կոչմունքը։ Թովմայի Արծրունւոյ (ինչպէս եւայլոց) վատ սովորութիւնն է շատ տեղ անկապ նիւթեր, սուրբ Գրոց տեղեաց մեկնութիւններ հիւսել իւր պատմութեան մէջ։ Յիշելով "Հախրիք„ կոչուածներուն պատմածներն "անծանօթ երկրին„ վրայ, միտքը կ'իյնայ թէ զայն կարելի է դրախտն համարիլ, եւ անմիջապէս իբրեւ ի լուսաւորութիւն իւր կարծեաց կը յաւելու գրել[1]. "Զոր եւ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ ի դէպ ելանէ առ Ողոմպիադայ մայր թագաւորին. թերեւս ի մասն ինչ արտաքոյ սահմանաց դրախտին հասանել. եւ անծանօթ զարմանալի ծառոյն դէպք՝ ի միում աւուր ունել աճմունս փոյթ ընդ փոյթ. եւ դարձեալ սուզականութիւնս յանկարծօրէնս լինել, որոց եւ չիթք ցօղոյն ունէր զանհամեմատ անուշահոտութիւն։ Եւ ոչ արմատոցն միայն օտար եւ անիմանալի սարասիցն տիպք, այլ եւ աներեւոյթ պահպանողական եւ անհպելի զգուշաւորութիւն։„ Այս ակնարկութիւնը մեր առջեւ կը դնէ Կալիսթենեայ յօրինած այն նամակը, (զոր Արծրունի "վիպագրութիւն„ կը կոչէ,) զոր գրած է "Ողոմպիադայ քաղցուայնոյ մօր„[2], ուր ի մասնաւորի այս յիշեալ կտորն է[3]. "Եւ էր ի գետ անդ ծառք սքանչելիք. միանգամայն ընդ արեգական ծագիլն եւ ծառքն աճէին մինչեւ ի վեց ժամն. եւ ի վեց ժամէ աւուրն ի վայր նուազէր, մինչ զի բնաւ ինչ ոչ երեւիլ ի նոցանէ. եւ արտօսր ունէին իբրեւ զպարսիկ ստաքտիկէ[4], եւ հոտ կարի յոյժ անուշ եւ պիտանացու։„ Նաեւ Արծրունւոյ "սարաս„ բառը կը գտնենք առ

---

[1] Թովմայի Արծրունւոյ Պատմութիւն Տանն Արծրունեաց, հրտ. Ք. Պ. ի Ս. Պետերբուրգ, 1887. Գիրք Ա. Գլ. գ, էջ 29, 4 եւն։

[2] Պատմ. Աղեքս. ՄԹ, էջ 122, 15—128, 28։

[3] Անդ, ՄԹ. էջ 126, 2—7։

[4] AVC չունի այս խօսքն, այլ լոկ B այսպէս. δάκρυα δὲ εἶχον ὥσπερ συκῆς σταχτὴν (արտօսր ունէին իբրեւ թզենւոյ մոխրագունի։) Բայց հոս յոյն բնագիրն աղաւաղ կ'երեւայ, ինչպէս յետոյ կը տեսնենք։

Հայ Կալիսթենեայ[1], թէպէտ նաեւ այլուր կը գործածուի։

Արծրունի զայս գրելէն վերջը խորհրդաւոր խօսք մը կը յաւելու[2] գրելով թէ "որք ի մերձենալն անգամ տանջեալ լինէին յանհրեւոյթ զօրութենէն, զոր ես ոչ հաւանիմ ասել ի դէպս։" Այս վերջին խօսքն ըստ ինքեան կապ մը չունի շատ. բայց կը մեկնուի այնու որ ինքն այս տողը գրելու ատեն կարդացեր է Սուտն-Կալիսթենեայ կարծիքը՝ թէ "յանկարծօրէն յիմոց մանկանցն անտի տանջեալք լինէին յանհրեւոյթ ի դէպս„[3] իբր շարունակութիւն վերը յիշուած խօսքին։ Այս կարծիքն է զոր չէ ուզած ընդունիլ Արծրունին։

Ճշգիւ հոս՝ ալ բառ առ բառ կոչումն ընել կը սկսի մեր պատմիչը՝ "ասէ„ մը յաւելլով՝ այսպէս. "եւ զտանջողացն, ասէ, զճողփիւն լսէաք„ եւն։ Թէ արդեամբք բառական է կոչումն՝ կը ցուցընէ պարզ համեմատութիւնն Սուտն-Կալիսթենեայ Հայ թարգմանութեան հետ, զոր կը դնենք հօս դէմ առ դէմ, տարբեր ընթերցուածքն նօտրագիր նշանակելով։

| ՍՈՒՏ-ԿԱԼԻՍԹԵՆԷՍ<br>(էջ 126, 9—16։) | ԱՐԾՐՈՒՆԻ<br>(էջ 29, 14—19։) |
| --- | --- |
| "Զտանջողաց ճղփիւն լսէաք, եւ զհարուածսն եկեալ ի վրայ թիկանցն տեսանէաք. բայց փախչողքն ոչ երեւէին. այլ ձայն իմն գայր որ ասէր. Մի ժողովել մի հատանել (՞). եթէ ոչ՝ եղիցի անձն այն մեռեալ, եւ ժանդախտիւ սատակեսցէ գումարտակդ։ Ես հրամայեցի տալ ոչ հաւանել ես ոչ հաւանիմ։„ | "Եւ զտանջողացն, ասէ, զճողփիւն լսէաք, եւ զհարուածսն եկեալս ի վերայ թիկանցն տեսանէաք, բայց զփախչողսն ոչ տեսանէաք։ Այլ ձայն իմն գայր՝ մի ժողովել եւ մի հատանել, թէ ոչ՝ եղիցի անձն այն մեռեալ, եւ ժանտ ախտիւ սատակեսցի գումարտակդ։ Ես ահաբեկ երկիւղիւ ի բաց կացի յայնմանէ։„ |

---

[1] Պամ. Աղեքս. ՄՃԹ. էջ 134, 18։
[2] Արծր. անդ, էջ 29, 12—14։
[3] Պամ. Աղեքս. ՄԹ. էջ 126, 9—10։

Այս կտորը կը ցուցընէ թէ ինչպէս պահուած է Հայ բնագիրը. քանի մը մանր տարբերութիւնք հոս չեն կրնար նկատուիլ։ Առաջինը գլխաւոր տարբերութեանց «բայց տանջողքն ոչ երեւէին» աւելի լաւ կ'երեւայ քան Արծրունւոյնը, որ աղաւաղեալ կրնայ ըլլալ։ Ծանրակշիռն այն է որ երկուքն ալ «եթէ ոչ եղիցի անձն այն մեռեալ եւն» կը կարդան, մինչ յոյնն է εἰ δὲ μὴ παύσησθε, γενήσεται ἄφωνον τὸ στρατόπεδον. (եթէ ոչ դադարիցէք, անձայն եղիցի բանակդ։) Տարբերութիւն լոկ վերջին խօսքին մէջ կայ, ուր Հայ թարգմանութիւնն ըստ յոյն բնագրին է, (որ է Ὁ δὲ Ἀλέξανδρος φοβηθεὶς ἐκέλευσεν μήτε ἐκκόπτειν μήτε συλλέγειν τινὰ ἐξ αὐτῶν.) Հոս Արծրունին աղաւաղ գրչութիւն մ'ունի իր առջեւ, բայց «ահաբեկ երկիւղիւ» գրածն ուղիղ է (= φοβηθεὶς), զոր Հ կորուսած է։

Արծրունի ապա համառօտիւ կը յիշէ յաջորդ մասերը՝ գրելով.[1] «Նաեւ զայլ հիացականսն որ ըստ այսոցիկ ուսցիս ի Նորից (Նորին՞) գրոց։» Այս խօսքով կ'ամփոփէ Սուտ-Կալիսթենեայ ամբողջ մէկ էջին[2] բովանդակութիւնը, ուր այլեւայլ հրէշներու ստորագրութիւն կ'ըլլայ։ Սակայն անմիջապէս կը սկսի դարձեալ՝ օրինակել «եւ յետ սակաւու միոյ աւէր» նախադասութեամբ կապելով այս յաջորդ կոչումն իր խօսքին հետ։ Բարեբախտաբար այս տեղ Արծրունւոյ ի կոչումն առած կտորը բաւական ընդարձակ է.

| ՍՈՒՏ-ԿԱԼԻՍԹԵՆԷՍ | ԱՐԾՐՈՒՆԻ |
|---|---|
| (էջ 127, 14—128, 18։) | (էջ 29, 21—30, 14։) |
| «Եւ բազում անգամ տաղտկէին զիս բարեկամքն դառնալ, եւ ես ոչ կամեցայ, | «Բազում անգամ տղտկէին զիս բարեկամքն դառնալ, եւ ես ոչ կամեցայ, |

---

[1] Արծր. անդ, էջ 29, 19—20։
[2] Պատմ. Աղէքս. Մթ. էջ 126, 16—127, 14։

քանզի կամէի տեսանել զկատարած երկրին։ Ապա անդուստ խաղացեալ ընդ անապատ ճանապարհ գնացեալ ի ծովակողմն կոյս, եւ ոչ եւս այնուհետեւ ինչ տեսանէաք ոչ հաւ եւ ոչ գազան, բայց միայն զերկինս եւ զերկիր. եւ զարեգակն[1] ոչ երբեք տեսանէաք, այլ ընդ աղօտ[2] աւուրս Ժ: Եւ եկեալ ի տեղի մի ծովային, եւ զվրանսն եւ զամենայն բեռինսն ի ներքոյ եդեալ՝ մտանէաք ի նաւսն. եւ նաւէաք ի կղզի մի ծովուն, որ ոչ էր հեռի յերկրէն, յորմէ լսէաք խօսս մարդկան հելլենական, եւ որք խօսէին՝ ոչ տեսանէաք։ Եւ զինուորքն ի մահ-վտանգէ տուեալ զանձինս՝ լող անցուցանել ի նաւէն ի կղզին[3]. եւ խեցգետի մի ելեալ կորզեաց ձգեաց ի ջուրն զինուորս ԾԴ. եւ անցեալ գնացաք ի տեղեացն երկուցեալք[4]: Եւ եկաք ի տեղիս յերկնաւոր աւուրս՝ ուր արեգակն ոչ ծագէ. եւ կամեցեալ իմ պատմել եւ ձեռնարկեալ իմ տեսանել ի ձեռն ծառայից ուր երջանկաց վայրքն էին[5], Կալիսթենէս իմ բարեկամն խրատ

քանզի կամէի տեսանել զկատարած երկրի. եւ անդուստ խաղացեալք ընդ անապատ ճանապարհ գնացաք ի ծովակողմն կոյս, եւ ոչ եւս այնուհետեւ ինչ ոչ տեսանէաք, ոչ հաւ եւ ոչ գազան, բայց զերկին եւ զերկիր: Եւ զարեգակն երբեք ոչ տեսանէաք, այլ ընդ աղօտ օդ յաւուրս Ժ, եւ եկեալ ի տեղի մի ծովային, եւ զվրանսն եւ զբեռինսն զամենայն ի ներքոյ եդեալ՝ մտանէաք ի նաւսն, եւ նաւէաք ի կղզի մի ծովուն, որ ոչ էր հեռի յերկրէ, յորմէ լսէաք խօսս մարդկան հելլենական, եւ որք խօսէինն ոչ տեսանէաք: Եւ զինուորք ի մահու վտանգ տուեալ զանձինս՝ ի լող անցանել ի նաւէն ի կղզին. եւ խեցգետի մի ել, կորզեալ ձգեաց ի ջուրն զինուորս ԾԴ: Եւ անցեալ գնացաք ի տեղեացն երկուցեալք, եւ եկաք յերկնաւոր աւուրս ի տեղիսն, ուր արեգակն ոչ ծագէ. եւ կամեցեալ իմ պատմել եւ ձեռնարկել տեսանել ի ձեռն ծառայից, ուր էր երջանկացն վայր՝ Կաղղիսթենէս իմ բարեկամ խրատեաց ինձ մտանել հանդերձ

---

1 "Զարեգակն" = C; B "զերկինս"։ AV բովանդակ հատածը չունին։

2 Գրիչը "աղօտ" բառին վերջաւորութենէն չփոթելով դուրս ձգած է հոս "օդ" բառը, զոր ունին Արծրունի եւ յոյնը։

3 BC կը յաւելուն "ի պատմել զնա" զոր չունի Հ եւ Արծրունին։

4 Հոս C իր սովորութեան համեմատ մեծ հատած մ'ունի յաւելեալ, զոր չունի B Հ եւ Արծրունի։

5 "Ուր... էին" խօսքը լոկ C ունի, չիք ի B.

եա ինձ մտանել հանդերձ բարեկամօք Խ եւ մանկամբք Ճ եւ զինուորօք ՌՄ[1]: Եւ արտաքոյ յետ ճանապարհին իմացաք էշ մատակ[2] որ ունի յաւանակ, զորոյ կապեցաք անդրէն զյաւանակն ի բանակին: Իսկ ի մտանելն մերում լարօք հընգետասան[3], հաւք երկու[4] պատահեցին մեզ, որ ունէին մարդկեղէն երեսս, եւ մեծ էին քան զհաւս որ առ մեզ լինին[5], եւ հելլենական խօսիւք ի բարձանց աղաղակէին. "Զի՞ զվայր կոխես աստուածոյ պտուղ փետտնելով[6]. ընդ կրունկն դարձիր, թշուառական. քանզի զերջանիկ կամարացն կղզիս[7] կոխել ոչ կարես. զի՞ յերկինս ելանել բռնանաս, զոր ոչ է տեղ հնար[8]: Եւ դողդոջումն եւ սարսափումն զիս կալեալ յահէ յերկեղէն եղելոյ, ի հարկէ լուայ

բարեկամօք Խ եւ մանկամբք Ճ եւ զինուորօք ՌՄ դրոյնովք: Եւ արտաքոյ յետ ճանապարհին իմացաք էշ մատակ, որ ունի յաւանակ. զորոյ կապեցաք անդրէն զյաւանակն ի բանակին. եւ ի մտանելն մերում լարօք հնգետասան՝ հաւք երկու պատահեցին մեզ, որ ունէին մարդկեղէն երեսս, եւ մեծ էին քան զհաւսն որ առ մեզ լինին, եւ հելլենական խօսիւք ի բարձանց աղաղակեցին. "զի՞ զվայր կոխես աստուածոյ պտուղ փետտնել, Աղեքսանդրէ. ընդ կրունկն դարձիր, թշուառական, քանզի զերջանիկ կամարացն[9] կղզիս կոխել ոչ կարես. զի՞ յերկինս ելանել բռնանաս:" Եւ իբրեւ լուայ զայս՝[10] դողդոջումն եւ սարսափումն զիս կալեալ յահէ յերկիւղէն եկելոյ. ի հարկէ լուայ սա-

---

[1] Այսկէ ետքը C եւ L դարձեալ յաւելուած ընդարձակ, զոր չունին Հ եւ Արծրունի: B յաւելուածին վերջէն մաս մ'ունի:

[2] "Էշ մատակ, որ ունի յաւանակ" եւ յաջորդ խօսքին մէջ "յաւանակ" անմիաբան յունին հետ. վասն զի BC կ'ըսեն (Ἐπίλεξον οὖν) ἵππους θηλείας ἐχούσας πώλους (...ձիս մատակս, որ ունէին մտրուկս:)

[3] BC "երեսուն":

[4] "Երկու" = B; C "երեք" ոչ ուղղութեամբ:

[5] "Եւ մեծ..." այս նմանութիւնը չունին BC.

[6] "Զի՞..." = B; C ունի "Երկիրն՝ զոր կոխես, Աղեքսանդրէ, Աստուծոյ միայնոյ է:"

[7] "Զերջանիկ կամարաց կղզիս" չէ համեմատ BC բնագրաց, որ μακάρων χώραν (երջանկաց վայր) կ'ըսեն:

[8] Ամբողջ խօսքը չէ համեմատ BC բնագրաց, որ կ'ըսեն լոկ. "Դարձիր արդ, ով մարդ, եւ կոխեա զերկիր որ տուեալն է քեզ." որուն կը յաւելուն BC. "եւ մի՛ աշխատ առներ զքեզ" (լոկ B ասոր վրայ. "եւ զորս ընդ քեզ"):

[9] Տպ. 1852 եւ 1887. "կամարարացն:"

[10] Յոյն. օրէն. չէ "եւ իբրեւ լուայ զայս:"

աստուածայնոյ ձայնին որ յերկնից հաւուցն ասացեալ եղեւ:"

տուածայնոյ սքանչելի ձայնին որ ի հաւուցն[1] ասացեալ եղեւ:

Այս ընդարձակ հատածին համեմատութիւնը կը հաստատէ լիովին այն կարծիքը՝ թէ Սոյն-կալիսթենեայ հայ բնագիրը չէ ապականած ծայրէ ի ծայր: Այս երկու բնագրաց տարբերութիւնք դոյզն են, այնպէս որ չէինք իսկ սպասեր այսչափ համաձայնութիւն գտնել. վասն զի պէտք ենք մտածել որ միեւնոյն բնագրին այլեւայլ օրինակք շատ անգամ տասնպատիկ աւելի տարբերութիւն կ'ունենան. եւ կը համոզուինք ասոր՝ եթէ հարեւանցի իսկ զննենք յոյն օրինակաց տարբերութիւնը՝ նոյն իսկ այս հատածին մէջ, զոր եւ համառօտիւ նշանակեցինք: Աւելի տարբերութեանց կը սպասէինք նաեւ այնու՝ որ հոս աղաւաղութեան աղբիւրը կրկին է, վասն զի մէկ կողմանէ հայ թարգմանութիւնը փոփոխութիւն կրնար կրել ընդօրինակութեամբ, միւս կողմանէ ալ Արծրունին: Այսպէս ալ կը մեկնուին այն քանի մը մանր տարբերութիւնք: Հայ թարգմանութեան մէջ "լոյս անցուցանել ի նաւէն" անիմաստ խօսքը գրչի սխալ է միայն՝ փոխանակ "ի լողս անցանել" գրելու, ինչպէս է եւ յոյնը (B C) κολύμβῳ διῆλθον. Նոյնպէս "ի մահու վտանգ տուեալ" աւելի լաւ է (առ Արծրունւոյ՝) քան "ի մահ վտանգի" հայ բնագրինը. սակայն եթէ ցուցուի այս վերջնոյն աղաւաղումն չըլլալը՝ կարեւոր կրնայ ըլլալ, եւ կ'ունենանք "մահ-վտանգէ" բաղադրեալ բառը: Լաւ է դարձեալ քիչ մ'ետքը "զի... կոխեա զաստուծոյ զտուն տեսանել, Աղեքսանդրէ" խօսքը, մինչդեռ հայ բնագիրք աղաւաղ են ("զաստուածոյ զտուն տեսանելով"). հոս յոյնը շատ աւելի համեմատ է Արծրունւոյն: Իսկ թարգմանութեան "տեսանելով" գրելը յառաջ եկած է "տեսանել, ով

[1] Տպ. "ի հաւուննն." գրչի սխալ:

Աղեքսանդրէ„ նախնական բնագրէն: Վերջապէս ուրախալի է նաեւ այն՝ որ այս նամակն ընտրեր է Արծրունին օրինակելու, զոր չունին A հնագոյնը եւ Վաղերիոս, այլ լոկ BCL, եւ ասոնք ալ շատ ու շատ յաւելուածներով եւ տարբեր պարագաներով լի:

Շատ զարմանալի է որ Արծրունի, որն որ իբրեւ պատմագիր կարենալու էր Աղեքսանդրի Վարուց բովանդակութեան վրայ դատաստան ընել, այնպէս դիւրահաւան եղած է անհեթեթ առասպելաց անգամ: Զայս կը տեսնենք յայտնապէս հոն՝ երբ վերն ի համեմատութիւն առնուած վերջին կտորը կը սկսի մեկնել: Ըստ իւր կարծեաց այն մարդկադէմ հաւերը հրեշտակ ըլլալու են: Ահա իւր խօսքը.[1] "Եւ դիպողագոյնս է առ այս՝ հրեշտակս զայնս ասել. քանզի բանականն յերիս այսոսիկ տեսանի, ի հրեշտակս, ի մարդիկ եւ ի դեւս, այլ ոչ ի հաւս կամ ի յայլ կենդանիս:„ Երբ այս ըստ իւր կարծեաց "դիպողագոյն„ մեկնութեամբ լուսաբանած էր հաւերու խօսիլը, խնդիր կը մնար թէ ինչ տեղ էր այն, ուր այսպիսի զարմանալիքներ եղան: Զայս ալ կ՚ուզէ մեկնել գրելով[2]. "Իսկ սահմանք վայրիցն ահաւոր եւ զգալիք միանգամայն եւ արտաքոյ զգալեաց. ի խնամոտ եւ ի զգուշացուցիչ աներեւութականացն պահպանեալ ըստ օրինակի ցանկոյ ամրագունի, որ ունիցի արմատս ինչ ինքնաբոյսս եւ սակաւախնամս, որ արտաքոյ պարապեալ բուրաստանին արքունի կացցէ: Այսպիսիք իմն էին Բռնեցեալ համարեցան այնուքիկ վայրք. այլոց ողջեա կամք էջեն:„ Արծրունւոյն երկրորդ հրատարակիչն այս խօսքը կարծեր է նոյնպէս մասն Աղեքսանդրի Վարուց, ուստի եւ չակերտով որոշած է յաջորդներէն: Բայց նախ այսպիսի խօսք չկայ Ստոյն-Կալիսթենեայ մէջ, եւ երկրորդ՝ բոլոր խօսքն Արծրունւոյն է, որ Աղեքսանդրի տեսած տեղը կը նմանցընէ

---

[1] Արծր. Պատմ. էջ 30, 14—17:
[2] Անդ, էջ 30, 17—23:

դրախտին, եւ կը լմնցընէ իւր խօսքը յայտարարելով որ այս է իւր կարծիքը, իսկ այլք ինչ կ'ուզեն թող կարծեն. բացատրութիւն մը՝ զոր սերտած կ'երեւայ Խորենացւոյ գրոց մէջ ընթեռնլով։

Պէտք էինք ենթադրել որ շատ մը նման մեծ փոխառութիւնք ալ պիտի գտնէինք Արծրունւոյ քով. սակայն միայն քանի մ'ակնարկութիւնք կը գտնենք աստ անդ։ Ասոնց կարգէն է այն զոր կ'ընթեռնունք.[1] "Նաեւ ոչ աշխարհակալին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, քանզի նա խաբկանօք առն մոգի եւ կախարդի ասաց լինել որդի Ամոնայ եւ Արամազդայ, այլ ոչ ուրացաւ մահկանացու գոլ։" Այս ամէնն ալ կը գտնենք առ Կալլիսթենեայ այլեւայլ տեղեր ցրուած[2]։ Կարծենք թէ այս գրքէն է ուրիշ ծանօթութիւն մ'ալ, որ զետեղուած է թագաւորաց շարքի մը մէջ այսպէս.[3] "Զովարէս ամս է. առ սովաւ Դիոնեսեայ զօրաժողովն ի վերայ Հնդկաց։" Կը գտնենք այս յիշատակութիւնն Աղեքսանդրի վարուց Պաւրոսի նամակին մէջ,[4] որ կը գրէ առ Աղեքսանդր թէ "եկեալ այսր (այսինքն ի Հնդիկս) Դիոնեսիոսն զոր ասես աստուած, ի բաց հալածեցի." Թէեւ կ'ընդունինք որ Արծրունին ուրիշ աղբիւրէ ալ կրնայ առած ըլլալ։ Կ'երեւայ թէ շատ հաւնած է Արծրունին Աղեքսանդրիա քաղաքին շինութեան նկարագրութիւնն առ Ստոյն-Կալլիսթենեայ.[5] վասն զի զայն իբրեւ օրինակ հրաշակերտ շինութեան կը ներկայացընէ, երբ գովելով Աղթամարայ շինութիւնը՝ կը յաւելու թէ "բարձրագոյն հրաշակերտեաց քան զԱղեքսանդրին ի Մակեդոնն (°) քաղաքի (°)"[6]։ Այս նախադասութեան անարատութիւնը գոնէ պէտք է կասկա-

[1] Արծր. Պատմ. Ա. գլ. բ, էջ 21։
[2] Հմմտ. մանաւանդ՝ ՄՁ, էջ 121, 20—24 եւն։
[3] Արծր. Պտմ. Ա. գլ. դ, էջ 34, 12։
[4] Պտմ. Աղեքս. ՄԺԲ, էջ 130, 25։
[5] Պտմ. Աղեքս. ՀԸ—ՁԷ, էջ 36—41։
[6] Արծրունի, Պտմ. Դ. գլ. է, էջ 294, 12—13։

ծուխը. իսկ Հմուտ Հրատարակիչն ասոր պատճառաւ կը սկսի վարանիլ "Մակեդոնի քաղաք" մը մեկնել չկարենալով[1]։

Վերջապէս մեզի կարեւոր կ'երեւայ այն՝ զոր կը պատմէ Արծրունի Ասուդ անձին վրայ,[2] "որ զՀետ Դարեհի ելեալ ի պատերազմ ընդդէմ զօրագլխացն Աղեքսանդրի՝ Հերակղեայ նահատակութեամբն դիւցազնաբար ի դիմի հարեալ՝ ի բաց նահանջէ զուժեղագոյնս զօրագլխացն Աղեքսանդրի հարուստ ժամ մի," եւ ի փախուստ կը դարձընէ, "մինչ հանդէպ երեւանալ Աղեքսանդրու ի յանդուգն դիմացուածին, եւ հայեցեալ ի դէմս Աղեքսանդրու իբր յաստուածոց դիւցազանց՝ զերեսս ի վայր արկեալ զերկիր նշմարէր"։ Անմիջապէս, կը յաւելու թէ ձիէն իջաւ "ի վայր արկեալ զինքն առաջի Աղեքսանդրի", եւ ողջոյն տալով ըսաւ. "Քաջք քաջաց պատահեալ՝ անմեղադրելիք կան մնան զյաւակնութեամբքն (՞), զի մի վատութիւն քան զքաջութիւն ճոխասցի, որ կանանցաբարոյիցն քաջ յարմարի, թէպէտ եւ յարիւն եւ յապաժոյժ զզօրսն կենացն առնուցուն (՞)։" Ասուդի պատմութիւնը կը շարունակուի բաւական։ Այստեղ մեր գործքը չէ քննել թէ ինչ աղբիւրէ է այս միջնադէպն. այլ մտադիր կ'ընենք որ շատ պարագայք մեր այս գրքէն են։ Գիտենք այսպէս որ ըստ Ստոյն-Կալիսթենեայ,[3] երբ Աղեքսանդր իւրովի դեսպան գնաց առ Դարեհ՝ տեղւոյն պահապանապետքն "իբրեւ տեսին զնա յայնպիսի ձեւի, կարծեցին աստուած գոլ զնա՝" եւ այլ նման մանր պարագայք։

Հոս կնքելով մեր համեմատութիւնն հայ թարգմանութեան եւ անոր ԺԳ դարէն կանխագոյն այլեւայլ մատենագրաց քով պահուած հատակո-

[1] Արծր. Պատմ. Ցանկ, էջ 336։
[2] Արծր. Պատմ. Ա. գլ. զ, էջ 41—43։
[3] Պատմ. Աղեքս. ՃՀԷ, էջ 98. 17—19։

տորներուն, կրնանք ապահովութեամբ հետեւցը-
նել՝ թէ Հայ թարգմանութիւնը չէ կրած այնչափ
եւ այնպիսի հիմնական փոփոխութիւն, որ չկարե-
նանք իբրեւ անարատ նկատել յընդհանուրն՝ ըն-
դունելով որ մանրամասնութեանց մէջ այս կամ այն
բառն ու նախադասութիւնը կրնայ այլայլած ըլլալ.
եւ կան իսկ այսպիսիք: Սակայն այս հետեւութիւնն
աւելի ապահովութեամբ ընդունելու համար՝ պէտք
է նաեւ տեսնել թէ ի՛նչ կերպարանք կը ներկայա-
ցընեն մեզ նոյն բնագիրն այնպիսի հատակոտորք,
որոնք թարգմանութեան ժամանակակից գրոց մէջ
պահուած են, այսինքն Ե դարէն:

## 3.

*Հայ թարգմանութեան նախնական օրինակը*
*Ե դարու, եւ իւր թարգմանիչը:*

Տեսանք ցայս վայր որ Կալիսթենեայ Հայե-
րէն թարգմանութիւնը բաւական յարգ եւ գործա-
ծութիւն գտած է Հայոց քով նաեւ նախ քան
Կեչառուեցւոյ խմբագրութիւնը: Ամէնէն աւելի
գործածած գտանք Արծրունւոյ մատենին մէջ, որով
կրցանք փորձաքար մը գտնել Հայ բնագրին անա-
րատութեան: Ի հարկէ մեր յիշածներէն դուրս՝
պիտի ըլլան ուրիշ գրոց մէջ ալ ակնարկութիւն-
ներ, որոնք գոնէ գրոցս ծանօթ ըլլալը կը ցուցը-
նեն: Այսպէս կրնանք քիչ շատ վստահութեամբ
ըսել՝ որ Սեբէոս կարդացեր է մեր այս Հայ թարգ-
մանութիւնը. վասն զի Հայ թարգմանչին յաւելուած
կտորներէն մին առած է իւր Պատմութեան մէջ:
Աղեքսանդր, կ՚ըսէ Կալիսթենէս[1], անցնելով Մա-
րաց աշխարհը՝ մտաւ ի Հայս, եւ եկաւ յԱրածանի:
Հոս անմիջապէս կը յաւելու հայ թարգմանիչը թէ
այս Արածանի "հոսի ի Ծաղկաւէտ լերանցն Ան-

[1] Պատմ. Աղեքս. ՃԾԸ, էջ 89, 30—32: (Ցոյնը՝ II, 9:)

ելեալ ելանէին յակունքն Եփրատայ հանդէպ լերինն Այրարատայ։" Տեղւոյս այսպիսի ճշգրիտ ստորագրութիւն մը չենք գտներ հնոց քով[1]. բայց քիչ մ'ետքն արդէն Սեբէոս[2] Խոսրովայ պատերազմաց յիշատակութեան մէջ գիտէ որ Ցոյնք "Նստան ի Ծաղկոտանն՝ մերձ ի գիւղն՝ որ կոչի Անգղն, ընդ որ անցանէ գետն Արածանի։" Այս կտորը նախ երրուպացի գիտնական մը կալխթեննեայ հայ թարգմանութենէն առնուած գտաւ[3]։ Միայն պէտք է միտ դնել որ հայն Անգղ կ'անուանէ նաեւ գաւառն, իսկ Սեբէոս՝ գիւղը լոկ, (կը յիշէ անգամ մ'ալ Անկղ անունը[4],) եւ որուն հետ միաբան է Եղիշէ[5] ("գիւղաքաղաք մի մեծ՝ որում անուն էր Անգղ."") եւ աւելի եւս՝ Ղազար Փարպեցի[6], որ կը գրէ թէ "Գային հասանէին ի գաւառն որ կոչի Ծաղկոտն, մերձ ի բերդն ամուր՝ զոր Անգղն անուանեն"։ Նոյնպէս շատ նման են Սեբէոսի հրովարտակի մը մէջ Խոսրովայ բերան դրած խօսքերը Դարեհի առաջին նամակին առ Աղեքսանդր, այնպէս որ կարծես Սեբէոս այս վերջնոյն համեմատ գունաւորած է առաջինը[7]։

Սակայն այսպիսի ակնարկութեանց պէտք չունինք հոս, ուր աւելի վեր ելլելով Ե դարու մէջ գրոյս գտած ընդունելութիւնը պիտի քննենք. վասն զի ոչ լոկ ակնարկութիւններ՝ այլ ամբողջ հատածներ պիտի գտնենք առատութեամբ գործածուած բառ առ բառ կամ նմանողութեամբ։ Հոս հարկաւ մեր մտադրութիւնը կը գրաւէ ամէնէն աւելի Մովսէս Խորենացի իւր պատմագրութեամբը։

---

[1] Հմմտ. նաեւ Հ. Ալիշան, Այրարատ, էջ 512, 518։
[2] Սեբէոս, ի Հերակլ, հրտ. Ք. Պ. ի Պետրբ. 1879, Գ. գլ. իբ, էջ 74։
[3] A. Baumgartner, վերը յիշեալ հատածին մէջ (ZDMG, 1886, III Heft, S. 504)։
[4] Սեբէոս, Գ. գլ. բ։
[5] Եղիշէ, Պատմ. Գ. տպ. Վենետ. 1859, էջ 44, 13, 14։
[6] Ղ. Փարպեցի, Պատմ. ԼԸ. տպ. Վենետ. 1873, էջ 174, 10—13։
[7] Սեբէոս, Գ. գլ. իզ։ Հմմտ. Պատմ. Աղեքս. ՃԴ։

Հետազօտութեանցս այս մասն աւելի հետաքրքրական է այնու՝ որ երեք նպատակի միահաղոյն կը հանինք։ Նախ այն՝ որ Խորենացւոյ Պատմութեան աղբիւրներէն մին աւելի լաւ կը ճանչնանք։ Երկրորդ՝ որ երկու բնագրաց հարազատութիւնը քննելու առիթ կ'ունենանք. վասն զի եթէ Խորենացւոյ կոչումներէն կ'իմանանք հայ թարգմանութեան օրինակին ինչպէս պահուած ըլլալը, նոյն կերպով հայ թարգմանութենէն ալ կը տեսնենք թէ Խորենացւոյ այլեւայլ օրինակաց մէջ որն աւելի նման է թարգմանութեանս, ուստի եւ որը չէ փոփոխուած։ Վերջապէս երրորդ այն՝ որ այս համեմատութիւնք պիտի առաջնորդեն հետեւցնելու թէ ինքը Խորենացի եղած ըլլայ հաւանական թարգմանիչը գրոցս, ինչպէս կը կարծուի սովորաբար։

Արդէն 1836ին բաւական ծանօթ էր Նոր Հայկազնեան Բառագրոց բազմարդիւն հաւաքչաց՝ թէ Խորենացի կը գործածէ զհայ Կալիսթենէս. եւ ի սկզբան նոյն Բառագրոց[1] յայտնապէս գրուած է այս ծանօթութիւնը. “Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ առասպելախառն, հին թարգմանութեամբ ի յունէ. որոյ եւ հայերէն հատուածք կան ի գիրս Խորենացւոյն, Փարպեցւոյն, եւ մանաւանդ Արծրունւոյն։„ Յընթացս նոյն բառագրոց բաւական թուով նմանութիւններ յիշուած են Խորենացւոյ եւ Կալիսթենեայ. (հմմտ. Աթերայ, Համգոյց, Յուշկապարիկ եւն բառերը։) Գերմանացի գիտնականն Պաումկարթնէր յիշեալ տեղն այս կտորներէն ի մասնաւորի երկուքն ընդարձակօրէն պարզեց, որպէս զի ցուցընէ թէ արդէն 1837ին տեսած էին Բառագրոցս հեղինակքն այս փոխառութիւնները, եւ այս՝ ընդդէմ Կիլտէմայսթէր գերմանացւոյն՝ որչափ կ'երեւայ, որ նոյն թերթին

[1] Նախադր. էջ 18. “Պատմ. Աղեքս.„։

մէջ գրած էր՝[1] թէ Մխիթարեանք առանց ուրիշ որեւիցէ պատճառի՝ լոկ գրոց լեզուէն դատելով Ե "չամ„ Զ դարու մէջ թարգմանուած կը դնէին այս մատեանը։ Վերջապէս բառագրոցս յիշածներէն առնուած են Քննասէրի[2] քանի մը համեմատութիւնք, որոնց վրայ կ՚արժէ աւելի մանրամասն խօսիլ։

Խորենացի իւր Պատմութեան երկրորդ գրոց մէջ Տրդատայ Բագրատունւոյ եւ Նազենիկ հարճին դէպքերը, Բակրոյ Սիւնեաց իշխանին այս առթիւ "ծաղկակալ սկտեղըն իբրեւ զինու„ գործելը կը յիշէ, եւ կը յաւելու[3] այսպիսի խորհրդածութիւն մը. "Եւ անդ էր տեսանել նոր զոմն Ոդիսեւս՝ զՊենելոպայ զսեղեխն սատակելով, կամ զՂապիթեայն եւ զյուշկապարկայն կռիւսն ի վերայ Պերիթեայ հարսանեացն։„ Սակայն այս նմանութիւնը քաղած է Խորենացի բառ առ բառ Կալիսթենէսէն՝ որ կը պատմէ թէ Փիլիպպոս "զԿղէոպատրէ զդուստրն Ատտանայ հարսանեաց„[4] կին առաւ մերժելով զՈլոմպիադա. խնջոյից ժամանակ Լիւսիաս "երկապաշտեայ հացկատակ ծաղրածու„ անձը[5] անճահ խօսք մ՚ընելով՝ բարկացաւ Աղեքսանդր եւ սպաննեց զանիկայ, որով իւր եւ հօրը

---

[1] J. Gildemeister, վերը յիշեալ հատածին մէջ. (ZDMG. 1886, Heft I, S. 90.)

[2] Քննասէր, Բ, էջ 36—45, Թիւ 3, 5, (6 եւ 23,) 24, 25։

[3] Խոր. Բ. գլ. կգ, տպ. 1842, էջ 142, 7—10։

[4] Պսմ. Աղեքս. ԾԶ, էջ 27, 18։ Հոս Հ նշանաւոր է՝ այնու որ յոյնն աղաւաղ է։ A կ՚ըսէ... τὸν δὲ Φίλιππον γαμοῦντα τὴν ἀδελφὴν αὐτοῦ Κλεοπάτραν, (...զդուստր նորա զԿղէոպատրա։) Ամենայն իրաւամբք կ՚առաջարկէ Միւլլէր αὐτοῦ ("նորա„) բառը սրբագրել Ἀττάλου ("Ատտաղայ„), զոր եւ ունի V այսպէս. Philippum tunc in Cleopatrae nuptias demutantem Attali alicujusdam non ignobilis filiae; BC բոլորովին այլազդ են՝ τὴν ἀδελφὴν Λυσίου ("զդուստր Լիւսեայ„) կարդալով։

[5] Ճոխ է Հ. ուր յոյնը լոկ γελωτοποιός (ծաղրածու) կ՚ըսէ։

մէջ կուիւ ծագեցաւ։ Կալիսթենէս անմիջապէս կը յաւելու ասոր վրայ.[1] “Եւ էր դէմ յանդիման տեսանել զԼապիթեայցն եւ զյուշկապարկացն կռիւս, եւ ի վերայ Պերիթեայ հարսանեացն զեղեալս. քանզի ոմանք ի նոցանէ ընդ գահոյանովն մտանէին.„ եւն եւն։ Այս վերջին մասերը չէ առած Խորենացի։

Հոս կարեւորն այն է՝ որ Կալիսթենեայ այս խօսքը լոկ հայ թարգմանութեան մէջ այսպէս է. եւ որչափ կ'երեւայ՝ թարգմանիչը հոս ճոխ եւ յաւելուածոյ թարգմանութիւն մ'ըրեր է։ Վասն զի նախ A չունի այս ամբողջ խօսքը. իսկ BC այսպէս լոկ. Ἦν δὲ ἰδεῖν Κενταύρων ἱστορίαν. (Եւ էր տեսանել զՅուշկապարկացն պատմութիւն։) Քիչ մ'աւելի նման է V այնու՝ որ Ոդիսեւսի եւ Լապիթեայց ալ յիշատակութիւնն ունի գրելով. Prorsus ut nihilum de Centaurorum Lapitharumque convivio demutaret: aut quod illi rei sit proximum, procos diceres cum ultore Ulixe decernere. Կարծենք այս կտորը կրնայ, առանձինն իսկ, ցուցընել՝ թէ Խորենացի գոնէ տեսած է հայ թարգմանութիւնը։

Աւելի մեծ բանաքաղութիւն ըրած է Խորենացի Գ գրոց ԿԲ գլուխը, ուր կը պատմէ իւր ճամբորդութիւնն յԵգիպտոս։ Գովելով Եգիպտոսի երկիրը՝ կը գրէ ի մէջ այլոց թէ “անձեռագործ պարապեալ Նեղոսիւ„ է, բացատրութիւն մը՝ զոր ի Կալիսթենեայ առած է, որ Եգիպտոս պատող ջրերը “պարիսպս անձեռագործս„ կը կոչէ[2]։ Ապա կը նկարագրէ Խորենացի Աղեքսանդրիա քաղաքն, անոր աղուխքն ու առողջ օդը, եւն։ Ասոնք անձին փորձով ալ գիտէր Խորենացի. բայց նաեւ հոս չէ ուզած մէկդի թողուլ Կալիսթենեայ գիրքը, որուն Աղեքսանդրիա քաղաքին վրայ գրածները կ'երեւայ թէ շատ հաւներ է։ Վասն զի անմիջապէս կը յարէ

[1] Պատմ. Աղեքս. Ծթ. էջ 28, 18—20։
[2] Անդ, ՂԷ, էջ 47, 7 եւն։

համեմատութիւն մը Կալիսթենեայ յիշածներուն եւ իւր ժամանակ քաղաքին կրած փոփոխութեանց: Այս կտորը կարեւոր է, վասն զի մեր առջեւ կը դնէ թէ ինչպէս կը նմանի Մովսէս իւր առջեւ եղած բնագրին: Դնենք այս համեմատութիւնը հոս՝ Խորենացւոյ փոխ առածները (ոչ միշտ բառ առ բառ) նօտրագիր նշանակելով:

**ԿԱԼԻՍԹԵՆԷՍ**

(Էջ 41, 32 եւն. 41, 9 եւն. 41, 16—21. 42, 5 եւն:)

(Էջ 41, 32—42, 1.) «Որոյ առաջնոյ անցեալ Նոտի Պղուտոնիոս հինգհարիւրերորդամեակ զանազան աշխարհ պատելով:»[1]

(Էջ 41, 9.) Եւ զոհք մատչին նմա (այսինքն վիշապին) իբրեւ վիշապազին:[2]»

(Էջ 41, 16—21.) «Ուստի մինչեւ ցայժմ այս օրէնք պահին առ Աղեքսանդրացիս ի Տոբի ամսոյ ե-հինգ, զբեռնաբարձ գրաստս ամենայն պսակել.[3] եւ զոհս մատուցանել պատուածա-

**ԽՈՐԵՆԱՑԻ**

(Գ. գլ. կբ. էջ 261, 29—262, 14:)

Սորա առաջին այժմ ոչ անցեալ Նոտի Պղուտոնիոս հըն-գակատար գագաթամբն՝ զան-ազան աշխարհ պատելով, այլ Մարկոս աւետարանական քարոզութեամբն. եւ ոչ վիշապազին դիւցազնակաց գե-րեզման, այլ սրբոցն վայել-չական վկայարանք: Նա ոչ է ամսոյ եւ է հինգն Տոբի տօնի աղտաձանք, զբեռնա-բարձս պսակելով գրաստս, ե-պաշտօն տանել լուսոյ, ե-թերոց առնել բաշխումն. այլ ի մետասաներորդի Նա-

---

[1] Նշանաւոր է այս տեղը, որ բառ առ բառ նոյն է Խորենացւոյ հետ. բայց ճիշդ նոյն խօսքը հանդիպած է քիչ մը յառաջ ալ, (Հէ, էջ 36, 18 եւն.) եւ ուր քիչ մ'այլազգ թարգմանուած է. «Որոյ առաջի անցեալ Նոտի յառեջեան Պղուտոնիոս ընդ նմին թագաւորելով հինգակատար գագաթամբք զանազան աշխարհաց պատելով:» Այս խօսքին մէջ «յառեջեան» չէ համեմատ ABC բնագրաց եւ Խորենացւոյ. բայց լաւ է «ընդ նմին թագաւորելով» զոր դուրս թողած է երկրորդ անգամ թարգմանիչը. յոյնն է՝ ἧς δαίμων προκάθηται Πλουτώνειος ἀνάσσων, (... Պղուտոնիոս իշխելով:) Խորենացի չունի այս բառն. ուստի երկրորդ տեղը (էջ 41—42) կարդացեր է:

[2] Լոկ A ունի նման խօսք մը: Խորենացւոյ «դիւցազնակաց գերեզման» յաւելուածը թերեւս Կալիսթենեայ (էջ 39, 28) «դիւցազնի գերեզման» խօսքէն ըլլայ:

[3] «Զբեռնաբարձս եւն» BC չունին, այլ լոկ A ճշդիւ = Հ. իսկ V համառօտիւ միայն:

վինն, եւ պաշտօն լինել լորտառայն[1]՝ որ խնամ տանին տանն, եւ բաշխումն տանել աթերայն[2] ":
(Էջ 41, 24.) "Խնդրէր եւ զԱղեքսանդրեան տաճարն ըստ հրամանի պատգամաւորին... շինեա քաղաք նշանաւոր Պրոդիտայ կղզւոյ...: "
(Էջ 42, 5. "Բազմապատիկ զոհս մատուցանել (Սարապեայ) եւն: "

րին Տուբի՝ Ցայտնութեան Տեառն կատարի տօն....: Եւ ոչ զոհել լոր դիւացն Սարապեայ, այլ զՔրիստոսի զարիւնն մատուցանել պատարագ. եւ ոչ խնդրել հրաման պատգամաւորս է Սանդարամետականէն Պրոդեկտդայ[3], այլ ուսանել զզօրութիւնս պէսպէս իմաստից ի Նոր Պղատոնէն." եւն:

Աներկբայ է որ այս կտորը՝ թէեւ կը ցուցընէ Խորենացւոյ իւր աղբեր նմանելու կերպը, բայց բնագրայ քննութեան համար մասամբ միայն նշանակութիւն ունի. վասն զի փոխառութեանց մէկ մասը լոկ բառ առ բառ է: Սակայն գոնէ այս մասերը ճշդիւ միաբան են Հայ թարգմանութեան՝ շատ չնչին տարբերութեամբք. եւ որ նշանաւորն է՝ Հայ թարգմանութեան այս կտորներուս մէջ գործածած սեպհական ձեւերն ու բառերը ճշդիւ կ'երաշխաւորէ Խորենացի:

Քննաւէրը[4] Խորենացւոյն[5] "հեծեալ ի Նոր ձիս՝ հանդոյց ի հանդուցէ փախչել" խօսքը փոխ առեալ կը դնէ Կալիսթենեայ այս խօսքէն[6]. "Ձի

[1] A. Θυσιάζεσθαι [δὲ] τοῖς ἀγαθοῖς δαίμοσι τοῖς προνοουμένοις τῶν οἰκιῶν, (զոհել դից բարեաց եւ խնամարկուաց տանց:") Յոյնը չ'որոշեր թէ որն է բնիկը՝ "պաշտօն տանել" (Խոր.) թէ "պաշտօն լինել." (Կալ.) իսկ "լորտառաց" է ըստ յունին՝ "դից":

[2] A. Καὶ διασώσεις (այսպէս ձեռագիրը. M կ'առաջարկէ διαδόσεις, զոր կը հաստատէ Հ) τῶν ἀθηρῶν ποιεῖσθαι. "Աթեր" բնիկ յոյն բառն է, զոր V կը պարզաբանէ Polentam ex tritico գրելով:

[3] Ըստ Կալիսթենեայ "Պրոդիտա" կղզին էր, որուն վրայ զԱղեքսանդրիա շինելու պատգամ տրուեցաւ Աղեքսանդրի, իսկ պատգամատուն էր Ամոն:

[4] Քննաւէր, էջ 37, թիւ 3, առեալ ի Հայկազն. Բառագրոց: (Հմմտ. "Հանդոյց:")

[5] Խոր. Բ. գլ. խզ:

[6] Պտմ. Աղեքս. ՃԺԶ, էջ 58, 29:

կալեալ բազում եւ նոր՝ հանգոյց ի հանգուցէ փախչէր[1]": Բայց եթէ լաւ քննենք՝ կը տեսնենք որ կղզիացեալ չէ այս նախադասութիւնն երկու գրոց մէջ ալ: Կալիսթենեսն նոյն տեղը կը պատմէ Դարեհի մեծ պարտութիւնը. նոյնը կրկնած է Խորենացի Երուանդայ վրայ յարմարելով, հարկաւ փոխելով եւ յաւելլով այնպիսի մասեր ալ՝ որ անհրաժեշտ էին պատմութեան համար: Այս նշանաւոր տեղն է այսպէս.

**ԿԱԼԻՍԹԵՆԷՍ**

(ՃԺԶ, էջ 58, 27—59, 2:)

"Իսկ Աղեքսանդրոս ...: իբր ասպարէզս վաթսուն հալածեալ եհաս: Բայց զնոյն ինքն զԴարեհ գիշերն ապրեցոյց. եւ առ այսորքիւք ձի կալեալ բազում եւ նոր՝ հանգոյց ի հանգուցէ փախչէր: Եւ մակեդոնացիքն հասեալ ի կողմն Պարսից բանակէին. եւ մէջգիշեր եղեալ՝ ի վերայ դիականց օթագանէին[2]: Եւ Աղեքսանդր հասեալ ի վրանն Դարեհի էջ եւ ի նմա մտեալ բնակեաց":

**ԽՈՐԵՆԱՑԻ**

(Բ. գլ խզ, էջ 123, 9—20:)

"Իսկ Երուանդ ձիովն իւրով բովանդակ ասպարէզս անցեալ, ելանէ ի խառնս կարգեալս ի բանակէն իւրմէ ի քաղաքն իւր, հեծեալ է նոր ձիոյ հանգոյց ի հանգուցէ փախչէր:... Եւ Մարաց զօրացն անցեալ է կողմն երուանդական գնդին, նսեմաւ ի վերայ դիականց բանակէին: Իսկ Արտաշէս հասեալ յԵրուանդայ շրջապատեալ առագաստն ի կաշոյ ... էջ եւ ի խորանսն նորա բնակեցաւ զայն գիշեր." եւն:

Այս նման տեղերէն ոմանք յայտնապէս նշանակած էին Հայկազնեան Բառագրոց հաւաքիչք, այլ առանց մանրամասնութեան. բայց միշտ նշանակելով որ Խորենացին նոյն խօսքը կամ բառը փոխ առած է: Սակայն կան ուրիշ կտորներ ալ, զորոնք ըստ դիպուածոյ տեսած ենք նոյն բառագրոց մէջ, եւ որոնց համար մասնաւոր մտադրութիւն չեն ըրած նոյն հաւաքիչք: Այսպէս Խորենացւոյն Տրդատայ համար ըսելը թէ "յերիվար կամակար աշտանա-

---

[1] Յոյնն է լոկ ἐκ διαδοχῆς (յաջորդաբար:)

[2] "Եւ մակեդոնացիք . . .," խօսքը լոկ AV ունին:

կեալ[1]„ նմանութիւն է Աղեքսանդրի վարուց “դիմէր ընդ զօրս եւ կամակար ի ձի ոշփանակէր[2]„ աստութեան։ Խորենացւոյ բանը՝ թէ Ապահունեաց իշխանք “կիսախողխող զքարշողս տանէին[3]„ կը համապատասխանէ Աղեքսանդրի վարուց բանին՝ թէ “զամենեսեան անդ բազմեալս կիսախողխող արար[4]„։

Թողլով նմանները՝ յիշենք քանի մ'ուրիշ կտորներ, որոնց Աղեքսանդրի վարուց հետ ինչ կապ ունենալը խնդրական է։ Նոյն բառագրոց մէջ “Բոժ„ բառին “ճակատագիր„ նշանակելուն օրինակ կը բերուի այս խօսքը. “Ոչ ումեք մահկանացուացս յաղթել ճակատագրի ... որպէս բաժանեցին ... ոչ կարացի զերծանել ի բոժէն։ Ոսկեփորիկ։„ Թէ այս խօսքն Աղեքսանդրի վարուցն է՝ երկբայութեան տակ չի կրնար ձգուիլ[5]. բայց թէ ինչ կ'իմացուի հոս “Ոսկիփորիկ„ կոչմամբ, արդեօք որեւիցէ Ոսկիփորիկ գրոց մէջ Կալիսթենեայ հատա̃ծ մըն է օրինակուած, թէ անոր հետեւողութեամբ յօրինուած ուրիշ գրութիւն մըն է. այս եւ ասոր կից խնդիրք կը մնան անլոյծ։ Նոյնպէս “Պոռոտող„ բառին օրինակ կը բերէ Հայկազնեան Բառագիրքն այս խօսքը. “Բանք պոռոտք զքաջ իմաստունն ոչ երկեցուցանեն։ Պիտառ։„ Չի կրնար տարակուսուիլ որ հոս ի վկայութիւն բերուած խօսքը կապ ունի անհրաժեշտ Ստոյն-Կալլիսթենեայ այն խօսքին, զոր Աղեքսանդրի բերան կը դնէ առ Պաւրոս ուղղուած նամակին

---

[1] Խոր. Բ. գլ. հԹ, էջ 159, 3։
[2] Պատմ. Աղեքս. ԼԲ. էջ 16, 25։
[3] Խոր. Գ. գլ. ԼԸ, էջ 220, 7։
[4] Պատմ. Աղեքս. ԾԸ, էջ 28, 16։ Համմ. Քննասէր, էջ 41, թիւ 15։

[5] Պատմ. Աղեքս. ԼԳ. էջ 17, 19—24։ Նեկտանեբոս կ'ըսէ. “Մեռանիմ, ով Աղեքսանդրէ, զի սաստիկ վէր առի յանկանելս. այլ ոչ ինչ եւ ոչ ումեք մահկանացուացս յաղթել ճակատագրի։ Եւ մանուկն ասէ։ Ընդէ՞ր։ Եւ նա ասէ. Որպէս բոժանեցին դիւացի զանձն իմ. զի գրեալ էր ինձ յիմոյ որդւոյ սատակումն կրել, եւ ոչ կարացի զերծանել ի բոժէն, այլ ի քէն սատակեցայ։„

մէջ՝ թէ “ոչ զիս երկեւցուցանեն պատուող բանքդ։[1]„ Բայց ասոր համար ալ չենք գիտեր՝ թէ ի՞նչ գրութիւն է այն, որմէ քաղած են Բառագրոց հեղինակք յիշեալ խօսքը՝ զոր անորոշ եղանակաւ “Պէտու.„ (= “Պիտառութիւնք„ կամ Ոսկիփորիկք) կը նշանակեն։

Յիշենք վերջապէս երրորդ խօսք մ՚ալ։ Հնոց քով համբաւաւոր գազան մը կը յիշէ Սուտ-Կալիսթենէս Աղեքսանդրու առ Արիստոտէլ գրած թղթին մէջ։[2] Այս գազանին անունն էր Ὀδοντο-τύραννος, զոր մեր թարգմանիչը յատուկ ու սեպհական բառով թարգմանած է “փիղ, որոյ անունն էր Բռնաժանէ։„ Արդ այս հայերէն բառը հոս լոկ առաջին անգամ գործածուած կը գտնենք. եւ դարձեալ A բնագիրը չունի այս յիշատակութիւնը, այլ լոկ V (որ նոյնպէս Odontotyrannus կը կոչէ)։ Ուստի մեծ եղաւ մեր զարմանքն՝ երբ նոյն բառագրոց մէջ այս բառին դիմաց տեսանք այսպիսի կոչում մը. “Այրն ցանկալի՝ արհամարհող գազանաց Բռնաժանէաց։ Թէոփիլ. պհ.„ (այսինքն՝ Թէոփիլոսի ճառ ի պահս։) Դժբախտաբար չունենալով այժմ առձեռն այս ճառը՝ չենք կրնար այս կէտն աւելի մանրախոյզ քննել, որ անշուշտ բաւական լոյս պիտի տար մեզ իմանալու այս երկու խօսքերուն իրարու նկատմամբ ունեցած կապը։ Բայց կարծենք թէ կրնանք ապահովութեամբ ըսել՝ որ գոնէ այս ճառին հայ օրինակը՝ զոր Ե դարու թարգմանութիւն կը համարին ոմանք[3], անհրաժեշտ աղերս ունի Աղեքսանդրի վարուց հայ թարգմանութեան հետ։

Քանի մը տարի յառաջ Քննասէրն կարեւոր հատուած մ՚ի լոյս հանեց Խորենացւոյ թարգմանութեանց վրայ, որոնց մէջ դրուած են, ինչպէս ու-

[1] Պտմ. Աղեքս. ՄԺԴ, էջ 132, 15։
[2] Պտմ. Աղեքս. ՄԻԴ, էջ 142, 20։
[3] Հ. Գ. Զ., Մատենադարան Հայկական թարգմանութեանց Նախնեաց, Վենետ. 1889, էջ 474, 2։

րիշ առթիւ ալ յիշեցինք, քսանուվեց համեմատութիւնք Խորենացւոյ եւ Կալիսթենեայ: Այս համեմատութեանց իբր եօթն հատն արդէն ցայս վայր յիշեցինք. երեք գլխաւոր կտորներն[1] ալ՝ որ Ծուրայ եւ Թեբայ քաղաքի առման մասերն են՝ յետոյ պիտի տեսնենք ընդարձակագոյնս. իսկ մնացելոց մեծ մասն աւելի լեզուաքննական նկարագիր ունին, այսինքն այնպիսի տեղեր՝ ուր միոյն սեպհական բառը կամ նաեւ ասութիւնը կրկնուած կը գտնուի միւսին մէջ, եւ այլ նման դէպքեր, զորոնք յընթացս գրութեանս կը յիշենք: Բայց հոս պէտք չենք զանց առնել քանի մը հատը:

Խորենացւոյ քով Աբգարու բազմաթիւ թղթեր կան, որոնց ծագումը բաւական անորոշ է: Ուրիշ առթիւ խօսած ենք այս նիւթոյս վրայ[2], եւ տեսանք որ այս նամակաց ոմանց հիմն է Ղաբուբնայի գիրքն, իսկ այլոց՝ անծանօթ աղբիւր մը: Տեսանք նաեւ որ այն նամակաց մէջ՝ որոնք իբր թէ առաջին դարուն գրուած են՝ կան փոխառութիւններ Տերտուղիանու գրքերէն, եւ այն՝ Եւսեբեայ միջնորդութեամբ: Այժմ կրնանք յաւելուլ նաեւ՝ թէ ինքն Խորենացի՝ գոնէ ինչ ինչ տեղ՝ մանր փոփոխութիւնք ըրած կ'երեւայ: Ասոր յայտնի ապացոյց է այն՝ որ Աբգարու առ Տիբերիոս գրած թղթին վերջը կ'աւարտէ Խորենացի այս ոճով[3]. “Ողջ լինել քեզ ըղձամ:„ Բայց այս նախադասութիւնը ճարտարութեամբ գողցուած է Աղեքսանդրի Վարուց մէջէն, ուր Զեւքսիս իւր առ Փիլիպպոս եւ Ողոմպիադա գրած նամակը կը վերջացընէ նոյնպէս ճըշդիւ. “Ողջ լինել քեզ ըղձամ:„[4] Միայն միտ դնելու

[1] քննատէր, թիւ 11, 12, 13:

[2] Հմմտ. P. J. Dashian, Zur Abgar-Sage. Wien, 1890, S. 28—31. Հմմտ. Համառօտ հատուած մ'ալ ի Հանդէս Ամսօրեայ, 1889, թիւ 4, էջ 64:

[3] Խոր. Բ. գլ. լգ, էջ 110, 2:

[4] Պատմ. Աղեքս. Լթ, էջ 20, 5: Հմմտ. քննատէր. թիւ 2:

ենք որ այս նամակները չունին ABC, այլ լոկ V. բայց նաեւ V հոս այս նախադասութիւնը չունի, թէպէտ ըստ իւր սովորութեան համառօտելով կը թարգմանէ։

Աղեքսանդրի զուարթակագլուխ ձին էր "արագութեամբ առաւել քան զՊեգասիոս եւ զԱրիոմնայն[1]։" Այս բացատրութիւնը կը գործածէ Խորենացի Տիրանայ օրերով գտնուած երկու ձիերը նկարագրելու, զորոնք "ոչ երկրակոխս, այլ օդագնացս" կը կարծէին. եւ կը գրէ այսպէս[2]. "Եւ ձիոց երկուց լեալ՝ թեթեւ առաւել քան զՊիգասոս երագութեամբ անբաւ[3]։" — Այս կտորը առիթ կու տայ յիշելու նման քանի մը դէպքեր։ Վարազդատայ համար կ՚ըսուի թէ "նախ ի Պիսաս զբռնամարտիկն յաղթելով[4]" նշանաւոր եղաւ. սոր աղբիւրն է թերեւս Վարուց Աղեքսանդրի Խթ հատուածը[5], յորում Աղեքսանդր հրաման կը խնդրէ ի Պիսաս նաւելու, եւ երբ հայրը կը դնէ անոր առջեւ որ "ոչ կռիւ եւ ոչ բռնամարտիկ հանդէս" գիտէ, կ՚առաջարկէ կառավարել, այսինքն՝ կառարշաւով մրցիլ։ Խորենացի նոյն գլխուն մէջ[6] կը համեմատէ զՎարազդատ Աքիլլեսի որ Սկամանդրոս գետն ստամամբ անցաւ, զոր յիշեցինք վերն ուրիշ առթիւ[7]։ Նոյնպիսի նմանութիւն մը յառաջ կը բերէ Արշակայ վրայ գրելով[11] թէ կը պարծէր որ "քաջ եւ արի երեւեալ քան զԱքիլլեւս." եւ կը յաւելու թէ "իսկ արդեամբք Թերսիտեայ նմանեալ կաղն եւ

---

[1] Պսմ. Աղեքս. ԼԱ. էջ 16. 9։ A չունի զայս. B լոկ "գեղեցկութեամբ առաւել քան զՊեգասիոս." իսկ V նոյն է հայոյն հետ. բայց "քան զԱրիոմնայն" մասը չունին ABCV, ուստի եւ ոչ մին։

[2] Խոր, Բ. գլ. կբ. էջ 140, 5։

[3] Հմմտ. քննութբ. Թիւ 4։

[4] Խոր. Գ. գլ. խ. էջ 229, 36։

[5] Պսմ. Աղեքս. էջ 23—24։

[6] Խոր. Գ. գլ. խ. էջ 230, 21։

[7] Տես վերը՝ էջ 25—26։

[8] Խոր. Գ. գլ. ժթ. էջ 204—205, 1։

որագլխոյ։" Կրնար գուցէ կարծուիլ որ նաեւ այս նմանութիւնը Կալիսթենէսէն է, որ Աքիլլեւսի Սկամանդրոս անցնիլը յիշելէն անմիջապէս ետքը կը յաւելու՝ թէ Աղեքսանդր երանի տուաւ Աքիլլեւսին, որուն չնչին գործն այնպէս վեհացուցած էր Հոմերոս։ Այն ատեն քերթող մը խոստացաւ որ Հոմերոսէն աւելի լաւ երգէ Աղեքսանդրի գործքերը. որուն պատասխանեց Աղեքսանդր. "Ցանկալի է ինձ լինել Թերսիտէս ի պատմութեան Հոմերոսի քան Աքիլլեւս ի ձերումդ"[1]։ Սակայն Խորենացւոյ գրած "կաղ" եւ "որագլուխ" ածականներն ուրիշ աղբիւր կը ցուցընեն։ Յիշեցինք ուրիշ առթիւ[2] որ Խորենացի Խոսրովայ անարիութիւնը պատմած ժամանակ Աղեքսանդրի հասակին հետ կը համեմատէ զանի, գրելով. "Թէպէտ էր մարմնով փոքր, այլ ոչ որքան մակեդոնացին Աղեքսանդր. որ միայն երից կանգնոց ունէր զչափ հասակի, եւ ոչ զհոգւոյն խափանէր աշխոյժս։"[3] Նաեւ այս վերջին նախադասութեան նման կը գտնենք Կալիսթենեայ քով "ոչ գիտացեալ զհոգւոյն աշխոյժութիւն" խօսքը[4]։

Նմանաձեւ նախադասութեանց իբրեւ օրինակ կրնայ յիշուիլ Խորենացւոյ յառաջ բերած՝ Շապհոյ առ Տիրան գրած թղթին[5] այս խօսքը. "Զի խորհել մարթասցուք վասն հասարակաց օգտի։" Ասոր զուգակից է Դարեհի ըսածը թէ "Եկայք խորհեսցուք զօգուտն հասարակաց[6]։" — Բայց աւելի կարեւոր է Կալիսթենեայ[7] "ի մտոյ առջեւն ունելով զքարկութիւն" խօսքը, որ Խորենացւոյ տպագիր օրինակաց մէջ եղած է[8] "Ի յառջեւն ունէր

[1] Պատմ. Աղեքս. ՃԻԲ, էջ 61, 5։
[2] Տես վերը՝ էջ 32։
[3] Հմմտ. նաեւ Քննասէր, Թիւ 8։
[4] Պատմ. Աղեքս. ԾԱ, էջ 25, 20։
[5] Խոր. Գ. գլ. ԺԷ, էջ 203, 7։
[6] Պատմ. Աղեքս. ՃԾ, էջ 86, 8։ Քննասէր, Թիւ 9։
[7] Պատմ. Աղեքս. ՄԿԲ, էջ 173. 13։
[8] Խոր. Գ. գլ. ԻԱ, էջ 207, 3։

զբարկութիւն.„ այլ ոչ ուղղութեամբ, վասն զի Հոս Կարինեանցի օրինակն աւելի ուղղութեամբ “առաջեան„ կը գրէ[1]։ — Մեսրոպայ վրայ խօսած ատեն կ'ըսէ. “Տեսեալ թէ ի վերջ Հասեալ է թագաւորութիւնն[2].„ այնպէս՝ ինչպէս որ Կալիսթենէս[3] Նեկտանեբայ վրայ կը պատմէ. “Ուսեալ թէ ի վերջ Հասեալ է Եգիպտացւոց թագաւորութիւն,„ Հետն ոսկի եւ արծաթ առնելով՝ փախաւ։ — Պարսիկք Աղեքսանդրէն Դարեհի Հօրեղբայրը նախարար կը խնդրեն ըսելով. “Աղաչեմք զքեզ թագաւորենդ[4]„ եւն։ Նոյն ոճով կը սկսի Սահակայ թուղթն առ Անատոլիոս[5]. (“Աղաչեմ զքեզ թագաւորենդ ձեռնտու լինել ճանապարհիդ,„ եւն։) — Վերջապէս Կալիսթենէս Աղեքսանդրի զօրաժողովը կը պատմէ գրելով՝ թէ “Եկեալք Հասանէին ամենեքին ի Մակեդոնիա ինքնակամ կամօք իբրեւ յաստուածառաք ձայնէ Հրաւիրեալք[6]։„ Նոյն բառերով կը ստորագրէ նաեւ Խորենացի Անատոլիոսի զօր գումարելը. “Քանզի, կ'ըսէ, իշխանք եւ գլխաւորք . . . ի մի վայր եկեալ Հասանէին . . . իբր յաստուածառաք ձայնէ Հրաւիրեալ[7]։„

Այս ամէնը գլխաւորաբար երկու բան ցուցուց։ Նախ՝ Խորենացի շատ յաճախ գործածած է Կալիսթենեայ գիրքն իբր օրինակ գեղեցիկ գրութեան. եւ երկրորդ՝ Խորենացւոյ կարդացած Հայ օրինակը՝ (քանի մը չնչին տարբերութիւնք ի բաց առնլով, որ գրչաց արդիւնք են անշուշտ,) ճշդիւ նոյն է մեր արդի բնագրին Հետ՝ յընդՀանուրն խօսելով, առանց այս կամ այն մանրամասնութեան իջնալու։ Ա-

---

[1] Համմ. քննութ., Թիւ 10։
[2] Խոր. Գ. գլ. խէ, էջ 237, 16.
[3] Պատմ. Աղեքս. Դ, էջ 3, 21։ քննութ., Թիւ 17։
[4] Պատմ. Աղեքս. ՄԳ, էջ 119, 10։
[5] Խոր. Գ. գլ. ծէ, էջ 253, 14։ քննութ., Թիւ 21։
[6] Պատմ. Աղեքս. ՀԱ, էջ 33, 10—13։
[7] Խոր. Գ. գլ. ծը, էջ 255. 17—21։ քննութ., Թիւ 22։

ւելորդ է ըսել թէ նաեւ ասով չէ սպառած Խորենացւոյ գրոց մէջ գտնուած փոխառութեանց կոյտը, եւ թէ շատ նման կտորներ կան Պատմութեանն եւ այլ գրոց մէջ, եւ ոչ ալ ամէն մանր նմանողութիւնք համեմատութեան առնելու պէտք կայ։ Կը շատանանք ասկէ ետքը միայն մեծ կտորի մը քննութեամբ, որ է Կալիսթենեայ՝ Ծուրայ եւ Թեբայ քաղաքի առումն, իսկ Խորենացւոյ՝ Տիգրանակերտի կործանումը։

Ի վաղուց դիտուած է Խորենացւոյ Պատմութեան Գ գրոց ԻԶ եւ ԻԸ գլխոց նմանութիւնք՝ Կալիսթենեայ ԴԹ, Ճ, ՃԻԶ եւ ՃԻԷ հատուածներուն հետ։ Այս նմանութիւնք չէր կրնար ուշադրութենէ վրիպիլ. վասն զի Խորենացւոյ այս կտորներն իւր գրոց ամէնէն գեղեցիկ կտորներէն են, եւ Շապհոյ գործոց գլխաւոր մասերէն մին։ Եւ սակայն պատմութեան այսպիսի էական մասանց մէջ Խորենացի բառ առ բառ օրինակած է ստապատում գրքի մը նկարագրութիւնները՝ փոխելով միայն այն կէտերը, որ էապէս կարեւոր էին պատմութեան համար։ Այս պատճառաւ Աղեքսանդրի Վարուց հայ թարգմանութեան վրայ գրող գրեթէ ամէն քննիչք այս կտորներուս համեմատութիւնն ամէնէն աւելի ծանրակշիռ համարած են։ Շատ անգամ յիշեցինք Կիլտեմայսթերի այս կտորիս վրայ գրած հատածը։ Սակայն սոյն գիտնականը միայն մի մասը՝ Տիգրանակերտի առումը՝ գլխաւորաբար համեմատեր է։ քննասէրէ համեմատութեանց երեքը (Թիւ 11, 12, 13) այս մասերն են, թէեւ վերջին կարեւորագոյն կտորին միայն տեղը նշանակուած է։ Վերջապէս, ինչպէս վերը յիշեցինք[1], կարծենք՝ թէ արդէն Մագիստրոս դիտած կ'երեւայ Խորենացւոյն յիշեալ մասանց փոխառութիւն ըլլալը։

Երկու կարեւոր հատուած ի լոյս հանած է

[1] Տես վերը՝ էջ 31—32։

այս մասին՝ Բազմավէպ։ Այս հատուածները դուրս մնացած են գրոցս Հայ Թարգմանութեան վրայ հրատարակուած գրութեանց ցանկէն՝ զոր վերը դրինք[1]. ուստի պարտք կը համարինք հոս յիշել անոնց գլխաւոր կէտերը։

Առաջինն Հ. Արսէն Վ. Սուքրեանի դրչէն հմտալից եւ անաչառ համառօտ հատուած մըն է[2], որ կը խօսի Արշակայ օրով մղուած երեսնամեայ պատերազմին վրայ ըստ Բուզանդայ։ Բուզանդ գիտէ՝ որ Մերուժան առաւ զՏիգրանակերտ, աւերեց զայն եւ ուրիշ բերդեր, եւ մինչեւ հնոց ոսկրները հանեց շիրիմներէն յԱնի[3]։ Բուզանդայ այս մանրամասն պատմութեան բոլորովին անմիաբան է Խորենացի, որ “զայն կ'այլակերպէ ... կը ձեւացընէ՝ որ Շապուհ նախ նամակ մը յուղարկած ըլլայ ի Տիգրանակերտ։„ Նամակը յիշելէն ետքը՝ կը յաւելու հատուածագիրն այս նշանաւոր տողերը. “Գեղեցիկ նամակ մը կ'երեւայ այդ՝ արտաքին տեսլեամբ ... բայց ոչ է ի դիւանաց արքունի. եւ Շապուհ եւ ոչ իսկ յերազեր է թերեւս այդպիսի նամակ գրել առ Հայս։ Իսկ այդ նամակը բանաքաղութիւն մ'է զոր գործած է մերս Խորենայ ծերունին ամենեւին անվաւերական եւ շինծու գրքէ մը։ Երանի՜ թէ Երոդոտոսէ մը կամ Տիտոս Լիվիոսէ կամ Տակիտոսէ մը քաղած ըլլար. իսկ զայդ ի խերշեւտանաց ժողված է։„ Այս խորհրդածութենէ ետքը կը հարցընէ հատուածագիրը՝ թէ “Ինչո՞ւ արդեօք նոյն գիրքն անձամբ թարգմաներ է (Խորենացի) յետոյ կամ յառաջ քան զիւր պատմագրութիւն։„ Եւ այս պատասխանը կը գտնէ՝ թէ Խորենացի “կը սիրէ Աղեքսանդրի աշխարհակալութիւնն եւ շատ տեղ կը յիշէ։„

---

1 Տես վերը՝ էջ 10—11։

2 Բազմավէպ, 1878, Ա. էջ 7—14, մանաւանդ էջ 8—10։

3 Բուզանդ, Դ. գլ. իդ։

Շարունակելով իւր խորհրդածութիւնքը՝ մատադիր կ'ընէ նոյն գրիչը· “Եթէ այսչափով գոհ ըլլար մեր Խորենացի՝ թերեւս անմեղադրելի ըլլար· բայց նոյն օրինակութիւնն շարունակելով պատմական ճշդութենէ դուրս կ'ելլէ։„ Կը յիշեցընէ նոյն նկարագրութեան օտար ըլլալն “ի Բուզանդայ պարզութենէ· բայց, (կը յաւելու), ոչ ինքն հեղինակն է որ կը խօսի, այլ իւր անվաւերական աղբիւրն։ Պատերազմին կերպն ու գործիներն անգամ յունական են։„ Ի վերջոյ կը կնքէ իւր խորհրդածութիւնքն այս խօսքով· “Քննադատք որչափ հաւատք կ'ընծայեն այդ գրոց (Կալիսթենեայ), նոյնչափ եւ ոչ աւելի թերեւս՝ Տիգրանակերտի նկարագրութեան։„ Այս տեղ կը դրուի ապա Տիգրանակերտի առման եւ Թեբայ քաղաքին կործանման նկարագրութիւնքը դէմ առ դէմ։ Միայն թէ՝ որովհետեւ Խորենացի Թեբայ նկարագրութեան խօսքերուն կարգը տեղ տեղ այլափոխած է, մինչ դեռ հեղինակը դրած է այն կարգաւ՝ որով տպուած է Կալիսթենեայ հայ թարգմանութիւնը, համեմատութեան ինչ ինչ մասերը մթին կը մնան ընթերցողին։ Սակայն այսպէս կամ այնպէս՝ Հ. Արսէն Վ. Սուքրեան առաջինն է, որ սուր դիտողութեամբը յերեւան հանած է այս կտորներուն փոխառութիւնն եւ խստիւ քննադատած։

Եթէ յիշեալ հատուածագրին ինչ ինչ խօսքերը քիչ մը խստաբան երեւան, ասոր փոխարէն աւելի ջատագովական նկարագիր ունի երկրորդ հատուածը, զոր Բազմավէպ հինգ տարի ետքը հրատարակեց[1]։ Հատուածիս հեղինակը՝ Հ. Բարսեղ Վ. Սարգսեան՝ Մարաբասեան եւ Խորենացւոյ քննութեան պարապելով՝ չէր կրնար զանց առնել այս կարեւոր կէտը, որուն “եթէ արտաքին երեւութին միայն նայելու ըլլանք, Խորենացւոյ վրայ ունե-

---

[1] Բազմավէպ, 1883, Բ. էջ 118—119։

ցած վստահութիւննիս կը նուազեցընէ,„ կը խոստովանի հեղինակը: Գրչիս գլխաւոր նպատակն այն է՝ որ ցուցընէ թէ Խորենացի փոխ առնելով նոյն կտորները Սուտ-Կալլիսթենեայ գրքէն, պատմական ճշդութիւնը չէ տուժած. վասն զի կարեւոր փոփոխութիւններն ըրած է նաեւ փոխառեալ խօսքերուն մէջ. իսկ իր ըրած փոփոխութիւնքն միաբան են պատմութեան եւ ի մասնաւորի Ամմիանու հետ: Այս հետեւութեան ուղիղ ըլլալը ակնյայտնի է: Սակայն կարծես այս հետեւութիւնն աւելի ամրապնդելու դիտմամբ՝ կը գտնենք նաեւ այնպիսի խօսքեր, զոր ուղղութեամբ ըսել դժուար էր: Այսպէս կը գրուի թէ "Խորենացւոյ բերած նամակին եւ Տիգրանակերտի առման նկարագրութեան համաձայնութիւնն ընդ Թղթին եւ նկարագրութեան Կալլիսթենեայ՝ պատահական է եւ միայն աննշան բառից եւ ոճոյ մէջն է,„ Մանաւանդ թէ՝ վասն զի Խորենացւոյ փոփոխածները միաբան են Ամմիանու պատմածին՝ կը հետեւցուի. "Կը համարձակինք ըսել՝ թէ Բուզանդէն եւ Կալլիսթենէսէն աւելի՝ Ամմիանոսէն օգտուած ըլլայ:„ Իբրեւ ցուցում կը բերուի նաեւ այս. "Իրաւցընէ եթէ Խորենացին այն նամակը եւ Տիգրանակերտի առումը Կալլիսթենէսէն օրինակեց, ի՞նչ պատճառաւ անոր անունը չյիշեց, զոր պէտք էր յիշել՝ յարգի եւ հաւատարիմ ցուցընելու համար իր հաւաստիքը:„ Որմէ բնականապէս կը հետեւի՝ թէ որովհետեւ Կալլիսթենէսի անունն անգամ չկայ Խորենացւոյ մէջ՝ ուստի եւ ոչ գործածած պէտք է ըլլալ զայն: Վերջին մեկնութիւն մ՚ալ այն է՝ որ "Նմանաձայն նկարագրութիւնք յաճախ են. վասն զի նմանատիպ արկածք եւ պատահարք՝ քիչ շատ նմանօրինակ դրուագներ կ՚ունենան:„ Օրինակ կը բերուի թէ Եղիշէի եւ Բուզանդայ նկարագրութեանց շատը նման է Մակաբայեցւոց գրոց նկարագրութեանց: Իբրեւ այն թէ Բուզանդ եւ մանաւ-

անդ Եղիշէ գործածած չեն Մակաբայեցւոց գիրքը, եւ չեն նմանած անոր շատ նկարագրութեանց։

Այս եւ այսպիսի կարծեաց դէմ պէտք չկայ նոր ցուցումներ յառաջ բերելու։ Ցայս վայր յառաջ բերուածները բաւական են ցուցընելու՝ որ Խորենացի շատ անգամ գործածած է զԿալիսթենէս՝ առանց յիշելու նոյն գիրքը։ Սակայն նաեւ յաջորդ համեմատութիւնք կը համոզեն՝ թէ պէտք չկայ ճշմարտութիւն մը հաստատելու համար ուրիշ մը ժխտել։ Թէ Խորենացի կարեւոր փոփոխութիւններ ըրած է, կը տեսնուի համեմատութեանցս մէջ. բայց այս փոփոխութեանց համար ըսել՝ թէ եւ ոչ գործածած է նոյն գիրքն, այս անտեղի է։

Աղեքսանդր, կ'ըսէ Կալիսթենէս[1], Տիւրոս արշաւեց. իսկ Տիւրացիք դռները փակեցին։ Աղեքսանդր յարձակում ըրաւ, բայց յաղթուելով ի Գազա դարձաւ, եւ անկէ նամակ գրեց Տիւրացւոց։ Ըստ Խորենացւոյ՝ Շապուհ կը յարձակի Տիգրանակերտի վրայ, բայց կը պարտուի եւ կը դառնայ ի Մծբին, եւ անկէ կ'առաքէ նամակ մ'առ Տիգրանակերտացիս։ Նամակները բառ առ բառ նոյն են. իսկ այս պատրաստողական մասերը քիչ շատ տարբերութիւն ունին պարագայից այլեւայլութեամբը։ Սակայն նաեւ հոս կը տեսնուի Խորենացւոյ նմանած ըլլալը։ Ահա այս նախաբանական կտորին համեմատութիւնը։

| ԿԱԼԻՍԹԵՆԷՍ | ԽՈՐԵՆԱՑԻ |
| --- | --- |
| (Ղ Թ. էջ 47, 33—48, 14։) «Եւ անդուստ զօրաժողով արարեալ հզօր[2] գունդ | (Գ. գլ. իզ. էջ 212, 1—15։) «Իսկ Շապուհ գունդ հասանէ ի Տիգրանակերտ մեր |

[1] Պատմ. Աղեքս. Ղ Թ եւ Ճ, էջ 47, 33—48, 30։

[2] Այս խօսքը չէ միայն ABC բնագրաց, որ ունին. Στρατολογήσας δισχιλίους ἄνδρας καταφράκτους. (զօրաժողով արարեալ արս Բ Ռ սպառազէնս։) Անշուշտ Հայ բնագրին «հզօր» ընթերցուածը գրչաց սխալ է փոխանակ «հազար» գրելու. առոր ապացոյց է V, որ կ'ընթեռնու Unde m i l l e etiam cum cataphractis viros accipit.

հատանէ ի Տիւրոս։ Կան ընդդէմ նորա Տիւրացիքն ոչ տուեալ անցանել ընդ քաղաքն իւրեանց։ . . . Ուստի ընդդէմ կային ոչ տալ մտանել Աղեքսանդրի։ Եւ կան ընդդէմ նորա Ծուրացիքն շուրջ փակեալ զպարսպաւ զբոլոր քաղաքն։ Եւ հզօր կռուոյ եղելոյ[1], զբազում սպանէին ի Մակեդոնացւոցն. եւ է պարտութեան մատնէ զօրն Աղեքսանդրու, եւ դառնայ թագաւորն անդրէն ի Գազա. եւ հանգիստ առեալ եւ արձարձեալ զիւր զօրսն յաղթութեամբ[2], խնդրէր առնուլ զԾուր եւ աւար հարկանել։ Եւ տեսանէ յերազի զոմն որ ասէր ցնա. Մի լինիր հրեշտակ քեզէն ի Ծուր։„

քաղաք. կան ընդդէմ նորա որք քաղաքին հանդերձ գումարտակ գնդաւ[3]. քանզի Անտիոք նահապետ Սիւնեաց . . . հրամայեաց աղխել ընդդէմ Շապհոյ։ (Եւ ոչ միայն զմուտն արգել, այլ եւ ոչ հրեշտակս առաքեաց առ նա, եւ ոչ զնորայն ընկալաւ[4]։) Եւ հզօր կռուոյ եղելոյ, զբազում ի Պարսիցն սպանէին. եւ է պարտութեան մատնեալ գնդին Շապհոյ, դառնայ անդրէն ի Մծբին. եւ հանգիստ առեալ եւ արձարձեալ յաղթութեամբ, խնդրէր առնուլ զՏիգրանակերտ. եւ ոչ թողացուցին յառաջախաղաց գունդք եւ լրտեսք՝ . . . իբրու թէ Յունացն խանգարեցի գործ։„

Արդէն այս կտորը լուսաբանեց խնդրոյն ինչ ըլլալը։ Սակայն աւելի բացայայտ են յաջորդ մասերը։ Խորենացի յիշեալ խօսքէն ետքը նամակին սկսելէն յառաջ այսպիսի նախադասութիւն մ'ունի. “Եւ Շապհոյ յառաջ անցեալ, գրէ առ նոսա թուղթ օրինակ զայս։„ Իսկ Կալիսթենէս Աղեքսանդրի առ Ծուրացիս գրած նամակէն յառաջ կը գրէ այլազգ. “Եւ առաքեաց դեսպանս ընդ հանդերձ թղթովք, որ ունէր օրինակ այսպիսի բանիւք։„ Այս մասերէն ետքը կու գան նամակները։

---

[1] Յունաբանութիւն է բառ առ բառ։ Յոյնն է. κραταίας μάχης γενομένης.

[2] Այս ընթերցուածը սեպհական է Հայոյն։ Յոյնը համառօտ է այսպէս. Καὶ ἀνακτησάμενος ἑαυτὸν (BC; A αὐτὴν,) այսինքն “եւ կազդուրեալ զանձն։„

[3] Տպագիրն է “գումարտ գնդաւ.„ եւ նշանակուած որ “մի օր. գումար, երկու օր. գումարտակ։„

[4] Խորենացւոյ այս կտորը Կալիսթենեայ ուրիշ մէկ տեղէն է. (Պատմ. Աղեքս. ՃԻԶ. էջ 64, 4—5։)

## ԿԱԼԻՍԹԵՆԷՍ

(Ճ. էջ 48, 16—30։)

"Թագաւոր Աղեքսանդրոս Մակեդոնացւոց որդի Ամոնայ մեծ ինքն[1] թագաւոր Եւրոպայ, Ասիայ եւ Լիբիայ[2], Տիւրացւոց որք ոչ եւս են՝ ասէ։

"Ես սկիզբն արարեալ յԱսորւոց յազգն կոյս հանդերձ խաղաղութեամբ եւ քաղցրեն ողորմութեամբ[3] կամէի ընդ ոտն առնել։ Եւ եթէ դուք Տիւրացիքդ որ քաջ առաջին էք, ոչ քաղաքավարութեամբ[4] առէք, այլ ինձ ապստամբութեամբ, ընդդէմ կայք ինձ. ի ձէնջ ուսցին եւ այլք (զօրութեան[5]) որչափ կարեն Մակեդոնացիք առ.

## ԽՈՐԵՆԱՑԻ

(Գ. գլ. իզ. էջ 212, 19 — 30։)

"Մաղդեզանց քաջ Շապուհ արքայից արքայ Տիգրանակերտեաց՝ որք ոչ եւս էք անուանելոց ի մէջ Արեաց եւ Անարեաց։

"Ես կամէի ի ձէնջ սկսեալ յամենայն յառաջիկայ քաղաքս խաղաղութեամբ եւ քաղցրեն ողորմութեամբ ըմբռնանել։ Եւ եթէ դուք Տիգրանակերտեայք որ առաջին էք, ոչ շահատակութեամբ առէք, այլ ի մեզ ապստամբութեամբ, ընդդէմ կացէք ինձ, ի ձէնջ ուսցին եւ այլք զնոյն առնել։ Այլ ի դարձին մերում բարկութեամբ այնպէս վանե-

---

[1] Այս նորանշան ոճը ճշդիւ համեմատ է A բնագրին. *Καὶ αὐτὸς δὲ* (C *ἐγὼ δὲ*; B *ἐγώ*) *βασιλεὺς μέγιστος.*

[2] Այսպէս նաեւ AV; BC "Եգիպտոսի եւ Լիբիայ։"

[3] Ցոյնն է *μετὰ εὐνομίας* (բարեկարգութեամբ). V կ'ըսէ. cum clementia pariter ac justitia.

[4] Այս կտորներն աղաւաղ կ'երեւան, թէեւ զարմանալի եղանակաւ միաբան են A բնագրին նոյնպէս աղաւաղ ընթերցուածոյն։ A է՝ *Εἰ δὲ ὑμεῖς, Τύριοι* (M կ'առաջարկէ *πρῶτοι*) *τυγχάνοντες οὐ τῇ πολιτείᾳ ἀλλ' ἐγὼ ἀλλὰ* (*ἀλλα τῷ?*) *τῇ εἰσόδῳ τῆς ὁδοιπορίας ἀντιτάσσεσθαί μοι.*— Այս աղաւաղ կտորին տեղ M ունի. "Իսկ եթէ դուք Տիւրացիք առաջին եղէք ընդդէմ կալ մտի մերում՝ մտեալ մեր ի ներքս, ուսցին ի ձէնջ" եւն։ Ճշդիւ այս վերջնոյն համեմատ է եւ V. At enim vos primi omnium extitistis qui mihi insolentius obviaretis etc.

[5] Այս վերջին խօսքը ձեռագրաց աղաւաղութեամբ այլայլած է. ABC կ'ըսեն. *Δι' ὑμῶν μαθήσονται καὶ οἱ λοιποί, πόσον σθενοῦσι Μακεδόνες πρὸς τὴν ὑμῶν ἀπόνοιαν.* (ի ձէնջ ուսցին եւ այլք, թէ որչափ ինչ կարեն Մակեդոնացիք առ ձեր անմտութիւնդ։) Նմանապէս նաեւ V: Igitur per vos ceteris etiam magisterium procurabitur, quid virium sit in Macedonum dexteris ac fortitudine. Խորենացի վերջաւորութիւնն այլազգ գրած է։

ձեզ կրեալ ընդվզեալ ամբարտաւանութեանդ[1]։"

ցից զձեզ, զի կրկին եղիջիք օրինակ խեռեալ ստահակելոցն։"

Դժբախտաբար նամակիս վերջերը շատ աղաւաղ կ'երեւայ Հայ թարգմանութիւնը. նաեւ յոյն բնագիրք այլայլեալ են, որոնց տարբեր ընթերցուածն ներքեւ նշանակեցինք։ Իսկ Խորենացի վերջերը կամաւ այլափոխած կ'երեւայ. վասն զի իւր ընթերցուածն եւ ոչ բնագրաց միոյն հետ միաբան է եւ վերջաւորութիւն չունի[2]։ Ասոր նշան է "Ի դարձին մերում" խօսքը, որ Շապհոյ աւելի յարմար է, բայց ոչ այնչափ եւ Աղեքսանդրի։

Այս նամակին եւ Տիգրանակերտի առման նկարագրութեան մէջ Խորենացի մուծած է ուրիշ գլուխ մը[3], որ Արշակաւանի դէպքը կը պատմէ։ Իսկ Կալիսթենէս շատ աւելի ետքը կը դնէ Թեբայ քաղաքին առումը, ուր յառաջ կը պատմէ Աղեքսանդրի երազ տեսնելն, որ նշան էր Տիւրայ առման, Տիւրայ կործանումը, Դարեհի սպառնալից նամակ գրելն առ Աղեքսանդր, Աղեքսանդրի պատասխանն ու թղթաբերաց դէպքը, Դարեհի իւր նախարարաց եւ անոնց գրած այլեւայլ նամակները, Դարեհի առաջին մեծ պարտումն, Աղեքսանդրի ապա ի Յոյնս արշաւելն յԱքայիա, Իղիոն, Աբդերա եւն գալն, եւ վերջապէս Ակրագանթացւոց Ապողոնի մեհենին մէջ գործած միջադէպը[4]։ Անկէ ետքը հազիւ Թեբայ հետ կռուիլը կը պատմէ։

Նախ քան վերջին կարեւոր կտորին՝ այսինքն Թեբայ առման համեմատութիւնը դնելը, պէտք ենք

---

[1] Եւրոպեան օրինակ. "Ուսցին եւ այլ քաղաքք զՄակեդոնացւոց քաջութիւն. զոր առնեն առ ձեր ամբարտաւանութիւն։"

[2] Կալիսթենէսի քով նամակը կը վերջանայ այսպէս. "Բայց է ձեր եւ տուեալն յաստուածոյ հրաման անսխալ, քանզի անցից ընդ քաղաքս ձեր. ողջ լերուք բարի խորհրդով, եթէ ոչ՝ ապականեցարուք թշուառանօք։"

[3] Խոր. Գ. ԻԵ։

[4] Պատմ. Աղեքս. ՃԱ—ՃԻԵ։

տեսնել Կիլտէմիայսթերի այս համեմատութենէ յառաջ գրած սա խօսքերը[1]. "Միւլլէր Շդրիւպինկ (Müller Strübing) ցուցուց մօտ ատեններս[2] որ Թուկիդիդէս Պղատէայի պաշարման շատ ճոխ նկարագրութեան մէջ նաեւ էական պարագաներ եւ բացատրութիւններ փոխ առած է Հերոդոտոսէն կամ անոր նմանած, թէեւ նոյները վերջնոյս քով բոլորովին ուրիշ դրից մէջ են: Այս պարագայն կը յիշեցընէ Խորենացւոյ նման՝ բայց աւելի համարձակ ընթացքը: Շապհոյ Բ. 359ին Տիգրանակերտի պաշարման մանրամասնութիւնքը, որ կը գտնուին Ամմիանու քով, անծանօթ էին իրեն: Այս պակասը ծածկելու եւ իւր հռետորական բարուց միտելովն՝ Սուտ-Կալիսթենեսէն գլուխ մ'ամբողջ (I. 46. Հայր՝ ճԻԶ, ճԻԷ.) իւր Պատմութեան մէջ (Գ. գլ. իգ. իը.) առած է, միայն պատմական դրից կարեւոր փոփոխութիւններն եւ զեղչումներն ընելով: Այս ամէնն, որոնց վրայ ոչ ոք խօսած է ցարդ՝ որչափ գիտեմ, կը պարզեմ հոս:„ Գերմանացի գիտնականին մէկ երկու ոչ շատ ճիշդ տեսութիւններն աւելորդ է հոս ուղղելու ջանալ. վասն զի ցայս վայր ըսուածը բաւական է խնդիրը լուսաւորելու:

| ԿԱԼԻՍԹԵՆԷՍ | ԽՈՐԵՆԱՑԻ |
|---|---|
| (ճԻԶ եւ ճԻԷ. էջ 64, 1–65, 9:) | (Գ. գլ. իը. էջ 214, 10—215, 16:) |
| "Աղեքսանդրոս առեալ զզօրսն եւ ճանապարհաւ անցեալ գնաց ի Թեբայիս...: Եւ Թեբայեցիքն աղխեցին զդրունսն Ես ոչ հրեշտակ անգամ առաքեցին առ նա. (Ես ոչ զնորայն ընկալան[3]) այլ | "Իսկ Շապուհ եկեալ ի Տիգրանակերտ, դարձեալ աղխեցին ընդդիմանալ: (Խոր. Գ. իզ. "Ես ոչ հրեշտակս առաքեաց [Անտիոք] առ նա, ես ոչ զնորայն ընկալա:) Եւ ելեալ ի պարիսպն աղաղակէին. |

[1] ZDMG. 1886, I. S. 88.

[2] Ի թերթին Fleckeisen's Jahrbücher für Philolog. CXXXI. 1885, S. 312f. 316. 321. 324. 389. 348.

[3] Այս խօսքը դուրս ինկած է գրչագրաց անմտադրութեամբն անշուշտ: Յայտնի նշան է այն՝ որ Խորենացի ունի զայն, ինչպէս նաեւ A բնագիրը, թէեւ BC չունին:

դէմ յանդիման ճակատեալ քզինեցան ընդդէմ Աղեքսանդրի: Եւ եկեալ է մերձ պարսպին զինուորք հինգհարիւր[1] ձայնեցին առ Աղեքսանդր եւ ասեն, եթէ կամ պատերազմ տուր կամ ի բաց գնա: Եւ Աղեքսանդրու ծիծաղեալ այսպէս ասաց. Ով քաջ թերայեցիք....[2] որք դուք զանձինս արգելեալ փակեցէք ընդ պարսպօք, եւ արտաքոյ յօդական շրջան արկանէք[3]: Քանզի քաջ արանց է յայտ եւ յարձակ դաշտի կռուել, եւ կանանց գործ է արգելուլ եւ փակել զինքեանս յերկիւղէ առ հանդերձելոյ կռուոյն[4]:

Գնա ի մէնջ Շապուհ, զի մի չարիս յերկրորդումս ընդ քեզ առաւել եւս քան զառաջինն անցուցանիցեմք պատերազմաւ: Եւ նա պատասխանեաց. Ո՛վ քաջք ի Հայոց, որք զանձինս արգելեալ փակեցէք ընդ Տիգրանակերտի պարսպովք եւ արտաքոյ շրջան արկանէք սպառնայեաց: Զի քաջ արանց է յարձակ դաշտի եւ յայտ տեղւոջ կռուել, եւ կանանց գործ է արգելուլ փակել զինքեանս յերկիւղէ առ հանդերձելոյ կռուոյն....[5]

---

[1] Յոյնն է. "Առաքեցին զինուորս ձայնել ի պարսպացն առ Աղեքսանդրոս." ուստի "հինգհարիւր" թիւը չունի:

[2] Հոս երկար հատած մ'ունի հայ թարգմանութիւնն, զոր աւելորդ համարեցանք դնել համեմատութեան մէջ: Այս կտորն է. "Ով քաջ թեբայեցիք, զի՞ արգելեալ փակեցիք զձեզ ի ներքս ի պարսպիդ եւ արտաքոյ հրաման տայք կռուել (Յոյն յաւելու. "կամ ի բաց գնալ:") Նա եւ ես վասն կռուոյ եկեալ եմ (այս խօսքը չունի Յոյնը.) եւ կռուեցայց ընդ ձեզ (Յոյն յաւելու. "երդուեալ իմ յԱրամազդ.,") ոչ իբրեւ առ քաջս [Յոյնն ունի ուրիշ նման անճահ խօսք մը. οὐχ ὡς πρὸς πολεμικούς, զոր M ջնջել կ'առաջարկէ] եւ քաջ արս եւ հմուտս պատերազմական արոյ (Յ. "հմուտս պատերազմաց.") այլ իբրեւ առ դեղջուկս եւ տգէտս (Յ. ὡς πρὸς ἰδιώτας) եւ կարի երկնչոտս. քանզի աշա զամենեսին նիզակակուր հնազանդս ունիմ. (πάνυ γὰρ ὑπὸ τὸ δόρυ πάντας ἔχω.) (Յ. յաւելու. "որ փակեցէք զանձինս ի ներքս ի պարիսպս:,") Քանզի քաջ արանց է" եւն:

[3] Յոյնն հոս չունի այս խօսքն ամբողջ, այլ նման խօսք մը վերը: Հմմտ. նախընթաց ծանօթութիւնը: "Յօդական" բառն անյարմար է հոս:

[4] Յոյն բնագիրը կրճատ է հոս՝ այսպէս. γυναικῶν δὲ ἔργον κατακλείεσθαι [cod. add. -δίνας τοὺς μέλλοντας.]

[5] Խորենացի հոս կը յաւելու. Շապուհ յոյն գերելոց բսաւ թէ կ'ազատէ զիրենք՝ եթէ անոնց օգնութեամբ քաղաքն առնու: Ասոր համար է՝ որ քիչ մ'ետքը կ'ըսուի. "իսկ Յունաց մատուցեալ... զկոչեցեալ էշսն:,,

Զայս ասացեալ հրամայեաց հազար[1] հեծելոց շուրջ ընթանալ արտաքոյ զքաղաքաւն եւ նետիւք խոցոտել ի վերայ պարսպացն[2]: (Յայս վայր, էջ 64, 1—25:)

(Էջ 64, 31—34:) Եւ զկոչեցեալ խոյսն[3] մեծաւ բռնութեամբ յեցուցանել առ պարսպացն քակտումն: Եւ է այս գործի[4] մեքենայից անուաւոր յերից զինուորաց բռնի մղելով տանել, եւ ի հեռուստ արձակեալ լինի առ պարիսպն եւ դիւրաւ յանդուգն յարձակմամբ զկարէ քաջ հիմնելոյ եւ զյարմարեալ որմանն ի բաց տապալել ընկենուլ[5]: (Էջ 64, 25—30:) Իսկ այլ հազար[6] զօրականաց հրաման ետ կացնօք եւ երկսայր սա-

Եւ պարսկական զօրուն շուրջ զքաղաքաւն հրամայեաց ընթանալ եւ նետիւք խոցոտել զի վերայ պարսպին:

Եւ Յունացն մատուցեալ մեծաւ բռնութեամբ յեցուցին ի պարիսպն զկոչեցեալ էշսն: Եւ է այս գործի մեքենայից անուաւոր յերից երից արանց մղելով տարեալ[7]: Եւ (հրաման էր) ի ներքուստ կացնովք եւ սակրօք երկբերանովք[8] եւ կտցաւոր մրճովք՝ փորել զհիմունսն: Եւ ի խախտ խարխար արարեալ զայն, որ է հայկազնոյն Տիգրանայ հիմնեալ եւ յարմարեալ որմանքն, տապալել ընկեցին: Եւ հուր ի դրունսն

---

[1] Յոյնն է «չորեքհազար:»

[2] Յոյնն է. τοὺς ἐφεστῶτας [cod. ἑστῶτας.] Խորենացի լաւ եւս «զի վերայ պարսպին,» այսինքն «զառ ի վերայ պարսպաց կացեալս» եւն:

[3] Տպագրին մէջ «կոչեցեալ խոյս» է: «Խոյ» չունի Խորենացի, այլ «Էշ»: Յոյնը համեմատ է հայոյն. (τοὺς καλουμένους κριούς.)

[4] Տպագիրն է. «եւ է այս գործ ի մեքենայէ.» գրչաց սխալ:

[5] Յոյնն է. «եւ է գործին կազմեալ յերկաթոյ եւ ի փայտից անուաւոր» (ἔστι [A ἔτι վրիպմամբ] τε τὰ ὄργανα διά τε σιδήρου καὶ ξύλων κατασκευασμένα διὰ τροχῶν.) «Երից» չիք յունին մէջ, նոյնպէս եւ «յանդուգն յարձակմամբ:»

[6] Յոյն. «երկուց հազարաց:»

[7] Այս տեղ վերջակէտ եւ յաջորդ նախադասութեան մէջ «հրաման էտ» բառերը դնելն անհրաժեշտ է: Տպագիրն է (գրչաց վրէպ գրչութեան պատճառաւ.) «Գործի մեքենայից անուաւոր, յերից երից արանց մղելով տարեալ, եւ ի ներքուստ կացնովք եւ սակրօք... փորել զհիմունսն:» Որմէ կրնար այս անհեթեթ հետեւութիւնը հանուիլ՝ իբր թէ խոյ մեքենային տակն են եղեր կացիններն եւ սակուրք:

[8] Անհնար է որոշել թէ որն էր նախնականը, «Երկբերան» (Խոր.) թէ «երկսայրի:» Յոյնը πέλυξι διστόμοις է, որ երկու կերպով ալ կրնար թարգմանուիլ:

կրօք եւ երկայնահատ մրճօք եւ երկայնագոյն նգօք[1] փորել շինուածս։ Եւ այն որ յԱմփիոնեայ եւ ի Զեթոսէ եղբարցն[2] ի քնարէ յարմարեալ պատկանեցան քարինքն, նգախարխար[3] տանելով ի վայր արկանել...[4]։ (Էջ 65, 5—9։) Ամենայն տարէք հուր, սուր[5] եւ քարինք եւ նետք եւ տէգք յղեալ լինէին ի քաղաքն..[6]։ եւ յամենայն կողմանսն վառեալ, եւ քարինք եւ նետք եւ տէգք յորդառատեալ լինէին, եւ խոցոտեալ մերքն յապուշ դառնային։ Եւ ի ներքս մտեալ բոլոր զօրքն եւ յետն պարսկական ու [illegible] մինչեւ ապաժոյժ սպանելոցն լցեալ ի հիմունսն ծաւալէր[7]։ Այլ յունա-

---

[1] Հ բաւական ճոխ։ Յոյնն է. Ἐκέλευσεν ἀξίνῃσι (cod. ἐν ἀξίνεσι) καὶ πέλυξι διστόμοις (Խոր. "երկբերան", իսկ Կալ. "երկսայրի") καὶ μακροτάτοις ὄνυξί τε [Խոր. "կ[illegible] մրճովք." Կիլոտեմայսթէր BC բնագրաց -ταμος գրածը կ'ուզէ ուղղել μακροτόμος, միաբան է առոր Հ. որ "երկայնահատ" կ'ըսէ.] [καὶ] σιδηρίοις μοχλοῖς ὀρύσσειν κτλ.

[2] "Զեթոս" անունը Հ եւ Լեւոն Ալագերեց միայն ունին։

[3] Յոյնը. τοὺς .. λίθους ... διαμοχλεύοντας καταρίπτειν. Հոս կը յաւելու յոյնը. Πῦρ δὲ ταῖς πύλῃσι προσφέρεσθαι. (Հուր արկեալ ի դրունս։) Ասոր համեմատող նախադասութիւնը Խորենացւոյ քանի մ'օրինակաց մէջ քիչ մ'ետքը կու գայ։ Հ չունի զայս, բայց Խորենացւոյ ինչ ինչ օրինակք ունին։

[4] Հոս Հ. կ'ըսէ. "Եւ ինքն այլ եւս հազար պարսաւորօք սպանանելով ի բաց բրել ընկենուլ զթերաս շուրջ գայր։" Յոյնը քիչ մ'այլազգ ունի այս խօսքը։ "Ամենայն ուրեք" տպագրին մէջ սխալմամբ այս նախադասութեան վերջը կցուած է։

[5] "Սուր" չիք ի յոյն։

[6] Հոս յոյնն ընդարձակ կտոր մ'աւելի ունի, որուն սկիզբն է. "իսկ Թեբացիք ի պարսպաց անկանէին վերաւորեալք" եւն եւն։ Հայ թարգմանութեան արդի օրինակք չունին զայս. բայց կար նախնաբար։ Ասոր նշանն է այն՝ որ քանի մ'ուրիշ օրինակք ունին սոյն խօսքը [illegible] այլափոխելու։ Ասկէ է դարձեալ Խորենացւոյ գրածը. "Եւ ի ներքս մտեալ բոլոր զօրքն։" Ուստի Խորենացի լաւագոյն օրինակ մ'ունէր առջեւ, կամ ճիշդ եւս՝ Խորենացի չէր զանց ըրած թարգմանել նաեւ այս կտորը։

[7] Այս խօսքը, զոր Խորենացի ունի, կար նախնաբար Հայ թարգմանութեան մէջ անշուշտ. իսկ արդի օրինակաց մէջ դուրս ինկած է։ Խորենացի երկու բան ("Նախակերտ" եւ "Կադմեայ") չէ օրինակած, վասն զի յոյնն է։ Πολλῷ δὲ λύθρῳ ἀνθρωπίνῳ κατεβρόχη τὰ πρωτοπαγῆ

Բայց ձեռն կարկառ Մա- կեդոնական ոչ վարանէր զբազմախողխող երկաթն ա- րեամբ արբուցանել[1]։ Անօգ- նականք Թեբայեցիքն մտօք կոյրք՝ յԱղեքսանդրէ կո- րուսեալք լինէին։

կանն ձեռն ի քթթել ական հրձիգ առնէր զամե- նայն փայտակերտսն։ Եւ Շապհոյ զմնացեալսն ի կո- տորածէն գերեալ, չուէ ի Պարսս.„ եւն։

Այս կտորն ամէնէն նշանաւորն է, որմէ կը տեսնուի թէ՛ Խորենացւոյ բռնած ընթացքը, եւ թէ՛ երկու բնագրաց յարաբերութիւնքը։ Պէտք չենք տեսներ հոս պարզելու այն դիտողութիւնքը, որ ի հարկէ կը ծնանին, եթէ ի ստորեւ դրուած ծանօթութեանց միտ դրուի։ Վասն զի եթէ մէկ կողմանէ կը հաստատուի այն կարծիքը՝ թէ հայ օրինակը ծայրէ ծայր ԺԳ դարուն ապականեալ ըսել անհնար է. միւս կողմանէ կը հաստատուի նաեւ այն՝ որ շատ ու շատ տեղ աղաւաղմունք կրած է հայ օրինակը գլխաւորաբար գրչաց ձեռքէն։ Նոյն իսկ այս հատածիս մէջ տեսանք կտորներ, ո- րոնք դուրս ինկած են բոլորովին կամ ընդարձակ հատածէն հազիւ նշխարք մ'ազատած։ Նմանապէս մանրամասնութեանց մէջ տեղ տեղ Խորենացի շատ աւելի լաւ օրինակ մը կը ցուցընէ։ Ասոր հակառակ քանի մը տեղ ալ Խորենացւոյ արդի օրինակք ա- ղաւաղ եւ կրճատ կը տեսնենք։ Այս վերջին կէտին շատ մտադիր չեղանք ծանօթութեանց մէջ՝ մեր տեսակէտէն դուրս համարելով։

Բնագրաքննական այս խորհրդածութեանց առթիւ չենք կրնար չդնել հոս յիշեալ Կիլտեմայս- թէր գերմանացի գիտնականին այս նկատմամբ ըրած

---

Καδμεῖα θεμέλια. (բազում մարդկան արիւն թանայր զնա- խակերտ հիմունս Կադմեայ.„)

[1] "Բայց ձեռն կարկառ Մակեդոնական„ բառերը յունին մէջ ուրիշ նախադասութեան մը մասն են, այսպէս. Καὶ πυρὶ κατεφλέγετο πᾶσα Θηβαίων πόλις χειρὶ Μακεδονικῇ, (ամենայն քաղաքն Թեբայեցւոց հրով ծախեցաւ Մակեդոնական ձեռամբ.) յաջորդ մասն է. οὐκ ἔμεινε τὸν πολυσφαγῆ σίδηρον αἱματόεσσα.

քանի մը դիտողութիւնքն: “Այն մանր կտորները, կ'ըսէ նոյն գիտնականը,[1] զոր աւելի ունի Խորենացի, եւ որոնք կը գտուին յոյն բնագրին մէջ, պէտք է ըսել որ ապահովապէս կային նախնաբար Հայ թարգմանութեան մէջ, եւ ապա նոր ձեռագրաց մէջ՝ որոնցմէ եղած է տպագրութիւնը, դուրս ինկած են յետոյ. այսպիսի երեւոյթ մը կը տեսնուի յաճախ նաեւ գրոց յոյն օրինակաց վրայ: Ուստի Խորենացի այսպիսի մանր կտորներուն մէջ աւելի հին եւ հարազատագոյն օրինակ մը կը ներկայացընէ: Այս մանր հատածը կը հաստատէ ընդհանրապէս որ Հայ թարգմանութեան հիմն է α բնագրախումբը, բայց տեղ տեղ β խմբէն ալ կտորներ ունի: Իսկ Խորենացւոյ պատմագրութեան նկատմամբ կը գտնենք՝ որ Մխիթարեանց հրատարակած բնագիրը շատ աւելի նման է Կալիսթենեայ Հայ թարգմանութեան հետ. մինչդեռ Վիստոնեան բնագիրն աւելի այլայլեալ կ'երեւայ ըստ այսմ: Սակայն այս վերջնոյս քով կայ այն խօսքը, զոր գտանք նախնական բնագրին մէջ, եւ որ Մխիթարեանց բնագրին մէջ իբրեւ ընթերցուածոց տարբերութիւն նշանակուած է: Զարմանք է որ նաեւ Հայ թարգմանութիւնը չունի այս խօսքը[2]:„

Նոյն գիտնականը խնդիր կը յուզէ դարձեալ՝ թէ Խորենացի՞ արդեօք գործածած է Հայ թարգմանութիւնը թէ Հայ թարգմանիչը Խորենացւոյ գիրքը: Արդ որովհետեւ անհնար է ընդունիլ՝ որ թարգմանիչը կարենար մտադիր ըլլալ՝ թէ Խորենացւոյ գրոց մէջ ինչ ոճերով եւ դարձուածով թարգմանուած են Ստոյն-Կալիսթենեայ այլեւայլ կտորները, որպէս զի ինքն ալ անոնց բառ առ բառ հետեւիլ կարենար իւր թարգմանութեան մէջ, կը հետեւի, կ'ըսէ, որ Խորենացի օրինակեր է Հայ թարգմանութենէն: Այս նկատմամբ աւելորդ է

[1] ZDMG. 1886, I. 90—91.
[2] Համմ. վերը՝ էջ 67. ծանօթ. 3:

խօսիլ. ցայս վայր տեսածնիս բաւական է ցուցընելու ամենայն ապահովութեամբ Խորենացւոյ օրինակած ըլլալը, սա տարբերութեամբ՝ որ Խորենացին օրինակած է նոր թարգմանութենէն։

Ի սկզբանէ ի վեր Խորենացի կարծուած է թարգմանիչ Կալիսթենեայ։ Այս կարծիքն ի սկզբան տարակուսանօք, ապա հետզհետէ աւելի հաստատութեամբ կ'աւանդուի գրեթէ ամէն անգամ, երբ գրոցս թարգմանութեան վրայ խնդիր կ'ըլլայ։ Հայկազնեան Բառագրոց հաւաքիչք, ինչպէս վերը տեսանք, դեռ եւս չեն փորձեր հայ թարգմանութեան թարգմանիչ հռչակել զԽորենացի։ Սակայն արդէն գրոցս հրատարակիչը Հ. Ռափայէլ Վ. Թրեանց կը գրէ[1]. "Վասն ժամանակի հայ թարգմանութեան մատենիս թէպէտ եւ չիք պատմական յիշատակ, բայց այլ հաւաստիք ոչ թեթեւ, որպէս ինձ թուի։ Զի եւ այլեւայլ հատուածք բանի եւ ոճք բառից եւ իմաստից յԱղեքսանդրի պատմութենէս ցրուեալ ի պատմութեան Խորենացւոյն՝ աներկբայ երեւի առ երանելի թարգմանչօք եղեալ թարգմանութիւն մատենիս. զոր թէ ոչ առ ստէպ ընթերցանութեան մատենիս վարեալ իցէ զայնոսիկ ի գրութիւնս իւր քերթողահայրն, տողանս նոյն իցէ եւ Նարեկացին, թէ չսխալեմ։ որպէս եւ սովորեալ է այր գրաւոր զնոյն ոճ բանի վարել յայլեւայլ մատեանս ուր դէպք տայցեն։ Եւ դարձեալ նմին Խորենացւոյ ախորժակացն եւ սաստիկ մատենայած հըմտութեան կարի պատկանաւոր՝ պատմականացն հայեցի թարգմանութիւնք։" Նմանապէս դատեցին նաեւ ուրիշները՝ մերթ կարծեօք խօսելով, ինչպէս Հ. Ղ. Վ. Ալիշան[2], եւ մերթ հաստատութեամբ, ինչպէս վերը յիշեալ հատուածոյն մէջ Հ. Ա. Սուքրեան։ Մանաւոր հատուածով ջանաց ապա

[1] Պատմ. Աղեքս. Յառջբ. էջ 7—8։
[2] Բազմավէպ, 1847, էջ 153։

Քննութք[1] ցուցընելու «ոչ իբր կարծիս, այլ իբր հաւաստիս,» թէ Խորենացւոյ այլեւայլ թարգմանութեանց մէջ գլխաւորքն են՝ Սուտ-Կալիսթենէս, Փիլոն, Նազիանզացւոյ եւ Նիւսացւոյ ճառք։ Գլխաւոր կռուանն այն է՝ որ «Մեր բազմերախտ Պատմահայրն նկատելով զիւր զամենայն թարգմանութիւնս իբր սեպհական ստացուածս, ոչ ինչ խղճած է յեռուլ ի նոցանէ պատառիկս բազումս ի Պատմութեան իւրում, ի Ներբողինին Հռիփսիմեանց ... եւ մինչեւ անգամ յԱշխարհագրութեանն։»

Առանց որ եւ իցէ ծանրակշռութեան չեն այս յարմարութեան ցուցմունք։ Հինգերորդ դարու մեզի ծանօթ անձանց մէջ չենք գիտեր ուրիշ մ՚որ ախորժակ ունենար Սուտ-Կալիսթենեայ նկարագրաւ գիրք մը թարգմանելու, ինչպէս զինքը կը գտնենք մի միակ՝ առաւել սիրով յունական արտաքին գրոց, հռետորաց եւ պատմաբանից։ Անշուշտ Խորենացւոյ այս ճաշակն եւ ուղղութիւնը քիչ պատրուակ եւ զէնք չեղաւ զինքն հալածողաց ձեռքը, որոնք ըստ վկայութեան Ղազարու[2] «զտգիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեան Փոթողէկէս կոչէին։» Հրատարակիչք այս բառը կը մեկնեն՝ թէ հաւանականագոյնս լատիներէն Fatalicus (ճակատագրական) կամ Fatuelis (պատգամական) բառէն է։ Զինչ եւ իցէ՝ Խորենացւոյ գրոց եւ ոչ մին կրնար այս անուամբ կոչուիլ, բայց եթէ Սուտ-Կալիսթենէս, որուն ծայրէ ի ծայր զուտ հեթանոսական, արտաքին եւ տեղ տեղ նաեւ անվայելուչ նկարագիրը մեծ զէնք կրնար ըլլալ իւր հալածիչ աբեղայից։ Կարծենք այս խորհրդածութիւնը բաւական զօրաւոր է վերը յիշուած ուրիշ խորհրդածութեանց հետ։ Նաեւ լեզուի կողմանէ՝ Խորենացւոյ Պատմութիւնը,

---

[1] Քննութք, Բ. էջ 29—63, մանաւանդ 31—34։

[2] Ղազար Փարպ. Թուղթ, տպ. Վենետ. 1873. էջ 607—608.

Սուտ-Կալիսթենէս, (որուն լեզուին վրայ յետոյ կը խօսինք,) Փիլոնի ճառք եւ այլք՝ որ Խորենացւոյ կ'ընծայուին, աներկբայ սերտ կապ կը ցուցընեն շատ մը նման ոճերով եւ սեպհական եւ յատուկ բացատրութեանց եւ ասութեանց մէջ միօրինակութիւն ցուցընելով։ Պատահական չի կրնար ըլլալ ի վերջոյ եւ այն՝ թէ ինչու Խորենացի միայն եւ միայն այս գրքերէն առատութեամբ փոխ առած է իր Պատմութեան մէջ, (Հմմտ. Քննասէր.) մինչ ուրիշ թարգմանութիւններէն դոյզն կամ ոչինչ, այնպէս որ կարելի է ըսել թէ իբր գիւր ստացուած՝ այնպէս գործածած է այս քանի մը գիրքը, եւ ի մասնաւորի զԿալիսթենէս։ Հուսկ յետոյ ճշդիւ Գ. գրոց մէջ՝ ուր ամէնէն աւելի մեծամեծ կտորներ կը հիւսէ իր գրոց մէջ Խորենացի, կը գրէ նոյն ծերութեան պատճառը. (Գ. գլ. կե.) "Զի եւ ես այր եմ ծերացեալ եւ հիւանդոտ եւ անպարապ ի թարգմանութեանց։" Այս խօսքով կարծես թէ մատնանիշ կ'ընէ իբրեւ իր իսկ աշխատասիրութիւն՝ այն գրքերը, որոնցմէ քիչ մը յառաջ քաղուածքներ կ'ընէ։ Այս ամենայն կշռելով՝ չի կրնար ուրացուիլ որ հասարակաց թարգմանիչ կարելի է կարծել զԽորենացի Կալիսթենեայ գրոց, թէեւ արտաքին դրական ցուցում չունենանք։

Թէ երբ թարգմանած է Խորենացի այս գիրքը՝ որոշ չենք գիտեր։ Ընդհանրապէս կ'ըսուի թէ "կամ յետոյ կամ յառաջ քան զիւր պատմութիւն[1]." յայլոց՝ թէ աւելի այն ատեն՝ երբ Աթէնք էր[2]. վերջապէս ոմանց ալ կ'երեւայ թէ Պատմագրութեան գրուելուն հետ ի միասին եղած է թարգմանութիւն ինչ ինչ գրոց[3], ուստի թե-

---

[1] Բազմավէպ, 1878, Ա. էջ 9, ա, 33։

[2] Բազմավէպ, 1883, էջ 119, բ, 23. (բայց ոչ շատ որոշ է հեղինակին խօսքը։)

[3] Քննասէր, Բ. էջ 33։ Սակայն կ'երեւայ թէ հեղինակը զԿալիսթենէս պատմութենէ յառաջ թարգմանուած

րեւս եւ Կալիսթենեայ։ Չի կրնար ուրացուիլ որ Կալիսթենեայ լեզուէն դատելով՝ աւելի լաւ է թերեւս ըսել՝ որ երիտասարդութեան ժամանակ յԱթէնս կամ յԱղեքսանդրիա թարգմանուած էր։ Սակայն կարելի է նաեւ որ վերջէն եւ այն՝ պատմութեան հետ ի միասին, երբ "անպարապ ի թարգմանութեանց" կ'աշխատէր գրել իւր պատմութիւնը, թարգմանուած ըլլայ։

Թերեւս այս կարծեաց նպաստէ սա դիտողութիւնը։ Խորենացի աւելի քան քանի անգամ գործածած է Կալիսթենեայ գիրքը. սակայն միշտ աստիճանաւորութիւն մը կը գտնենք։ Նախ՝ առաջին գրոց մէջ եւ ոչ անգամ մը գործածած է. հազիւ հինգ անգամ Բ. գրոց եւ մնացեալը (աւելի քան ԺԵ անգամ) Գ գրոց մէջ, ինչպէս ի ստորեւ դրուած ցանկէն կը տեսնուի[1]։ Մտադրութեան արժանի է

---

կ'ենթադրէ այնու՝ որ Խորենացւոյ "անպարապ եմ ի թարգմանութեանց" խօսքը Փիլոնի եւ Նազիանզացւոյ ճառից համար կ'առնու. իսկ այլոց համար կ'ըսէ թէ "Ի թարգմանութեանց տասի զոմանս անշուշտ յառաջ քան զՊատմութիւն իւր աւարտած է Խորենացի։"

[1] Որպէս զի պայծառ գաղափար ունեցուի այս ըստ մեզ մտադրութեան արժանի պարագային, հոս կը դնենք տախտակ մը այս փոխ առեալ տեղերուն։

Խորենացւոյ, Ա. Գիրք. փոխ առեալ կտոր չկայ։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Խորենաց. | Բ. Գիրք. | Գլ. | ԼԳ = | Կալիսթ. | ԼԹ. (էջ 20)։ |
| " | " | " | ԽԶ = | " | ՃԺԶ. (էջ 58)։ |
| " | " | " | ԿԲ = | " | ԼԱ. (էջ 16)։ |
| " | " | " | ԿԳ = | " | ԾԹ. (էջ 28)։ |
| " | " | " | ՀԹ = | " | ԼԲ. (էջ 16)։ |
| Խորենաց. | Գ. Գիրք. | Գլ. | Ը = | " | ԾԱ. ՃՀԹ եւ ՄԺԹ (էջ 25, 134)։ |
| " | " | " | ԺԵ = | " | ՃԾ. (էջ 86)։ |
| " | " | " | ԺԹ = | " | ՃԻԲ. (էջ 61)։ |
| " | " | " | ԻԱ = | " | ՄԿԲ. (էջ 173)։ |
| " | " | " | ԻԶ = | " | ՂԹ. եւ Ճ. (էջ 47—48)։ |
| " | " | " | ԻԸ = | " | ՃԻԶ. եւ ՃԻԷ. (էջ 64—65)։ |
| " | " | " | ԼԲ = | " | ԾԸ. (էջ 28)։ |
| " | " | " | Խ = | " | ԽԹ եւ ՃԻԲ. (էջ 23 եւ 60)։ |
| " | " | " | ԽԵ = | " | Դ. (էջ 3)։ |

եւ այն՝ որ Բ. գրոց մէջ առաջին անգամ յիշած ատեն չէ գործածած խօսք կամ բառ օրինակելով, այլ պատմական ակնարկութիւն մ՚ընելով միայն այսպէս[1]. “Նեքտանեբոս այս վերջին թագաւոր է Եգիպտացւոց ի Մանեթոսէ պատմեալ, զոր ոմանք հայր Աղեքսանդրի ասացին[2]:„ Արդ մտադրութիւն կը գրգռէ այն պարագայն՝ որ Բ. գրոց մէջ եղած բոլոր փոխառութիւնք Կալիսթենեայ գրոց առաջին մասերէն են. այսինքն ԼԱ (էջ 16.) ԼԲ (էջ 16.) ԼԹ (էջ 20.) ԾԹ (էջ 28) եւ ամենէն վերջը ՃԺԶ (էջ 58.) հատուածներէն առնուած են: Իսկ Գ. գրոց մէջ Կալիսթենեայ ամէն մասէն անխտիր առնուած կտորներ կը գտնենք. այսպէս մէկ կողմանէ Դ (էջ 3), միւս կողմանէ ՄԿԲ (էջ 173): Այս ամէնը դիւրաւ կը մեկնուի այսպէս: Այն՝ որ Խորենացի առաջին գրոց մէջ ամենեւին չէ գործածեր զԿալիսթենէս, նշան է՝ թէ այն միջոցին դեռ չէր թարգմանած սոյն գիրքը: Երբ Բ գրոց ԺԳ գլուխը կը գրէր՝ սկսած էր անշուշտ թարգմանութիւնը: Գոնեայ իբրեւ պատմական աղբիւր սկսած էր գործածել, վասն զի իբրեւ այսպիսի կը յիշէ, ինչպէս վերը դրինք, թէ “զոր ոմանք հայր Աղեքսանդրի ասացին„ — Անցողակի յիշենք որ խօսելու այս կերպը կը ցուցնէ միանգամայն՝ որ շատ յարգ չէր դներ Խորենացի Կալիսթենեայ այս խօսքին[3]. եւ անշուշտ աւելի իբրեւ հռետորական գործ մը թարգմանելու ձեռնարկած էր, քան իբրեւ պատմական գիրք: Խորենացւոյ պատմութեան մէջ բռած այլեւայլ ակնարկութիւնք կը ստիպեն զմեզ հաստատելու՝ որ չէր կրնար Խորենացի գրոցս շատ մը կտոր-

---

Խորենաց. Գ. Գիրք. Գլ. ԾԵ = Կալիսթ. ՄԳ. (էջ 119):
„ „ „ ԾԸ = „ ՀԱ. (էջ 33):
„ „ „ ԿԲ = „ ԴԷ. էջ 47):

[1] Խոր. Բ. գլ. ժգ. էջ 86, 1—3:

[2] Հմմտ. Պատմ. Աղեքս. Ա—ԼԳ:

[3] Այսպէս դատեց կանխաւ նաեւ Zacher, Pseudo-Call. S. 87.

ներուն հաւատք ընծայել։ Զայս ստուգութեան կը հաստընէ Խորենացւոյ Աշխարհագրութեան վերջը գրած մէկ խօսքը, զոր քիչ մ'ետքը կը տեսնենք։ Սակայն ի հարկէ շատ մասերն ալ պատմական կը համարէր անշուշտ, ինչպէս նոյն կարծիքն ունեցած կ'երեւայ նաեւ Փարպեցի։ Բայց այս խնդիրն այժմ մեր նպատակէն դուրս կը մնայ։ —

Անշուշտ Խորենացի իւր պատմութեան երկրորդ գրոց կէսերը հասած ժամանակ՝ բաւական յառաջացած էր Կալիսթենեայ թարգմանութիւնը. գոնէ ապահովապէս մինչեւ ՃԺԶ (էջ 58) հատածը։ Երկրորդ գրոց այս մասէն մինչեւ երրորդ գրոց սկիզբն անցած կ'երեւայ բաւական ժամանակ. վասն զի Գ գրոց սկիզբն արդէն ամբողջ Կալիսթենէս թարգմանուած կը գտնենք։ Նոյն գրոց արդէն սկիզբն (Ը գլխոյ մէջ) Աղեքսանդրի Վարուց վերջերէն (ՄԺԹ.) եւ քիչ մ'ետքը (Խոր. գլ. իա) գրեթէ կատարածէն (ՄԿԲ.) հատածներ առած է Խորենացի։

Այս տեսութիւնն եթէ ստուգուի՝ քիչ շատ ապահովութեամբ կրնանք գտնել նաեւ թարգմանութեան տարին։ Խորենացի ըստ ոմանց գրեց իւր պատմութիւնը 480—483 տարեաց մէջ[1]. այս կարծեաց համեմատ Կալիսթենէս իբր 482ին պէտք է թարգմանուած համարիլ։ Այլք աւելի ուշ կը դնեն Պատմութեան յօրինումն, այսինքն 486—490 տարեաց մէջ, Փարպեցւոյ պատմութեան գրութիւնը 485—486 դնելով եւ իւր թուղթը "յելս հինգերորդ դարուն կամ ի մուտս վեցերորդին[2]։„ Ըստ այսմ կարծեաց իբր 487—488 տարին պէտք է կարծել թարգմանութեան ժամանակը։ Բայց որովհետեւ ստոյգ է՝ որ Ղազարայ թղթէն շատ յառաջ էր թարգմանութիւնս, իսկ այս թուղթն ոմանք

---

[1] Հմմտ. Հանդէս Ամսօրեայ, Ա. 1887, Թիւ 1. էջ 11.
[2] Քննասէր, Բ. էջ 7—28, ի մասնաւորի 9, 11 եւ 15,

488—90 կը գնեն գրուած[1], ըստ այսմ երրորդ կարծեաց 487 քիչ մ'ուշ կ'ըլլայ։ Զինչեւիցէ՝ քիչ շատ ապահովութեամբ կրնանք ըսել՝ որ քննադէրի 486—490 տարիները քիչ մ'ուշ են կալիսթենեայ թարգմանութեան համար։ Վասն զի եթէ Ղազարայ թուղթը կանուխ քան զպատմութիւն գրուած ընդունինք, եւ Գր. Խալաթեանցի հետ 488—491 տարիները դնենք գրուած, Խորենացի գոնէ այս վերջին կէտէն շատ յառաջ մեռած էր (ըստ վկայութեան նոյն թղթոյ)[2]։ Թէ Խորենացւոյ Նզովքները Մանդակունւոյն յաջորդին համար են միայն, ուստի թէ Խորենացի չէ տեսած Սամուէլ Արծկեցւոյն կաթուղիկոսութիւնը, ինչպէս վրիպմամբ կը կարծէ քննադէր (էջ 28), յայտնի է նորագիւտ նամակէ մը, որմէ գիտենք՝ թէ 508ին Բաբգէն էր կաթուղիկոս, եւ որուն ժողովակից կը գտնենք "Թաթուլ Արշարունեաց եպիսկոպոս,„ որ երրորդ յաջորդ էր Խորենացւոյ յեպիսկոպոսութեան[3]։ Նաեւ այս՝ կարծենք՝ 490էն յառաջ դնել կը ջորդորէ Խորենացւոյ մահը։ Սակայն եթէ որեւիցէ դիպաց մէջ ստիպուինք իսկ ընդունիլ քննադէրի այն կարծիքը՝ թէ Փարպեցի գրած է իւր պատմութիւնը նախ քան զթուղթն, եւ այն՝ 485—486 տարիները, նաեւ այս կը հաստատէ վերը դրուած 482 տարւոյն

---

[1] Գր. Խալաթեանց, Ղազար Փարպեցի եւ Գործք նորին, Մոսկուա, 1883, էջ 47։

[2] Ղազար. Փարպ. տպ. Վենետ. 1873, էջ 607—608։

[3] Ցնդւոյս չէ այս կարեւոր կէտերը լուսաբանել, որուն վրայ մանրամասն խօսած է Հ. Ց. Գաթրճեան իւր մէկ ան. տիպ Հայ եկեղեցական պատմութեան քննական գործքին մէջ։ Թէ Թաթուլ երրորդ յաջորդն էր՝ գիտենք այժմ կամսարականաց տան եպիսկոպոսաց ցանկէն. (Ձեռ. մեր Մատ. Թիւ 44, Թղ. 192a, ա եւ բ։) Հոս կայ սա կարեւոր դիտողութիւնը. "Ի սրբոյն Գրիգորէ Բագրեւանդ եւ Արշարունիք միոյ եպիսկոպոսի վիճակ կարգեալ էին՝ մինչեւ ցվախճան քերթողահօրն երանելւոյն Մովսէս եպիսկոպոսի։ Ապա զատուցեալ Արշարունեաց եւ տան կամսարականաց Նախ եկաց եպիսկոպոս Կնդակ՝ ամս. խզ. բ. Ցովհան՝ ամս. ժա. գ. Թաթուլ՝ ամս. թ.„ եւն։ Ի հարկէ ցուցակիս ժամանակագրութիւնը քննելու է կանխաւ։

մերձաւոր թիւ մը։ Վասն զի Ղազար արդէն Եարէ-մանեանց տեսած է անշուշտ զԿալլիսթենէս։

Փարպեցի ոչ միայն Խորենացւոյ մատեանքն, զոր "Փաթաղիկէս" կը կոչէին այլք, չի կրնար պարսաւել, այլ եւ "լուսաւորիչ եւ ոգիտահալած" կոչելով կը գովէ[1]։ Թէ այս "Փաթաղիկէս" գրոց մէջ էր նաեւ Կալլիսթենէս, կրնանք նաեւ անկէ հետեւցընել՝ որ Փարպեցի տեսած եւ գործածած կ'երեւայ զայս՝ "ոգիտահալած" մատեաններէն մին։ Արդէն իւր Պատմութեան մէջ յիշած այն խօսքը՝ թէ Վահանայ քաջագործութեանց մէկը քան միւսկայ գերանդեաւ խոտ հնձելուն կը նմանի[2], Կալլիսթենեայ մէկ խօսքին[3] շատ նման կը հնչէ։ Բայց աւելի որոշ կը խօսի ուրիշ տեղ մը, ուր Վախթանգայ համար կ'ըսէ՝ թէ "իջեալ ի տեղիս ինչ դաշտացն՝ տայր երեւեցուցանել լոյս կրակաց բազմաց եւ կոճեղս ծառոց զինեալս այրանմանս, ըստ խաբէութեան մակեդոնացւոյ Աղեքսանդրի[4]։" Այս ակնարկած տեղն է Կալլիսթենեայ ՃՀԳ համառօտ ըն[5]։

Այսպէս կամ այնպէս 486 թիւը կարծենք պէտք ենք իբրեւ վերջին կէտ նկատել հայ թարգմանութեանս։ Որեւիցէ դիպաց մէջ ուղիղ չեն Կիլտէմայսթերի այս խօսքերը[6]. "Ապա եթէ Խորենացի փոխ առած է Կալլիսթենեայ հայ թարգմանութենէն, վերջնոյս ժամանակն որոշ գիտցած կ'ըլլանք, (այսինքն՝ ինչպէս եւ ցայսօր կը կարծուէր՝ Ե դարուն առաջին կիսուն,) աւելի քան Մխիթարեան Հարց կարծիքն՝ որ առանց ուրիշ ցուցմանց՝ գրոցս լեզուէն միայն դատելով Ե կամ Զ

[1] Փարպեցի, անդ, էջ 607։
[2] Փարպեցի, Պատմութիւն, ՁԸ. էջ 485։
[3] Պատմ. Աղեքս. ՃՁԸ. էջ 105. 10 եւն. "Եւ գերանդիքն յընթանալ կառացն հնձէին զբազմահոյծ պարսիկն որպէս յարտորայս զհասկս մշակքն հնձիցեն։"
[4] Ղազար Փարպ. Պատմ. տպ. 1873, էջ 404—405։
[5] Պատմ. Աղեքս. էջ 96, 9—26։
[6] ZDMG. 1886, I. S. 90.

դարու կը կարծէին։ Ի հարկէ այս ցուցումն նշանակութիւն չ'ունենար, եթէ ստոյգ ըլլայ Կուդշմիտի այն կարծիքը (Հմմտ. Encyclop. Brit. XVI. 862.) թէ Մովսէսի անուամբ լոյս տեսած պատմութիւնը 634—42ին գրուած է։„ Այս երեք նախադասութեանց ալ ինչ աստիճանի յարգ ունենալը՝ քաջածանօթ է, նաեւ վերջնոյն, (— ուրիշ խնդիր է Խորենացւոյ մատենին շատ մասանց յետամուտ օտար ըլլալը. —) ուստի աւելորդ է կրկնել հոս՝ ինչ որ ցայս վայր ըսինք այս նկատմամբ։

Զենք ուզեր լռել ի վերջոյ ուրիշ կարծիք մ'ալ, զոր յերեւան հանեց Պաումկարթներ[1]։ Այս գիտնականը մտադիր ընել տալով՝ որ, ինչպէս տեսանք, Խորենացւոյ փոխ առեալ ինչ ինչ կտորները հայ թարգմանութեան այնպիսի մասերն են, որ բնագրին մէջ մասամբ միայն կան կամ լի են Նօրգ-մաննչըն կողմանէ եղած յաւելուածներով[2], կը յաւելու սա խորհրդածութիւնը. "Որովհետեւ Խորենացի (այսինքն՝ փոխառեալ տեղերը) չէ թէ յոյն բնագրին, այլ հայ թարգմանութեան միաբան է, կը հետեւի որ կամ Խորենացիէն յառաջ էր այս թարգմանութիւնը եւ կամ նոյն իսկ վերջնոյս ձեռօք թարգմանուած։ Վերջին ենթադրութիւնը պէտք է ընդունիլ, որովհետեւ շատ անհաւատալի բան կ'ըլլար եթէ Խորենացի իւր փոխ առեալ սակաւաթիւ կտորներուն մէջ բոլորովին պատահական եղանակաւ թարգմանչէն աւելցուած այս տեղերն առնուր իւր գրոց մէջ. թէեւ բոլորովին անկարելի չէր եւ այս, ինչպէս Սեբէոս անգամ մ'այսպիսի կոչում ըրած է[3]։ Իսկ եթէ ինքն էր թարգմանիչ եւ նոյն յաւելուածոյ կտորները մուծանողը Սոյն-Կալխա-

---

[1] ZDMG. 1886, III. S. 505—506.

[2] Հոս ի լուսաւորութիւն գիտնականիս այս խօսքերուն՝ պէտք է կարդալ վերը՝ (էջ 45—46) Ցուշկապարկաց վրայ եղած հատածը։

[3] Հմմտ. վերը՝ էջ 42—43։

*թենեայ թարգմանութեան մէջ, կրնանք ուրեմն ըսել՝ որ անշուշտ կը պարծէր իւր Յուշկապարկայ պատմութեան յաւելուածոյ մասերը մուծանելուն վրայ. վասն զի յունական դիցաբանութեան՝ թէեւ դոյզն՝ տեղեկութեան նշան մըն էր, եւ անշուշտ Հայոց քով այսպիսի տեղեկութիւնք բաւական ցանցառ էին։ Ուստի եւ ճիշդ այս կտորն անգամ մ՚ալ Պատմութեան մէջ առնուլ ուզած է։ Այսպէս նաեւ Ճենաստանի ստորագրութիւնը, զոր անգամ մ՚արդէն իւր Աշխարհագրութեան մէջ[1] գրած էր, եւ որուն վրայ կը պարծէր անշուշտ՝ թերեւս վասն զի Պապպոսէն անկախ գրած էր այն կտորը, կրկին անգամ գրած է իւր Պատմութեան մէջն ալ[2], թէեւ նոյն կտորը հոն բոլորովին անկապ եւ բռնազբօսիկ եղանակաւ կցուած է։ Այսպիսի պարագայից մէջ՝ Կալիսթենեայ մէջ յաւելեալ Անգղ գաւառին յիշատակութեան նման խօսք մը Աշխարհագրութեան մէջ չգտնուիլը կը ցուցընէ՝ որ Սուտ-Կալիսթենեայ թարգմանութիւնը մէկ կողմանէ Աշխարհագրութեան եւ միւս կողմանէ Պատմութեան մէջ եղած միջոցին կատարուած է։”*

*Գիտնականիս այս հատուածին առաջին մասն այն կ՚ուզէ ցուցընել՝ որ Խորենացի ինքն է թարգմանիչ Կալիսթենեայ. իսկ վերջնական հետեւութիւն այն է՝ թէ այս թարգմանութիւնն եղած է Աշխարհագրութեան գրուելէն ետքը եւ Պատմութենէն յառաջ։ Թէ ինչ էր մեր կարծիքը՝ վերը դրինք։ Բայց չենք ուզեր լռել հոս եւ այն պարագայն՝ որ նաեւ Աշխարհագրութենէ յառաջ կատարուած պէտք է ըլլալ այս թարգմանութիւնը.*

---

[1] Խոր. տպ. Վենետ. 1843, էջ 616, *ուր կը յիշուին մանաւանդ “հրէշ եւ մուշկ եւ սիրամարգ շատ եւ քրքում անբաւ, ապրիշում շատ եւ ազնիւ” եւն եւն։*

[2] Խոր. Բ. գլ. ձա. էջ 163, 5–15, *ուր ի մասնաւորի կ՚ըսուի նոյն երկրին համար՝ թէ ըլլայ “քրքմաւէտ եւ սիրամարգաշատ եւ բազմամետաքս, ամբաւութիւն հրէշից” եւն։*

վասն զի Խորենացի նաեւ հոն ըստ բաւականին կը յիշեցընէ տեղ տեղ այս գիրքը։

Աշխարհագրութեան վերջին կտորին մէջ “Սինեացւոց„ երկրին վրայ խօսելով կ'ըսէ՝ թէ մինչեւ “անծանօթ երկիրն„ կը տարածուի այս աշխարհն, ուր եօթն ազգք կան եւ շատ գետեր ու լեռներ։ Ապա կը փակէ գիրքը սա դիտողութեամբ.[1] “Բայց անտի յանծանօթն երկիրն որ ինչ պարփի՝ անհատապայլ է. գազանք անծանօթք մարդակերպք կիսանձնեայք երկդիմիք վեցձեռնիք փոխոտանք վիշապատտունք կիսահաւք կիսանդամք անգլուխք։„ Խնդիր չկայ՝ որ այս տեղ Խորենացի կ'ակնարկէ Կալիսթենեայ ՄԹ. ՄԻԴ եւ ՄԾԸ հատուածները, ուր Կալիսթենէս զԱղեքսանդրոս կը շրջեցընէ զննելու “անծանօթ երկրին„ սահմանները, եւ անհեթեթ առասպել ու երեւակայութեան ցնորք չի մնար՝ որ չկուտէ այս կտորներուն մէջ։

Խորենացւոյ այս ակնարկութեան մէջ գործածած բառերէն ոմանք (այսպէս “վեցձեռնէ+, փոխոտանէ+, անգլուխէ+„) Կալիսթենէսի մէջ գործածուած բնիկ բառերն են։ Մնացեալք ակնարկութիւն են Կալիսթենեայ առասպելաց. բայց կան՝ որ դժուար է որոշել թէ ի՛նչ բան կ'ակնարկեն Աղեքսանդրի վարուց առասպելաց անել բաւղին մէջ։ Այսպէս են ի մասնաւորի “Երկդէմն„ եւ “Կիսանդամ„ բառերը։

Հոս “վեցձեռնէ+„ ասութիւնն մեզ առիթ կու տայ դիտողութեան մը։ Այս բառը հանդիպած է նախ ՄԻԴ հատածին մէջ[2]. բայց փոխանակ “վեցձեռնիք„ բառին արդի օրինակաց մէջ “վեցոտնեայ+„ է՝ անմիաբան բնագրին (ἄνδρες δὲ ἑξάχειρες.) իսկ երկրորդ անգամ հանդիպած

---

[1] Խոր. Աշխ. Ասիա. ԽԴ. տպ. Վենետ. 1843, էջ 616, 19—25։ Այս ի վկայութիւն կոչուած խօսքէն առջը կը դրուի այսպիսի վերջաբան մը." Աչա կատարեցան ամենայն տիեզերք եւ պատմութիւնք խօսից։,,

[2] Պատմ. Աղեքս. ՄԻԴ. էջ 142, 9։

տեղն[1] արդի Հայ օրինակաց մէջ պակաս է այս բառն, ինչպէս նաեւ իւր կից ուրիշ բառերը։ Վասն զի մինչդեռ արդի օրինակք կ'ըսեն. "Անգլուխ մարդիկ, որք զաչսն ունէին ի լանջսն եւ զբերանն, ծակասոյզք...," յոյն ամէն բնագիրք (ABC) կը կարդան այսպէս. "Եւ զայլ մարդիկ վեցձեռնեա (ἑξάχειρας) եւ ցլադէմս (ταυροπροσώπους) եւ տրոգղոտիւդս (τρογλοδύτας, Թերեւս = Հ "ծակասոյզք") եւ փոկոտոտնս (ἱμαντόποδας), վայրենիս (ἀγρίους ἀνθρώπους), զայլս Թաւս իբրեւ զայծս եւ առիւծադէմս (λεοντοπροσώπους) եւ գազանս բազմազգիս։" — Ուրեմն Հոս Խորենացւոյն "վեցձեռնիք" բառը ցուցուց Հայ բնագրին անթիւ աղաւաղութեանց եւ կրճատ ու թերի մասանց մին ալ։

Ընդհակառակն Խորենացւոյն "անգլուխք" ըսելը մեծ վկայութիւն է Հայ բնագրին։ Այս բառը նախ կը գտնենք ՄԹ հատածին մէջ այսպէս[2]. "Ուր էին անգլուխ մարդիկ. գլուխ ոչ ունէին բնաւ։" Հոս յոյն երկու բնագիրքն ալ BC (AV չունին այս կտորները,) ἄνθρωποι κυνοκέφαλοι ("շնագլուխ մարդիկ") կ'ըսեն։ Երկրորդ անգամն ալ[3] "շնագլուխս եւ անգլուխ մարդիկ" խօսքին տեղ AB κυνοκεφάλους ἀνθρώπους միայն ունին։ Միայն C (որ քիչ անգամ միաբան է Հայոյն,) ἀκεφάλους (անգլուխ) ունի, նոյնպէս եւ V որ homines absque capitibus corporatos կ'ըսէ։ Խորենացւոյ վկայութեամբ աներկբայ ապահովութիւն կ'առնու "անգլուխ" բառը։

Որովհետեւ հոս խօսք եղաւ Հայ օրինակին թերութեանց վրայ, չենք կրնար չյիշել նաեւ զայն՝ որ նման խորհրդածութեանց առիթ կու տայ Ղազարայ Փարպեցւոյ այն խօսքը՝ զոր վերը դրինք։ Աղեքսանդր, կ'ըսէ Փարպեցի, Պարսիկները պա-

[1] Պատմ. Աղեքս. ՄԾԸ. էջ 168, 5—9։
[2] Պատմ. Աղեքս. ՄԹ. էջ 127, 7, 8։
[3] Պատմ. Աղեքս. ՄԾԸ, էջ 168, 5։

տրելու համար ծառոց կոճղներ "զինեալ այրանման„ եւ "[illegible] [illegible]„ երեւցընել տուաւ: Կալիսթենեայ սոր համապատասխանող կտորին մէջ կը պատմուի՝ որ Աղեքսանդր ծառոց ոտեր կապեց արօտականհօտին, որոնց շարժելովն՝ փոշին երկինքը կը մթագնէր եւ Պարսիկք խաբուելով մեծ բանակ մը կարծեցին: Սակայն լուսով ալ պատրելու փորձ մը չի պատմուիր հոս, այլ յետոյ ուրիշ տեղ: Այսպէս են նաեւ A եւ V. Բայց ճշդիւ հոս BC կը կցեն նաեւ զայն՝ թէ Աղեքսանդր իրիկունն ալ եղջերաց վրայ ջահ կապել տուաւ եւ վառել, որով զարհուրեցան Պարսիկք: Նաեւ հայ օրինակաց երկրորդ խումբ մը (համառօտք) հոս տեղ ունի այս միջադէպը՝ գրելով[1]. "Աղեքսանդրոս ըմբռնեալ այծս բազումս եւ ջահ վառեալ յեղջերսն ի գիշերի ցոյց առնէր:„ Արդ կրնայ խորհուիլ՝ որ Փարպեցւոյն լոյս երեւեցուցանելը նոյնպէս [illegible] [illegible] ակնարկէ: Այն ատեն յայտնի է՝ որ հայ ընդարձակ օրինակք հոս թերի են: Սակայն պէտք է խոստովանիլ՝ որ կարելի է թէ երկրորդ տեղ մ'ակնարկէ Փարպեցի, ուր նաեւ Հ ունի սոյն դէպքը[2]: — Այժմ դառնանք մեր բուն խնդրին:

Թէ Աշխարհագրութեան մէջ գործածած է Խորենացի իւր թարգմանած Կալիսթենէսը՝ յայտնի է ուրիշ տեղէ մ'ալ: Հնդկաց վրայ գրածներուն մէջ կայ սա խօսքը[3]. "Ոմանք ի նոցանէ մարդակերք են, եւ այլք վայրենակերք. ոմանք ագեւորք են, եւ այլք կարճահասակք, տափաքիթք, լայներեսք, սպիտակք. եւ ոմանք [illegible] (երկու օր. "[illegible]„) որք գործս անիրաւս ոչ գործեն, եւ զմարմինս կենդանեաց ոչ ուտեն:„ Այս տեղ ակնարկուած են Կալիսթենեայ ՄԻԱ — ՄԻԳ հա-

---

[1] Պամ. Աղեքս. ՃՀԳ. էջ 96, ծն. 1:
[2] Պամ. Աղեքս. ՄԹ. էջ 122, 27—123, 4:
[3] Խոր. Աշխ. Ասիա, ԽԱ. էջ 615, 4—9:

տուածները[1], ուր կը պատմուի Աղեքսանդրի արշաւելն յՈքսիդրակաս եւ "Մերկիմաստասէր (γυμνοσοφισταί) Բրահմանաց" հետ խօսակցիլն եւն։ Այս Մերկիմաստակ կամ Մերկիմաստասէր բառն Խորենացի նախ գործածած է, որչափ գիտենք, եւ անշուշտ ինքը կերտած է նոյնն ըստ յոյն բնագրին։ Ճիշդ նոյն բառն կը գործածէ նաեւ Փիլոնի Վարք իմաստնոց գրոց թարգմանութեան մէջ. "Հնդկաց մերկիմաստակացն՝ վասն ծերութեան խարոյկ կուտեալ՝ զինքեանս այրել։" (Հմմտ. Հայկազնեան բառ.։)

Ի վերջոյ կը յիշենք օրինակ մ'ալ՝ որ անշուշտ կը ցուցընէ միանգամայն՝ թէ Աշխարհագրութեան հեղինակն եւ Կալիսթենեայ թարգմանիչը մի եւ նոյն անձն է։ Յոյնը (BC) պատմելէն ետքը անգլուխ մարդկան եւ այլ նմանեաց դէպքերը եւ անոնց ծովէն ձուկ բռնել ծախելն Աղեքսանդրի զօրաց՝ կը յաւելու սա խօսքը[2]. (B միայն, C չունի.) Ἄλλοι δὲ ἐκ τῆς γῆς ὕδνα ἔχοντες ἀνὰ λίτρας εἴκοσι πέντε τὸν σταθμόν, այսինքն "Այլք (քաղէին) յերկրէ փշատունկ որ ունէր լտերս քսան եւ հինգ։" Այս ὕδνον լատիներէն նոյնպէս Hydnum կը կոչուի, եւ գաղղիերէն՝ hydne, որուն ուրիշ մէկ տեսակը urchin, rignache (Hydnum repandum), եւ երկրորդ տեսակ մը՝ érinace (Hydnum erinaceum) եւ գերմաներէն Stachelpilz, (ասկէ առեալ է "փշասունկ։") Արդ այս բառն բոլորովին նոր բառով մը թարգմաներ է Կալիսթենեայ հայ թարգմանիչն այսինքն "գէրէրէ." բառ մ'որ առաջին անգամ հոս կը գործածուի։ Բայց ոչ միայն իրեն յատուկ է այս թարգմանութիւնն, այլ եւ յաւելուած մ'ալ ըրեր է Թարգմանիչը՝ թէ այս "գերերին" իւր հայրենի երկրին մէջ կը գտնուի։ Այս նշանակալից խօսքն է[3]. "Եւ յերկիր (յերկրէ) գէրէրէ՝ որ ա— մեղս լինին,

[1] Պատմ. Աղեքս. էջ 135, 1—138, 3։
[2] Յոյնը II. 37։
[3] Պատմ. Աղեքս. ՄԹ. էջ 127, 10, 11։

որ ունէր լտերս քսան եւ հինգ, քաղեցին եւ ետուն մեզ։" Թէ ինչ տեղ կը հասկընայ հեղինակ-թարգմանիչը "առ մեզ" ասութեամբ, կ'իմացընէ յետոյ, այսինքն՝ իւր Աշխարհագրութեան մէջ գրելով[1] "Սիւնիք... լինի ի նմա մուրտ եւ գերերէ[2] եւ նուռն, եւ ամուր տեղիք։"

Վերջապէս այս ամէն խնդրոց ու՛չ դոյզն կռուան կ'ըլլար եւ այն՝ եթէ ցուցուէր հաւաստեաւ թէ Եղիշէ գործածած է Սուտ-Կալիսթենէս։ Նկարագրութեանց մէջ նմանութիւնք կան աստ անդ, նաեւ մանր նոյնաբանութիւնք (այսպէս "մանղէն բլուր[3]" "համհարզ" եւն։) Բայց այսպիսիք նշանակութիւն չունին. վասն զի ցանցառ չեն այնպիսի դէպքեր, յորում ոչ նոյն՝ բայց նման բացատրութիւններ կամ ասութեան եղանակներ կը գտնենք նաեւ իրարմէ անկախ հեղինակաց քով։ Այսպիսի մանր նմանութեանց աղբիւրը շատ անգամ նման տեսութիւնք եւ կարծիք եւ երբեմն արտաքին պարագայից նոյնութիւնն է, որ շատ կրնայ պատահիլ մանաւանդ նկարագրութեանց մէջ։ Զունենալով հաստատուն կռուան՝ Եղիշէի քանի մը նոյնաբանութիւնքն զանց ըրինք յիշել հոս. իսկ կարեւոր եւ մեծ կտորներ եւ փոխառութիւն չեղաւ հնար գտնել։

Կարծենք թէ թարգմանութեանս հայ մատենագրութեան մէջ ըրած ազդեցութիւնն ըստ բաւականին տեսանք ցայս վայր. իսկ ԺԳ դարէն ետքը կրած փոփոխութիւնքն եւ ըրած ազդեցութիւնը պիտի ջանանք այսուհետեւ պարզել, եւ այնուհետեւ անցնիլ թարգմանութեանս ներքին արժէքը քննելու։

---

[1] Խոր. Աշխ. Ասիա, ԻԵ. էջ 609, 12։

[2] Հայկազնեան Բառագրոց մէջ Խորենացւոյ այս բառը կը մեկնուի միայն. "Պտուղ ինչ, եւ ծառն։" "Գե-րերէ" ուղղագրութիւն մ'ալ կը յիշուի նոյն տեղը։

[3] Եղիշէ, Պատմ. Ե. էջ 84, 17. եւ Պատմ. Աղեքս. ՌԺԹ. էջ 134, 14։

# 4.

## Խ. Կեչառուեցւոյ եւ այլոց խմբագրութիւնք եւ յաւելուածք:

Շատ անգամ կրկնուեցաւ՝ որ Խաչատուր Կեչառուեցի խմբագրութիւն մ'ըրած է Հայ բնագրին, եւ թէ ըստ իւր իսկ վկայութեան՝ աշխատած է “ի յօրինուածս„ գրոցս, եւ “որ քաղեաւ ի գրոց հնոց„ եւ “թերեաւ թերողջորէն„ (°) ըրած է “անխոտորնակ ճանապարհ[1]„: Միւս կողմանէ ցուցուցինք ընդարձակագոյնս՝ թէ անկարելի է Հայ թարգմանութիւնն այս խմբագրութեամբ ծայրէ ծայր աղաւաղեալ ընդունիլ, եւ թէ ամբողջն յնդհանուրն առեալ՝ հինգերորդ դարու նկարագիրն պահած է՝ դոյզն մանրամասնութեանց աղաւաղմունքն չհաշուելով: Ուստի կը յառնէ այստեղ խնդիր՝ թէ ինչ ըրած է ուրեմն Կեչառուեցի, եւ ինչպէս հասկնալու է իւր խմբագրութիւնը:

Աոր համար անհրաժեշտ պէտք է նախ նոյն իսկ Խաչատրոյ Կեչառուեցւոյ այս նկատմամբ գրածներն ամբողջովին տեսնել, եւ ապա սկսիլ մեկնել իւր խօսքը: Երկու գլխաւոր յիշատակարան կը գտնենք Կալիսթենեայ Հայ ձեռագրաց մէջ՝ Խաչատրոյ գրչէն. — բայց շատ քիչ ձեռագիրք ունին երկուքն ալ ի միասին, իսկ մեծ մասն եւ ոչ մին ունի: Այս երկու յիշատակարաններէն առաջինն՝ որ կը սկսի “Փառք եւ գոհութիւն„ բառերով՝ ուղղակի կապ չունի մեր խնդրոյն հետ, վասն զի ընդհանուր իմաստով գրութիւն մըն է. բուն խնդրականն է երկրորդն՝ որ “Եւ արդ„ բառերով կը սկսի: Սակայն նախ առաջինը պէտք ենք տեսնել:

Կալիսթենեայ Հայ բնագրին ինծի ծանօթ 21 ձեռագրաց չորսին վրայ՝ որ կը գտնուին Էջմի-

[1] Հմմտ. վերը՝ էջ 22—23:

անձնի մատենադարանը՝ տեղեկութիւն կարելի չեղաւ առնուլ։ Մնացելոց վրայ քիչ շատ տեղեկութիւն ունիմ, որոնց 10 հատն է ի Վենետիկ[1], 3 հատը մեր մատենադարանն, եւ երեքն ի Կ. Պոլիս,[2] ինչպէս նաեւ 1 հատին վրայ, որ կը գտնուէր ի Միւնխէն։ Արդ այս 15 ձեռագրաց 7 հատն կեչառուեցւոյ յիշատակարանաց եւ ոչ մին ունի. այսպէս են Վենետկոյ՝ թիւ 592, 1538, 893, 1601, 1390 (մասամբ), մեր Մատենադարանին՝ թիւ 68, եւ Իւսկիւտարի Ս. Խաչ Թանգարանի՝ թիւ 310 ձեռագիրք։ Երկու յիշատակարանքն ի միասին ունի միայն Վենետկոյ թիւ 424 ձեռագիրն. Մնացելոց կէսն մին, կէսն ալ՝ միւսն ունին։

Առաջին յիշատակարանն ունին միայն Վենետկոյ՝ թիւ 424, 1107 եւ 1489 ձեռագիրք։ Ասոնց առաջինն Աղեքսանդրի վարուց լմննալուն հետ[3] կը կցէ այս յիշատակարանն, ուստի իբր բուն յիշատակարան. միւս երկուքն ի վերջ Բարառնութեանց, նոյն իսկ “Բարեաց գործոց„ բառերով սկսող օտար կտորէն[4] ետքը։ — Հոս կը դնենք այս յիշատակարանն ըստ Թ. 424 ձեռագրին՝ միւս երկուքին համեմատութեամբ։

“Փառք եւ գոհութիւն քեզ անպարտ[5] եւ անպատում արարիչ եւ հրաշագործ[6] Աստուած, որ արժանի արարեր զթարմատար (եւ) զյոգնամեղ[7] եւ զապիկար եւ զվատթար անձն եղկելոյս

---

[1] Պէտք ենք կանխել ըսել՝ որ Վենետկոյ ձեռագրաց վրայ այս եւ յընթացս գրութեան յիշուած տեղեկութիւնքն հաղորդած է ինձ Ցարգոյապ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան, որուն հրապարակաւ շնորհակալութիւն յայտնել պարտք կը համարիմ։

[2] Շնորհակալութեամբ պէտք եմ յիշել՝ որ Կ. Պոլսոյ այս երկու ձեռագրաց վրայ տեղեկութիւն յղած է ինքնակամ՝ Մեծապ. Կ. Յ. Պասմաճեան։

[3] Պատմ. Աղեք. ՄՁՋ. էջ 186։

[4] Պատմ. Աղեքս. էջ 196—198։

[5] Ըստ Թ. 1107 եւ 1489։ Թ. 424 “անպար։„

[6] Ըստ Թ. 1107։ Թ. 424 “հրագործդ.„ 1489 “հրաշագործող։„

[7] Թ. 424 “զոգնամեղ։„

Խաչատուր Կեչառեցւոյ[1], հասանել մեղաներկ մատամբ[2] եւ տկար մարմնով ի գիծ վերջին արքայական գրոցս աշխարհակալին Աղեքսանդրու։ Առ այս[3] զինչ ունիմ հատուցանել[4] (զ)տրիտուրն քան թէ քոյին լուսեղինաց եւ բոցեղէն բերանով աւրհնել՝ զքեզ հայր Աստուած, եւ զԲան քո էակից Որդին[5] հանդերձ Հոգւովդ փառակցաւ. Նաեւ աւժանդակ առեալ զընթացս աւդակառոյց լուսաւորացդ, որ անբերան շարժմամբ զաւրհնառաք[6] բարեբանութիւն մատուցանեն։ Իսկ ստորայնոց ազգ կենդանեաց բերան առեալ զմարդն քոյին պատկեր՝ երկրպագեն վայելչաբար. յայտ արարեալ թէ չիք այլ Աստուած բայց ի քէն. ընդ որս[7] եւ զսուրբս յաւիտենից ընդ իս առեալ՝ զմարգարէից եւ զառաքելոց, զհայրապետաց եւ զվարդապետաց եւ զնուիրական արեամբ պսակելոցն[8] զպարս եւ զդասս՝ աւրհնեմ զամենասուրբ զերրորդութիւնդ եւ զմի աստուածութիւնդ. այժմ եւ միշտ„ եւն։

Այս յիշատակարաններէն կարեւորն է երկրորդը՝ խնդրոյս համար անհրաժեշտ կտորը։ Այս յիշատակարանն ունին Վենետիկոյ՝ Թիւ 424, 1259 եւ 1390 (պակասաւոր,) մեր Մատ. Թիւ 57 Ա ու 90 Դ. (Թերի.) եւ անթուական օրինակն Կ. Ց. Պասմաճեանի։ Այս ամէն ձեռագրաց մէջ ալ մի եւնոյն դիրքը կը գրաւէ յիշատակարանս, այսինքն Բարառնութեանց վերջը դրած "Ապէնիազն Աստուած„ հատուածէն ետքը։ Այս վերջին յիմարական կտորին մէջ Խաչատուր կը նմանցընէ Աղեքսանդրու գործքերը Քրիստոսի գործոց, եւ կը ջանայ ներկայ-

---

[1] Ըստ Թ. 1107 եւ 1489։ Թ. 424 կ'ըսէ. "զվատթար անձն եղկելույս զՆերսէս սարկաւագիս„, որ անշուշտ գրիչն էր։ "Եղկելույս„ ունի միայն Թ. 424։

[2] Թ. 1107 "միշտ աներկ մատամբ„։ Թ. 1489 ըրկ "մատամբ։„

[3] Թ. 1107 "զայս։„ Թ. 1489 "զյոյս։„

[4] Ըստ Թ. 1107 եւ 1489։ Թ. 424 "սաել։„

[5] "Որդին„ ունին միայն Թ. 1107 եւ 1489։

[6] Թ. 1107 "զաւհնառաք։„

[7] Թ. 1107 եւ 1489 "ըստ որ։„

[8] Թ. 1107 "եւ զվկա արեամբ վկայելոց.„ 1489 "զվկայ արեամբ պսակելոցն„։

ացընել զայն իբր "տիպ եւ գաղափար" Քրիստոսի. եւ ի վերջոյ կը կցէ իւր Յիշատակարանն, յորում ներումն կը խնդրէ այս համեմատութեան համար։ Կալիսթենեայ հայ օրինակին տպագրութեան մէջ՝ ինչպէս "Ապէնիազն" հատուածն, նոյնպէս Յիշատակարանն թերի դրոշմուած է ի ծանօթութեան[1]։ Ասոր համար պէտք ենք հոս տեսնել բովանդակը, մանաւանդ որ դրոշմուած Յիշատակարանը Կեղծակալիսթենեան կոչուած խմբէն առնուած է. բայց կայ ուրիշ խմբագրութիւն մ'ալ զոր Զատուբեան կրնանք կոչել։ Այս վերջին խմբագրութիւնը կը ներկայացնէ մեր Մատեն. Թիւ 57 Ա, եւ այն ձեռագիրն՝ որմէ քաղած է Այրարատայ հեղինակն[2], որ անշուշտ Սոոյ ձեռագիր կոչուածն է[3]. գոնէ Վենետկոյ միւս ինն ձեռագիրք չունին այս յիշատակարանը։ Կեղծակալիսթենեան խմբէն են յայսմ՝ Վենետկոյ Թիւ 424, 1259, 1390, մեր Մատ. 90 Դ, եւ օրինակն Կ. Յ. Պասմաճեանի։ Հոս կը դնենք դէմ առ դէմ երկու խմբագրութիւնքն։ (Կեղծակալիսթենեան խմբին հիմն առած ենք Վենետկոյ 424, իսկ Զատուբեան խմբին՝ մեր Մատ. 57 Ա ձեռագիրները։)

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԽԱՉԱՏՐՈՅ ԿԵՉԱՌՈՒԵՑԻՈՅ

| ԸՍՏ ՁԵՌԱԳՐ. ՎԵՆԵՏ. Թ. 424։ | ԸՍՏ ՁԵՌԱԳՐ. ՎԻԵՆՆԱՅ Թ. 57 Ա։ |
|---|---|
| "Եւ արդ զայս այսպէս համեմատեալ՝ մի ստգտանիմք[4] յոմանց, զի զպատ- | "Եւ արդ զայս այսպէս համեմատեալ՝ մի՛ ստգտանիմք յոմանց, զի զպատ- |

---

[1] Պատմ. Աղեքս. էջ 195, ծն. 1։

[2] Հ. Ղ. Վ. Ալիշան, Այրարատ, էջ 267—268։

[3] Համմտ. Վարք Աղեքս. Յուջք. էջ 11։ Դժբախտաբար Հ. Յ. Վ. Թորոսեան չկրցաւ այս ձեռագրին վրայ տեղեկութիւն տալ իրմէ անկախ պատճառաւ։ Որչափ կ'երեւայ այս Սոոյ ձեռագիրն այն է՝ որուն 1842ի տպագրուած օրինակին հետ ունեցած տարբերութիւնքը ժողոված է ինձ անծանօթ գիտնական մը, եւ այսպէս կազմուած է մեր Մատ. Թ. 57 Ա ձեռագիրը։

[4] Թ. 1259 եւ մեր՝ 90 Դ "մի տըս գտանիմք". 1390 "մի սուտ գտանիցիմք"։ Պասմաճեան օրինակն ունի. "մի ըստ

ճառն վերագոյն ճառեցաք.[1] այլ ընթեռնլով զաս յիշման[2] արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառեցի.[3] զէ է յարմարական ոտանաւոր բանիւս եւ է գրչութեան գրոցս[4] Հաւատով աշխատեցայ. Նաեւ զի հեթանոսական[5] գրեալքն[6] անմիաբան են[7] եւ անվայելուչ. ի վերոյ շաղկապեալ բանիւք[8] որակացեալ, եւ ներքոյ լի անոտի կարծեօք[9] եւ խաբէութեամբ, որպէս եւ առ գրասիրաւն

ճառն վերագոյն ճառեցաք. այլ ընթեռնլով զաս՝ յիշման արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառեցի, ընդ նմին եւ Զաքարիա եպիսկոպոս գծող եւ նկարող, զի է յարմարական ոտանաւոր բանիւս եւ է գրչութեան գրոցս հաւատով աշխատեցայ. Նա զի հեթանոսական[10] գրեալքն անմիաբան են եւ անվայելուչ՝ ի վերոյ շաղկապ(եալ) բանիւք[11] որակացեալ եւ ի ներքոյ լի անոտի

---

գունին ոմանց՝ թէ այլ է. զի զպատճառն վերագոյն ճառեցաք։,,

[1] Հոս կը լմննայ Թ. 1390 ձեռագրին յիշատակարանը։

[2] Ըստ 90 Դ։ Թ. 1259 "յընթեռնլով . . . յիշման . . . ։,, Թ. 424 "յիշման արժանի լիցի,, եւն։ Պասմաճեան օր. "այլ ընթերցելովն ձեր զաս յիշման արժանի լիցի ի ձէնջ. զխաչատուր Կեչառեցի. վարդապետի յարմարեալ է զայս ոտակաւ բանս եւ գրչութիւն գրոցն Հաւատով աշխատեցայ.,, ուստի անկապ եւ աղաւաղած։

[3] Թ. 424 "կեչառուեցի.,, Թ. 1259 եւ 90 Դ "կեչառեցիս.,, վերջին « տառն՝ անշուշտ ուղղագոյնս։

[4] Միայն Թ. 424 եւ օր. Պասմ. ունին "եւ ի գրչութիւն գրոցս.,, զոր չունին 1259 եւ 90 Դ։ Հմմտ. Զաքարեան խումբը։

[5] Պասմաճեան օր. "Նա եւ զհեթանոսական գրեալսն,,։

[6] Թ. 424 "գրեալսն։,, Թ. 1259 եւ 90 Դ "Նա եւ զհեթանոսական գրեալքն։,,

[7] "Են,, չունի Պասմաճեան օր.։

[8] Թ. 424 "շաղկապ բայիւք.,, 1259 "շաղկապաբայիւք.,, 90 Դ "շաղկապաբանիւք։,, Հմմտ. Նոյնպէս Զաքարեան խումբն։ Այս կտորն լաւ եւս ունի Պասմաճեան օր. "ի վերոյ շաղկապեալ բանիւք «որակացեալ.,, (= բանիւք» «որակացեալ։) Վերջին բառիս տեղ՝ ամէնքն "որակացեալ,, ունին։

[9] "Կարծեօք,, ըստ 1259 եւ 90 Դ։ Թ 424 եւ Պասմաճեան օր. "կարծիւք։,,

[10] Հոս կը սկսի Այրարատայ կոչումն. էջ 267։

[11] Այրարատ "բանիւք.,, Թ. 57Ա "բայիւք։,,

Պտղոմէիւ անպատուեցաւ[1]: Իսկ զայս Պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրի. ւր գրեցէ եմով յեռամբ.[2] սակս աւգտի ինձ եւ այլ համբակաց, որք կամին աւգտիլ յԱղեքսանդրէ[3]: Զի թէպէտ էր է հէն եւ յընտիր աւրէնակէ, այլ անյարմար եւ շաղփաղփ. վասն որոյ ղտեալ եւ փերեալ փերողաւրէն (= փերթողաւրէն?) արարի անխոտորնակ ճանապարհ. զոր[4] ի յընթեռնուլն իմացին[5] պուետեկոսփ եւ քարտուղարք եկեղեցւոյ[6]. եւ ապա գիտասցեն զիմ աշխատանս, զոր ի սմա լիապէս վաստակեցի:»

կարծիւք եւ խաբէութեամբ որպէս առ Գրասիրաւն Պաղոմէոսիւ անպատուեցաւ: Իսկ զայս Պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրու ւր գրեցէ եմով յեռամբ[7] է մեծ փաղափն Հռոմ առ պապն Փռանկոյ; է յաթոռ Նոտեալ Պետրոսի եւ Պաւղոսի առափելոյն, որթագրեալ է գրոյ՝ հնոյն[8], ռակս ագտի, եւ ղարդարեցի ռսկով եւ տնաւրէնակնով եւ ոտնաւորով՝ է փառս Փրկչին, եւ թերեալ է Հայս պարգեւս մեծ վարդապետին եւ փաղ վարդապետին իմոյ Եսայեայ[9], եւ պարոն եղբարցն իմոյ եհարցն Պռաաշանց տոհմին[10],

զի եւ սակս աւգտի ինձ եւ այլ համբակաց, որք կամին աւկտիլ յԱղեքսանդրէ. զի թէպէտ էր յընտիր եւ ի

---

[1] Այսպէս 424: Թ 1259 «Պտղոմոսիւ.» 90 Դ «Պտղոմէոսիւ.» Օր. Պասմաճեան «եւ առ կրասատն (°) Պտղոմէոսիւ պարծեցաւ:» Հոս կը սպառի մեր Մատ. Թիւ 90 Դ յաջորդ 244դ թուղթը պակսելով:

[2] Օր. Պասմ. «ձեռամբ իմով:» Թ 1259 կը յաւելու. «որթագրեալ է հնոյն:» Հմմտ. Զատարեան խումբը:

[3] Օր. Պասմ. «Վասն օգտի ինձ, եւ այլ համբակաց. ով որ կամին զայն իւրեամբ գիտեն.» աղաւաղած սասանկ: Հոս կը սպառի այս ձեռագրին յիշատակարանն. միայն գրիչը կը կցէ անմիջապէս՝ թէ «զի իմ օրինակս՝ որ գրեցի նայ այսչափ էր. մի մեղադրէք եւ զիս զանարժանս առանց պարսաւանաց թողէք.»: Ուրեմն նաեւ գաղափար-օրինակը թերի էր:

[4] Թ. 1259 «զի:»

[5] Թ. 424 «իմաստին:»

[6] Թ. 1259 չունի «եկեղեցւոյ.» եւ ոչ Զաքարեան խումբը:

[7] Ցաջորդն «ի մեծ քաղաքն» եւն եւն Զատարեան խմբիս յատուկն է:

[8] Զարմանք է որ այս խօսքն «որբագրեալ ի հնոյն» ունի եւ Թ. 1259:

[9] Այրարատոյ հեղինակը (էջ 268) կ'իմանայ զՆսայի Նչեցի, անշուշտ ոչ ուղղութեամբ, ինչպէս կը տեսնենք:

[10] Հոս կը սպառի Զատարեան յաւելուածն, եւ հոս նաեւ Այրարատոյ մէջ եղած կոչումն, թէեւ ձեռագիրն ու-

հին աւրինակէ, այլ անյարմար եւ շաղփաղփ. վասն որոյ զպէտս էս ժէրէտս ժէրոզաղէն, արարի անսուտաւ րինակ ճանապարհ. զի ի յընթեռնուլն իմասցին պուետիկոսքն, քարտուղարք, եւ ապա իմասցին զիմ աշխատանս ի սմայ, զոր լիապէս վատակեցի:„

Այս յիշատակարանս կարեւոր է ոչ միայն մատենագրական տեսակէտէ, այլ նաեւ պատմութեան կողմանէ, գլխաւորաբար Զօհրապեան խումբն “Պալօշեանց„ գերդաստանին յիշատակութեամբ: Բայց այս խնդիրը մեզի հետ կապ չունի առ այժմ:

Նախ քան մեր բուն խնդրին իջնելն աւելորդ չէ միտ դնել, որ նոյն իսկ Կեչառուեան խմբին ձեռագրաց մէջ մանր խմբակներ կը տեսնուին: Եթէ ծանօթութեանց մէջ գրուած օրինակաց տարբերութիւնքը քննենք՝ կը տեսնենք որ Թիւ 90 Դ եւ 1259 սերտ կապ կը ցուցընեն իրարու, եւ գրեթէ ամէն տեղ նոյն են իրարու՝ պակաս մասանց եւ սխալներու մէջ անգամ: Թ. 1390 համշուոյ մէջ չի կրնար առնուիլ. իսկ Պասմաճեան օրինակն աւելի Թ. 424ին ցեղակից կ'երեւայ, բայց շատ աղաւաղութիւն կրած ըլլալով՝ շատ տեղ եւ ոչ միայն հետ նոյնութիւն կը պահէ: — Իսկ Զօհրապեան խումբն ուրիշ բան չէ բայց Կեչառուեանն՝ կարեւոր յաւելուածովք, որոնք անհրաժեշտ էին նոր գրչին իւր գրութեան հանգամանքը նկարագրելու համար: Այս յաւելուածոյ մասերը չհաշուելով՝ մնացեալն աւելի Թ. 1259 եւ 90 Դ ձեռագրաց միաբան է, թէեւ անգամ մ'ալ, եւ այն՝ կարեւոր տեղ մը (“ի գրչութիւն գրոցս„ խօսքին մէջ,) կը համաձայնի Թ. 424ին. իսկ տեղ տեղ անկախ ընթերցուած ալ ունի. ուստի աւելի ուրոյն դիրք մը կը բռնէ: Վերջապէս Այրարատեայ գործածած օրինակն ապահով եւ ոչ կէտ մը կը շեղի 57 Ա ձեռագրէն, եւ ընդհանրապէս նոյն ձեռագրէն են երկուքը: — Առ այժմ

---

ներ նաեւ յաջորդ մասը, ինչպէս որ քիչ մ'ետքը կը յիշուի “զի, յընթեռնուլ. . .„ նախադասութիւնը:

այսչափը բաւական համարելով ձեռագրաց նկատմամբ՝ անցնինք մեր բուն խնդրին։

Խաչատուր Կեչառուեցի, ինչպէս վերը յիշեցինք[1], գրեթէ միշտ գործուած է իբրեւ խանգարիչ եւ այլայլող Կալիսթենեայ հին հայ բնագրին. եւ ասոր վկայ կը բերուին նոր նոր խօսքերն այս յիշատակարանէս։ Այսպէս գլխաւորաբար "ի յօրինումն սակաւ բանիցս", եւ այն՝ թէ իւր օրինակն "անյարմար եւ շաղփաղփ" ըլլալով "զտեալ եւ քերեալ քերողաւրէն (՞)" "անխոտորնակ ճանապարհ" ըրեր է, ուստի եւ "լիովին" աշխատած է գործոյս վրայ։ Եթէ ճիշդ այսպէս ըլլար նաեւ յիրականութեան՝ անըմբռնելի պիտի մնար թէ ինչպէս ուրեմն այնչափ մանր ու մեծ կտորներ, զորոնք դարերով յառաջ մատենագրաց քով գտանք, չեն ցուցըներ այսպիսի կերպարանափոխութիւն մը. եւ թէ ինչպէս կրնար ԺԴ դարու սկիզբը գրող անձն եւ ոչ կէտ մը մէջ իւր ժամանակի լեզուէն ու բառերն գործածելով ինք զինք մատնել։ Սակայն բախտաւոր ենք այնու՝ որ կրնանք ըսել վստահութեամբ թէ այսպիսի խորհրդածութեանց պէտք չկայ։ Կեչառուեցի չէ ունեցած դիտաւորութիւն նոր խմբագրելոյ սոյն գիրքն. եւ ոչ իւր խօսքերէն կրնանք այսպիսի բան հետեւցընել։

Եւ արդեամբք՝ եթէ իւր այս խօսքէն՝ "Զի ի յարմարումն սակաւ բանիցս եւ ի գրչութիւն գրոցս հաւատով աշխատեցայ", հետեւցընենք թէ ուրեմն կերպարանափոխ ըրեր է հինը, շատ յախուռն դատած կ'ըլլանք։ Այս խօսքն "Ապէնիազն" կտորին համար է, յորում անհանճար նմանութիւններ գրելով Աղեքսանդրու եւ Փրկչին գործոց մէջ, ապա կը խնդրէ "զի մի ստգտանեմք յոմանց ...... այլ յիշման արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառուեցիս, զի ի յարմարումն սակաւ բանիցս ... աշ-

[1] Համմտ. վերը՝ էջ 22 եւն.։

խատեցայ.» ուր «ստխա-քանս» ըսել ի հարկէ չէր կրնար Կալխսթենեայ գրոց նոր խմբագրութիւնն, եւ անըմբռնելի կը մնար այն յաւելեալ կտորները՝ թէ «եւ է փրկու-թիւ-ն գրոցս հաւատով աշխատեցայ,» եւ «զոր փրկեցի իմով ձեռամբ.» որով կը խօսա-վանի պարզապէս օրինակած ըլլալն։ Իսկ յաջորդ «Նա եւ զի հեթանոսական գրեալ ք» եւն խօսքը չի նշանակեր ամենեւին՝ որ իբրեւ «հեթանոսական» եւ «անվայելուչ» փոփոխած ըլլայ սոյն գիրքը. այլ ընդհակառակն ներողութիւն կը խնդրէ ընթերցողէն՝ յիշեցընելով որ աշխատած է «ի գրչութիւն գրոցս» եւ այն՝ հեթանոսական օգուով՝ ուստի իրեն անհաճոյ բան օրինակելով՝ միայն այլեւայլ օգտի պատճառաւ («սակս աւգտի ինձ» եւն¹։) Այլազգ չի կրնար մեկնուիլ. ապա թէ ոչ ի՞նչպէս պահէր է Կեչառուեցի Վարուց Աղեքսանդրի Զ—ԺԷ, ԻԶ եւն իրօք «անվայելուչ» հատածները. եւ որ առաւելն է՝ այս ամէն կտորներուն վրայ ոփանա—ր իսկ յօրինէր է ինքն Կեչառուեցի, որոնց առաջինը կը սկսի «Ծեր ալեւաւք եւ շուն մտաւք» բառերով։

Կը մնայ միայն վերջին խօսքը, ուր կը յիշեցընէ «զիմ աշխատանս, զոր լիապէս վաստակեցի.» վասն զի թէպէտ իւր առջեւ ունեցած օրինակը «հին» էր, այլ «անյարմար եւ շաղփաղփ». ուստի «ղրեալ է- ժերեալ ժերողա-րէն» ըրեր է «անխոտորնակ ճանապարհ։» Բայց այս խօսքէն գրոցս հին թարգմանութեան կերպարանափոխ ըլլալը կարելի չէ հետեւցընել։ Կեչառուեցի «հին» օրինակ մ'ունէր առջեւ, որ ըստ այսմ կրնար Ժ դարէ եւ աւելի կանուխ ժամանակէ ըլլալ, եւ որուն գրչութեան եւ ուղղագրութեան եղանակն «անյարմար եւ շաղփաղփ,» այսինքն՝ անշուք կամ անարդ եւ երկարաբան ըլլալ. ուստի պէտք տեսեր է «ղրել եւ ժերել ժերողա-րէն»։ Առաջարկեցինք «ժերողա-րէն» բառին

¹ Այս տեղւոյս բուն իմաստն յետոյ աւելի որոշ կ'իմանանք նոյն իսկ Կեչառուեցւոյ խօսքէն։

տեղ "քերթողաւրէն" կարդալ, որ պայծառ կը ցուցընէ Կեչառուեցւոյ գաղափարը: Բայց նաեւ առանց առոր՝ քերել եւ քերողաւրէն, քերողութիւն եւն բառերը կը գործածուին քերթել, քերթողաւրէն, քերթողութիւն նշանակութեամբ. ուստի իմաստը նոյն է. այսինքն՝ իւր օրինակած գիրքն անշուք եւ երկարաբան գտնելով՝ ուզեր է աւելորդ կարծած կտորները դուրս թողլով ("ջրելով") քերթողութեան վերածել եւ ընել "անխոտորնակ ճանապարհ": Եւ այս գաղափարը ֆորմուլէր է. վասն զի ունինք Կեչառուեցւոյ Վարուց Աղեքսանդրի Ոտանաւոր Նմանողական ղափմութիւն, ըստ որում ամէն հատածի վերջը կցած է նոյն նիւթոյ վրայ քերթուած մը. (առանց վրայ քիչ մ'եռքը:) Զայս յայտնի կ'ընէ նաեւ յաջորդ խօսքը, ուր մեկնելով իւր "քերողաւրէն" յօրինած "անխոտորնակ ճանապարհը՝" կը յաւելու թէ "Զի յընթեռնուլն իմացին դուէփիկոք եւ քարտուղարք (այսինքն՝ դպրապետք) եկեղեցւոյ":

Այլ խնդիր է թէ ինչպէս ըրած է իւր "քերողաւրէն" յօրինեալ գործն, որ աւելի ընտիր պիտի ըլլար "անյարմար եւ շաղփաղփ" հնէն, այսինքն՝ արձակ պատմութենէն Կալիսթենեայ. — եւ հոս պէտք ենք ըսել՝ որ շատ աննպաստ վկայութիւն կու տան այս քերթուածք Կեչառուեցւոյ հանճարոյն, լեզուին, ճաշակին ու հմտութեան. — բայց գոնէ ազատ պէտք ենք զինքն համարիլ այն ամբաստանութենէն՝ թէ կամաւ աղաւաղած է հայ բնագիրն, որուն լեզուն ինքնին վկայ է բարձրաբարբառ՝ թէ այնպիսի անկած դարու լեզու չէ, այլ արդեամբք Ե դարու վերջին կիսուն, երբ դեռ չէր ի սպառ կորուսած իւր առաջին կորովն: Կեչառուեցի կրնայ սկիզբն եղած ըլլալ շատ մը մանր աղաւաղմանց ֆֆրէ– ֆրէշ է– ընդօրինակող. բայց ի պաշտօնէ խանդարող համարելու կռուան չունինք, ուստի եւ զինքը խմբագրէն յորջորջելն այնչափ միայն ընդունելի է՝ որչափ որ արտաքին խմբագրութիւն

մ'ըրած կրնանք ընդունիլ՝ հիւսելով գրութեան մէջ իւր քերթութիւններն, եւ նման կտորներ:

Պէտք ենք այժմ խուզարկել՝ թէ ի՞նչ բան կրնայ Խաչատրոյ այս օրինակին խմբագրութեան արդիւնք ըլլալ ձեռագրաց մէջ: Դժբախտաբար առ այս պիտի չկարենանք շատ տեղ որոշ տեղեկութիւն գտնել. բայց միայն իւր նշանաւոր պատմութեան Աղէքսանդրու եւ Յառաջաբանութեան եւ Վերջաբանին նկատմամբ կրնանք խօսիլ:

Մեր Մատենադարանին Թիւ 90 Դ ձեռագիրն ունի ի սկզբան Ցանկ[1] մը բաժանմանց կամ հատուածոց Վարուց Աղէքսանդրի, որուն վերնագիրն է կարմրաւ. "Այս է Ցանկ Աղէքսանդրի„. նոյնպէս եւ վերջն՝ "Կատարեցաւ Ցանկ Աղէքսանդրի:„ Արդ խնդիր կրնանք ընել՝ թէ ինչ հնութիւն ունի այս ցուցակն. եւ կրնա՞յ Խաչատրոյ ընծայուիլ: Կարծենք թէ ոչ: Այսպիսի ցանկ մը չունին մեր Մատենադարանին միւս երկու եւ Վենետիկոյ ինն ձեռագիրք. որ նշան է թէ յետոյ յօրինուեր է: Միայն Թ. 1390 ունի նման գրութիւն մը. բայց թէ այս նոյն չէ առաջնոյն հետ՝ ստոյգ է. նոյն իսկ Ցանկիս բռնած տեղը նոյն չէ երկուքին մէջ: Վերջնոյս վրայ այսպէս կը գրէ Յարգ. Հ. ՅՀ. Վ. Թորոսեան. "Գրքին վերջը յաւելեալ կայ այբուբենական ցանկ մը նիւթոց կամ գլխոց:„ Թ. 90 Դ ի ցուցակն ընդհակառակն բնագրին բաժանմանց կարգաւն է, եւ անշուշտ բաւական ուշ ժամանակի գործ, որ նաեւ Բարառնութիւնքն եւ Խաչատրոյ Ցիշատակարանն եւ նաեւ Յառաջաբան մ'իսկ բնագրին մաս կարծելով՝ ցուցակին մէջ առած է ի կարգին: Լեզուն խառն է ռամկականութեամբ, որուն իբր օրինակ յիշենք այս կտորները. "Կր. Աղէքսանդր ... ի ձի հեծնէ.„ "Դ. Նեկտանեբոս ի սենեակն դեղ առնելն.„ "Կա. Աղէքսանդր ընդ փահլաւանից խօսելն.„ "Ճղէ. Խէ-

[1] Թ. 90 Դ. Թղ. 1a—4b:

ըոյեըն կանդակէ զԱղեքսանդրոս:„ — Իսկ Սչենոբէ (Աղեքսանդրիա), Տօըոցէ—ւ (Տիւրացիք) եւն յօրինողին հմտութեան աստիճանը կը ցուցընեն. բայց մանաւանդ սա խօսքը. "Եէ. Աղեքսանդրի անցանելն ընդ ոողղոփեոն." որ ծագած է նոյն կտորին մէջ յիշուած այս խօսքէս[1]. "Եկաք ի գետ մի էբրեյոողխոջոոր„ (վերջին երկու բառերն չկան ABCV բնագրաց մէջ:) — Միտ դնել պէտք է՝ որ "Աղեփանդրէ„ յորջորջմամբ սովոր էին համառօտութեան համար անուանել Կալիսթենեայ գիրքը:

Այս ցանկին մէջ յիշուած գլուխք կամ հատուածք թուով ՃԿԷ են, որմէ դուրս հանելով Բարառնութեանց եւ Նմաննեաց գլուխները՝ բուն գրոց կը մնան ՃԿԱ՝ այսչափ մասանց բաժնուած ըլլալով 90Դ ձեռագիրը: Թէպէտ գրեթէ ամէն ձեռագիրք ունին հատածի բաժանմունք, ոմանք թուակարգութեամբ, իսկ այլք լոկ կարմրաւ սկսելով հատածագլուխներն, (— ինչպէս մեր Մատ. Թիւ 68, եւ Վենետ. 893, 1107 եւ 1489. եւ միայն Թ. 1538 առանց այսպիսի բաժանմանց միապաղաղ գրութիւն մըն է. —) բայց այս հատուածներուն թիւը նոյն չէ ամէն ձեռագրաց մէջ. այնպէս որ տպագիրը կը հասնի մինչեւ ՄՁԶ հատուածոյ: Արդ կայ կարծիք թէ այսպիսի բաժանմանց սկզբնաւորութիւնը Կեչառուեցւոյ գործ է: Այսպէս կը գրէ Zacher (p. 86). "Գրոցս այժմու 286 հատածի բաժնուիլը կ'երեւայ թէ գործք է Խաչատրոյ Կեչառուեցւոյ, որ ԺԳ դարուն վերջերը կ'ապրէր եւ Այրարատայ Կեչառուս վանքէն առած է իւր յորջորջումն, եւ իբրեւ եկեղեցական քերթող նշանաւոր եղած:„ Ընդդիմութիւն չկայ այս բանիս. միայն թէ հատուածներուն թիւը չենք կրնար որոշել՝ թէ արդեօք 286 (ինչպէս ունի տպագրութիւնն,) եթէ այլազգ էր. վասն զի ձեռագիրք միութիւն չեն ցուցըներ յայսմ:

---

[1] Պատմ. Աղէքս. ՄԹ. էջ 125, 30:

Վերջապէս անկարելի ալ չէ՝ որ ուրիշի մը գործք ըլլան, եւ թերեւս աւելի կանուխ ժամանակէ։ Յոյն բնագիրք ի հարկէ չունին այսպիսի բան. այլ ամբողջը բաժնուած է երեք գրոց, եւ ամէն գիրք՝ գլուխներու[1]։ Սակայն կ'երեւայ թէ նախնական հայ բնագրին մէջ ալ կար յոյն բնագրին նման բաժանում մը՝ գոնէ տեղ տեղ։

Ըստ A բնագրի Ա գիրքը կը լմննայ[2] այսպիսի վերջաւորութեամբ Ἀλεξάνδρου πράξεων μέρος α'. (Մասն Ա. Գործոց Աղեքսանդրու։) Միւս ձեռագիրք (նա եւ ոչ V) չեն ցուցըներ հոս վերջաւորութիւն մը։ Բայց ճշդիւ հոս մեծ բաժանումն կայ հայ բնագրին մէջ[3] եւ կը գտնենք այս վերջաբանը "Կատարեցան Ծնունդք եւ Գործք Աղեքսանդրի Մակեդոնացւոյ՝ գրեալ յիմաստնոյն յԱրիստոտէլէ։ — Արդ սկսանիմք եւ զգալն ի Պղատեայ քաղաք Աթենացւոց։" Այս բաժանման եւ վերնագրութեան մեծ հնութիւնն ապահով է, եւ անշուշտ երկրորդ նախադասութիւնը ("Արդ սկսանիմք") վերնագիր էր սկզբնաւորութեան երկրորդ գրոց կամ մեծ մասին պատմութեան։ — Ընդհակառակն Աղեքսանդրու առ Հռոքսիանէ գրած թղթէն վերջը[4] կը լմննայ A բնագրին Բ. գիրքը սոյն վերջաբանով. Ἀλεξάνδρου πράξεων μέρος β'. (Մասն Բ. Գործոց Աղեքսանդրու։) ճշդիւ հոս կը լմննայ նաեւ V. եւ երկուքը

---

[1] Գիրք Ա. = Պտմ. Ա—ՃԼԴ. (էջ 73, 23։) Գիրք Բ. = ՃԼԵ—ՄԹ. (էջ 128, 28։) Գիրք Գ. = ՄԺ—ՄՁԶ. (էջ 186, 25։) Բայց ոչ ամէն (ABC) ձեռագիրք միակերպ ունին թէ գրոց եւ թէ գլխոց բաժանմունքն, այլ տարբերութիւնք կան շատ եւ մեծ։ Ա. Գիրք ունի 57 գլուխ. Բ. Գիրքն ըստ AV 22, B 40 եւ C(L) 43 գլուխ. իսկ Գ. Գիրքն՝ 35։ Սակայն ինչպէս Բ. Գրոց՝ նոյնպէս միւսներուն մէջ շատ գլուխ միայն այս կամ այն օրինակն ունի, մանաւանդ B եւ C շատ յաւելուածոյ գլուխներ կը ցուցընեն. նաեւ գլխոց տեղափոխութիւններ կը գտնուին։

[2] I, 57։

[3] Պտմ. Աղեքս. ՄԼԴ. էջ 73, 25—28։

[4] II, 22. Հայը՝ ՄԲ. էջ 122, 14։

դուրս թողլով հայ բնագրին ՄԹ հատածը[1], կը սկսին ՄԺ հատածն իբրեւ Գ. Գիրք: BC եւ L բնագիրք ունին ոչ միայն ՄԹ հատածն, այլ քաղ-ժանիք յաւելուած գլուխներ. (որ են Mի Հրատարակութեան II, 23—43 գլուխները:) Ուրեմն չունինք նշան մը հաստատելու՝ թէ նաեւ հոս հայ բնագիրն ունէր նոր մասի բաժանում, ինչպէս ունին A V բնագիրք:

Ինչպէս անցողակի յիշեցինք՝ հայ բնագրին մէջ տեղ տեղ կը գտնուին վերնագիրք կամ խորագիրք, որովք հայ բնագիրը կերպով մ'այլեւայլ մեծ մասանց բաժնուած է: Այս խորագիրք կան գրեթէ բոլոր ձեռագրաց մէջ, բայց չեն կանոնաւոր, այլ աստ անդ միայն գրուած: Առնցմէ գոնէ ոմանք ստուգիւ կանուխ են Կեչառուեցւոյ ժամանակէն եւ աստ գործք չեն: Ի սկզբան պատմութեան կայ այսպիսի խորագիր մը[2]. "Կեանք վարուց քաջութեան եւ գործք արիականք նաեւ վախճան նշանօք" այսինքն Աղեքսանդրու: Աստ գոնէ "կեանք վարուց քաջութեան եւ գործք" խօսքերը հին են անշուշտ. նման խորագիր ունին AL ձեռագիրք. *Βίος Ἀλεξάνδρου τοῦ Μακεδόνος* [L յաւելու *καὶ πράξεις.*] (Վարք Աղեքսանդրու Մակեդոնացւոյ [L] եւ գործք): Անշուշտ հին է նաեւ հայ բնագրին բուն ճակատուն խորագիրը. "Պատմութիւն Մեծի Աշխարհակալին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ:" — Փիլիպպոսի եւ Ողոմպիադայ գժտութեան պատմութենէն ետքը կը գտնենք հայ բնագրին մէջ ըստ ինքեան անդէպ խորագիր մը[3]. "Վասն հնազանդեցուցանելոյ զՄոթոնէ հօր իւրոյ": Սակայն հին է անշուշտ եւ այս, եւ հոս կ'երեւայ թէ նախնաբար ալ բաժանում կար: Մտադրութեան արժանի է՝ որ մինչեւ հոս (I, 1—22) յոյն բնագրին

---

[1] Պատմ. Աղեքս. էջ 122, 15—128, 28:
[2] Պատմ. Աղեքս. Ա. էջ 1, 5, 6:
[3] Պատմ. Աղեքս. ԿԳ. էջ 30, 5:

ամէն գլուխին անգամ ուրոյն խորագիր ունէին, եւ հոս կը դադրին. իսկ C ունի հայոյն նման վերնագրութիւն մը. Ἔνθα Ἀλέξανδρος ἐν Μαθώνῃ παραγίνεται, καὶ ταύτην ὑποτάξας εἰς Σκύθας παραγίνεται. (Աստէն Աղեքսանդրոս եկն ի Մաթոնէն, եւ զայն նուաճեալ չոքաւ ի Սկիւթս։) Այս C բնագրին յատուկ խորագրոց վերջին մասն („չոքաւ ի Սկիւթս") անշուշտ յետամուտ է, եւ միայն յարմար C բնագրին, որ երկար յաւելուածոյ մաս մ'ունի Սկիւթական արշաւանաց Աղեքսանդրու. իսկ ABV չունին հոս խորագրի հետք։ — Հին չէ անշուշտ Խամենեայ նուագին խորագիրը[1], ուր „բազում արտասուօք սկսանի ասել այսպիսի ինչ տաղս գորովալի եւ երգս աղետակոծս"[2] խօսքէն ետքը պէտք չկայ ամենեւին նոր „Նուագ Խամենեայ առաջի աշխարհակալին" խորագրոյն, զոր չունին նաեւ ABCV բնագիրք։ — Հայ բնագրին միայն յատուկ է խորագիրս[3]. „Յորժամ եկն Աղեքսանդր առ Դարեհ իւրովի հրեշտակ," զոր չունին ABCV, թէեւ հայոյն լեզուն հնութեան հետքը կը կրէ։ Բայց որ զարմանալին է՝ այս խորագիր կրող հատուածը հազիւ 7 տող է, եւ յաջորդ ՃՀԶ հատուածին գլուխ կայ նոր վերնագիր[4]. „Վասն լայնանիստ եւ յոգնատարած գետոյն Ստրանկայ," որ նոյնպէս ABCV բնագրաց մէջ չի գտնուիր. այսպէս նաեւ Դարեհի թաղելու պատմութեան մասն կը սկսի խորագրաւս[5]. „Եթէ ուրանոր թաղեաց Աղեքսանդրոս զԴարեհ". ABCV չունին նաեւ զայս։ — Վերջին խորագիրն, որ միայն հայ բնագրին մէջ կայ՝ է հետեւեալը[6].

---

[1] Պատմ. Աղեքս. ՃԻԹ. էջ 66, 8։ (I, 46.)

[2] Հ ճոխ է. յոյնը կ'ըսէ միայն. Ἄρχεται λέγειν οὕτως. (սկսաւ ասել այսպէս։)

[3] Պատմ. Աղեքս. ՃՀԵ. էջ 97, 24։

[4] Պատմ. Աղեքս. ՃՀԶ. էջ 98, 1։ (II, 14.)

[5] Պատմ. Աղեքս. ՃՂԸ. էջ 113, 15։ (II, 20.)

[6] Պատմ. Աղեքս. ՄԲ. էջ 118, 5։

"Սպանումն Բեսոսի եւ Առիվարդայ։" Այս տեղ[1] յոյն օրինակաց մէջ միապաղաղ կը շարունակուի խօսքն, ուստի ՄԱ եւ ՄԲ հատուածք իրարու կից են։

Այս վերնագիրք հին են քան Կեչառուեցւոյ խմբագրութիւնը. վասն զի եթէ Խաչատուր կամ այլ ոք նոր յօրինէր զասոնք՝ ի հարկէ կանոնաւոր եւ պատշաճ տեղեր կը դնէր, եւ ոչ թէ ասոնց պէս ըստ բախտի հոս հոն զետեղուած կրնային ըլլալ։ Սակայն ո՞րչափ միայն խորագիրք կը գտնուէին յառաջ թէ աւելի, կամ թէ արդեօք կանոնաւոր եղանակաւ խորագրօք զարդարուա՞ծ էր հայ բնագիրն, որոնց մեծ մասն կորսուելով՝ մնացին իբրեւ նշխարք այս մի քանիին։ Այս հարցման պատասխան տալու չափ նիւթ չունինք առջեւնիս. միայն գիտենք որ Վենետկոյ Թ. 1390 ձեռագիրն "այլեւայլ գլուխ բաժնուած է եւ լուսանցքներուն վրայ գրուած են առանձինն վերնագիրք, որ կը պակսին ի տպագրին։" Զունենալով այս վերնագրերուն պատճէն մ'առ-ձեռն՝ չենք կրնար հնութեան չափը քննել. ուստի եւ այս խնդիրը կը մնայ առկախ. միայն մտադիր կ'ընենք՝ որ վերջին ձեռագրիս գաղափարը շատ հին՝ բայց դժուարաւ Նախակեչառեցւոյն՝ ձեռագրէ մ'օրինակուած կ'երեւայ։

Եթէ ցայսվայր չկրցանք ամենայն ստուգութեամբ Կեչառեցւոյն խմբագրութեան արգասիքն որոշել, գոնէ յաջորդք կը լուսաբանեն այս թերին, այսինքն՝ ապահովութեամբ Խաչատրոյ յաւելուած են Վերջաբան եւ Յառաջաբան մը։ — Գրեթէ ամէն ձեռագիրք ունին Բարառնութեանց անմիջապէս կից վերջաբանական հատուած մ'որ իւր առաջին բառէն առեալ "Ապէնիազն" կը կոչուի. միայն երկու ձեռագիրք Վենետկոյ՝ Թիւ 893 եւ 1601 ի բաց թողուցած են այս կտորն, որուն խորագիրն է[2].

---

[1] II, 21։
[2] Ըստ 90 Դ. Թղ. 242a—244b։

«Եթէ ամենայն կեանք վարուց յաղթութեան եւ արիութեան, նաեւ[1] վախճանն նշանօք առ Տէրն մեր[2], զոր բերեմք[3] մարգարէութեամբ»։ Բայց այս խորագիրն ունին միայն Վենետկոյ Թիւ 1390, 592 եւ 1538 եւ մեր Մատ. Թ. 57Ա եւ 90Դ։ Աւելի որոշ է Թ. 68ի գրածը.[4] «Եթէ որպէս առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս վերաբերի Աղեքսանդրոս։» Երկու մաս ունի վերջաբանս. առաջնոյն մէջ Խաչատուր կը ջանայ համոզել որ ինչպէս Մովսէսի օձն, Յովսէփայ փորձութիւնն եւ մինչեւ Դաւթի մեղանչելն եւ նոյն իսկ «պատկերն Աթենայ» «ունի տեսութիւն մարգարէութեան», այսինքն տիպ եւ նախօրինակ էին Քրիստոսի տնօրինականաց, «ապա ո՞րչափ եւս առաւել այրս այս սքանչելի Աղեքսանդրոս»։ Այս մասը միայն տպուած է 1842ի հրատարակութեան մէջ իբրեւ օրինակ «ցուրտ եւ անհամ» բանից ի ծանօթութեան[5]։ Չէ տպուած (եւ ոչ երբեք ալ արժանի է) երկրորդը, որուն մէջ 18 համեմատութիւնք կան Աղեքսանդրու եւ Քրիստոսի գործոց, որոնց իբրեւ օրինակ յիշենք սա տողը. «Սա (Աղեքսանդրոս) յաղթեաց Դարեհի, Եւ Տէրն մեր զօրութեան սատանայի,» եւ այլ այսպիսի դանդաչանք։ Դժբախտաբար միայն այս կտորն՝ որ իւր հեղինակին մտաց լաւ վկայական մը չէ, ապահովութեամբ Խաչատրոյ է, որ ասոր կից յիշատակարանին մէջ ներումն կը խնդրէ որ «զայս այսպէս համարձակեցայ մի՛ ստգտանիցէք... այլ յիշման

---

[1] Թ. 57Ա «եւ զկենացն վախճան.» 1390 «նաեւս վախճանն.» 592. որ ամբողջովին նոյն է 90 Դի հետ՝ հոս «զվախճանն։»

[2] «Մեր» չունի Թ. 1390։ Հոս կը լմննայ 57Ա։

[3] Թ. 1390 «որպէս բերէ մարգարէութեամբ.» 592 «որպէս բերեմք մարգարէութեամբ.» Թ. 1538 բովանդակն աղաւաղ՝ այսպէս. «Եւ թէ ամենայն վարուց եւ յաղթութեան եւ արիութեան նա եւս առ Տէրն որպէս մարգարէութեամբ։»

[4] Թիւ 68. Թղ. 247b։

[5] Պատմ. Աղեքս. էջ 195. ծն. 1։

արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառուեցիս. զի է յարմարումն սոկա քանիցս հաստատով աշխարհեցայ։„ Այս խօսքը կը ցուցրնէ միանգամայն՝ թէ ինչու այսպիսի համեմատութիւն մը յօրինել պէտք տեսեր է Խաչատուր. այսինքն՝ որպէս զի "հեթանոսական„ "անվայելուչ„ գրուածն "որ ի ներքոյ լի է սնոտի կարծեօք,„ գոնէ այսու "հաւատով„ քրիստոնէական կերպարանք մ'առնու։

Այս վերջին կտորին անհեթեթ կարծեաց արձագանգք է եւ ապահովութեամբ նոյն հեղինակին գործ՝ յառաջաբանական գրութիւն մ'ամբողջ գործոյն, զոր միայն մեր Մատ. Թիւ 90 Դ ձեռագիրն ունի։ Այս կտորն է[1] "Նախագրութիւն շարագրութեանց գրոցս աշխարհականին.„ որուն մէջ եղած այլեւայլ ակնարկութիւնք կը մեկնեն զայն՝ որ զինքը յորդորեց Վարուց Աղեքսանդրի գրչութեան եւ "Այէնիազն„ կտորին յօրինման։ Նախ կ'ըսէ թէ "Աստուածազան խնդիր հարանց հոգեւորաց„ կը ստիպէ համառօտիւ "արտածառել զաշխարհական իմաստուն. որ որէս ես գաղափար եղէ- ճշմարիտ երկնաւոր թագաւորին.„ (հմմտ. "Այէնիազն„.) եւ թէ թէպէտ եւ "պատմագրեցաւ ի ստագիրացւոյն յԱրիստոտէլէ„ (այսինքն՝ Կալիսթենեայ գրոց մէջ,) "սակայն արդիւնքն շահաւէտ ոչ տրամագրեցաւ.„(այսինքն՝ Աղեքսանդրի Վարուց պատմութեան հեղինակը Քրիստոսի տնօրինականաց չէ նմանցուցած իւր պատմածները.) ուստի մեծ հաճութեամբ կը յիշէ՝ որ ինքն ըրած է այս "Նկարագրութիւնն ողէնիկաղն Աստուծոյ։„ Այսուհետեւ տողելով այլ եւս քանի մը համեմատութիւններ՝ կը գրէ. "Իսկ ընդէր գտցես (այսպիսի համեմատութիւններ) է հատարման կտակիս սոյն սարասիս չինի արտաճառել յօգուտ ոմանց բանասիրաց„։ Վերջապէս կը յիշեցրնէ որ Աղեքսանդրի Վարուց այս գիրքը կրնայ

[1] Թ. 90 Դ. Թղ. 5a—7b։

"յօգուտ եւ յօրինակ" ըլլալ աւագաց, եւ սորվե-ցընել առաքինութիւն եւ արդար դատաստան, "որ է մասն քառից խոհեմութեանց՝ ըստ իմաստնոյն Պղատոնի. որ գրեալ է ի Տիմէոսեան տրամաբանու-թեան:" Անկէ կ'իմանանք որ ծանօթ էր Կե-չառուեցւոյ վերջին գրոց Հայ թարգմանութիւնը[1]:

Այս յառաջաբանը կարեւոր կտոր մըն է Կա-լիսթենեայ Հայ թարգմանութեան մէջ, որ մեծ լոյս կը սփռէ Կեչառուեցւոյ դիտաւորութեան վրայ. եւ որովհետեւ մի միակ ձեռագրի մէջ գտանք զայս եւ ցայսօր անտիպ մնացած՝ պէտք կը տեսնենք դնել հոս այս կտորը՝ ըստ Թ. 90 Դ ձեռագրի (Թղ. 5a.):

"Նախադրութիւն շարագրութեանց գրոց աշխար-հակալին: — Աստուածազան խնդիր հարանց հոգեւո-րաց եւ համշիրակ համբակաց՝ եւ համակամ[2] եւ մշտա-շարժ սիրով ստիպէ զմեզ ի[3] Բարբարոսական փիլիսոփայու-թեան բանին արհեստից՝ արտածառել սակաւ պարու-թայիւ զաշխարհակալ իմաստունն, որ փէղ էր փողա-փոր եղեւ ճշմարիտ երկնաւոր թագաւորին՝ եւ կուսածին Աստուծոյն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի թէպէտ եւ տրամաբանեալ[4] պատմագրեցաւ ի ստոյգրոյն յԱ-րիստոտելէ[5], սակայն արդիւնքն շահաւէտ ոչ տրամա-դրեցաւ տարմալակ[6] մտաց նորա, որպէս ամենայն տե-սանողացն (յայտնի է), ըստ ասացելոյ առաքելոյն՝ իմաս-տութեամբն Աստուծոյ ոչ ծանեաւ աշխարհ զԱստուած. զի կուրացան անմտութեամբ սրտից նոցա:

"Աստանօր նախաճառեմ զծնունդ նորա՝ որ եղեւ շարժմամբ եւ նշանօք բերելով (Թղ. 5b) զնկարագրու-թիւն ողջերթողն Աստուածոյն որ եղեւ ի Բեթղահէմ

---

[1] Գրիգորի Մագիստրոսի այս գրոց վրայ գրածը՝ տես ի "Հանդէս Ամս.", 1890, Թ. 7, էջ 159—160:
[2] Օր. "եւ հակամ:"
[3] Օր. չունի "ի":
[4] Օր. "տրամաբանել:"
[5] Հմմտ. Պտմ. Աղեքս. ՃԼԴ. էջ 73, 25:
[6] Օր. "ոչ տրէադրեցաւ ի տարլմալակ մտաց նորա:"

ատեղն գուշակմամբ[1] եւ գալստեամբ Արաբացւոց։ Իսկ յաղթութեամբն խուժադուժ ազգաց՝ յայտ առնէ զյաղթութիւն Տեառն խաչիւ ի վերայ խաւարասէր իշխանին[2]։ Նաեւ քակտումն Ծուրայ եւ Ծայդանայ՝[3] զաւերման դժոխոց բերէ զյիշատակ[4]։ Իսկ զըմպանակն[5] մահաբեր արբեալ նմա՝ արտայայտէ զճաշակումն լեղւոյն եւ քացախոյն[6] վասն յառաջաճաշակ պտղոյ նախաստեղծին։ Իսկ փայլակն որ անկաւ ի ծով եւ աստղն զոր վերացոյց արծուին՝[7] ցուցանէ զաւանդումն հոգւոյ հզօրին՝ որ ի ծոց ծնողի նորա։ Եւ զշանթն հրացեալ ի ջուր՝ ազդէր զնսեմանալ լուսաւորացն. իսկ շամանդաղն՝ զխաւարն աշխարհատարած որ ընդ բուամբ ածեալ շօշափէր իբրեւ զհանդերձ։ Նմանապէս ամք կենաց նորա ԼԳ[8]. նոյնքանիւ չափեալ զժամանակ՝ ելանելոյ յաշխարհէ Աստուածն Բանի[9]։ Իսկ [illegible] գտցես է [illegible] կտակիս՝ սովին սարասիւ[10] [illegible] արտաճառեալ յօգուտ ոմանց բանասիրաց։

“Ոչ վերջանամք պատմել[11] պայմանիւ (Թղ. 6a) զանսայթաք քաղաքավարութիւն կենաց նորա. յօգուտ եւ յօրինակ ամենայն թագաւորաց եւ իշխանաց, զսկիզբն արիական եւ քաջահմուտ արանց պատերազմողաց. դ. են արտադատմունք, գիտութիւն, արիութիւն, համբաւ եւ դատաստան։ Այսպէս եւ ըստ այսմ օրինակի վայել է արքայից եւ զօրապետաց իմաստուն

---

[1] Հմմտ. “Ապէնիազն„ Ա եւ Զ։
[2] Հմմտ. “Ապէնիազն„ Ե եւ Ը։
[3] Օր. “Ծադանայ։„
[4] Այսպիսի նմանութիւն չունի “Ապէնիազն։„
[5] Օր. “զըմպանեակն։„
[6] Հմմտ. “Ապէնիազն„ ԺԱ։
[7] Այս եւ յաջորդ կտորներուն համար՝ Հմմտ. Պտմ. Աղեքս. ՄՉԱ. էջ 183, 26—184, 9։
[8] Հմմա. Պտմ. Աղեքս. ՄՉԵ. էջ 186, 26 եւն։
[9] Այս կտորը գրինք ըստ կամս. օրինակն էր “նոյնքանիւ չափեալ զժամանակ ելել նորա աշխարհի Աստուածն բանի.„ աղաւաղ։
[10] Անշուշտ կ'ուզէ “այսպէս„ կամ ասոր նման իմաստով բան մ'ըսել. յօրինակին էր “սոյն սարասիւ„։
[11] Օր. “պատմեալ։

եւ հանճարեղս լինել ....։[1] Իսկ արդար դատաստանաւ՝ որ է մասն քառից խոհեմութեանց ըստ իմաստնոյն Պղատոնի, որ գրեալ է ի Տիմէոսին տրամաբանութեանն որ իսկապէս ի սմա[2] տեսանի (Թղ. 6b) լաւաբախտ յաջողութիւն առ ասացեալ իրացս յայտարարութիւնքն։"

Յաջորդ մասերը կարծես օտար են, այնչափ խրթին եւ աննման է լեզուն եւ անիմաստ շաղփաղփանք, որուն իբրեւ օրինակ յիշենք սկիզբն. "Արդ բարառնաբար ի Նպատակ արտադիտեցուք. որոյ եւ է սա ի Հելլենական գեղազարդեալ գաւառէ ներքպայմանադրեալ ի տիպն հոմասեռեան լիապատար մայրաքաղաքին մակեդոնական ճահեցմամբ ըղփածեմ ընչից պարապատուեալս. եւ պարզատուեալ պատուարն գերերրակերտ հեզահուն կորովաթարթ քաջազնապէս՝ անթարթահուռս պարփակեալ անբակ քառից յանդարելիս" եւն։ Այսպէս կը շարունակուի մինչեւ Թղ. 7b, 10 ուր կը սպառի՝ ճշդիւ խօսելով առանց տող մ'անգամ նախընթաց մասին լեզուն եւ նիւթն ունենալու։

Հոս պէտք ենք զբաղիլ ծանրակշիռ խնդրով մը՝ Բարառնութեանց քննութեամբ։ Աղեքսանդրի Վարուց Հրատարակիչը յաւելուած մը կցեր է[3] այս խորագրով. "Խաչատրոյ Կեչառեցւոյ Բարառնութիւնք ի Մահն Աղեքսանդրի։" Կանխենք ըսենք՝ որ այս վերնագիրն անշուշտ Հրատարակիչն աւելցուցեր է, վասն զի՝ որչափ ծանօթ է ինձ՝ եւ ոչ ձեռագիր մ'այսպիսի խորագիր չը կրէ. այլ գրեթէ ամէնքն Վարուց Աղեքսանդրի պատմութեան վերջը կը կցեն առաջին Բարառնութեան[4] խորագիրը՝ "Եթէ որպիսի ողբս վտանգալից եւ աղէտս աւաղականս ասացեալ է բարառնաբար Աղեքսանդրոս ի Հիւանդութեան

[1] Եւ այլ այսպիսի խրատականք, զորոնք դնել աւելորդ համարեցանք։

[2] Ըստ կամս դրինք այսպէս. օրինակն ունի. "զոր իսկապէս է սո տեսանի լաւաբախտ յաջողութիւն" եւն։

[3] Պատմ. Աղեքս. էջ 189—195։

[4] Պատմ. Աղեքս. էջ 189—191։

իւրում ըմբռնեալ դեղով[1]:„ Այս առաջին Բարառնութեան սկզբնաւորութիւնն է. “Աւաղ վշտահաս տուգանաց„ ասեն: Ասկէ զատ կան երեք Բարառնութիւնք ալ. այսինքն՝ բ) “Եթէ զանձն իւր տառապեալ եւ զրկեալ որպէս ողբացէ Ողոմպիադա մայրն Աղեքսանդրու: — Լացէք զիս[2]„ ասեն: գ) “Եթէ զորպիսի ողբս յօրինեաց դուստրն Դարեհի Հռոքսիանէ կին աշխարհակալին Աղեքսանդրու: — Զնջեցաւ կտակ կենաց հիքոյս[3]„ ասեն. եւ դ) “Եթէ նախարարքն եւ զօրքն Աղեքսանդրու զորպիսի կական բարձեալ լան զԹագաւորն իւրեանց: — Եկայք ի միասին[4]„ ասեն: Այս չորսն ալ ունին գրեթէ ամէն “ձեռագիրք միաբան. բայց համառօտք նաեւ զասոնք շատ անգամ համառօտեալ ձեւով կը ներկայացընեն. այսպէս մեր Մատ. Թ. 68 ձեռագիրն[5]. այսպէս նաեւ Վենետկոյ՝ Թ. 1107 եւ 1489: Երկուքը միայն (առաջինն եւ երկրորդն) ունի Թ. 893, ուր “նաեւ եղած ողբերը կամ Բարառնութիւնքն համառօտած է դրիչը կամ ընդօրինակողն, եւ կրնայ ըսուիլ որ յինքենէ յերիւրեր եւ յարմարցուցեր է բովանդակ շարագրութիւնն:„ Վերջապէս Թ. 1601 “չունի եւ ոչ զմին ի Բարառնութեանց, մանաւանդ որ պատմութեան մէկ մասն ալ կը պակսի:„

Ի սկզբանէ հետէ այս Բարառնութիւնք Խաչատրոյ երկասիրութիւն համարուած են. բայց ոչ ոք քննած է՝ թէ ինչո՛ւ արդեօք այսպէս կը կարծուի: Առաջին անգամ Կայէր գերմանացին կասկած յայտնեց այս նկատմամբ՝ լոկ հարցական նշան մը դնելով Կեչառուեցւոյ անուան քով:

---

[1] Ձեռագրաց մէջ ի հարկէ կան ընթերցուածոց տարբերութիւնք թէ այս եւ թէ յաջորդ խորագրաց, զորոնք նշանակելն աւելորդ համարեցանք:

[2] Պատմ. Աղեքս. էջ 191—192:

[3] Պատմ. Աղեքս. էջ 192—193:

[4] Պատմ. Աղեքս. էջ 193—195:

[5] Թ. 68. Թղ. 245b, բ — 248a, բ:

Այս Բարաւնութիւնք Խաչատուրոյ համարելու մի միայն նշան կրնայ առնուիլ ասոնց վերջը գրեթէ ամէն ձեռագրաց մէջ գտնուող յիշատակարանը[1]. «Որք լսէք զաղիողորմ Բարաւնութիւնս՝ ընթերցող սուրբ[2] զխաչատուր Կեչառուեցիս[3] յիշեցէք ի Քրիստոս Տէր մեր[4]։» Սակայն այս յիշատակարանը կրնա՞յ ցուցընել՝ որ Կեչառուեցի անձամբ յօրինած է զասոնք, եւ ոչ թէ գտնելով իրմէ յառաջ՝ իւր խմբագրութեան մէջ առած։ Այս խնդիրը չի լուծեր յիշատակարանիս այն խօսքը թէ «ընթերցող սուրբ Խաչատուր։» Վասն զի անով չի կրնար հասկցուիլ բարաւնութեանց յօրինումն. այլ թէ ոչ գոնէ «զյարմարող սոցա» պէտք էր ըսուիլ։ Այս խօսքով Խաչատուր անշուշտ կը հասկընայ միայն Կալիսթենեայ օրինակութիւնը՝ Բարաւնութեանց եւ իւր յօրինած Ցառաջաբանին եւ Վերջաբանութեան հետ ի միասին, որովք նոր ձեւի վերածած էր գիրքը կամ այս յաւելուածովք արտաքին խմբագրութիւն մը յօրինած. եւ զայս կը ցուցընէ «ընթերցող սուրբ» բառերով։ Եւ արդեամբք եթէ ակնարկ մը ձգենք այս կտորներուն վրայ՝ կը համազուինք՝ որ Խաչատուր ո՛չ այն լեզուն եւ ո՛չ այն ոճը կրնար գործածել. վասն Կեչառուեցւոյ խեղճ ու տմէկ լեզուին քով Բարաւնութեանց լեզուն շատ ու շատ բարձր է, մանաւանդ վերջին չորրորդ Բարաւնութեան մէջ։ (Աստ անդ հանդիպած քանի մը ռամիկ ձեւեր[5]

---

[1] Թ. 90 Դ. Թղ. 242a, 1—3։

[2] «Սորին,» ունի Թ. 57Ա։

[3] «Կեչառեցի» ունին Թ. 1259, 592 (որ «լոկ,» կ'ըսէ փոխանակ «լսէք»,) 57Ա. այլք » չունին։ Հոս շատ ձեռագիրք յաւելուած ունին գրչաց. այսպէս Թ. 424 «զխաչատուր Կեչառեցի եւ ընթերցօղ գրիչս.» Թ. 57Ա. «զխաչատուր Կեչառեցիս եւ է սոյն շարադրիչ Զաքարիա եպիսկոպոս գծօղս եւ նկարօղս Աստուածատուր գրիչս։»

[4] «Տէր մեր» չունին Թ. 1259, 592 եւ 1538։ Թ. 424 «յիշեցէք ի Քրիստոս,» Թ. 57Ա. «յիշել ի Տէր,» 1538 յաւելու ի վերջոյ «եւ դուք ողջ լերուք ի Տէր Ամէն»։

[5] Այսպէս են «աչէր,» «Հասայ,» «Հոսայ» (Հոսեցայ) եւն։

սխալագիր գրչաց արդիւնքն են։) Դարձեալ միտ դնենք՝ որ ինչպէս Վարուց Աղեքսանդրի քաֆն բնագրին, նոյնպէս նաեւ Բարառնութեանց իւրաքանչիւրին նմանողական ոտանաւոր յօրինած են Կեչառեցիէն քիչ մ'ետքը՝ Զաքարիա (որ ի նորին "շառաւիղէ„ ըլլալով՝ լաւ գիտէր հարկաւ Խաչատրոյ գործքերը), եւ Գրիգորիս Աղթամարցի. ուստի իբրեւ քաֆն բնագրէ մաս կը նկատէին Բարառնութիւնքը։ Ստուգութեան կը հանի այս՝ եթէ ուղղիղ է 57Ա ձեռագրի Լուսանցագրութիւնը, որ Բ. Բարառնութեան[1] նմանողութեամբ շինուած "Ազդեցէք ի տուն Պարսից„ ոտանաւորը Կեչառեցւոյ անուամբ կը յիշէ յօրինուած։ — Անցողակի յիշենք որ Կեչառեցւոյ այս մանր յիշատակարանը չունին Թ. 893, 1390, 1601 եւ կ'երեւայ թէ նաեւ 1107 եւ 1489 ձեռագիրք. բայց այս՝ անշուշտ կարեւորութիւն չունեցող պարագայ մըն է։

Որպէս զի յախուռն չերեւայ լեզուի եւ ոճոյ կողմանէ առեալ մեր դատաստանը՝ դնենք հոս պատառիկ մը միայն երկու գրութեանց, որ ամէն տեսակն համեմատութենէն աւելի պարզ կը ցուցընէ իրը։

## ՆՇԽԱՐ ԽԱՉԱՏՐՈՅ ՈՏԱՆԱՒՈՐՆԵՐԷՆ[2]

(Ա— ՄԽՉ։) "Ասաց մատռուակ գինոյն
Որ գլընդայս է ծերոս է ոռեր,
Առէք ըմպեցէք ըզգինիս
Ո— հերէք որէք ըզըրոացէք։
Յերկաւր ճանապարհ ոսնէս
Գընաւ ոս էս անհոգացէք.
Զայս տիկնոջ մըտօքն ասէր,
Որ վախէր զնա սպանանել։„

Միտ դնելու է որ Կեչառեցւոյ այս կտորը դեռ ընտիր մասերէն է, որուն կը համոզուինք քիչ

---

[1] Թ. 57Ա. էջ 138 "ԽՉ„ կը նշանակէ այս երգը, մինչ Թ. 90Դ (Թղ. 238b) "ԳՐ„. այսպիսի դէպքեր ցանցառ չեն։

[2] Թ. 90Դ. Թղ. 209a։

մ'եաքը յիշելի քանի մը նշխարներով։ Իսկ Դ. Բարառնութեանց այս կտորը՝ քանի մը մանր դարձուածք եթէ ի բաց առնունք՝ Ե. դարու գոնէ վերջին կիսուն լեզուի դրոշմը իւր վրան կը կրէ։

## ՆՇԽԱՐ Դ. ԲԱՐԱՌՆՈՒԹԵԱՆ[1]

“Զայս ասելով ի յողբ շարժին, պատառեն զպատմուճան, ներկ(ան)են արեամբ զերեսս, փետտեն զհերս վարսից, ճողեն զմօրուս իւրեանց, հող զգլխով արկանեն, տան զերեսս միգախառն մոխրի, հնչեն զգալարափողս... զաշխարանն այսպէս հրատարակեն. Տէր արքայ, այսքան ժամանակս աշխատ եղաք ի գործ պատերազմի, ծովակուրս եւ գազանաբեկ լինելով„ եւն. եւն։

Վերջապէս աւելորդ չէ մտադիր ընել՝ որ Խաչատուր ըստ բաւականի գիտէ իւր գրութեանց արժէքը, ուստի միշտ կը ջանայ արդարացընել իւր գրուածները՝ “տոհմ— բան„ “զկեշառեցիս փչոց արարէք յիշման զիս արժան[2],„ “այսպէս եւ դու առ ի մտի, ծոյլ ու ծանակ Կեշառեցի[3]„ եւ նման բացատրութեամբք. եւ այսպէս՝ դժուարաւ կրնար Բարառնութեանց համար՝ եթէ իւր գործքն էին՝ ըսել թէ “Որք լսէք ղողջողոմ Բարառնութիւնս՝„ զանոնք այսպէս գովութեամբ յիշելով։ Լաւ կը ճանչնանք դարձեալ զԽաչատուր՝ որ այնպէս “անվայելուչ„ կը գտնէր “հեթանոսական„ գրուածքները, որ այսպիսի գիրք մը գրելու համար թողութիւն խնդրելու պէտք կը տեսնէր. մինչ Բարառնութեանց հեղինակը՝ յարմար կամ անյարմար՝ հեթանոսական դիցաբանութեան յաճախ՝ նաեւ ոչ ճիշդ՝ ակնարկներով ճոխացընել կ'ուզէ իւր գրչութիւնը։ Այսպէս կը յիշեցընէ որ Աղեքսանդր ըլլայ “յԱմոնէ կամ Արամազդայ հելլենական նուագօք ի Կրաւնոսէ եւ յՌեայէ սերեալ ազգաբանու-

---

[1] Պատմ. Աղեքս. էջ 193—194։
[2] Թ. 68. Թղ. 244b, ա։
[3] Թ. 90Դ Թղ. 69a։

թեամբ[1].„ Աղեքսանդրու ոտքն էր "օդապարիկ իբր Քսենէրքսա եւ Պագիսոս[2].„ կը կրթուէր "ի մայրն իմաստութեան առ Աթենայ իսկուհ-ւոյն[3]:„ Ողոմպիադա կ'ողբայ ըսելով. "Այժմ պի-տոյ է ինձ տապարն Հեփեստոսի առ ի հերձանել զգլուխ ծնողիս Աթենայ[4].„ եւ Հռոքսիանէ կը հեծեծէ թէ "որպէս հանդերձեալ ես (Աղեքսան-դրոս) յաստուածոյն խառնիլ երամս[5],„ եւ այլ նման բացատրութիւնք, որոնք Կեչառուեցւոյ դրչէն դժուարաւ կրնային ելլել:

Միւս կողմանէ բաւական յայտնի է Բարառ-նութեանց հեղինակին աղբիւրն՝ նաեւ լեզուին նկատմամբ,[6] այսինքն՝ Կալիսթենեայ հայ թարգ-

---

[1] Պտմ. Աղեքս. 189, 13:
[2] Պտմ. Աղեքս էջ 191, 1:
[3] Պտմ. Աղեքս. էջ 191, 6:
[4] Պտմ. Աղեքս. էջ 192, 14:
[5] Պտմ. Աղեքս. էջ 193, 15:
[6] Ամբողջ Բարառնութեանց նիւթը Կալիսթենէսէն է, ինչպէս ամէն ընթերցող կը տեսնէ: Լեզուին նմանու-թեան իբրեւ դոյզն օրինակ յիշենք. "կարծիս առեալ Եղ-ջերւոյ անմահ ջրոյ ծովու„ (էջ 189:) Համմտ. առոր հետ Պտմ. Աղեքս. էջ 41, 30, ուր առ Աղեքսանդր կ'ըսուի. "Ով թա-գաւոր, քեզ փիւգոս եղջերւոյ առեմ. զի թէ կամիս յաւ-իտեան անձերանայ ջրոյ ծովու.„ (Համմտ. ՀԷ. էջ 36, 15:) Ցայտնի է որ "եղջիւրք„ նշան էին Ամոնի. (Համմտ. Թ. էջ 6, 18. ԺԶ. էջ. 9, 30. եւն) եւ Աղեքսանդր "Եղջերաւոր„ կը կոչուի. (ՄՁԲ. էջ 184, 22:) — Էջ 190, 2. Պաւրոսի համար կ'ըսուի. "Զոր անդրաքայլեալ գլեջն՝ զբլուրն մեղջն դիւանաւ կացուցեալ.„ Համմտ. Պտմ. Աղեքս. ՄԺԹ. էջ 134, 14 "...զթագաւորն Պաւրոս, եւ զմեղջն բլուրն դիւ-անաւ ի վայր ընկենոյր„: "Գլէլ„ շատ կը գործածէ Կա-լիսթենեայ թարգմանիչը՝ պարտել, յաղթել նշանակութեամբ, այսպէս նաեւ գլումն (յաղթելն, յաղթանակ) զ. օ. "Հզօր գլման եղելոյ՝ ի փախուստ դիմեցին.„ (Պտմ. Աղեքս. ՃԺԵ. էջ 58, 16:) — Էջ 194, 23. "Ես մարդ եմ մահկանացու. բայց վասն զի վերին նախախնամութեամբ ոչ տայր ինձ թոյլ հանգչել՝ ի ձեռն իմ մարդկաբարբառ նախախնամէր զարարածս, բարեացն բարիս տայր առնել, չարեացն զչարն հատուցանել.„ Համմտ. Պտմ. Աղեքս. ՄԻԳ. էջ 137, 10 եւն. "Նոքա (Բրաք-մանք) ասեն. Իսկ արդ ապա դէ մարդ մահկանացու գոլով քո, առ ի՞նչ այդչափ պատերազմ տաս...: Ասաց ցնո-սա արքայն. Այս ոչ ի մէնջ, այլ ի վերին նախախնամութենէն մարդկաբարբառ լինի ... արդ ես դադարել կամիմ ի պա-

մանութիւնը. եւ արդեամբք անհնար չէ՝ որ նոյն իսկ ինքն հայ թարգմանիչը Վարուց Աղեքսանդրի ըլլայ հեղինակ Բարառնութեանց՝ յանձնէ յօրինելով կամ թարգմանաբար յերիւրելով։ Սա ստոյգ է՝ որ Պիտոյից գրոց հեղինակը շատ սիրող է Բարառնութեան օրինակաց. այնպէս որ իւր "Պէտք„ գրոց Ը. Մասին մէջ դրած Բարառնութեան օրինակներով [1] գոհ չըլլալով՝ նոյն գրոց վերջը կցեր է "Ցուցեալ օրինակաց Բարառնութեան [2]։„ Այսպէս կարծենք նոյն ինքն Խորենացի իւր հռետորական ուսման փորձ մ'ուզեր է ընել Կալիսթենեայ նմանողութեամբ յօրինելով այս ողբերն, որոնց ընտրութեան կամ ոճի ատրճանն արդեամբք չի տարբերիր Պիտոյից գրոց մէջ ի Մովսիսէ հիւսուած շատ մը կտորներէն. բայց նկատմամբ լեզուի՝ աւելի բնական եւ զուտ՝ քան վերջնոյս մէջ։ Անշուշտ Վարուց Աղեքսանդրի թարգմանութեան հետ ի միասին եղած է այս կտորներուս յօրինումն, որուն վկայ է լեզուի նոյնութիւնը։

Սակայն կրնա՞նք արդեօք այս Բարառնութեանց մաս համարիլ այն հինգերորդը՝ որուն վերնագիրն է. [3] "Եթէ որպիսի բանս խրատական խօսեցեալ լինի հանճարեղին Աղեքսանդրու առ բարեկամս իւր։ — Բարեաց գործոց եւ քաջապէս առաքինութեանց ոչ գոյ հակառակ.„ եւն։ Նոյն իսկ հրատարակիչն այս կտորը չէր համարեր Բարառնութեանց մասն՝ գլխաւորաբար զայն պատճառ բերելով՝ որ նաեւ ձեռագիրք չեն դներ Բարառնութեանց մէջ, այլ գրոց վերջը՝ նոյն իսկ յիշատակարանէն ետքը [4]։ Այս դիտողութիւնն ուղիղ է. նուազ

---

տերազմ տալոյ, այլ ու տայ Նոյլ բարուցս իմոց տէրն,, եւն։ Դարձեալ "ղստարոսլոգլոսխ Երէվոր,, (էջ 192, 2.) ճիշդ նոյնը Պատմ, Աղեքս. ՄԺԷ. էջ 133, 18 եւն ։

[1] Խոր. տպ. 1842, էջ 510—528։

[2] Անդ, էջ 570—579։

[3] Պատմ. Աղեքս. էջ 196—198։

[4] Պատմ. Աղեքս. էջ 195, ծն. 1, բ։

ծանրակշռութիւն չունի նաեւ այն՝ թէ “եւ յոճ մատենագրութեանն իսկ այլայլութիւն տեսանի ընդ նմա եւ ընդ առաջինսն։„

Այս կտորիս օտար ըլլալու նշան մ'ալ է անշուշտ այն՝ որ ասոր Հեղինակն առջեւն ունէր “Արիստոտէլի Յաղագս Առաքինութեանց առ Աղեքսանդրոս թագաւոր[1]„ գրութեան հայ թարգմանութիւնը, որ բաւական ուշ թարգմանուած է ի հայ։ Այս գրութեան մէջ կը յիշուի թէ Արիստոտէլ[2] “Ի ճառին Առաքինութեան որ ճեմականն այսպէս հրատարակէր. եթէ Գովելի են գեղեցիկքն արդարութեամբ եւ պարսաւելի պակշոտեալքն եւ արբեալքն մեղօք, եւ աւելի՝ գարշելիքն զեղխութեամբ. քանզի բարեաց յառաջեալ լինին առաքինութիւնքն եւ գարշելեաց չարութիւնքն։„ Այս կտորին աղբիւրն է “Արիստոտէլի Յաղագս Առաքինութեանց„ գրոց նոյն իսկ սկիզբն՝ որ է այսպէս[3]. “Գովելի են գեղեցիկքն եւ պարսաւելի գարշելիքն. քանզի բարեաց յառաջեալ լինին առաքինութիւնք, եւ գարշելեաց չարութիւնքն„։ Ինչպէս կը տեսնուի՝ գրոցս տպագրութեան օրինակին եւ այն ձեռագրին մէջ՝ զոր գործածած է Բարառնութեանս Հեղինակը, բաւական ձեռագրական տարբերութիւնք կային։ — Յիշենք որ այս “Բարեաց Գործոց„ կտորը չունին շատ մը ձեռագիրք, այսպէս Վենետկոյ՝ Թ. 592, 893, 1259, 1390, 1538 եւ 1601, մեր Մատ. Թ. 90 Դ եւ 57 Ա. — ունին միայն՝ Վենետկոյ Թ. 424, 1107, 1489 եւ մեր Մատ. Թ. 68։

Տեսնենք այժմ Խաչատրոյ բուն գործը՝ Նմանողական ոտանաւոր պատմութիւնը Վարուց Աղեքսանդրի։ Բազմաթիւ ոտանաւորք կը տեսնուին Կալիսթենեայ արդի օրինակաց մէջ, այնպէս որ ծանօթ

---

[1] Լոյս տեսած է Դաւթի Անյաղթի անուամբ ծանօթ գրոց վերջը՝ Վենետիկ, 1833, էջ 629—635։

[2] Պատմ. Աղեքս. էջ 196, 10—15։

[3] “Յաղագս Առաքինութեանց„, էջ 629, 5—7։

ձեռագրաց եւ ոչ մին ապահովութեամբ զուրկ է ատոնցմէ: Միայն Վենետկոյ Թ. 1390 չունի բնագրին մէջ այս ոտանաւորները, սակայն նաեւ այս մասամբ միայն կրնանք ըսել. վասն զի "Ի վերջ գրոցն այսպէս ունի. Մնացեալ կաթողիկեայն ասքա են զորս չեմք գտեալ ատանօր գրեցաք. եւ դնէ ոտանաւորս ինչ Կեշառեցւոյն„: (— Այլ խնդիր է՝ թէ Նախակեշառեան էր արդեօք այս 1390 ձեռագրին նախագաղափարը: —) Չունի այս ոտանաւորները նաեւ Վենետկոյ 1601 ձեռագիրը. բայց այս՝ նշանակութիւն չունի, վասն զի կամաւ դուրս թողուցած է գրիչը:

Այս ոտանաւորք յինքեան ամբողջ գրութիւն մը չեն կազմեր. այնպէս որ եթէ քովէ քով բերուին՝ անկապ եւ շատ անգամ անիմանալի կը մնան: Անոր պատճառն այն է՝ որ այս կտորները զուտ նմանողական ոտանաւորք են՝ Կալիսթենեայ ոչ թէ իւրաքանչիւր հատուածին ամբողջ բովանդակութեան, այլ այս կամ այն կէտին ի մասնաւորի, որմէ դրդուած է հեղինակն. ուստի իւրաքանչիւր հատուածին վերջը կցուած չափական խորհրդածութիւնք են այս կամ այն մասին: Այս պատճառաւ նորանշան երեւոյթ մըն է նաեւ իրենց բռնած տեղը: Վասն զի Վարուց Աղեքսանդրի ինչ ինչ ձեռագիրք գրեթէ երկու երեք անգամ մը նկար ունին պատմուած դիպաց վրայ, ուստի եւ երբեմն այս ոտանաւորք գրուած են նոյն պատկերներուն ներքեւը կամ բոլորտիքը, որով անջատ են բուն բնագրէն. այսպէս ունի Վենետկոյ Թ. 424: Բայց այս դիրքը պահած չեն միշտ, այլ ձեռագրաց մեծ մասին մէջ Հայ բնագրին ամէն հատուածին վերջը կցուած են մաս առ մաս, եւ այս՝ նաեւ պատկերաւոր ձեռագրաց մէջ, ինչպէս մեր Մատ. 90 Դ, եւ Վենետկոյ՝ 1259, (ուր պատկերաց տեղը պարապ թողուած է, բայց նկարները մնացուած են:) Այս դէպքիս մէջ՝ որպէս զի բուն բնագիրն եւ ոտանաւորք չխառնուին իրարու՝ ոտա-

նաւորաց սկզբնաւորութեան եւ բնագրին ընդհատեալ մասանց յաջորդող շարունակութեան սկզբնատառք կարմրաւ են ամէն ձեռագրաց մէջ։ Շփոթութիւնն աւելի կրնար պատահիլ համառօտեալ օրինակաց մէջ. ասոր համար այսպիսեաց մէջ բաց ի կարմրագիր սկզբնաւորութենէն՝ ոտանաւորաց վրայ (երբեմն նաեւ ամէն տան գլուխը) նշանակուած է կարմրագիր "կաֆյա" (قَفِيَة) բառը, զոր յետին գրիչք կը գործածեն նոյնայանգ չափական գրութիւն նշանակելու։ Այսպէս է մանաւանդ մեր Մատ. Թ. 68։ Այս քանի մը կէտերուն չպահուելուն կրնար վերջապէս յառաջ գալ անճահ խառնուրդ մը բուն բնագրին եւ ոտանաւորաց՝ որով անել բաւիղ մը կ'ըլլար ամբողջ գրութիւնը. այսպէս ալ եղած է արդեամբք Վենետիկոյ՝ Թ. 1538 ձեռագիրը։

Այս ըսուածներէն կրնայ դիւրաւ գուշակուիլ՝ որ դժուարաւ կրնան երկու ձեռագիրք գտնուիլ որ երգոյս կարգին, տեղւոյն, չափին եւ այլ հանգամանաց լիովի միաբանութիւն ցուցընեն։ Զայս կը հաստատեն մեր Մատենադարանի երեք ձեռագիրք, որոնց վրայ կրնամ տեղեկութիւն տալ. միւս ձեռագիրք ալ ապահով՝ զարտուղութիւն չունին յայսմ։ Գլխաւորաբար համառօտ օրինակաց մէջ հատուածք նոյն չափն ու մեծութիւնը չպահելով՝ ոտանաւորաց ալ դիրքը շատ խառնաշփոթութիւն կրած է. այսպէս միեւնոյն կտորը միոյն մէջ հատածին վերջը, միւսին մէջ՝ հատուածին մէջը կը գտնենք, մանաւանդ թէ բոլորովին ուրիշ տեղ անցած կամ տեղափոխուած երբեմն[1], եւ նաեւ բոլորովին խառնուած կամ տակնուվրայ, մինչեւ միեւնոյն երգոյն այլեւայլ տները վերիվայր զետեղուած ուրիշ ձե-

[1] Զոր օրինակ "Ով վաշտուէր" կաֆյան Թ. 68 (Թղ. 191a, բ դրած է Բ հատուածին վերջը (Պատմ. Աղեքս. էջ 2, 13.) իսկ Թ. 90 Դ ընդհակառակն Ե հատուածին մէջը (Պատմ. Աղեքս. էջ 4, 3 "ասելով այսպիսի օրինակաւ" խօսքէն ետքը։)

ռագրի մէջ։ Դժբախտաբար երեք ձեռագիրք ալ յայամ անստգիւտ չեն. որուն իբր օրինակ յիշենք քանի մը կտոր։

Աղեքսանդրու Մահուան վրայ (ՄՉ) շինուած ոտանաւորին տունքն են յաջորդք. (ըստ 90 Դ.) "Ով իւր պարոնին նենգէ." "Լացէք որդիք." "Չէր հայրն եւ մայրն" եւ "Այս է հրաշքն[1]." Թ. 57 Ա[2] միայն վերջինն ունի. իսկ 68 Թէեւ ունի "Ով իւր պարոնին." սակայն յաջորդաց տեղ կը դնէ ուրիշ երկու նոր կտոր՝ ("Ջուր խնդրեաց" եւ "Անբախտ ու խիստ".) եւ հատ մ'ալ ուրիշ տեղէ ("Դադարեցար". զոր 90 Դ եւ 57 Ա նախընթաց հատածին մէջ ունէին.) Ի վերջոյ կը կցէ կտոր մ'ալ. "Իշխողն մեծն ամէնէ. որ աւրինով էր Քրիստոսէ. որ հայր չկայ մայր չէ Միջէ" եւն[3]։ Ահա այս անիմաստ խօսքին բանալին։ Այս կտորը նշխար մըն է՝ յիշեալ "Լացէք" կտորին, որուն վերջին տողերն են. "Քաջ առիւծ էր հեծելի. ‖ եւ իմաստնոյն Սողոմոնի. ‖ կարողութեամբ Սամսոնի. ‖ եւ օրինօք էր Քրիստոսի։ ‖ Չէր հայրն եւ մայրն ի Միջի" եւն։ Թէ աղաւաղման ծագը հասած է ուրեմն հոս Թ. 68՝ կրնայ դիւրաւ իմացուիլ։

Աղեքսանդրի ըմբշամարտութեան վրայ յօրինուած երգին (ԾԲ—ԾԵ) տները բոլորովին հակառակ կարգաւ են ձեռագրաց մէջ։ Թ. 57 Ա ունի այսպէս[4]. 1. "Տէր Ակառանայ." 2. "Տէր մանուկ". 3. "Կառամարտիկս". 4. "Քսանթիոս". իսկ Թ. 68 ունի[5] նախ (2) "Տէր մանուկ". ապա (3) "Կառամարտիկս". (4) "Քսանթիոս" եւ (1) "Տէր Ակառանայ։" Մեկնութիւնը դիւրին է՝ եթէ ենթադրենք որ ոտանաւորը նախնաբար նկարի մը բոլորտիքը գրուած էր։ Եւ այսպիսեաց չափ չկայ։

---

[1] Թ. 90 Դ. Թղ. 233a—234a։
[2] Թ. 57 Ա. էջ 135։
[3] Թ. 68. Թղ. 242b, բ—243b, ա։
[4] Թ. 57 Ա. էջ 17—18։
[5] Թ. 68. Թղ. 197b, ա—բ։

*Իսկ թէ այս ստանաւորաց բնագրին հետ խառնուելով՝ ի՛նչ բաւիղ յառաջ կու գայ՝ կը ցուցընէ՝ ի* մէջ այլոց բերոց՝ *հետեւեալ կտորը* համառօտ *բնագրէ մը*[1]. "Եւ հրաման տուէն որ ողանանէն շէողանն: Կաֆայ: *Խրատ տամ քեզ հզօր արքայ․․․:* Կաֆայ: *Արքային պատասխան կու տայ․․․:* Իշէ եւ Ջորէ գործէին:„ *Առաջին եւ վերջին կտորներն* շարունակութեան *են նոյն բնագրին.* սա *տող միջանկեալ բաժնուած է զատոնք: Այսպիսի անհեթեթ բաժանման շատ աւելի պայծառ օրինակ է յաջորդը՝ որ* ընդարձակ *օրինակէն է*[2]. "Ու փէտացեալ Սոդորափորայ զԱղէքսանդրէ թէ շոտա յԱթէնս, տանջէ է նոցանէ կործեալ էրէ զօրավարութեան *Երբ որ ի մէհեան եմուտ․․․: Այսպէս փոխարէն առնեմ․․․ զիս յիշեա ի յողջակիզի:* Եւ պատժէ նոցա:„ *Հոս մինչեւ անգամ նախադասութեան իմաստը կախ մնացած է միջակեալ տասն տողով, վասն զի խօսքն է.*[3] "*քանզի էր ի նոցանէ կարգեալ ի զօրավարութիւն, եւ պատմէ նոցա:„ Իսկ այսպիսի անհանճար բաժանմունք ամէն էջի վրայ կը գտնուին ձեռագրաց մէջ:*

*Իրաց այս վիճակին մէջ՝ զարմանք չէ անշուշտ՝ որ ձեռագրաց մէջ այս ստանաւորք ոչ միայն իրարմէ բաւական տարբերութիւն կ՚ունենան միոյն մէջ տող կամ տուն աւելի՝ միւսին մէջ պակաս ըլլալով, այլ մեծամեծ կտորներ ամբողջ եւ հատուածներ անգամ, եւ այն՝ բազմաթիւ քանակութեամբ մէկն աւելի կ՚ունենայ, միւսը՝ պակաս: Առջեւս ունեցած երեք ձեռագիրք ալ յայամ զարտուղութիւն չեն ցուցըներ*[4]:

---

[1] Թ. 68. Թղ. 201a, *ա*:

[2] Թ. 90Դ. Թղ. 80a, 21—81a, 10. *ուր* Թղ. 81b, 1—81a, 9 *ստանաւոր յաւելուած է*:

[3] Պատմ. Աղեքս. ՃԼՋ. էջ 75, 7—9:

[4] *Զոր օրինակ* ստեղէ ստնէ Թ, 68.: — Թղ. 215a "*Այս կեանքս․*„ "*Զայդ որ բռնեցիր*„. (*չունի*՝ 90Դ. Թղ. 107—108 *եւ* 57Ա. էջ 69—71:) *Այսպէս նաեւ* (Թղ. 218) ՙ*Աւաղ թէ․*„ "*Ահա դիժարեց:*„ (Թղ. 220) "*Արքայս կու լայր․*„ *մեծ կտոր մը* "*Վայ ըզքո մարդ․*„ (Թղ. 221a.) *եւն եւն. սոնք չունին* 90Դ *եւ* 57Ա: — Թ. 90Դ. ստեղէ ստնէ. (Թղ. 107a

Ասոնց մէջ Թ. 68 թէեւ աղաւաղ՝ ոտանաւորաց կողմանէ շատ աւելի կտոր ունի քան 90 Դ, որուն շատ անգամ կը միաբանի 57 Ա. — ոտանաւորք վերջնոյս մէջ շատ անգամ աւելի լաւ եւ ամփոփ շարուած են քան միւս երկուքին։ —

Թէ արդեամբք Խաչատուր Կեչառեցի է հեղինակն այս ոտանաւորաց՝ գոնէ բաւական մասին՝ ստոյգ է։ Վարուց Աղեքսանդրի վերջին կտորին նկատմամբ գրած ոտանաւորին մէջ կը գրէ հետեւեալը[1]։

"Ըռ ձեզ պաղատանք առնեմ, ընթերցօղ գըրոցս ի
յըման,
Ըշկեշտեցէք զըխօր՝ արարէք յիշման զիս արժան.
Զայս ոտանաւորս ամէն ասացի՝ զինչ (ի) սմայ որ կան,
Աղօթ 'ոչխանոց ամէն, այլ որք են արքայ պատուական։
Պաշտեմ զՏէր Աստուածն երկրի՝ Խաչափառըս Կեչառեցի,
Ըզհայր անեղ ծընօղ Բանի, զմիածինն անփոփոխելի„
եւն[2]։

Կ'երեւայ թէ Խաչատուր այս երգերը գրելու յորդորուեր է Կալիսթենեայ այն կտորէն, որուն մէջ կ'ըսուի՝ թէ Աղեքսանդր տեսնելով Աքիլլեւսի ոստ-

---

1—7) "Դեսպանս։„ — Թղ. 24a. 1—6 "Մայրն միամիտ.„ (Թ. 68 չունի. ունի 57Ա։) -- Մեծ կտոր մը (Թղ. 61a—66b.) "Այս է Մակեդոն.„ "Երբ լսեցին.„ "Շող եւ փայլուն„. "Զամբոխդ.„ "Արքայն.„ "Դարեհ.„ "Զսուրն հանեալ.„ "Հիմիկ որ.„ եւ "Զմայրն.„ այս ամէն չունի Թ. 68. այլ ունի 57Ա։ Նոյնպէս Թղ. 145b "Արքայն.„ — Թղ. 151b "Այս են գաղանք„ կտորներուն մէջ եղած բոլոր կտորները չունի Թ. 68. ունի 57Ա եւն եւն։ — Վերջապէս Թ. 57Ա ամբողջ տուն. էջ 4—8 մեծ ոտանաւոր յաւելուած ունի. (տանէ մը կտոր ունին միայն 90Դ. Թղ. 16 եւն եւ 68, Թղ. 193 եւն։) — Էջ 11 "Արժան եւ իրաւ.„ (չունին 90Դ եւ 68։) — Մեծ կտոր մը (էջ 119—120) չունին 90Դ. եւ 68. եւ այլ անթիւ այսպիսի կտորներ՝ երեքին մէջն ալ։

[1] Թ. 90Դ. Թղ. 235b։

[2] Այս "Պաշտեմ„ կտորն միւս ձեռագիրք բոլորովին ուրիշ տեղ ունին. այսպէս Թ. 68 կը զետեղէ ՂԱ հատածին մէջ (Թղ. 201b), ուր կը պատմուի Աղեքսանդրի Սորապեայ երկրպագելն. այս տեղափոխութիւնը յաջող է, վասն զի ոտանաւորիս յաջորդ կտորները նոյն տեղւոյն աւելի յարմար են։ Թ. 57Ա չունի (եւ ոչ 68) առաջին "Առ ձեզ„ եղական կտորը։

մամբ անցած Սկամանդրոս գետը՝ թէ չնչին բան է, զոր այնչափ վեհացուցեր էր Հոմերոս՝ սկսաւ երանի տալ որ Հոմերոսի արժանի եղեր է Աքիլլեւս. եւ երբ իրեն ըսին՝ թէ քու գործքերդ Հոմերոսէն աւելի լաւ պիտի նուագեն քերթողք՝ պատասխան տուաւ թէ աւելի կ'ախորժի Հոմերոսի գրութեանց մէջ Թերսիտէս ըլլալ քան այն պուետաց քով Աքիլլեւս։ Այս գովութեան կտորը կ'երեւայ աղղած է Կեչառուեցւոյ, որ այս տեղ կը գրէ[1]

“Ոչ հիանայ ընդ վազն արի
Քաջազնաբար յափն գետի,
Այլ ընթերցողեան Հոմերոնի
Բաղկացական բան գովեստի.
Այսպէս ես գոհ եմ ի մէջն
Ծոյլ ես ձանոյ Կեչառեցի։„

Այլ խնդիր է թէ ինչ պատճառի կրցեր է հասցընել Խաչատուր իւր քերթողական գրութիւնը։ Դժբախտաբար խեղճ եւ շատ խեղճ է այս նկատմամբ՝ իւր գործքը. իսկ այս խեղճութիւնը շատ աւելի կ'առաւելուն անհանճար գրչաց անհամար սխալագրութիւններն, որով քիչ գիրք կայ հայ ձեռագրաց մէջ այսչափ թշուառ դրութեամբ ինչպէս այս ոտանաւորք։ Իբր օրինակ՝ թէ ինչպէս ոչ միայն արուեստ չկայ գրութեան մէջ շատ ու շատ տեղ, այլ թէ ինչպէս նաեւ կամաւ բռնազբօսնուեր է լեզուն անգամ. եւ վերջապէս ձեռագրաց աղաւաղութեան նշան ըլլայ այս կտորը։[2]

“Ով վատշուէր Նեգտանիբոս,
Որ թագաւոր էր Եգիպտոս,
Ոչ թէ հըզօր ձեռամբ հարոյ
Այլ լականաւըրդ դոյէդոյ.
Գիտակ եղեալ տըկար 'ռանոյ
Ջհերդ եւ զմորուսդ ածել ափոյ։„

Եւ պէտք ենք ըսել՝ որ այս կտորը դեռ յոռեգոյն-

[1] Թ. 90Դ. Թղ. 69a։ Թ. 68, Թղ. 206b, բ։
[2] Թ. 68, Թղ. 191a, բ։ Աւելի լաւ է՝ Թ. 57Ա, էջ 2։

*ներէն չէ. Թէեւ չենք ուզեր ըսել՝ թէ մեծ մասն այսպէս է ոտանաւորներուս։*

*Այս կտորներուն լեզուն է ռամկախառն-ընտիր խառն կամ ճիշդ եւս՝ բուն ռամկական, տեղ տեղ աւելի խառն օտար բառերով, տեղ տեղ աւելի յստակ. Թէեւ շատ տեղ նաեւ այնպիսի բնականու-թեամբ գրուած՝ որ գրաւիչ կերպարանք կ՚առնու, եւ անշուշտ այսպիսի տեղեր աւելի յաճախ պիտի ըլլային՝ եթէ աւելի նուազ աղաւաղ ձեռագիր ու-նենայինք առջեւնիս։ Թէ՛ լեզուին եւ թէ՛ տաղա-չափութեան արուեստի ու ճաշակի աստիճանին օ-րինակ ըլլան յաջորդ քանի մը կտորները։*

1. "*Յորժամ շուրէն է յետ քակի -- Յէկ է յուրէրն խոլոր,*
   *Ոչ զաւրք եւ ոչ մոլն աւգնէ, ոչ հարիւր հա-զար Յէոոոր*[1]*։*"
2. "*Հիւանդին Աստուած է դեղ՝ որ մահու եւ տէրն է կենաց,*
   *Ջհոպէյմըն ոռքոք*[2] *ոսէն. խէլօջնոոն*[3] *է բանս ա-սացած՝*
   *Թէ ուճոլէնոս ասէն եւ գլոխմոն*[4] *բազմաց վկայած՝*
   *Հրամանն ի վերուստ պիտի՝ որ աւգնէ բժիշկն գոված*[5]*։*"
3. "*Է՛ շուրի էս ջէղ ոնց ոտփոմ, էրք շոնէս զոջ ոչ մոոփէոոր,*
   *Ոչ շոկը ոչ երդում ոնէս, զի քո սիրտն է նեն-գաւոր*[6]*։*"...

"*Այս կեանքս է է ծոլ ննոն, -- մարդիկ է նէրս կոս լողոն,*
*Մարմինս է է նոս ննոն, հոգիս գանձ է անմա-հական.*

---

[1] Թ. 57Ա, էջ 69։

[2] *Այս կտորիս մէջ (զոր ունին երեքն ալ)* "*ոռքոք*" *է ըստ* 57Ա (էջ 60)։ Թ. 90Դ, (Թղ. 95b.) "*սապապ*." *իսկ* 68 (Թղ. 211b, բ.) "*սէպէպ*"։

[3] *Ըստ* 68։ Թ. 57Ա "*խելաւքած*." 90Դ "*խելօքաց*"։

[4] *Այս կտորն է ըստ* Թ. 68։ Թ. 57Ա *եւ* 90Դ *ունին* "*Ջոր եւ իմաստուն խօսիւք՝* Գալինոս (90Դ "*Գալիանոս*") *բազմած վկայած* (90Դ "*վկայեաց*"։

[5] *Ըստ* Թ. 68 *եւ* 57Ա։ Թ. 90Դ. "*որ բժիշկըն լինի գոված*"։

[6] Թ. 68, Թղ. 220a *ա*։

Միտքս է նաւավար ճարտար՝ որ հանէ ցամաքն երեւան.
Աւաղ թէ խորտի այս նաւս՝ մէջ ի վայր մնամք փոշիման[1]:„

4. “Երբ շարխն ու ֆալաք են միաբանել[2] ես ո՞ւմ գանգատիմ,
Այս իմ [illegible] ծառայք չըթողին որ ես[3] հանգչիմ,
Տօլվարն է տաժ ներման, որ յերկրէ յերկիր վտարիմ.[4]
Աստուած գիտէ թէ ուր մեռնիմ, կամ ես ում ձեռօք տէ թաղվիմ:„

Այս քանի մը նշխարք կը ցուցընեն անշուշտ թէ Կեչառուեցւոյ լեզուն՝ ուր բռնազբօս եւ գրչագրաց ձեռօք աղաւաղուած չէ՝ կոկ ու վայելուչ ընտանեկան լեզու մըն է, եւ ռամկախօս մատենագրութեան մէջ իւր համեստ տեղը կրնայ բռնել: Իսկ նիւթոյն նկատմամբ՝ ինչպէս քանի մը տողերէ կրնայ գուշակուիլ՝ տեղ տեղ արդեամբք յաջող կտորներ ունի. թէպէտ սանկ անշուք կտորներու մեծ կոյտին մէջ հազիւ աստ անդ կը նշմարուին:

Կրնար կարծուիլ՝ որ Վարուց Աղեքսանդրի շատ կտորները չէ առած երգի այն Կեչառուեցին որ “անվայելուչ„ կը գտնէր շատ տեղ. բայց ի գործնականին կը տեսնենք նաեւ այսպիսի մասերուն վրայ ոտանաւորներ: Կեչառուեցւոյ պարզմտութեան յիշատակարան մըն է յաջորդ ոտանաւորը, զոր գրած է Մթ Հատուածին առթիւ, ուր կը պատմէ Կալիսթենէս՝ թէ վայրենեաց երկիրը տեսաւ Աղեքսանդր “անկածոյ մարդիկ,„ սղոցաձեւ ձեռքերով մարդակերներ, առիւծադէմ չորեքկանգուն վարով հսկաներ, կրիայի չափ լուեր, շան պէս հաջող եւ այծու պէս թաւ մարդիկ, առանց ջրոյ եփուող ձկեր

---

1 Թ. 68. Թղ. 215a. ա:
2 Ըստ 57Ա: Թ. 90Դ“ են մի. միացեր:„ (Թղ. 119a)
3 Թ. 57Ա “չի թողին սակաւ մի հանգչիմ:„ (Էջ 80:)
4 Ըստ Թ. 57Ա: Թ. 90Դ “վտարի:„

եւն եւն: Այս կտորս կը ցուցընէ նաեւ այն ոճը՝ որով կը նմանի իւր բնագրին Կեչառեցի[1]:

“Ո՜վ իմ հրաշագործ Աստուած՝ արարիչ ազգաց ամենի,
Ու զարմանալի քոյ գործք՝ զինչ պատմեն երամք տեսողի.
[illegible] ոչխարս [illegible] ի [illegible].
[illegible] յառաջս ամենի:
Այս են [illegible] որ են ըներ ի յանտառի,
Լանջք բոլոր [illegible] երեսս [illegible] իբր [illegible],
Հերս [illegible]
[illegible] պատրաստեցան ի կռիւ յայտնի.
Եւ խարծ ածին յանկարծակի երկուց կողմանց վտանգելի:
Տեսողացս է հիանալի, եւ ի մէնջ է ձեզ պատմելի” եւն:

Այս հատուածիս “Լանջք… մաշկեղինի” կտորին հետ պէտք է համեմատել բնագիրը, որով կ'իմանանք ոտանաւորացս նմանողութեան կերպը: Այս մասն է[2]. “Մարդիկ [illegible] նման [illegible] … [illegible] բո-[illegible], [illegible], [illegible]. [illegible] … Հերս [illegible], [illegible] իբրեւ [illegible]. [illegible]:”

Ըսինք որ շատ աղաւաղ կը ներկայայընեն ձեռագիրք այս ոտանաւորաց ոչ միայն գիրքն ու չափն. այլ նաեւ բառերն ու խօսքերը, այնպէս որ միեւնոյն տողին մէջ՝ ուր մէկ ձեռագիրը կ'ուղղէ ուրիշին սխալը՝ հարկ է զինքն ալ ուղղել միւսով: Հազարաց մէջ բաւ է մի միայն այս օրինակը: Թ. 57 Ա կ'ըսէ[3]. “Նըշանդ ըստոյգ եւ անսըղալ Փիլիպ արքայէ[illegible] կալ:” Այս տողն է Թ. 90 Դ ձեռագրի մէջ[4]. “[illegible] ըստոյգ եւ անսըղալ Փիլիպ արքայ՝ [illegible] կալ:” Հոս “[illegible]” անիմաստ սխալը կ'ուղղէ 57 Ա “Նըշանդ”. բայց իւր “[illegible] կալ” նոյնպէս անիմաստ խօսքը ուղղագրելու է ըստ 90 Դ “[illegible] կալ:”

Աւելի ծանրակշիռ է երկրորդ կէտ մը. այս-

[1] Թ. 57Ա. էջ 91 եւն:
[2] Պատմ. Աղէքս. ՄԹ. էջ 124, 20 եւն.
[3] Թ. 57Ա. էջ 8:
[4] Թ. 90Դ. Թղ. 17b:

ինքն՝ թէ այս ստանաւորք կրած են շատ տեղ էական փոփոխութիւններ, մինչեւ անգամ նոր խմբագրութիւններ, ինչպէս պիտի տեսնենք. որով շատ կտորներ այնչափ կը տարբերին իրարմէ այլեւայլ ձեռագրաց մէջ՝ որ նոր խմբագրութիւն են աւելի քան թէ ընդօրինակութիւն նոյն կտորին: Հետեւեալը կը պարզէ աւելի՝ քան որչափ երկար մեկնութեամբ կարելի է բացատրել:

**ՁԵՌ. 90 Դ եւ 57 Ա[1]:**

"Գիշերս յերազիս տեսայ՝ որ նորեկ էր իմ վերայ. ||իմ թագն ի գլխուս անկաւ՝ 'ւահիւ յոյժ զարհուրեցայ: ||Նու սիրտս է տրտում դարձեր, զի մահու նշան կերեւայ. ||Նախախնամութիւն վերին քան ըզքեզ ինձ ճարակ չըկայ:

||Ուրախ կաց եւ դու խնդա՛ զի դէծարն դէ-րէն դառնայ, ||Հանգիր յամենայն հոգսէ՝ խնդալով կեանքդ յերկարանայ" եւն[2]:

**ՁԵՌ. 68[3]:**

"Գիշերս յերազիս տեսայ մեծ նորեկ էր ի գլխիս. ||Նայ իմ լացս առեր զոգիս, աչս արուն հեղցյր արտասուքիս: ||Աւեն մի վախեր, արքայ, լացն լաւ է՝ շատ ծիծաղիս. ||Դէծարն է դէ-րէն դառնայ՝ յերկարէ ի յայստնուորիս:"

Ինչպէս կը տեսնուի հոս՝ Ձեռ. 68 երեք տող բոլորովին դուրս թողուցեր՝ միւսերուն ալ իմաստը հազիւ պահեր է. բայց նշանաւորն այս տեղ այն է՝ որ վերջին "դէծարն եւն" մասը առ 90 Դ եւ 57 Ա իբրեւ անջատ՝ չի կրնար մաս ըլլալ նոյն երգոյն՝ եթէ չաւելցուի նաեւ "աւեն մի վախեր" կտորին նման խօսք մը, զոր սակայն չունին 57 Ա եւ 90 Դ, որ "Ուրախ կաց..." կտորն ունին: Յամենայն դէպս շատ լաւ է 57 Ա ձեռագրին ճշդիւ նոյն տեղը լուսանցքին վրայ [illegible] նշանակած "ՋՔ" "Խ2" համառօտութիւնք, ("Ուրախ կաց." ըստ 90 Դ Գրէգորէսէ

---

[1] Թ. 90Դ. Թղ. 222: Թ. 57Ա. էջ 129:

[2] Վերջին երկու տողն "Ուրախ . . ." Թ. 90Դ "Գրէ." անուամբ կը յիշէ:

[3] Թ. 68. Թղ. 239b, բ:

է,) որ կը ցուցընէ՝ թէ հոս այս Երեք վերջնոցս յօրինած փոքերն երգերու անցեր խառնուեր են. եւ այս՝ երրորդ տեսակն է ձեռագրաց տաղաւաղութեան։

Աւելորդ է ըսել՝ որ այլեւայլ հեղինակաց այսպիսի խառնաշփոթ ձուլուած մասեր քիչ չկան տոնաւորաց մէջ։ Այսպէս է օրինակի աղագաւ Թ. 68 ձեռագրի վերջը գտնուած երկար տաղը՝ "Աւաղ զիմ աւուրքս[1]." զոր եթէ լուծենք կը գտնենք՝ Գրիգորիս Աղթամարցւոյ Երեք այլեւայլ կտորներ, որոնց միջինը ("Լացէք") նոյնպէս (ըստ 90 Դ ձեռագրին Գրիգորիսի է. բայց 57 Ա "ԽՉ" համառօտութեամբ նշանակեր է այս կտորին երեք տանց ալ սկիզբը, մինչ նոյն 90 Դ առաջին կտորը "Աւաղ զիմ աւուրքս" չունի։ Թ. 90 Դ ձեռագրի մէջ կայ "ի Գրիգորիսէ Կաթուղիկոսէ" երգ մը "Ինձ հանց ուժ ու թեւ պիտէր", որուն կից է "Դադարեցար Աղեքսանդրէ" տոնաւորը[2]. առաջինն ունի 57 Ա[3] անանուն, երկրորդը՝ "ՉՔ" համառօտութեամբ, ուրեմն երկուքին գրութիւնքը մէկմէկու գրուեր են իբրեւ մի գործ. Այս վերջին պարագայն ամենեւին զարմանալի չէ, վասն զի որոշ է որ գոնէ մեր Մատենադարանին Երեք յետագրոց եւ ոչ մէկն պահեր է բուն Կեչառուեան խմբագրութիւնն, այլ Կեչառուեան-Գրիգորիսեան-Զաքարեան (կրնանք յաւելուլ նաեւ՝ տաղարանեան) խմբագրութեանց բաղադրութիւն մըն է։ Տարբեր վիճակ չունին Վենետկոյ գոնէ քանի մը (եւ անշուշտ նաեւ այլ) ձեռագիրք։

Պէտք է յիշեցնել՝ որ այս ամէն տոնաւորք յԱղեքսանդր՝ անտիպ են մնացեր. պատառիկ մը Կեչառեցւոյ տոնաւորէն ("Ձայն արար, ձայն արար") եւ կտոր մ'ալ Գրիգորիսի Կաթուղիկոսի եր-

---

[1] Թ. 68. Թղ. 249a, բ—b, ա։ Հմմտ. Թ. 57Ա, էջ 137—139։ Թ. 90Դ. 238b—239b։

[2] Թ. 90Դ. Թղ. 232a—b։

[3] Թ. 57Ա. էջ 134։

գերէն („Այս է Մակեդոնեան") հրատարակուեցան Սիսուանայ մէջ[1]: Երկու պատառիկներուս բնագիրն ալ համեմատ է 90 Դ թուին. (թէեւ փոփոխակի իրարու սխալներն ալ կ'ուղղեն.) եւ բաւական տարբերութիւն ունին 57 Ա ձեռագրէն. երկուքն ալ չկան Թ. 68 ձեռագրի մէջ[2]: — Վենետկոյ Թ. 1259 ձեռագրին երկու հատակտորոց վրայ յետոյ կը խօսինք: —

Թէ ո՛վ էր Կեչառուեցի եւ ի՛նչ կեանք ունեցաւ՝ այս հարցման լիովին պատասխանել չենք կրնար. ա՛յնչափ քիչ տեղեկութիւն ունինք[3]: Ստոյգ գիտենք որ ԺԶ դարու վերջին եւ ԺԷ դարու սկիզբը կ'ապրէր, բայց ծննդեան եւ մահուան տարին դեռ անծանօթ է: Այրարատայ հեղինակը Զաքարեան յիշատակարանը Կեչառուեցւոյն կարծելով՝ կը դնէ զինքը Պօշեանց գերդաստանէն, (վասն զի կ'ըսուի հոն „պարոն եղբօրս Խմոց եւ հօրս Պօշեանց տոհմին.") եւ թէ Հռոմ գացած եւ հոն ընդօրինակած է Աղեքսանդրու վարքը, ուստի թէ գոնէ „աշխարհիկ երէց" էր: Թէեւ այս ամէն ցուցմունք անզօր են, (վասն զի յիշեալ յիշատակարանը Զաքարեայէն է եւ ոչ Խաչատուր Կեչառուեցւոյ,) բայց հանուած հետեւութեանց այն մասը՝ թէ Պօշեանց տնէն եւ

[1] Հ. Ղ. Վ. Ալիշան Սիսուան: Վենետ. 1885, էջ 399, ծն. 1—400:

[2] „Ջայն արար." Համմտ. 90Դ. Թղ. 63a—b: Թ. 57Ա. էջ 38: „Այս է Մակեդոնական" համմտ. Թ. 90Դ. Թղ. 61a — b եւ 57Ա. էջ 37: — Առաջին կտորին մէջ Սիսուան ունի ուղղութեամբ „Ճոխացն բոլոր", մինչ 90Դ „Ճոխութեան բոլոր." բայց քիչ մ'եաքը Սիսուան կ'ըսէ „Աճապարեալք տարի գնդի". ուր 90Դ (եւ 57Ա) լաւ եւս „տողի": Նոյն տան վերջը Սիսուան եւ 90Դ „կէսք վայ ասեն յաճողակե" ոչ լաւ, ուր 57Ա „Վայ ասեն" եւն ունի ուղղութեամբ: — Գրիգորիսի կտորին մէջ Սիսուան նոյն է 90Դ ձեռագրի հետ կէտ առ կէտ, բայց 57Ա շատ փոքբեր, տողեր անգամ աննման են տեղ տեղ:

[3] Համմտ. Հ. Ղ. Վ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ 1890, էջ 267—268:

[4] Համմտ. վերը՝ էջ 88—89:

անշուշտ եկեղեցական էր՝ ուղիղ է, զոր գիտենք այլուստ։ Մեր Մատ. Թ. 57 Ա ձեռագիրը, որ Պռօշեանց փոքրիկ սերող Զաքարիայի ձեռագրէն է, կը գրէ տեղ մը[1]. «Զայսմարմարող սորա շինաշխատօղ կեցուսցէս, եւ է սոյն շատամէղէ Զաքարէայ եղեւոլոյ՝ գծողս եւ նկարողս Աղեքսանդր գրողս յիշել ի Տէր։» Ուրիշ տեղ մ'ալ՝ ուր Կեչառուեցի Հոմերոսը յիշելով՝ աւելցուցեր էր այս տողը. «Այսպէս եւ դու առ ի մրտի՝ Ծոյլ եւ ծանակ կեցուսցէ[2]» ինչպէս յիշեցինք վերը, Զաքարիա գրեր է նոր ստանաւոր մը, եւ ի մէջ այլոց հետեւեալ տողերը[3]. «Զվարդապետն աստուածազարդ՝ շինաշխատօղըն կեցուսցէ։

Եւ է շատամէղէ նորին՝ Զաքարէայ անմար գ.նոււնցէ,

Բազում ջանիւ նորոգել գյէշտակ հարանց իմ նախնի»։

Խաչատուր՝ Պռօշեանց տունէն ըլլալն ուրեմն ստոյգ է. էր նաեւ անշուշտ եկեղեցական, ինչպէս այս խօսքերը կը ցուցընեն։ Իսկ այն գանձին խորագիրը՝ զոր ի մէջ կը բերէ Այրարատ[4], որ է. «Երգեաց ըզսա Կեչառեցին, Հայր՝ Մխիթէն Վարդապետին,» կրնայ ցուցընել որ աշխարհիկ երեց էր։

Պռօշեանց գերդաստանը՝ որ նախնաբար Ազգ Հաղբակեայ եւ Վարդանանց կը կոչուէր՝ Հասան-Պռօշի (ԺԳ դար) մեծանուն քաջութեամբն առաւ Պռօշեան ազգանունը. ուստի այս ժամանակէն ետքն էր Խաչատուր։ Այս նկատմամբ անգին կտոր մը կը յիշէ Այրարատայ հեղինակը՝ Խաչատուր Կեչառուեցւոյ Ողբ ի վերայ Աւերման տանն Արեւելեան գրութենէն, որ է այսպէս[5]»։

---

1 Թ. 57Ա, էջ 141։
2 Թ. 90Դ, Թղ. 69a առ Պատմ. Աղեքս. ՃԻԲ։
3 Թ. 57Ա. էջ 42։
4 Այրարատ, էջ 268, ա, 34։
5 Հմմտ. Այրարատ, էջ 268, ա. 15—22։

«ԶՊարոն Պռօշըն վարդ հեծելի,
Որ զերկաթի դուռն առնէր փոշի, . . .
Կամ զՏէր Օրբէլըն զարմանալի
ԶՄէնդէլ, Վասակ, կորիւնքն Առիւծի,
Զայրն զօրաւոր ի պատերազմի
զԱմիր-Հասան բազումն քաջիդ եւն։

Խաչատուր ասոնց ժամանակակից էր ուրեմն՝ գոնէ ըստ մասին, եւ այս երեքն են «ըստ արձանագրի Պահարանին Ս. Գեղարդայ՝ մեռեալ են նախ քան 1268 ամն[1]։» Կեչառուեցի մականունն անկից է որ Կեչառոյ գիւղն ու հռչակաւոր մենաստանն՝ որուն առաջնորդաց բաւական շարք մը կը յիշուի պատմութեան մէջ, սեպհականութիւն էր Պռօշեանց[2]։ (— Միտ դրուի որ վերը յիշուած կտորին մէջ Գնունցի կը կոչէ Զաքարիա իւր տոհմը։ —) Թերեւս նոյն իսկ այս Կեչառուոց վանաց առաջնորդ էր Խաչատրոյ շառաւիղէն՝ Զաքարիա, որ «Եղիա-նոսոյ» կը կոչէ ինք զինքը, եւ որուն ժամանակն որոշ չեմ կրնար գտնել։ Այրարատ Զաքարիայի այն խօսքին մէջ թէ Աղեքսանդրի վարքն Հռոմ գրեց եւ բերաւ «ի Հայս պարգեւս Մեծ վարդապետէն եւ տալ վարդապետէն իմոյ Եսայեայ[3],» կը հասկընայ (Կեչառուեցւոյ կարծելով յիշատակարանը՝) հռչակաւոր Եսայի Նչեցին (ԺԳ դարու վերջը։) Բայց անհնար է այս, վասն զի այն ատեն Զաքարիա հասակակից կ'ըլլայ Խաչատրոյ, որուն շառաւիղէն է եւ այն՝ բաւական ժամանակ ետքը. որ ուզելով նմանիլ Կեչառուեցւոյ Կալիսթենեայ գրոց նկատմամբ ըրած ջանից՝ ինքն եւս ջանացեր է «բազում ջանիւ նորոգել գէշ-գրեալ Հարանց Նախնի։» Այս Զաքարիայի վրայ կը լռէ Այրարատի հեղինակը։

Կեչառուեցւոյ նոր գրուածք մ'ալ կը յիշէ

---

[1] Համմ. Այրարատ. էջ 339, ծն. 1—340։

[2] Կեչառուաց վանաց վրայ՝ Համմ. Այրարատ, էջ 259—268, ուր եւ ի մասնաւորի էջ 269 Պռօշեանց ազնուական տոհմին վրայ՝ հանդերձ ազգաբանական տախտակով։ Համմ. նաեւ էջ 239—344 եւն։

[3] Թ. 57Ա. էջ 144։

Այրարատ՝ այս տիտղոսով. "Սկսեալ յաշխարհարար ներածմանց՝ կարճ ի կարճոյ համառօտ պատմութիւն„ Հին եւ Նոր կտակարանաց[1]. Նաեւ այս՝ ոտանաւոր։ Երգարանաց մէջ բաւական տաղք կան Կեչառուեցւոյն անուամբ։ Մեր ձեռագրաց մէջ կը գտնեմ երեք հատ գլխաւորաբար, եւ այս երեքը միայն կը յիշէ Այրարատ. այսինքն 1. "Թէ մարդ ես եւ միտս ունիս.„ 2. "Այս կեանքս է յերազ նըման.„ եւ 3. Ես եմ կորուսեալ ոչխար[2]։„ Կարեւորագոյն է Նոր կտոր մը՝ որ ինձ միայն մեր Մատենադարանի Ոսկեփորիկէ մը ծանօթ է[3] այս անուամբ. "Խաչատուր Վարդապետի Կեչառեցւոյ ժողովեալ ի սորայ օրինակէ Վասն գալստեան Աստուծոյ առ մարդիկ. կուսածին Թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ Զժամանակն եւ զԹագաւորն համառօտ։„ Այս տիտղոսն արդէն կը ցուցընէ գրութեանս ինչ աղաւաղութիւն կրած ըլլալը, որ տեղ տեղ համառօտուած է գրչէն։ Զայս կրնանք իմանալ հետեւեալ խօսքէն. "Եւ շ. բիւր կուռք ասէ Խաչատուր Վարդապետն[4]„ որ գրչին արդիւնքն է։ Գրութիւնս կարեւոր է այն կողմանէ՝ որ Խաչատուր շատ մը "ծածուկ„ ու "նուրբ„ գըքերէ կոչումներ կ'ընէ, որուն վրայ ուրիշ տեղ կը յուսանք թէ կրնանք խօսիլ։ Հոս մեզի կարեւորն այն է՝ որ այն գրութեան մէջ պատառիկ մը փոխառնուած է Սուտ-Կալիսթենէսէն։ Խաչատուր ամենեւին չի յիշեր հոս՝ թէ ուրիշ տեղէ մըն է այն խօսքը։ Այս կտորն է հետեւեալը։

---

[1] Այրարատ. էջ 268, ա, 41։

[2] Առաջին երկուքը՝ մեր Մատ. Թ. 112, վերջինը՝ Թ. 46 ձեռագրաց մէջ։

[3] Թ. 56Ա. էջք՝ յծ—յծը. վերջն է. "յիշել աղաչեմ զուստանունն վարդապետս մեկնիչ առ Աստուած։„ Միտ դրուի որ հոս երկու անգամ ալ "վարդապետ„ կը կոչուի Խաչատուր (Հմմտ. Նաեւ վերը.) զոր ուրիշ տեղ մը չէ գտած Այրարատայ հեղինակը. (Այրարատ, էջ 268, ա։)

[4] Թ. 56Ա. էջ յծզ։

| ԿԱԼԻՍԹԵՆԷՍ (Է. էջ 5, 1—4:) | Խ. ԿԵՍԱՐՈՒԵՑԻ (Ձեռ. 56 Ա. յծգ:) |
|---|---|
| “Քանզի են երազագէտք, նշանալոյծք, երազադատք, ամմոնագէտք, եւ լուսնագէտք, ծննդաբանք, բախտագէտք, ճակատագէտք եւ որ կոչին մոգք, ընդ որովք ամենայն գիւտական հարցմունք անկեալ դնին[1]:„ | “Ժողովեցան . . . երազագէտք, նշանալոյծք, աստեղադատք, ամոնագէտք, լուսնատեսք, ծննդաբանք, բախտագէտք, ճակատագէտք, մոգակիւսք, ըռամմախօսք[2]:„ |

Քանի մը մանր տարբերութիւնք չհաշուելով՝ նոյն է պատառիկս երկուքին մէջն ալ. յոյն բնագիրք տարբերութեան կէտ մը կը դնեն մեր առջեւ:

Կեչառուեցւոյ այս ճառը կրնար գուցէ աւելի նման կտորներ մատակարարել մեզ, եթէ իր նախկին ձեւով առջեւնիս ունենայինք: Մեր ձեռագիրն՝ ինչպէս ըսինք, բացի աղաւաղութիւններէն կրած է տեղ տեղ նաեւ համառօտութիւններ: Այս գրչէն է ճառին վերջը գրուած սա տողը. “Յիշել աղաչեմ զսուտանուն վարդապետս մեկնիչ՝ առ Աստուած:„

---

[1] Համառօտ օրինակաց մէջ “ամմոնագէտք„ եւ “բախտագէտք„ բառերու տեղ գրուած են “ամոնագէտք„ եւ “դիւթագէտք„ կամ “դիւթագէտ: Յոյն օրինակք շատ տարբերութիւն ունին: A է. Ὀνειροκρίται, σημειολύται, ὀρνεοσκόποι μάντες, ἀμουμάντες, γενεθλιαλόγοι, μάγοι. (“երազագէտք, նշանալոյծք, հաւագէտք, կիւսք, ամուահմայք, ծննդաբանք, մոգք„: “Մոգք„ չունի L. իսկ AL “ընդ որովք . . . :„) BC շատ տարբեր են՝ այսպէս. Ὡροσκόποι, σημειολύται, ὀνειροπόλοι, ἐγγαστρίμυθοι, ὀρνεομάντεις, γενεθλιαλόγοι, οἱ καλούμενοι μάγοι, οἷς τὰ μαντεῖα ἐπέστρωται (B; C ὑπέστρωται; ἐπιτέτραπται?) (ժամագէտք, նշանալոյծք, երազահմայք, որովայնախօսք, թռչնահմայք, ծննդաբանք. եւ որ կոչին մոգք, որոց անկ են հմայութիւնք:) Վերջին կտորիս բնագիրն որչափ ալ ապահով չէ, սակայն գոնէ “եւ որ կոչին մոգք„ խօսքը՝ զոր նոյնպէս ունի Հ, միայն BC ունին հայոյն հետ. ընդհակառակն շատ բառ այլազգ է հոս: Հայոյն “ամմոնագէտք„ բառին տեղ միայն A բնագրին մէջ կայ ἀμουμάντες անորոշ բառն, որուն սկզբան “ամու-(ահմայք„) բառը կը յիշեցնէ հայ բնագիրը:

[2] Ձեռագիրը քանի մը սխալ ընթերցուածներ ունի, այսպէս. “աստեղադարք, . . . Լուսատեսք, . . . մոգահեւոք:„ իսկ “ըռամմախօսք„ երկբայական կը մնայ:

Վերը շատ անգամ յիշեցինք Զաքարեայի խմբագրութիւնն, որուն գլխաւոր ներկայացուցիչն է 57 Ա ձեռագիրն։ Զաքարիայի ընթացքն այնպէս նոյն է Խաչատրոյ հետ՝ որ մինչեւ անգամ անոր Ցիշատակարանին բնագիրն իրեն գործածեր է։ Այս յիշատակարանը դրինք վերը[1], ինչպէս մի քանի մանր յիշատակարանները յիշեցինք արդէն[2], որոնք յայտնի կը ցուցընեն Զաքարիայի խմբագրութեան ինչ ըլլալը, այսինքն՝ ընդօրինակութիւն Խաչատրոյ ձեռագրին, (— քանի մը բնագրական զարտուղութեանց վրայ յետոյ կը խօսինք, եւ կը տեսնենք որ 57 Ա Զաքարեան ձեռագիրն Կեչառուեան խմբին մէջ ուրոյն ստորաբաժանում կը կազմէ. —) յաւելուած նոր խորանաւորաց, նկարներու եւ ծաղկագրութեանց, կամ իւր խօսքերով[3] "գրեցի իմով ձեռամբս ("զայս պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրու") ի մեծ քաղաքն Հռոմ առ պապն Փռանկաց ... եւ զարդարեցի ոսկով եւ խնարբենկանով, եւ խորանաւորով ... բերեալ ի Հայս պարգեւս մեծ վարդապետին եւ քաջ վարդապետին Եսայեայ եւ պարոն եղբարցն իմոց եւ հարցն Պռաւշանց տոհմին։" Հոս "զարդարեցի ոսկով" ըսածը նկարներուն վրայ է, զոր միշտ պարծելով կը յիշէ. այսպէս "Զաքարէ եպիսկոպոս գծողս եւ նկարողս[4] Աղեքսանդր գրոց," եւ "ի Զաքարիայ Եպիսկոպոս նկարողէ[5]"։ Իւր նկարասիրութիւնը կը ցուցընէ նաեւ այլուր կալիսթենէսի անգլուխ մարդկան եւ նմանեաց վրայ գրելով[6].

"Որչափ որ ստեղծեալ է զմարդն ի հողոյ՝ այսպէս չէ տեսած կամ բընաւ ի միտ ընկած կամ ի գիրս ուրեք նըկարած, թէ մարդն անգլուխ լինի՝ նայ երթայ ուրեք հեռացած" եւն։

---

[1] Տես վերը՝ էջ 88։
[2] Տես վերը՝ էջ 126։
[3] Թ. 57 Ա. էջ 144, 8—13։
[4] Թ. 57 Ա. էջ 141, 13։ Հմմտ. 144, 2. "Զաքարիա եպիսկոպոս գծող եւ նկարող։"
[5] Թ. 57 Ա. էջ 139, 22։
[6] Թ. 57 Ա. էջ 94։

Անշուշտ իւր խմբագրութենէն են ընդարձակ օրինակաց մէջ երեւցած նկարները, որոնք հարկաւ յընթացս ժամանակաց ըստ գրչաց եւ նկարողաց ախորժակին փոփոխութիւն կը կրէին, եւ վերջապէս՝ նկարողաց սակաւութեամբը՝ շատերուն մէջ բոլորովին կը պակսէին: Ինծի ծանօթ օրինակաց մէջ նկարուններն միայն Վենետկոյ Թ. 424, (— 1259ի մէջ նկարներու համար դատարկ տեղ թողուած է, բայց մոռցուեր է նկարել. —) մեր Մատ. Թ. 90Դ եւ 57Ա ձեռագրին նախագաղափարը. որ շատ տեղ ունէր նաեւ “ֆաղկոււնս„ կամ զարդաձեւեր[1]:

Երկրորդ՝ “փնա–րբէնաչանով„ զարդարած կ'ըսէ Զաքարիա, այսինքն տնօրինական ոտանաւորներով, զորոնք միայն 57Ա ձեռագրիս մէջ կը գտնենք: Ասոնց կարգէն է ԻԱ (էջ 11) հատածին վիշապահմայութեան առթիւ գրուած 80 տող ոտանաւոր մը սատանայի զմարդ հրապուրելուն եւ Քրիստոսի մարդեղութեան վրայ[2], որուն սկիզբն է “Այն էր կոըստեան պատճառ՝ որ ե հան զԱդամ ի դրախտէն:„ Այսկարգէն են անշուշտ նաեւ այս կտորները. “Նախանձամութիւն վերին ըզ.քեզ ընտրեաց[3]:„ “Մարմին է ի խոտ նման որ ծաղկի՝ Դաւիթ վկայեց[4].„ եւն: Թէ ի՛նչ անհեթեթութեանց կը տանի այս ճիգն ամէն բան նմանցընելու տնօրինականաց՝ բաւական կը ցուցընէ հետեւեալ կտորն, ուր խօսքն է Բերրիկայւոյ բնաւորէն յափշտակուած Կանդաւղէսի կնոջ Աղեքսանդրի ձեռօք ազատման վրայ[5]: Հոս կ'ըսուի[6].

“Որով ազատեցեր զհարսն իմ՝ քեզ շահեր անուն գովելի.
Վանեցէր զՓարաւոն եւ եղէր նման Մովսէսի:„

---

[1] Հմմտ. նաեւ լուսանցագրութիւն մը յէջն 135—136, ուր կ'ըսուի. “Գրած է յարբէնաջն թէ թուխտ է անկել, նա ի տեղն թողաք, մի կարծեր թէ ֆաղկէ տեղ է:„
[2] Թ. 57Ա. էջ 6—8:
[3] Թ. 57Ա. էջ 16:
[4] Թ. 57Ա. էջ 28:
[5] Պամ. Աղեքս. ՄԼԳ, էջ 153 եւն,
[6] Թ. 57Ա. էջ 121.

Ոտանաւորիս քովը նշանակուած է "ԶՔ" համառօտութիւնը. (— վերիններուն քով նշանակուած չէր. —) վասն զի 57 Ա ձեռագիրը շատ տեղ նշանակած է լուսանցքին վրայ այն նշանաւոր կտորները՝ որ Զաքարիայի են, որով կրնանք գտնել թէ ինչ բան աւելցուցած է Զաքարիա Կեչառուեցւոյ ոտանաւորաց վրայ: Այս ոտանաւորք մեծաւ մասամբ Կեչառուեցւոյն եւ Գրիգորիսի ոտանաւորաց հետ խառն են, այնպէս որ շատ բան 57 Ա "ԶՔ" անուամբ կը յիշէ՝ որ միւսներուն մէջ անանուն կցուած է Կեչառուեցւոյ գրութեանց մէջ: Այսպէս են օրինակի համար հետեւեալ կտորները. "Խաչինք ՚ւ անասունք եւ հաւուք[1]." "Քնար եւ երագ տեսար[2]." "Զարքունիս Կանդակէ[3]," (որ երկար կտոր մըն է.) "Դադարեցար Աղեքսանդրէ[4]" եւն կտորները: Այս կտորներուս մէջ միայն մէկ մասն ունին միւս ձեռագիրք, եւ այն՝ անանուն: Եւ արդէն ասկէ կրնանք իմանալ՝ որ Զաքարիա տեղ տեղ ուրիշ բան չէ ըրած՝ բայց եթէ արդէն գտած ոտանաւորն ընդլայնել եւ փոփոխել. այսպէս է մանաւանդ "Այս Հոմերոս զմիւռնացի" տաղը՝ որուն առաջին հինգ տողը Կեչառուեցւոյն է, բայց վերջին՝ ուր կ'ըսուի, "Այսպէս եւ դու առ ի մօտ, ծոյլ եւ ծանաչ Կեչառեցի[5]." փոխեր է Զաքարիա "զվարդապետն աստուածազարդ զխաչատուրն կեչառեցի[6]" եւն, զոր վերը դրինք: — Միայն 57 Ա ձեռագրին մէջ, եւ այն՝ "ԶՔ" նշանակուած են այս կտորները. "Խիստ շատ ականջ

---

[1] Թ. 57Ա. էջ 66: Համմտ. 90 Դ. Թղ. 102a, եւ 68, Թղ. 213b, բ:

[2] Թ. 57Ա. էջ 67: Համմտ. 90 Դ. Թղ. 102a եւ 68 Թղ. 214a, ունին միայն նախընթաց տունը՝ "Քո քունդ արթնութիւն արժէ:"

[3] Թ. 57Ա. էջ 119—120: Նոյնիմաստ չնչին կտոր մ'ունին 90 Դ. Թղ. 205a. եւ 68 Թղ. 233b, բ:

[4] Թ. 57Ա. էջ 134: Համմտ. 90 Դ. Թղ. 232b: Թ. 68 չունի:

[5] Թ. 90 Դ. Թղ. 69a:

[6] Թ. 57Ա. էջ 42:

դրիր արքայ[1]." "ՅՈլոմպիայէ ծնունդ[2]." եւն։ Կեչառուեան կտորի մը ծայրը չորս տող յաւելուածի մը համար գրուած է նոյնպէս "Զաքարիայի[3]։" Այս կտորը՝ խառնուրդ մը՝ կը դնենք հոս լեզուի օրինակ.

"Դառնատեսիլ այս խեցգետին, որ տարէնալ էր հոյլողէն.
Ըղձարըււ բնակչացըն յոյփնողէն՝ բարառնաբար ազգի ամին[4]...
(6 տողք).
(Զատարէայէ) Սարատղանայ աանն ամայ, || եւ խեւէֆար յորջորջի սայ.
Ի ճախս դաշտաց սայ կոա կենայ, || կէկարէն տանուտէր կոա գայ։"

Ոտանաւորներէս ոչ մին խորագիր ունի, ինչպէս ունին ուրիշ երկու կտոր՝ Գ. Բարառնութեան վրայ յօրինուած երկու ոտանաւոր խօսակցութիւն Հռոքսանէի եւ Աղեքսանդրու։ Առաջնոյն վերնագիրն է[5]. "Հռոքսիանէ ասէր ղկաֆայս առ Աղեքսանդր. է Զատարէ եղէսկօղսանկարօղէ։ — Ղուռ տուր տապանիդ՝ ասեմ։" Իսկ երկրորդինն է[6]. "Զայնէ աշխարհակալն ի գերեզմանէն առ Հռոքսիանէս, եւ ասէ ղկաֆայս. է Զատարէայէ եղէսկօղօէ։ — Խաբող 'ւ անցաւոր էր կեանքս." եւն։ — Ասոնցմէ դուրս թէ կան ուրիշ կտորներ Զաքարիայի՝ որոշ չենք կրնար ըսել։ Ինչպէս նաեւ ոչ այն ամէնն՝ որ ձեռագրաց մէջ Զատարէայէ կը տրուի՝ պէտք է որ ապահովութեամբ վերջնոյս ըլլայ. (վասն զի ձեռագրաց նաեւ յայամ կրած աղաւաղմունքը ծանօթ է, եւ ցանցառ չեն դէպքեր՝ որ մի եւ նոյն կտորը մին այս, միւսն՝ այն հեղինակին կ'ընծայէ. —) Նոյնպէս նաեւ կրնան շատ մ'այն անանուն կտորներու մէջ Զաքարիայէ ըլլալ, ինչպէս արդէն քանի մ'այսպիսի կտորներ յիշեցինք։ Յա-

[1] Թ. 57Ա. էջ 46։
[2] Թ. 57Ա. էջ 59։
[3] Թ. 57Ա. էջ 94—95։
[4] Այս կտորն ունին նաեւ 90 Դ. Թղ. 132a։ Թ. 68. Թղ. 224b, ե։
[5] Թ. 57Ա. էջ 139։
[6] Թ. 57Ա. էջ 140։

մինայն դէպս Զաքարիայ Խնձորեցւոյն ամէն կողմանէ չի կրնար համեմատուիլ Կեչառուեցւոյ խմբագրութեան հետ՝ որ հինն է առաջնոյն։

Զաքարիայէն աւելի նուազ նշանակութիւն ունի Գրիգորիս Աղթամարցւոյ կաթուղիկոսին (ԺԶ դարու սկիզբը) Կալիսթենեսի հայ բնագրին հետ ունեցած աղերսը։ Բուն Գրիգորիսի կողմանէ եւ ոչ գիտենք թէ Գրիգորիս ընդօրինակութի՞ւն մ'ըրած է Վարուց Աղեքսանդրի եւ անոր մէջ հիւսած իւր ոտանաւորները՝ թէ առանց ընդօրինակութեան անկախ գրած է զանոնք՝ որոնք ապա մուտք գտած են ձեռագրաց մէջ։ Վերջին ենթադրութիւնը քիչ մը դժուար կ'երեւայ։ Բայց որեւիցէ դիպաց մէջ՝ բնագրոյ նկատմամբ Գրիգորիս բան մ'ըրած չէ՝ որչափ գիտենք։ Իւր ոտանաւորներն այն դիրքն ու բախտն ունեցած են՝ ինչ որ ունեցած տեսանք Զաքարիայի տաղերը, եւ ինչպէս որ ցայս վայր եղած խնդրոց մէջ ստիպուած էինք յիշել շատ տեղ նաեւ զԳրիգորիս։ Իւր ոտանաւորաց մեծ մասը կայ երեք (90 Դ, 57 Ա եւ 68) ձեռագրաց մէջն ալ, բայց 68 միշտ անանուն ունի այս կտորները. Մնացելոց կէսը միոյն մէջ անանուն է, միւս կէսը՝ միւսին մէջ։

Գլխաւորաբար Թ. 90 Դ ձեռագիրն ունի “Գրիգորիս„ նշանակուած շատ կտորներ, որոնց շատը 57 Ա եւ 68 մասամբ միայն ունին՝ անանուն։ Այսպէս Գրիգորիսի անունը կը կրեն հետեւեալ կտորները. “Կենդանի այլ չենք լսեր, որ անունն է բռնաժանի[1].„ “Նախախնամութիւն վերին՝ դու շարժող[2].„ “Այլ դու ուրախ կաց եւ խնդա[3]։„ Ուրիշ կտոր մ'ունի այս խորագիրը. “Ի Գրիգորիսի կաթողիկոսէ տացեալ արքային բերնէն։ — Ինձ հանց ուժ ու

[1] Թ. 90 Դ. Թղ. 152a—b նաեւ Թ. 57 Ա. էջ 109։ “Այս բռնաժանի„ տունն ունին եւ Թ. 68. Թղ. 229b, բ։
[2] Թ. 90 Դ. Թղ. 158a։ Հմմտ. Թ. 57 Ա. էջ 112։
[3] Թ. 90 Դ. Թղ. 222b—223a։ Հմմտ. Թ. 57 Ա. էջ 129, եւ 68. Թղ. 239b, բ։

թեւ պիտէր[1]:„ Մէկ կտոր մը միայն երկուքն ալ (90 Դ եւ 57 Ա) միաբան "ԳՐ„ կը նշանակեն՝ Բ. Բարառնութեան վրայ յօրինուածը՝ "Ա՜յ իմ միամօր որդեակ[2]․„ զոր միայն 57 Ա ամբողջ ունի, իսկ 90 Դ չորս տող միայն՝ յաջորդ թուղթը պակաս ըլլալով: Աւելի զարմանալին այն է՝ որ Ա. Բարառնութեան վրայ յօրինուած "Ազդեցէք ի տուն Պարսից[3]„ ոտանաւորն ըստ 90 Դ "ԳՐ„ (Գրիգորիս), ըստ 57 Ա "ԽՉ„ (Խաչատուր) գրած է. թերեւս ուղիղն է վերջինը:

Ընդհակառակն միայն 57 Ա Գրիգորիսի կ'ընծայէ այս երկու կտորները. "Կաֆայք ի Գրիգորիսէ առ Աղէկսանդրոս: — Աւաղ զիմ աւուրքս[4]․„ եւ "Ասայ ինձ թէ ո՞վ ես դու[5]:„

Ինչպէս վերը տեսանք Սիմէոն պատարիկ մը հրատարակեց Գրիգորիսի ոտանաւորներէն, որ կը սկսի "Այս մակեդոնեան„ բառերով. այս կտորն ունին 90 Դ եւ 57 Ա խառն կեչառուեցւոյ գրութեանց մէջ եւ անանուն, մինչ Վենետկեան (Թ. 1259°) ձեռագրոյն մէջ Գրիգորիսի անուամբ է: Եւ արդեամբք նոյն վիճակն ունին ոտանաւորքս նաեւ Վենետկոյ ձեռագրաց մէջ, որոնց մէջ Գրիգորիսի ոտանաւորք են "յերիւրեալք եւ յարմարեալք իւրաքանչիւր գլխոց՝ համգոյն ոտանաւորացն կեչառուեցւոյն, մանաւանդ թէ երբեմն երբեմն խառնելով եւ չփոխելով եւս ընդ նոյնս:„ Վենետկոյ գլխաւորաբար Թ. 1259 "ի բազում էջս է Գրիգորիսէ Կաթողիկոսէ Աղթամարցւոյ„ ոտանաւորներ կան: Այս ձեռագրէն երկու կտոր ոտանաւոր Գրիգորիսի ունիմ առջեւս, որոնք միայն

---

[1] Թ. 90 Դ. Թղ. 232a: Համմտ. անանուն՝ Թ. 57 Ա. էջ 134 եւ 68. Թղ. 241a, բ:

[2] Թ. 90 Դ. Թղ. 239b (չորս տող:) Ամբողջ՝ Թ. 57 Ա. էջ 139: Նաեւ այս անանուն՝ Թ. 68. Թղ. 249b, ա:

[3] Թ. 90 Դ. Թղ. 238b: Համմտ. 57 Ա. էջ 138: Անանուն Թ. 68, Թղ. 249a, բ:

[4] Թ. 57 Ա. էջ 137: Անանուն՝ Թ. 68, Թղ. 249a, բ:

Թ. 57 Ա. էջ 70: Համմտ. Թ. 90 Դ. Թղ. 107a, եւ 68, Թղ. 214b:

Թ. 1259ին մէջ կան, մինչ բոլոր Վենետկեան ձեռագրաց մէջ կը պակսին, ինչպէս կը ծանուցանէ Հ. ՅՀ. Վ. Թորոսեան։ Առաջինը՝ "Խիստ սրտմտեցաւ Դարեհ ընդ փախուստն Անտիգոնոսին" ունին (բայց անանուն) նաեւ 90 Դ, եւ 57 Ա եւ 68 (տուներու շարքն այլափոխեալ.) մանաւանդ թէ 57 Ա եւ 68 տուն մ՚աւելի ունին[1]։ Այս կտորին մէջ ձեռագրաց տարբերութիւնք դոյզն են։ — Նոյնպիսի է նաեւ երկրորդ կտորը՝ "Ա՜յ իմ աննման սուլթան." որ շատ աւելի երկար է, եւ զոր անանուն՝ ուստի իբր Խաչատրոյ՝ ունին նաեւ 90 Դ (սկզբան երկու տուն պակաս՝ թուղթ ինկած ըլլալով,) 57 Ա (նոյնպէս տուն մը պակաս) եւ 68 (վերջէն ութ տող պակաս[2])։ Այսչափն կը բաւէ ցուցնելու՝ որ կրնան ուրիշ շատ կտորներ ըլլալ Գրիգորիսի՝ կեչառուեցւոյ անուամբ կուտակուած ոտանաւորաց մէջ։

Այս Գրիգորիսի ոտանաւորաց երկու նշխարք կը գտնենք հոս իբր օրինակ լեզուի։ Առաջինը միայն 90 Դ[3] եւ Թ. 1259 ունին՝ "Ա՜յ իմ աննման սուլթան" տաղէն. երկրորդն 57 Ա եւ 68 ձեռագրաց առելի ունեցած մասն[4] է՝ "Խիստ սրտմտեցաւ Դարեհ" տաղէն, եւ այս տունը չունի Թ. 1259։

1. "Դարեհս յիմ արիւն ընկայ՝[5] ինձ կրակ անշէջ վառեցի,
Անցած ու գնացած բաներ՝ հին ու նոր հեծեւ զուգեցի.
Գեմ խօսքն է մոլթալ բերած որ ասած է խէտ խելօքէ[6]
Թէ իւր ձեռաց ածած մոխիրն է գլխոյն եսկէ չէ թափէ[7]"
եւն։

---

[1] Թ. 90 Դ. Թղ. 108b, եւ 57 Ա. էջ 71—72։ Աւելի կտորը քիչ մ՚ետքը կը տեսնենք։ Հմմտ. 68, Թղ. 215b—216a։

[2] Թ. 90 Դ. Թղ. 111a—b. Թ. 57 Ա. էջ 75 եւ 68, Թղ. 216b։

[3] Թ. 90 Դ. Թղ. 111a, 17—22։

[4] Թ. 57 Ա. էջ 72 եւ Թ. 68, Թղ. 216a, ա։

[5] Թ. 1259 "ընկաւ։"

[6] Երկուքին մէջ ալ ճիշդ այսպէս։

[7] Թ. 90 Դ. "չը թափի։"

2. «Ա՜յ ձի Պ՛էնչ ողջէ տանէս՝ զիս յայս երկրէս խալըսես.
Աանուս յիմ հեծելն երթաս՝ 'ւ ի յանհուն գետէն զիս
հանես[1].
Ձուկն մանիշակ տամ քեզ՝ հուշբէհարը զինչ որ դուն ու-
տես[2].
Ու փառք արարչին տամ քո՝ որ յաշխարհս ընդէր ու-
ժով ես[3]։»

Այսպիսի ռամկալեզու ոտանաւորաց բազմու-
թիւն մ'ունի Գրիգորիս Աղթամարցի՝ որոնք բաւա-
կան յաճախութեամբ կ'ըլլան ձեռագիր երգարա-
նաց մէջ, եւ մեծաւ մասամբ սիրոյ տաղեր են։ Ոմանց
վերջը կը դնէ թուականն եւ այն անձին անունն՝ որ
իրմէ խնդրեր է նոյն երգը։ Այսպէս «Ծաղկունքն
ամեն հերիք արա» տաղին[4] վերջը կը յիշէ՝ որ «Ա-
տուածատուր Մեծոփեցի յինէն խնդրեաց եւ ես
գրեցի... Թվական Հայոց իննհարիւր եւթանա-
սուն եւ երկու» (1523)։ Ուրիշ երգոյ մը[5] (որուն
սկիզբն է «Եղուկ ու հազար մի վայ») սկզբնատառք
կը կազմեն այս խօսքը. «Եղկելի Գրիգորիսն ասել է
Թվին Ջ(ըրորդ) Կ(որեակտեսըլ) Դ(ու)։» (= 1515։)
Այս վերջին (Թ. 46) ձեռագրին մէջ է նաեւ «Գրի-
գորի Աղթամարցւոյ. Մարմինս զհոգիս զրկէ» տաղը։
Իսկ մեր Մատ. Թ. 112 ունի նաեւ հետեւեալ եր-
գերն ու տաղերը Գրիգորիսի Աղթամարցւոյ. 1. «Ա-
հա այգիք մեր ծաղկեցան։» 2. «Աստուածանկար
պատկեր յօրինեալ ի յարարօղէն»։ 3. «Արեգակ-
նափայլ գեղով, լի լուսին ի տասնուհընգէ. աչեր
ծով ի ծով ունիս։» 4. «Դու ես յԱդենա դրախտէն,
զոր տնկեր աջն անեղական։» 5. «Դու ես արեգակ
լուսին ի լրման։» 6. «Մաքուր պատկերով՝ նման

[1] Թ. 68. «Դարեհի զաւրացն ազատես» փխնկ. «ի յանհուն...։»
[2] Թ. 68 «մանուշակ . . . զինչ որ դու ուտես։»
[3] Թ. 68 «ուժեղ ես։»
[4] Մեր Մատ. Թ. 112։ Տաղին խորագիրն է «Տաղ վարդին եւ պլպուլին ի Գրիգորիս կաթուղիկոսէ Աղթամարցւոյ։»
[5] Մեր Մատ. Թ. 46։

Հրեշտակի։" 7. "Դու դրախտ յեդեմա տնկեալ յանեղէն։" 8. "Գարունն երեկ պլպուլն յայգին." եւ 9. "Անեղին տաճար, բանին բարերար։"

Վերջապէս երկու տեղ կը տեսնենք 57 Ա ձեռագրին մէջ "Փ" նշանաւ ստանաւորներ։ Այս նշանը չենք գիտեր ինչ կրնայ նշանակել. վասն զի "Խ2." "ԳՐ" եւ "ՋՔ" նշաններէն եւ ոչ միոյն հետ շփոթութիւն կրնայ ըսուիլ ըստ ինքեան։ Սա ստոյգ է՝ որ այս նշանը կրող կտորին մէկը վերը յիշուած "Ա՜յ իմ անըրման սուլթան" ստանաւորին մէկ տունն է, որ կը սկսի "Կանգնեալ ի կառս երիվարաց" բառով[1], եւ զոր Թ. 90 Դ, եւ 68 ունին անանուն, իսկ Վենետիկոյ Թ. 1259 "Գրիգորիսի" կ'ընծայէ։ Երկրորդ կտորը կը սկսի "Այդ չէ ծառայ քան թէ պարսիկ[2]" բառերով, զոր նոյնպէս ունին Թ. 90 Դ եւ 68 առանց որեւիցէ անուան։ Այս խնդիրը կը մնայ ուրեմն անլոյծ։ —

Նոր եւ մեծ, եւ այն՝ բուն բնագրէն նկատմամբ խմբագրութիւն չգտանք ցայս վայր. բայց թէ նաեւ այս կերպարանափոխութիւնը կրած են Վարուց Աղեքսանդրի ինչ ինչ ձեռագիրք՝ կը տեսնենք առաջիկայ մասով։ Բայց որովհետեւ այս ձեռագիրք ուրոյն խումբ մը կը կազմեն՝ պէտք է նաեւ ծանօթ հայ ձեռագրաց վրայ կարեւոր քանի մը տեղեկութիւններ տալ եւ ասոնց այլեւայլ ցեղերը կամ խմբերը զանազանել։

---

[1] Թ. 57 Ա. էջ 75։ Համմ. 90 Դ. Թղ. 111a, 5 եւն. Թ. 68. Թղ, 216b, բ։

[2] Թ. 57 Ա. էջ 63։ Համմ. 90 Դ. Թղ. 97a—b։ Թ. 68. Թղ. 212a, ա — b, ա։

# 5.

## Հայկական ձեռագիրք եւ իրենց կրած այլայլութիւնքը:

Ստոյն-Կալիսթենեայ հայ բնագրին ձեռագիրք երկու գլխաւոր խումբ կը բաժնուին՝ ընդարձակ եւ համառօտ։ Առաջինք թէեւ ունին այլեւայլ ստորաբաժանում, բայց աւելի հաւատարիմ մնացեր են հին նախաբնագրին։ Վերջինքս ըստ բուն ընդարձակութեան բառին՝ նոր խմբագրութիւն են։ Ասոնց վրայ կարգաւ կը խօսինք ըստ կարելւոյն համառօտ։

Վենետիկոյ տաս ձեռագրաց վրայ սա տեղեկութիւնը կու տայ հրատարակիչը[1]։ Տաս ձեռագիրներէն եօթն ընդարձակ խմբէն է։ Ասոնց միայն հինգ հատին թուականը կը դնէ այս տարիները[2]՝ ՋՀԵ (1526), ՌԿ (1611), ՌՃԺԲ (1663), ՌՄԼԷ (1788) եւ ՌՄԿԳ (1814)։ Ընդարձակներէն մին՝ ամէնէն ընտիրն՝ առնուած է հիմն հրատարակութեան եւ նշանակուած Բ տառով (= Բնագիր տպագրութեան)։ Երկու ուրիշ ձեռագիր. ալ՝ որոնք բաւական փոփոխութիւն կրած են, նշանակուած են Ե (= Երկբայական) եւ վերջապէս երրորդ մ'ալ Ս տառով (= Սոյ օրինակ) իբր ամէնէն աւելի այլայլեալ։ Համառօտք նշանակուած են Հ, որոնց "Նորագոյնը„ ՌՃԺԴ (1665) թուականը կը կրէ։ Հրատարակութեան մէջ այս համառօտութեամբք շատ մը կարեւոր ձեռագրական տարբերութիւններ նշանակուած ըլլալով՝ քիչ շատ այս ձեռագրաց իրարու հետ ունեցած աղերսը կրնանք կշռել։ Միայն ցաւալի է՝ որ տարբերութեանց մէջ

[1] Պտմ. Աղեքս. Յոջր. 10—12։

[2] Ինչպէս պիտի տեսնուի այս թուերէն ոմանք չեն համաձայնիր Վ. Հ. Յովհաննու Թորոսեան Վարդապետի տուած թուականներուն հետ. թէ որն է ճշդագոյնը՝ այժմ որոշել չենք կրնար։

ոչ թէ առանձին ձեռագիրք զատ զատ նշաններով որոշուած են, այլ յընդհանուրն գրուած "Մի Օր․" "Երկու Օր․" եւն։ Այս պարագան շատ կը նուազցընէ հրատարակութեան արժէքը․ այնպէս որ բաց ի Բ եւ Ս համառօտութեամբ նշանակուածներէն՝ միւսները չենք գիտեր շատ տեղ թէ ո՛ր ձեռագիրները կ'ակնարկեն։

Բ տառով նշանակուածն է ամէնէն ընտիր ձեռագիրն, որ է Վենետկոյ Թ․ 424։ Անթուական է ձեռագիրս, (ըստ հրատարակչին ԺԳ դարու,) գեղեցիկ բոլորգիր, "ընտիր յոյժ, գործ ճարտար գրչի,[1]" եւ մէկ գրչէ ելած, "բաց ի սեւագիր ծանօթութիւններէ կամ բացատրութիւններէ պատկերաց՝ որ նոյն իսկ պատկերաց շուրջը կամ քովը գրուած են։" Կեչառուեցւոյն ստանաւորք գրուած են կարմրաւ պատկերաց երեսը, որ գրեթէ ամէն երկու էջ կը գտնուին։ Նիւթն է հին հաստ եւ ողորկեալ թուղթ․ (թուղթք 129․ մեծութիւն՝ 29×18 սանդիմեդր․ գրութիւն՝ միասիւն 21×14 սանդ․ տողք՝ 33—34։) Ըստ տեղեկութեան, զոր կու տայ Մեծ․ Հ․ Յովհաննէս Վ․ Թորոսեան, սկիզբէն 6—8 եւ բուն մարմնէն 10—12 թուղթ պակաս է եւ կամ մեծաւ մասամբ պատռած։ Այս պակասները կը գտնենք արդեամբք նշանակուած հրատարակութեան մէջ, ուր բաց ի մանր պակասներէ՝ կան նաեւ մեծամեծ կտորներ եւ էջեր անգամ[2]։

Բնագիրս ընտրելագոյն եւ "զգուշաւոր հարազատութեամբ պատկառելի" է․ բայց այս՝ միայն համեմատութեամբ միւսներուն։ Պիտի տեսնենք որ

---

[1] Պտմ․ Աղեքս․ Յուշք․ 11։ Ձեռագրիս գրիչն է "Ներսէս սարկաւագ։" Տես վերը՝ էջ 87 ծն․ 1։

[2] Պակաս կայ փոքր՝ ԺՁ, էջ 9, 25․ ՄԺԲ, էջ 131, 7․ ՄՁԵ, 186, 4 եւն։ Թուղթ մը կը պակսի՝ ԿԵ (հմմտ. էջ 31, ծն․ 1․) տասուերկու տող՝ ՃՂԲ (էջ 108, 11—22․) ամբողջ ՃԻԳ եւ ՃԻԴ հատածները (էջ 61, 1—63, 6․) հատած մ'ալ ուրիշ տեղ (հմմտ. էջ 181, ծն․ 1․) ՄՁԳ (էջ 184, 25—185, 10․) ՃՁԵ (103, ծն․ 4) եւն։

աղաւաղմանց մեծ խումբ մը կը գտնուի նաեւ այս բնագրին մէջ։ Առ այս բաւական է նաեւ միայն դիտել Բ տառով նշանակուած այն "խանգարեալ„ կամ "անընթեռնլի„ տեղերը ճշդիւ հոն՝ ուր իրմէ ուղիղ ընթերցուած կը փնտռէինք միւսներն ուղղելու համար։ Ճիշդ այսպիսի շատ տեղեր կը լքանէ զմեզ Բ բնագիրը[2]։

Եթէ միտ դնենք այս կէտերուն՝ կը տեսնենք որ շատ չափազանց է այն հնութիւնը, որ կը տրուի այս ձեռագրին, զոր ԺԳ դարէ կը դնէ հրատարակիչը։ Նաեւ անկարելի է այս՝ վասն զի Բ Կեչառուեան խմբագրութենէն է ստուգութեամբ։ Մանաւանդ թէ պէտք ենք ըսել այս տխուր ճշմարտութիւնը՝ թէ բոլոր ընդարձակ օրինակք Վենետիկոյ եւ Վիեննայի, (— որչափ ինձի ծանօթ է նաեւ այլք —) ուստի նաեւ Բ (Թ. 424) յետկեչառուեան մէկ օրինակէ մըն են յառաջ եկած։ Շատ կէտեր աներկբայ կ'ընեն այս կարծիքը։

Կարեւոր նշան մըն է առ այս նախ՝ որ ճիշդ այն պակաս եւ աղաւաղ կտորները, զոր կը գտնենք Բ (424) օրինակին մէջ, նոյն չափով կը գտնուին նաեւ բոլոր ընդարձակ օրինակաց մէջ։ Զոր օրինակ ՃԻԲ հատուածէն սկսող մէկ ամբողջ թուղթ պակասը՝ կէտ առ կէտ նոյն է բոլոր օրինակաց մէջ, որոնք կը կարդան այս տեղ միաբան. "Երանի է ձեզ՝ որ դիպեցայք այնպիսի քարոզի Հոմերոսի. (պակաս) կորուստ մատնեցելոց ի սովոյս, այլ վմակեդոնացիս այժմ ո՞ւր կարացից գտանել[3]։„ Այս մի միայն կէտը կրնայ ցուցընել՝ որ ոչ միայն ընդարձակ օրինակք,

---

[1] Հմմտ. Պտմ. Աղեքս. ԼԵ, էջ 18, ծ. 1. ուր օրինակք "մարական„ անհեթեթ բառը կը գործածեն՝ փոխանակ "եգիպտական։„ — ԶԳ, էջ 39, ծ. 3. այլք "կարթառոն„ կամ "կարթակոն„ փոխանակ "կարքեդոն։„ — ՃԼԴ, էջ 73, ծ. 1. այլք "փահլաւանն„ ռամիկ բառը, — ՄԹ, էջ 127, ծ. 3. այլք "ի լոյս անցանել„ կամ "անցուցանել„ փոխանակ՝ "ի լոյղ անցանել.„ եւն եւն.

[2] Պտմ. Աղեքս. ՃԻԲ—ՃԻԴ, էջ 61, 1—63, 6։ Հմմտ. 90 Դ, 69a, 23 եւ 69b, 6։ 57Ա, էջ 42։

այլ եւ Սոյն օրինակը մէկ աղբիւրէ մըն են. ուստի եւ Սոյն օրինակին ցուցուցած տարբերութիւնքն հին ուրոյն խմբագրութիւն մը չեն ենթադրեր: — Նոյնպէս է ՃՂԲ հատածին այս խօսքը[1]. "Այր աշտարակ ... եւ ի վերնում յարկին կայր յուսկիոյ աւազ (ղոյնոս): Եւ լուեալ նոցա Աղեքսանդրի" եւն: Հոս մինչեւ անգամ բառը կիսատ մնացեր է, վասն զի պիտի ըլլայ "յուսկիոյ աւազանի եւ ապակի պատեալ" եւն: — Ամբողջ ՄՁԳ հատածը պակաս է բոլոր ընդարձակաց մէջ:[2] Հոս Թ. 57 Ա նշանակեր է. "Գրած է յօրինակն թէ թուղթ է անկել, նա ի տեղն թողաք." իսկ 90 Դ եւ ոչ իմացեր է պակաս ըլլալը:

Այսպիսի տեղեր կրնայինք շատ յիշել, եթէ տեղերնիս ներէր: Համառօտութեան համար զանց կ'ընեմ յիշել նաեւ շատ մը նմանօրինակ թերի, աղաւաղ եւ յաւելուածաւոր տեղերը, որոնք զարմանալի ճշդութեամբ կէտ առ կէտ կը գտնուին բոլոր այս ձեռագրաց մէջ, եւ միեւնոյն աղբիւրը կը նշանակեն[3]:

---

[1] Պատմ. Աղեքս. ՃՂԲ, էջ 108, 11—22: Համմտ. 90Դ 116b, 23: 57Ա, էջ 79:

[2] Պատմ. Աղեքս. էջ 184, 25—185, 10: Համմտ. 90Դ, 235a, 1: 57Ա, էջ 135: Տես նաեւ Պատմ. Աղեքս. էջ 9, Ծ. 1 եւ 186, Ծ. 1 եւն եւն:

[3] Օրինակի համար ամէնքը միաբան կ'ըսեն (ՃԱ, էջ 49, 6.) "Իսկ արքայն խնդրէր թէ ընդ որ ճանապարհս մտցէ եւ առցէ զծուրացիսն. +տնղէ յէմօրօ—բնէ—ն վօրլանէր:" Շատ հին աղաւաղութիւն մըն է այս անիմաստ խօսքը, որմէ մէկ երկու բառ դուրս ինկեր են. վասն զի A կ'ըսէ. Ἄλογον γὰρ ἡγεῖτο αὐτῶν τὴν ἧτταν. (քանզի յիմարութիւն վարկանէր զկոտորած նոցա:) — Ղ, էջ 42, 28 կ'ըսեն ամէնքը. "Ի սարապեան տաճարին, յորում էին դրօշեալք գիրք նուիրականք աստուածայինք. եւ հրաշալի սորա ֆողաֆ:" Շատ հին է նաեւ այս վերջին անիմաստ խօսքը, զոր չունին ABCV. — Բ եւ երեք այլ օրինակ (ուրեմն անշուշտ Թ. 1259, 1390 եւ 1538) եւ 90 Դ եւ 57 Ա կը գրեն դարձեալ (ՄԿԳ, էջ 173, Ծ. 1) "գային ի հանգիստ." եւ "ի հանգիստ անցանելով." փխնկ՝ "ի հանդէս.": Այս նորանշան ընթերցուածն ունին ուրեմն ամէն ընդարձակք: Նման օրինակներ կը գտնուին շատ յաճախութեամբ: — ՄԾԸ, էջ 169, 13 ամէնքը կ'ըսեն. "Եր

Երկբայական օրինակք՝ յիշուած պականներէն վերջին երկուքը չունին, բայց ունին առաջինը։ Ասկէ կը հետեւի՝ որ մէկ կողմանէ ընդարձակաց հետ սերտ կապ ունին Երկբայականք, միւս կողմանէ իրենց նախաբնագիր օրինակն աւելի կատարեալ էր քան ընդարձակացը։ Նոյնպէս են նաեւ Համառօտք, որ առաջին (էջ 61—63) եւ վերջին (ՄԶԳ) պականերն ունին. բայց նաեւ ասոնց մէջ պակաս է երկրորդը (էջ 108, 11—22.) ուստի եւ այս կտորին կորուստը շատ հին է, եւ գուցէ անդառնալի։ — Այսպէս կամ այնպէս այս գլխաւոր խմբեր կը գտնուին Հայ ձեռագրաց.

1. Ընդարձակ օրինակք՝
   ա) Սովորական ընդարձակք.
   բ) Սույ օրինակ.
   գ) Երկբայական օրինակք։
2. Համառօտ օրինակք։

Սակայն այս բաժանումն միայն յընդհանուրն ճիշդ է. առանձնական օրինակք իրարմէ բաւական տարբերութիւն կը ներկայացնեն. եւ ընդհանրապէս ծանօթ ձեռագրաց գուցէ եւ ոչ մին միւսներէն օրինակուած է ուղղակի։

Ընդարձակ սովորական օրինակաց կարգէն են Վենետկոյ՝ Թ 1259, 1390 եւ 1538։ Առաջինն որ

---

ստտանօր եւ Գղաւկոյ արուեստն յարմարական քնար որ ինքնին հարեալ լինէր։„ Դարաւոր գրչի անհեթեթ սխալ մըն է այս։ A է ἦν δὲ καὶ ἐνταῦθα ἡ Γλαύκου τέχνη, ἐναρμόνιος λύρα αὐτομάτως κρουομένη. (Էր աստանօր եւ Գղաւկոյ արուեստն՝ յարմարական քնար, որ ինքնին հարեալ լինէր։„ Հայկազնեան բառագիրքն այս աղաւաղ բառն "Գղաւկոյ„ ձեւով առած է իբր = գավին կամ վին։ — ՄԾԸ, էջ 167, 13 ամէնքը. "տարաւ ոսկիս հազար եւ հինգ հարիւր մըղըղ (այլք՝ միխալ. մախալ) որ է դրամ մի։„ Այս յաւելուածը շատ հին է ուրեմն, ինչպէս նաեւ սա հետեւեալը. (անդ, էջ 168, 10.) "սովաւ պատք զԱրեգ քաղաք. ինչ այսպէս նուաճ եղեւ սա է՝ որ ասեն փողափ դղնէ։„ Հարկաւ այս յաւելուածը "Պղնձէ քաղաք„ վէպիկին Հայ թարգմանութենէ եաքը մտած է բնագրին մէջ։ Այսպիսիք ուրիշ շատ կան։

ընտրութեամբ եւ գրութեամբ շատ նման է Թ. 424 ձեռագրին՝ բոլորգիր գեղեցիկ գրութիւն մըն է թղթի վրայ. (Թուղթք 131. մեծութիւն՝ 21×15 սանտ. երկսիւն գրութիւն՝ 14, 5×10 սանտ. տողք՝ 24։) Գրեթէ ամէն էջի վրայ դատարկ տեղ թողուած է նկարի համար։ Սկզբան 10 էջ եւ մէջն ալ տեղ տեղ կը պակսի, եւ յէջ 111 գրուած է. "Ցայսմ վայրի պատմութիւնս կու շփոթի. ոչ գիտեմ թէ թուղթ է ընկեր եւ գրած օրինակ այսպէս էր։" Անթուական է ձեռագիրն, զոր գրած է ոմն "Ցակոբ գրիչ" (ըստ յիշատակարանի՝ յէջն 227։)— Սոյն ձեռագրի հետ կապ կ'երեւայ թէ ունի՝ թերեւս 1695ին գրուած՝ Ալեանաքեան օրինակը[1], թէպէտ որոշ վճռոյ մը բաւական նիւթ չունինք առջեւնիս։

---

[1] Մեծապ. Եդուարդ Էֆ. Ալեանաքեան հաճած է ինքնակամ յղել հետեւեալ տեղեկութիւնն իւր ձեռագրին վրայ։ "Գրատունս զարդարող 6—7 հատ ձեռագիրներէս մին . . . Հոնդբէօֆ մէջ քանից յիշուած "Աղեքսանդրի վարուց" պատմութիւնը կը պարունակէ։ Այս ձեռագիրն՝ որ երբեմն նօտր գրով եւ երբեմն երկաթագիր գրուած է, կը պարունակէ բաց ի վերոյիշեալէն՝ Մեկնութիւն պատարագի, 20—30 էջէ բաղկացեալ Մարդակազմութիւն մը, Տարեցոյց եւ Պատմութիւն Պղնձէ քաղաքի։ — Գալով թուականին խնդրոյն, մասնաւոր յատուկ յիշատակարան մը չունի, թէեւ թուղթ ալ պակաս չէ. ուստի իւրաքանչիւր էջ աչքէ անցուցի եւ գրութեան մ'ընթացքին մէջ սա ձեւով (ծխդռ) չորս տառերուն հանդիպեցայ, եւ որովհետեւ այս տառերն երբեք յարաբերութիւն չունին գրուած նիւթին հետ, ուստի կրնանք հետեւցընել ասկից՝ թէ 1695ին գրուած ըլլայ, եւ անուս գրչագիրն տառը սխալմամբ ետեւը դրած է։ . . . Այդ պատմութիւնը 167 էջ տեղ կը գրաւէ (չմոռնանք ըսելու՝ թէ գիրքն երկիջեան է.) բայց դժբախտաբար սկիզբէն 4 երես, այսինքն՝ երկու թուղթ պակաս է։ Յիշատակարանը հետեւեալն է։ . . . Աստ կ'աւարտի Պատմութիւնն եւ յիշատակարանը։" — Օրինակուածն է Կեչառուեցւոյ Խաչատրոյ յիշատակարանը. (տես վերը՝ էջ 88։) Ձեռագրիս ընթերցուածը համեմատ է Թ. 424 բնագրին։ Նշանաւորն է այն՝ որ նաեւ այս Կեչառուեան օրինակը "զաքարեան" խմբին յատուկ սա նշանակալից խօսքը "գրեցի իմով ձեռամբս օրբոգրեալ ի հնոյն" կ'ընթեռնու, զոր ունէր նաեւ Թ. 1259։ Ուստի կ'երեւայ թէ այս օրինակը Թ. 1259ին հետ սերտ նմանութիւն ունի։

Ընտիր օրինակ մըն է նաեւ Թ. 1390, թէեւ նորագոյն գրչութիւն. վասն զի գրուած է 1814ին ի “Փօթիշան,„ ինչպէս կ'իմանանք իւր յիշատակարանէն[1]: Ամբողջն է 65 թուղթ. (Մեծութիւն՝ 22×17 սանդ. գրութիւն միասին՝ 18,5×15 սանդ. տողք՝ 26:) Պինդ եւ անողորկ թղթի վրայ գրուած այս օրինակը կրնար գուցէ նախակեչառուեան օրինակէ մը գաղափարուած կարծուիլ. վասն զի Կեչառուեցւոյ ոտանաւորք կը պակսին, եւ հազիւ քանի մը հատ “յետոյ գտեալ„ աւելցուցեր է գրիչը, ինչպէս տեսանք: Սակայն այս պարագային ուրիշ մեկնութիւն պէտք է տալ. վասն զի ամենայն նկատմամբ ձեռագրին բուն բնագիրը յետկեչառուեան օրինակ մը կ'ենթադրէ: Բայց ի ձեռագրիս վերջն եղած այբուբենական ցանկէն՝ կը գտնուի նաեւ “Մեծ ոտանաւոր մը Աղեքսանդրի վրայ, 5—5—5 չափաւ, անիմաստ եւ լի վրիպակօք. անշուշտ օրինակողը կամ ձեռագրին գրողը յօրիներ է, վասն զի բնաւ ուրիշ ձեռագրաց մէջ չի գտնուիր:„

Ընդարձակաց կարգէն՝ յուրի նոտրագիր եւ Կեչառուեցւոյ ոտանաւորաց հետ խառն գրութիւն մըն է Թ. 1538. (Թուղթք 172. Մեծութիւն՝ 21×13, 5 սանդ. գրութիւն միասին՝ 16×9 սանդ. տողք՝ 27—28:) Միջակ հաստութեամբ եւ անողորկ թղթէ այս ձեռագիրն ընդարձակ յիշատակարան մ'ունի, որ “բայց ի շատ մը գրոյններէ եւ նորանշան դէպքերէ՝ կ'իմացընէ որ գրուած է ՌՄՃԲ (գուցէ՝ ՌՄԾԲ 1803. կամ թերեւս՝ ՌՄԺԲ=1763) թուականին՝ Հնդկաց “Բանկալայ Սէփտապատ„ կոչուած

[1] “Գրեցաւ գիրս Աղեքսանդրի աշխարհակալի ի վայելումն եւ ի գործածութիւն ազնուազարմ պատուարժան Աղաչայ Աստուածատուրի Պըյըքըլեան, ջանիւ եւ սրբագրութեամբ մանկավարժ տիրացու Կարապետի Ֆէհրատեան, ձեռամբ եւ աշխատանօք յետնեալ եւ չնչին Սահակիս Աստուածատրեան. կարողութեամբ եւ շնորհիւ Տեառն Յիսուսի, յանգ ելեալ եւ ի յաւարտ հասեալ: 1814 թիւ փրկչին. ի 23 Ապրիլի. ի Պուղտանու գաւառի. ի Փօթիշան քաղաքի:„

քաղաքը, եւ գրիչն է Յովհաննէս վարդապետ Նուիրակ Էջմիածնի[1]։

Այս ձեռագրաց բուն բնագրին վրայ քանի մը դիտողութիւնք կը տեսնենք՝ երբ մեր Մատ. 90 Դ ձեռագրի վրայ խօսինք։ Բաց աստի Կալիսթենեայ հրատարակութեան մէջ քիչ շատ նշանակուած են այս երեք ձեռագրաց ընթերցուածքը. վասն զի ուր “Երեք ՕՕ.„ “Չորս ՕՕ.„ “այլք„ կամ “ՕՕ„ նշանակուած է՝ ապահովութեամբ այս երեքն ի միասին պէտք է հասկընալ։

Այս տեղ պէտք չենք մոռնալ նաեւ Պամաճեան Բ օրինակը, որ է Իւսկիւտարի Ս. Խաչ Թանգարանի Թ. 310 ձեռագիրը. (...46[2] թուղթք. մեծութիւն՝ 14×10, 5 սանտ. գրութիւն՝ 10×6 սանտ. տողք՝ 19։) Նօտրագիր թղթեայ այս ձեռագիրը դժբախտաբար պակասաւոր է սկիզբէն եւ վերջէն. բայց վերջը մէկ թուղթ մը միայն կը պակսի, ուր գրուած է եղեր թէ ծով ձգուած է ձեռագիրս, որպէս զի ազատուի։ Գոնէ այս կը պատմէ գրքին սկիզբն եղող ծանօթութիւն մ'օտար ձեռքէ[3]։ Յաջորդ թղթին վրայ նոյն գրչէն գրուած է հետաքրքրական տեղեկութիւն մը, զոր կը դնենք հոս ամբողջ։ “Հզօրանուն եւ յաղթհամբաւ արքային

---

[1] “... Գրեցաւ ՌՄՃԲ (թուականին) ձեռամբ իմով ի յերկիրս Հնդկաց ի Բանկալայ քաղաքն ի Սէփտապատ կոչեցեալ եւ յամսեանն յունվարի ԺԲ յօրն սուրբ Սարգսի պահոց չորեքշաբաթի սրբոյ Էջմիածնի անարժան Նուիրակ Յովհաննէս վրդյպետս (վարդապետս)։„

[2] Այս թուոյն նկատմամբ դիտել կու տայ Մեծ. Կ. Պամաճեան՝ որ հարիւրաւորը մոռցուած է նշանակել։ Եթէ փոքր 120 չըլլար ձեռագիրը՝ ապահովութեամբ կրնայինք “146„ թուղթ գրել։

[3] Գրուածքն այս է. “Բայց զայս գիտենալ պարտի՝ զի սորա վերջն մէկ թուղթ կայր անկեալ. սակայն գրեալն այն էր թէ զսա պատատեալ միով իմիք. եւ ի ծովն արկեալ. զի մի անկցի ի ձեռս մարդոց ակարաց. պատմութիւն հզօր աշխարհակալ արքային այնմիկ. վասն այսորիկ թուղթն թխացեալ. եւ ծիրն ոմն ոմն տեղիս է եղծեալ։„ — Ինչպէս կը տեսնուի, երկու յիշատակարանները ալ լեզուի խեղճութեամբ նշանաւոր են, մանաւանդ այս փոքրիկը։

Աղեքսանդրի պատմագիրքս՝ որ ցանկալի է բազմաց,
գտի ի մօտն Գանձակեցի տիրացու Մատթէոսի որ
ի Հօր. Հօրէ Տէր-Մատթէոս անուն քահանայէ
մնացեալ իւր յիշատակ. եւ է ... աք իւրն հետ
սիրելի իբրեւ հայր որդի կամ իբրեւ եղբայր: Ցան-
կացեալ եղէ սորա. սակայն եւ էր ինձ փոքրիկ ժա-
մագիրք մի մագաղաթ եւ ոսկեզօծ բոլորագիր, ծաղ-
կեալ սքանչելի[1] պատկերօք, ոսկւով եւ լաճիվէր-
տով, զոր ի օրհնողէն իմմէ Նիկողայոս վարդապետէ
հանգուցելո ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, տեսի
նորա մօտն զայն եւ խնդ(ր)եցի ցանկացեալ: Նա
խնդրեաց ԺԵ ղուռուշ գին, եւ ես ետու գրչի Նա-
րեկ մի եւ Ագաթանգեղոս պատմագիրք մի. եւ առի
զժամագիրքն զայն ի ՌՃՄԳ (անշուշտ՝ ՌՃԿԳ=
1714) սեպտեմբերի ԺԴ. վայելէի մինչեւ ի ՌՃՁԸ
(=1739) հոկտեմբերի ԺԲ: Ընդ այսմ ամի այս
տիրացու Մատթէոսի Գանձակեցւոյն հետն չուեալ
էաք Ըստամպօլայ ի ծովն Պոնտոսի դէպ ի Սամսոն.
անդ ելանել ոչ կարացաք վասն ալէկոծութեան.
Ամասրա անուն երկիր մի՝ որ հիմնարկեալ զարմա-
նալի Ամասիա կայսեր, անդ կացեալ աւուրքս եր-
կու՝ անտի նաւեցաք ի Սընապ, որ ասեն թէ Սեմա
որդւոյն Նոյի է հիմնարկեալ, եւ նա եւս զարմանալի:
Ապա անդ կացաք զաւուրս Ձ եւ անտի նաւեցաք ի
Սամսոն, որ հիմնարկեալ ասեն Սամսոնի նահապե-
տին: Այսքան ժամանակս սիրեցեալ եղաք եւ
հացակից ընդ այս տիրացու Մատթէոսի Կէնճէցւոյ,
նա տեսեալ իմս ժամագրքի եղելոյ իւր անձինն
վայելման[2], եւ ես մեղաւորս եղէ սորա ցանկացեալ.
ընդ միմեանս փոխեցաք, եւ եդի յիշատակ յետ իմս
երիցակնոջս Փամպուխին եւ որդւոյս Սաղաթիէլին
հոգոյն. վայելողքդ ասէք Աստուած ողորմի: Գրե-
ցի ի Մարզուան:„

---

[1] Գրուած էր "ըսեղի„ համառօտութեամբ:
[2] Ճիշդ այսպէս յօրինակին:

Ասկէ յայտնի է որ 1713էն յառաջ գրուած է ձեռագիրս, որուն սկիզբը պակսելով՝ կը սկսի այսպէս. «... կանոն. զարժանաւոր խրատն ընկալեալ. լինէր եւ պսակազգեստութիւնք. ընդ բոլոր Մակեդոնացիս. եւ ընդ Պաղղէ եւ ընդ Թրակէ. եւ ընդ այլ ազգս լինէին:» Ուրեմն կը սկսի ԻԷ Հատածին վերջէն (էջ 14, 28:) Բայց որչափ աղաւաղութիւնք այս քանի մը տողին մէջ[1]: Որչափ կ'երեւայ շատ ընտիր գրչութիւն մը չէ այս ձեռագիրը:

Էջմիածնայ մատենադարանը գտնուած չորս ձեռագրաց[2] նկատմամբ դժբախտութեամբ անկարելի եղաւ տեղեկութիւն առնուլ, ուստի եւ չենք կրնար որոշել՝ թէ որ տեսակէն են նոյն ձեռագիրք: Գուցէ զարմանալի երեւայ՝ որ նաեւ այս ճոխ Հաւաքածոյից մէջ հնագոյն գրչութիւններ չկան Աղեքսանդրի Վարուց, եթէ 1863էն ետքը նոր մտած չըլլան:

Քիչ մ'աւելի ընդարձակ կ'ուզենք խօսիլ մեր Մատ. Թ. 90Դ գրչագրին վրայ: Երկմասնեայ, ուստի եւ երկու գրչի գործք է այս ձեռագիրը, որ թղթեայ նօտրագիր գրչութիւն մըն է. (թուղթք՝ 325. մեծութիւն՝ 17×12 սանդ. գրութիւն միասին՝ 12×7, 5 սանդ. տողք՝ 23:) Վերջին մասն է Սիրաք եւ Բառարան մը՝ գրուած Կ. Պոլիս 1696—

[1] Բնագիրն է ըստ Թ. 424. «Եւ մանկանն զարժանաւոր խնամս ընկալեալ լինէր. եւ պսակազգեցութիւնք ընդ բոլոր Մակեդոնիա ընդ Պելլէ եւ ընդ Թրակէ եւ ընդ ազինս լինէին:»

[2] Հմմտ. Մայր Ցուցակ, Տփղիս. 1863, էջ 189: — Թ. 1708. «Պատմութիւն մեծին Աղեքսանդրի՝ քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի քաղաքն Կաֆայ ի Գրիգոր աբեղայէ ի թուին Հայոց ՌՄԵ (= 1756.) ... ունի զյիշատակարան ի մէջն:» Կան նաեւ վեց ուրիշ կտորներ: — Թ. 1709. «Նոյն՝ քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի Յակովբայ երիցէ ի թուին Հայոց ՌՃԴ (= 1655) ... ունի զյիշատակարան:» Չորս ուրիշ կտորներ ալ կը յիշուին: — Թ. 1710. «Նոյն՝ ի Հեղինակէ չունի զյիշատակարան»: — Թ. 1711. «Նոյն՝ ութածալ նօտրագիր ի Մարգարէ ի թուին Հայոց ՌՄԺԶ (= 1767.) ունի զյիշատակարան:»

97 տարիներ[1] Գաբրիէլ անուն գրող եւ նկարող անձէ մը, ինչպէս յիշատակարանք կը ցուցնեն։ Բայց առաջին մասը՝ Սուտ-Կալիսթենէս (Թղ. 1—243) հնագոյն է եւ ուրիշ անձէ մ'որ անծանօթ մնացած է։ Գրութիւնս շատ նկարներով զարդարուած է, բայց ասոնք հին գրչէն չեն, այլ յետոյ նկարուած յիշեալ Գաբրիէլէն 1694ին[2]։ Այս երկրորդ գրիչն շատ մը պակաս թղթեր նոր գրեր լրացուցեր է,[3] բայց առանց ըսելու թէ ինչ օրինակէ առեր է։ Այսու ամենայնիւ դեռ եւս 13 թղթէ աւելի կը պակսի ձեռագրէս[4]։ Ձեռագիրս ստացուածք եղած է նաեւ Յովհաննէս Պատրիարքի 1802ին[5]։

Ընդարձակաց կարգէն եղած այս ձեռագիրը շատ զգուշաւոր գրչէ մ'եղած կ'երեւայ, որ լաւ տեսած է մինչեւ անգամ ակնյայտնի անհեթեթ սխալները հաւատարմութեամբ օրինակել[6]։ Ասով ըսել

---

[1] Սիրաքայ գրքէն ետքը (Թղ. 312b) կը գրուի. “Գրեցաւ եւ աւարտեցաւ գրքոյկս շնորհօքն Յիսուսի թվին. ՌՃԽԵ (1696). ամսեանն Դեկտեմբերի. ի քաղաքն Կոստանդնուպօլիս. ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ զօրավարին . . .։„ — Բառագրոց վերջը (Թղ. 325b, ա) կը յիշուի՝ թէ “Գրեցաւ եւ աւարտեցաւ. բառացոյցս. ի թվին Հայկականի. ՌՃԽԶ. (1697). յունվար ամսոյ օրն ուրբաթ...„։

[2] Թղ. 4b կը գրուի. “. . . Յիշեսջիք ի Քրիստոս զգծօղս եւ զնկարող պատկերացս զչնչին Գաբրիէլս. եւ զծնօղսն իմ զՄարկոս ծաղկարարն։ Քանզի Աղէքսանդր գրքի գիրն ո—րէն մորթոյ է. եւ զայլսն որ տեսանէք մեր է . . .։„ — Թղ. 70b—72a էջերու ներքեւ նշանակուած է նկարած ժամանակն այսպէս. “Եղեւ պատկերաց նկարումն գրքս (դոխոս) Ըստամպօլ. ՌՃԽԳ (1694) թվին։„ — Միայն Ճակատն (Թղ. 8a) կայ խորան, լուսանցազարդ եւ զարդագիր՝ գունաւոր։

[3] Նոր գրչէ են՝ Թղ. 1—4, 13, 24, 93, 105, 114, 127, 133, 233—236։ Բոլորովին նոր գրչէ մըն է՝ Թղ. 71։

[4] Պակաս են թղթեր այս թղթերէն ետքը՝ Թղ. 28, 30, 48, 79, 108, 110, 130, 131, 203, 211, 212 եւ Թղ. 104 եւ 244։

[5] Կնիքը դրոշմուած է՝ Թղ. 5a եւ 243b։

[6] Մեծ կոյտ մը կայ այսպիսի սխալ ընթերցմանց, ուր ամէնքը միաբան են. զոր օր. Թղ. 48a, 21. “չիշակոյտ„ փխ. “չեղջակոյտ.„ (= 57 Ա, էջ 28, 4։) — Թղ. 58b, 11. “զկարասիս եւ զերկիրս.„ փխ. “զկարասէկիրս.„ (= 57 Ա, էջ 36, 6։) — Թղ. 69a, 6. “զոհել ետուր„ փխ. “զոհել Եք-

չենք ուզեր որ բաւական մ'ալ ինքն չէ աւելցուցեր իւր կողմանէ անմտադրութեամբ[1]: Ի մասնաւորի կը տեսնուին շատ մը թերի եւ անկատար նախադասութիւններ[2], որոնց անշուշտ մէկ մասը գրչին՝ միւսը նախագաղափարին պէտք ենք ընծայել:

Ընթերցուածոց կողմանէ նաեւ սխալներու մէջ զարմանալի միաբանութիւն կը տեսնուի Թ. 424ի եւ այլոց հետ, մանաւանդ ուր OO նշանակուած է[3], (այսինքն՝ ուր ամէն ընդարձակք միաբան են։) Այս միաբանութիւնը կը տեսնուի նաեւ շատ մը ռամկացեալ բացատրութեանց եւ նորանշան ընթերցուածոց մէջ: Բարեբախտութեամբ քիչ են այսպիսի տեղեր[4], որով գրութեան ընդհանուր նկարագիրը պահուած է:

---

տուրի.„ (= 57Ա, 41, 22։) — Թղ. 96a, 7. “արարած առի„ փխ. “Արածանի.„ (= 57Ա, 61, 14) եւն. եւն:

[1] Սխալմանց անթիւ կրնային օրինակ ըլլան հետեւեալք: Թղ. 8b, 8. “երկաթով„ փխ. “երթալով:„ — Թղ. 25a, 2 “վտանգէն„ (վտակէն.) 25b, 8. “տար տոր„ (տայ՝ զոր.) 27b, 3. “զալաֆեալ թոշակն.„ (զառաքեալ . . .) 31a, 11. “ի վերայ ճաշակելոց բանից.„ (ճառելոց.) 31b, 14 “տեսանելն որում որդիս եւս.„ (նոր ում Ոդիսեւս.) 200a, 15. “զառաքօլք, ցուաքսեօք.„ (զառագղօք, ցուպք սեաւք.) 74b, 12. “զալ տունկն ծնաւ.„ (զաղտուկն . . .) 148b, 1 “հարկաւորեցուցանել քեզ.„ (հարկաւոր է ցուցանել քեզ.) եւն. եւն:

[2] Պակաս են սա կտորները: Պատմ. Աղեքս. էջ 71, ծ. 1. էջ 49, 1—3 (մինչեւ “ասելով:„) — Պատմ. Աղեքս. էջ 52, 2 “աղաչեմք զքո քաջութիւն„ խօսքը պակաս է, որով եւ անիմաստ է հօս 90 Դ: — Պատմ. Աղեքս. էջ 53, 1 “ընդարեգական ծագողի„ պակաս, նոյնպէս ՃԻԲ հատածը շատ թերի եւ աղաւաղ է, զոր օր. չկայ “եւ տեսեալ զԱկամանդրոս դեռ ընդ որ վազեաց Աքիլլեւս„ խօսքը՝ Այս տեղն 90 Դ անիմաստ է:

[3] Զոր օրինակ. Թղ. 125a, 1 “Նախաբարի„ փոխանակ “Նախարարի.„ այսպէս Թ. 424 եւ երեք OO. (Պատմ. Աղեքս. էջ 115, ծ. 3:) — Թղ. 40 եւ 41. “Պոսիրիս„ “փոսիրական„ փոխանակ “Տապոսիրիս„, “տապոսիրական„. (= OO եւ 57Ա. Համմտ. Պատմ. Աղեքս. էջ 37, ծ. 2 եւ 38, ծ. 1:) — Թղ. 42b, 23 “շուրջ ածին„ փոխանակ “յածին„ (= OO. Պատմ. Աղեքս. էջ 40, 10) եւ այլ շատ նմաններ:

[4] Զոր օրինակ սա խօսքը. (Թղ. 61a, 14) “Եւ հեծեալ ի ձի ցլագլուխ, եւ սաստ փողահարացն փչել զկռուոյ փողն զկռուին նշանակել.„ (այսպէս նաեւ Հինգ OO եւ

Բուն բնագրական տարբերութեանց նկատմամբ դիւրաւ կը տեսնուի՝ որ 90 Դ շատ տեղ Թ բնագրէն (Թ. 424) կը խոտորի, եւ կը միաբանի այն տարբերութեանց, որ “Չորս ՕՕ.„ նշանը կը կրեն։[1] Աւելի մանր քննելով՝ կը տեսնենք որ այս չորս օրինակներուն մէջէն ի մասնաւորի “Երեք ՕՕ.„[2] ընդարձակայց հետ նոյնութիւն կը ցուցընէ, ասոնցմէ ալ մանաւանդ “Երկու ՕՕ.„[3] եւ ի վերջոյ “Մի Օ.„ կը միաբանի շատ տեղ[4] մեր ձեռագրին։ Միայն չգիտնալով՝ թէ ո՛ր ձեռագիրն է այս “Մի Օ.„ ը-

---

57 Ա. Հմմտ. Պատմ. Աղեքս. էջ 57, ծ. 4.) ուր բուն բնագիրն է. “... Հրամայեաց հանկրծել փողահարացն„ եւն։ — Թղ. 67b. “զինչ նշանակէ պատկերի քրտնիլն.„ (այսպէս նաեւ Չորս ՕՕ. Հմմտ. Պատմ. Աղեքս. էջ 60, ծ. 2։) — Միաբան է “այլ ՕՕ„ ձեռագրաց (ուստի ամէն օրինակաց՝ բաց ի Թ. 424էն) այս տեղերը. Պատմ. Աղեքս. էջ 73, ծ. 1. (“փահլաւան.„ = 57 Ա.) 65, ծ. 1. (“պարսաւանօք„ = 57 Ա. փոխանակ “պարսաւորօք.„) 93, ծ. 2 (“հանգիստասատուած„ փխ. “հանգիստատուած.„) 124, ծ. 1 (“բռնել.„ = Չորս ՕՕ եւ 57 Ա.) դարձեալ “էլչի„ (= 57 Ա) փոխանակ “հրեշտակ„ (Հմմտ. Պատմ. Աղեքս. 51, 18. 99, 24. 101, 17, այս ամէն տեղ 90 Դ “էլչի։„) Բոլորովին կղզիացեալ է (Թղ. 66a, 16) “չաւուս„ տաճկերէն բառը՝ փոխանակ “լրուտես„. (Հմմտ. Պատմ. Աղեքս. 59, 21։)

[1] Կը նշանակենք Պատմ. Աղեքս. հրատարակութեան այն ծանօթութեանց թիւն, որոնց հետ ճիշդ նոյն է 90 Դ, որ են. Պատմ. Աղեքս. 32, ծ. 6. 45, ծ. 2 (“իպախիս„.) 57, ծ. 1 (“երեսուաւ„ = 57 Ա փխ. “ճակատեցաւ.„) 67, ծ. 2 (“փոքրածին կիպրոս.„ փխ. “փրփրածին.„) 68, ծ. 1 (“յարավիշապին„ փխ. “յարեան վիշապին.„) 70, ծ. 1 (“աչարաւ„ փխ. “աչաւ„ ըստ Թ. 424.) 99, ծ. 1 (“ճեղակեան„ = 57 Ա փխ. “ճեղանակ.„) 113, ծ. 3 (“զթապութն„ = 57 Ա. փխ. “զդին„ ըստ Թ. 424) եւն։ Հետեւեալ մեծ կտորներն ալ են = Չորս ՕՕ, այսինքն՝ Պատմ. Աղեքս. 118, ծ. 1 (տող 11.) 134, ծ. 1. 151, ծ. 1 եւ 3. 183, ծ. 1 եւն. եւն։

[2] Այսպէս՝ Պատմ. Աղեքս. 25, ծ. 2 (“խառնավարել„ = 57 Ա փխ. “կառավարել.„) 32, ծ. 5. 109, ծ. 1 (“թշուառական„ փխ. “դժուարական„ երկիր.) 128, ծ. 2 եւն եւն։

[3] Այսպէս՝ Պատմ. Աղեքս. 39, ծ. 2 (“փուլ հատանել„ = 57 Ա փխ. “փոս ....„) 41, ծ. 1 (“բեռնակիցք„ փխ. “գործակիցք.„) 32, ծ. 1 (“զդիւրս„ փխ. “զդուրս.„) եւն։

[4] Այսպէս՝ Պատմ. Աղեքս. 57, ծ. 2 (“կռուաճակատ.„) 66, ծ. 5 (“հրադիզ.„) 99, ծ. 3 (“կնատ„ փխ. “նկատ.„) 102, ծ. 2 (“ոլորէր„ փխ. “հոլովէր.„) 113, ծ. 1 (“ախտակից„ փխ. “բախտակից.„) եւն։

տուածն, որոշիչ բան մ՚ըսել չենք կրնար։ Դարձեալ տող հաստատել չենք ուզեր՝ որ այս օրինակն ինքնուրոյն ընթերցուած ամենեւին չունի։ Շատ տեղ 90 Դ բոլորովին կցկտայեալ ընթերցուածներ ունի[1], եւ այն՝ երբեմն ընտրելագոյն քան ամէն մէկալները[2]։

Ամենէն կարեւոր տարբերութիւնն այն է՝ որ տեղ տեղ համառօտուած է 90 Դ։ Աղեքսանդրի առ Պարսիկս ուղղած հրովարտակին վերջն ու յաջորդ հատածին սկիզբը — ամբողջը 20 տող — դուրս թողուած է, եւ շատ տեղ գրուած պարզապէս. “եւ այլ բազում օրէնս եդ[3]։„ Աղեքսանդրի առ մայրն Դարեհի գրած թուղթը մեծաւ մասամբ չէ օրինակուած, այլ շատ տեղ գրուած միայն. “Գրեաց եւ թուղթ առ մայրն Դարեհի. եւ առ կինն մի բան միջէ որպէս գործեցաւն[4]։„ Բայց աւելի եւս յաջորդ թղթակցութիւններն Աղեքսանդրի, մօր Դարեհի եւ Ողոմպիադայ — երկու ամբողջ էջ — բոլորովին չկան։ Անոնց տեղ կան լոկ այս խօսքերը. “Եւ նորա դարձեալ գրեցին թուղթ Աղեքսանդրի։ Եւ յետ ամենայն որպիսութեան ելեալ գնաց անտի[5]։„ Կը յաջորդէ ՄԹ հատածին նամակն

---

[1] Զոր օրինակ՝ Պատմ. Աղեքս. 24, 21 ՀՀ. “Պիսաս„, իսկ 90 Դ (եւ այլք, զոր օր. 57 Ա) “Մելին։„ — Պատմ. Աղեքս. 37, 26, 29 “Նեփրուտայ... Արդէոս.„ 90 Դ “Եփրատիա... Նարդէս„ (= 57 Ա։) — Պատմ. Աղեքս. 47, 33 “զօրաժողով արարեալ հզօր.„ 90 Դ լոկ “զօրս ժողովեաց։„ — Պատմ. Աղեքս. 71, ծ. 1 եւ 181, ծ. 1 հատածները չունի 90 Դ։ Պատմ. Աղեքս. 31, ծ. 1. 103, ծ. 4 եւ 131, ծ. 1 յիշուած հատածներն ունի 90 Դ, զորոնք չունի Թ. 424 եւն եւն։

[2] Զոր օրինակ՝ Պատմ. Աղեքս. 63, ծ. 2, ուր 90 Դ “Կրիւսոս„ է, այլ Թ. 424 խանգարուած, իսկ այլք “Փիլոս„ ոչ լաւ։ — Պատմ. Աղեքս. 147, 3 “յականջս,„ ուր ամէնքը սխալմամբ “յականջում„ եւ այլ այսպիսիք։

[3] 90 Դ. Թղ. 126a, 16։ Պակաս է՝ Պատմ. Աղեքս. ՃԼԹ, էջ 116, 24 (“եւ պատմուճան„) մինչեւ Մ, 117, 11 (“կատարեցաւ։„)

[4] 90 Դ, Թղ. 128a, 10։ Պակասն է Պատմ. Աղեքս. ՄԴ, 119, 15—120, 5 (“արժանի լինել„)։

[5] 90 Դ. Թղ. 128a, 19։ Պակասն է՝ Պատմ. Աղեքս. ՄԵ, 120, 18 — ՄԹ, 122, 20 (“Եւ Հռոքսիանեայ„)։

առ Ողոմպիադա եւ Արիստոտէլ։ Դժուար է կարծել որ գրիչն ինքնագլուխ ըրած է այս համառօտութիւնները, այնու մանաւանդ որ նաեւ 57 Ա ալ հոս շատ շփոթ է — կրկնութիւններ, յետեւառաջութիւն նամակաց եւն — որ կը ցուցընեն նախագաղափարի մ'այս մասին աղաւաղութիւնը[1]։

Այս վերջին ձեռագիրն — ինչպէս քանի մ'օրինակներ՝ զոր յիշեցինք, կը ցուցընեն — շատ տեղ մեծ նմանութիւն ունի 90 Դ ձեռագրին։ Բուն ձեռագիր չէ 57 Ա, այլ նորագոյն բաղդատութիւն կամ “Տարբերութիւնք կրկին օրինակաց Պատմութեան Աղեքսանդրի մեծի, որոյ մին տպեալ ի Վենետիկ յամի Տեառն 1842 եւ միւսն ձեռագիր մագաղաթ՝ բոլորգիր առանց թուականի՝ հանեալ ի գրատանէ կաթուղիկոսական աթոռոյն Սսոյ։„ Անծանօթ է թէ ո՛վ եւ ե՛րբ ըրած է այս բաղդատութիւնը, որ 144 էջ է (մեծութիւն՝ 20×15 սանդ. գրութիւն՝ 16×11,5 սանդ. տողք՝ 22։) Բուն բնագրին, այսինքն Սսոյ օրինակին նկատմամբ ալ բան մը չէ նշանակուած. բայց խնամքով նշանակուած են պակաս, թերի, ջնջեալ, դատարկ եւ այլ նման տեղերը[2], եւ թէ ո՛ւր

[1] 57 Ա, էջ 88։ Նախ գրուած է ՄԹ, 122, 15—32 եւ կէս թողլով՝ կը սկսի օրինակել ՄԴ, 119, 14 նամակն, որուն սկիզբն յառաջ գրած էր անգամ մը, եւ այս՝ կը հասնի մինչեւ 116. 24 (“ոսկի սուրբ„) եւ կ'անցնի Մ, 117. 11։ Ուրեմն էջ 116, 24—117, 11 կտորն 90 Դ եւ 57 Ա հաւասարապէս չունին։

[2] Պակաս են թուղթ իյնալով կամ այլ օրինակաւ այս կտորները։ Պտմ. Աղեքս. ՃԺԱ, էջ 55, 21 (“գրեաց„ բառէն) մինչեւ 56, 4 (“որ ունէր այսպէս։,,) — Պտմ. Աղեքս. ՃՀԹ, էջ 100, 17 (“յառաջագոյն„) մինչեւ 101, 5։ — Պտմ. Աղեքս. ՄԴ—ՄԹ հատածներուն տեղափոխութիւնն ու պակասները յիշեցինք վերը։ — Պտմ. Աղեքս. ԾԴ, էջ 27, 3 (“առակս այս որ ասէ„) կտորէն ետքը եօթը տող դատարկ եւ անմիջապէս կը սկսի ԾԵ։ — Պտմ. Աղեքս. ՂԵ, 46, 9 (“իւրաքանչիւր,,) մինչեւ 47, 3 (“որդի եմ,,) ուրիշ գրիչ մը լրացուցեր է պակաս թուղթը, նոյնպէս նաեւ ՄԾԳ, էջ 163, 32 (“եթէ կամիք ի ձերում յերկրիդ,,) մինչեւ 164, 14 յոռի գրիչ մը լրացուցեր է։ Կան նաեւ շատ մը ջնջուած, անընթեռնլի եւն կտորներ։

օտար գրչէ մըն էր։ Զաքարեան յիշատակարանին վերջն ալ կցուած է այս տողը[1] “Եւ զվերջին ստացող գրքիս (յիշեցէք) զՉանի Սաֆարս ի Թվիս ՌԿԷ„ (= 1618։)

Վենետիկոյ տասներորդ օրինակին նկատմամբ զոր “Սոյ„ կը կոչէ Հրատարակիչը, տեղեկութիւն չունիմ. բայց կ՚երեւայ թէ միեւնոյն Սոյ ձեռագրէն պէտք ըլլայ Թ. 57 Ա ձեռագիրը։ Գոնէ գրեթէ ամէն տեղ՝ ուր Հրատարակութեան մէջ Սոյ օրինակին ընթերցուածը դրուած է՝ միաբան է 57 Ա[2] եւ միայն քանի մը տեղ քիչ մ՚այլայլութիւն կ՚երեւայ։

Բնագրական ընթերցուածոց նկատմամբ, ինչպէս ցայս վայր դրուած օրինակները կը ցուցընեն, 90 Դ ձեռագրի հետ շատ նմանութիւն ունի՝ նաեւ վրիպակաց մէջ։ Արդէն ասոր նշան է քիչ մը յառաջ յիշուած այն պարագայն՝ որ 90 Դ ի համառօտուած մէկ մեծ կտորը նոյնպէս կը գտնուի 57 Աի մէջ։ Նշանաւոր է այն ալ՝ որ ճիշդ նոյն թուղթը որ պակաս է 90 Դ ձեռագրէն, կը պակսի նաեւ 57 Աին մէջ[3]։

Ձեռագրիս յատուկ կան — բայց ի գրասխալներէն — քանի մը ռամկայեալ ոճեր եւ բառեր, զոր օր. “իբրեխ„ եւ նմանիք[4]։ Այս ռամկաբանու-

---

[1] 57 Ա, էջ 144։

[2] Նոյն է 57 Ա ի հետ Հրատարակութեան մէջ ծանուցուած այս կտորները. Պատմ. Աղէքս. 49, Ծ. 2. 69, Ծ. 1. 101, Ծ. 4. 102, Ծ. 7 եւ 8. 109, Ծ. 2. 111, Ծ. 2 եւ 4. 156, Ծ. 2 եւն եւն։ Ընդհակառակն տեղ տեղ “Ս.„ օրինակին հետ նոյն չէ (զոր օր. 105, Ծ. 3 եւն) այլ ընդարձակաց հետ։

[3] Ճիշդ ինչպէս 90 Դ ի մէջ Թղ. 71 պակաս էր նախնաբար, (այսինքն՝ Պատմ. Աղէքս. ՃԻԶ, 64, 1—18 “արտաքոյ„ բառը) պակաս է նոյն կտորը 57 Աին մէջ (էջ 43։)

[4] Այսպէս՝ Պատմ. Աղէքս. ՀԴ, էջ 35, 5 “քանքարս հինգհարիւր„ խօսքին տեղ 57 Ա է “իբրեւ մողալս հարիւր։„ — Պատմ. Աղէքս. ՃԺԲ, էջ 56, 13 “ժողովեալ արս նման քեզ աւագականիցս„ խօսքն է 57 Աի մէջ “ժողովեալ մարդիկ նման քեզ գողեր։„ — ՃԺԳ, էջ 57, 1 “այս թուղթ իբրեւ ընթերցեալ եղեւ.„ իսկ 57 Ա է “զայս թուղթս իբրեւ կարդացին։ — ՃԼԶ, էջ 74, 21 “իսկ իմ մնեալ՝ ասես...„

թեանց ոմանք շատ նոր չեն երեւար։ Մին օրինակի աղագաւ "Զաքարիայի" խմբագրութենէն կանուխ կ'երեւայ։ Վանդի ընագրին այս խօսքը "անստոգտանելի է դեղդ[1]" ընդլայնուած է 57 Ա ին մէջ այսպէս[2]. "Անմեղադրելի է բաժակդ. որ է դայ տղէ ըուլուլ եւ տղոո խոյխան, եւ լուղէ ըըմըուլ։" Այս վերջին ռամիկ յաւելուածն արդէն Զաքարիա կարդացեր է, որ իւր կից ստանաւորին մէջ փոխ առած գրեր է այսպէս[3]. "Փիլիպպէ շարբաթ կապէ՝ ինձ զուլալ ու ապու խայաթ։"

Բայց այս տեսակներէն աւելի մտադրութեան արժանի են այն ընդարձակ փոփոխեալ կտորները, որոնք նոր խմբագրութեան երեւոյթ առած են։ Բաց ի գրչէն աւելցուցած քանի մը մեկնութիւններէն[4]՝ կան նաեւ ընդարձակ յաւելուածներ։ Զոր օրինակ Վարուց Աղեքսանդրի Լ.Գ. հատուածին վերջը տաս տող թէեւ ոչ շատ յարմար յաւելուած կայ կցուած[5]։ — Մտադրութեան արժանի է ՁԶ. հատուածին յաւելուածը։ Կալիսթենեայ այն պատմութեան վրայ՝ թէ գազան մը կ'արգելուր Աղեքսանդրիայի շինութիւնը, կը յաւելու 57 Ա՝ թէ Աղեքսանդր Դանիէլ մարգարէին գերեզմանը գտաւ, եւ նշխարքը Գ.ՃԿԵ (= 365) ոսկեզօծ ամաններու մէջ դրաւ քաղքին չորս կողմն պարսպաց հիմանց մէջ։ Մարգարէին աղօթքովը երկրորդ օրը գազանը "ի վերայ ջրոյն" կը սատկի[6]։ — Կալիսթենեայ ՃԽԶ

հոս 57 Ա. "իբրեւ ես մնայ՝ ասացեր..." — ՃԾԶ, էջ 88, 28 "մատոյց նմա զբաժակն դեղոյն"։ բայց 57 Ա. "մատոյց նմա. Գ. ոսկի իբրեխով զբաժակն դեղոյ։" — "Փիղ" բառի տեղ "ֆիլ" եւ այլ նմաններ։

[1] Պատմ. Աղեքս. ՃԾԶ, էջ 89, 3։

[2] 57 Ա. էջ 58։

[3] Անդ. էջ 59։

[4] Զոր օրինակ՝ Պատմ. Աղեքս. ՃԼ, 107, 2 "ի Մինադաւառին եւ ի Շոշ" խօսքին տեղ՝ 57 Ա. է. "որ կայ ի Շաւշ, որ է Աստահան։"

[5] 57 Ա. էջ 13—14։

[6] 57 Ա. էջ 24—25։ Տես վարը՝ էջ 171։

հատածին սկիզբը եւ ՃԾԲ — ՃԾԷ հատածները յաւելուածներ ունին. բայց մանաւանդ ՃԿԲ հատուածն երեքպատիկ ընդլայնուած է, ուր Աղեքսանդր բանաստեղծական ճառ մը կը խօսի զինքը սպաննելու ձեռնարկող ծպտեալ պարսկին: Շատ ճոխացած է Աղեքսանդրի ցլագլխոյն սպաննուելու միջադէպը (ՄԺԷ.) բայց աւելի եւս ՄԼՋ հատածը, այսինքն Աղեքսանդրի ծպտեալ ձեւով Կանդակէ դշխոյին արքունիք երթալու դէպքը: Ըստ 57 Ա ձեռագրի Աղեքսանդր կը հանդիպի հոն Պաւրոսի, Պարսից եւ "Իլլամացոց" դեսպաններուն, որոնց հետ երկայն բարակ կը խօսի ու կը խօսակցի: Այս միջանկեալ կտորն արաբական աղբիւր մը կ'ենթադրէ, որչափ կ'երեւայ:

Երկբայական օրինակաց վրայ շատ ըսելիք չունիմ: Հրատարակչին յառաջ բերած կտորներէն[1] կ'իմացուի՝ որ այս օրինակները քիչ շատ այլայլեր, ուրիշ ոճի փոխեր, պարզեր եւ դիւրիմաց ըրած են շատ տեղ բնագիրը[2]: Թէ նաեւ շատ մ'աղաւաղութիւնք անպակաս են՝ ինքնին յայտնի է: Նաեւ թէ փոքր եւ թէ մեծ յաւելուածներ ունին, եւ այն՝ ճշդիւ հոն, ուր բոլոր ընդարձակք պակաս են[3], ինչպէս տեսանք: Մատթէոս Ուռհայեցի այս կարգի օրինակ մը կարդացած կ'երեւայ, ինչպէս կը տեսնենք քիչ մ'ետքը[4]:

Թէ որո՞նք են Հրատարակչին յիշած այս երկբայական օրինակները, առայժ չեմ գիտեր. բայց են

[1] Համմտ. Պատմ. Աղեքս. էջ 16, Տ. 5 եւ 6. 21, Տ. 1 եւ 2. 25, Տ. 1. 34, Տ. 1. 35, Տ. 1. 53, Տ. 2. 93, Տ. 1:

[2] Համմտ. Պատմ. Աղեքս. էջ 58, Տ. 2, ուր "Հանգոյց ի հանգոյցէ" ոճը պարզեր է աղաւաղիչ ձեռքն այսպէս. "եւ նոր ի նորոյ փոխեալ եւ զերծաւ:" — 99, Տ. 2 "կօշիկս սեպաստանոն" քննութեան կարօտ անսովոր բառը "սեբաստայինն" գրուեր է առանց այլեւայլութեան. եւն:

[3] Համմտ. երեք գլխաւոր աւելի կտորները՝ Պատմ. Աղեքս. էջ 23, Տ. 6ա, բ. 61, Տ. 1բ. 65, Տ. 3բ:

[4] Տես վարը՝ էջ 167:

անշուշտ Վենետիկոյ Թ․ 592 եւ 1601, որ "Մասամբ ընդարձակ եւ մասամբ համառօտ" օրինակաց կարգէն են։ Թ․ 592 ձեռագիրն անյիշատակարան եւ անթուական թղթեայ նոտրագիր յոռի գրչութիւն մըն է․ (Թուղթք՝ 171․ Մեծութիւն՝ 15, 5×10 սանդ․ գրութիւն միասին՝ 11, 5×7, 5 սանդ․ տողք՝ 17։) Իսկ Թ․ 1601 նոր ընդօրինակութիւն մըն է Վ․ Հ․ Եփրեմ Սեթեան Վարդապետին, Տփղիսի մէջ՝ բոլորգիր անթուական օրինակէ մը գրուած 1829ին․ (Թուղթք՝ 28․ Մեծութիւն՝ 25, 5×19․ գրութիւն միասին՝ 22×16։) Վերջէն կը պակսի պատմութեան մէկ մասն․ նոյնպէս զանց ըրած է Վ․ Հ․ Եփրեմ օրինակել Խաչատրոյ ոտանաւորները։

Ընդարձակ խմբին կից պէտք ենք շնորհակալութեամբ հանդերձ յիշել Կրաւֆորթեան կարեւոր ձեռագիրը, որուն վրայ մօտ օրերս ինքնակամ տեղեկութիւն յղել հաճեցաւ Գ․ եր․ Ս․ Վ․ Պարոնեան։ Անգղիական Lord Crawford and Balcarres գերդաստանին ընտանեկան մատենադարանին հայ գրչագրոյ թիւ 3 կը ներկայացընէ մագաղաթեայ, բոլորգիր ձեռագիր մը 183 թղթով՝ գրուած 1544ին նոյն իսկ "Զաքարիա եպիսկոպոս" գրչէն, նկարազարդ ոսկեխառն գոյներով եւ կեչառուեան ոտանաւորներով։ Գրոցս երրորդ թերթէն 8 թուղթ եւ իններորդէն 2 թուղթ պակաս է․ ունի 119 նկար եւ աւելի քան 200 ոտանաւոր։

Անթերի է բնագիրը։ Աղեքսանդրի վարուց վերջը կը գտնուի "Փառք եւ գոհութիւն" յիշատակարանը Խաչատրոյ, ապա կու գան Բարաւնութիւնք, (որուն վերջը կը յաւելու գրիչը․ "Որք լսէք զաղխողորմ բարաւնութիւնս՝ զյարմարող սորա զԽաչատուր կեչառեցի յիշեցէք ի բարի, եւ զմեղապարտ գծողս Զաքարիա եպիսկոպոսս") եւ կը յաջորդէ "Ապէնիազն" կտորը։ Զարմանալի է որ այս վերջնոյն մէջ զաքարեան խմբին յատուկ այն կտորը՝ թէ Հռոմ գացած եւ հոն գրած է Զաքարիա սոյն

դիրքը՝ չի գտնուիր[1]։ Ամէնէն վերջը կը գտնուի նաեւ "Բարեաց գործոց" կտորը։

Ձեռագրիս բուն յարգը կ'իմանանք յաջորդ յիշատակարաններէն, որոնք Զաքարիայի եւ Գրիգորիսի խմբագրութեանց վրայ նոր լոյս կը սփռեն։ "Բարեաց գործոց" կտորին անմիջապէս կը յաջորդէ Ստանաւոր պատմութիւն մը Հին եւ Նոր կտակարանի, որ կը սկսի "Խորհուրդ արար Հայրն արարիչ" խօսքով։ Քերթուածիս սկզբնատառք նախ "Խաչատուր" անունը կը կազմեն, եւ յետոյ կը սկսին այբուբենական կարգաւ շարունակուիլ մինչեւ Հ. ապա խառն սկզբնատառով կը յառաջանայ։ "Այս քերթուած, կը յաւելու Գերապ. Ս. Վ. Պարոնեան, որչափ գիտեմ՝ ցարդ անգիտ է այլուր, եւ կարծեմ որ նաեւ այն յիշատակութիւնը՝ զոր կ'ընէ Այրարատ[2], այս ձեռագրէն առած է, ամօք յառաջ հաղորդած լինելովս զայն ի Վենետիկ։" Քերթուածին ծայրը կայ յիշատակարան մը Կեչառուեցւոյ, որ կը յայտնէ թէ ՇՁ (580) տուն է բովանդակը[3]։

Ձեռագրիս 182ա—183ա էջերուն վրայ են կարեւոր յիշատակարանները։ Առաջինն՝ որ "Յիշատակարան այսմ տառի" տիտղոսը կը կրէ, կարեւորագոյնն է, զոր կը դնենք հոս ամբողջ։

> "Փառք ամենազաւր տէրութեան Քրիստոսի Աստուծոյ մերո։ Որ ետ կարողութիւն տկար ոգո Զաքարիայ մեղապարտ եպիսկոպոսի, պիտականուն

---

[1] Հմմտ. այս յիշատակարանը՝ վերը, էջ 88—91։ Ձեռագրիս տարբեր ընթերցմունքն են հետեւեալք. "բայիւք. — կարծիւք. — Պաղոմէիւ. — ձեռամբ իմով. — քերեալ մեր քերթողօրէն. — ի հին եւ յընտիր օրինակէ։"

[2] Հմմտ. Այրարատ, էջ 268ա։

[3] "Ցերեկս անկեալ աղաչեմ կարաւտ եւ կաթնոգի. Խաչատուրըս Կեչառեցի. որք հանդիպիք Ստանաւոր շարաբանութեանս, որ սկսեալ յսկզբան արարչութեանցն. գան անցանիլ համառաւտ տրամաբանութեամբ. մինչեւ իջումն հոգոյն սրբոյ. երկու յեղանակաւ տառմբ բաղադանեալ տունս. Շ. եւ Ձ. յիշեսջիք անբամբաս. եւ աննախանձ սրտիւ. վիս որ յաւրինեցի եւ գգրեցի. իմ բազում մեղացն թողութիւն հայցեցէք յԱստուծոյ. ամէն եւ եղիցի։"

բանի խնդրողի հասանել յաւարտ Պատմութեան աշխարհակալին Աղէկսանդրիս։ Որ գրեցաւ ի խըն-դրոյ՝ բազմերջանիկ եւ յոքներանեան. շնորհազարդ եւ բանիբուն. վարժապետի Տէր Ա[illegible] [illegible][1], որ այժմ Նստի յաթոռ Հայրապետին Յոհաննու Ոսկէբերանին ի Կոստանդինուպաւլիս. մեծաշուք պատուով. ընկալեալ զիշխանութիւն ի սուրբ արփիաւորչէն մերմէ։ Որ ցանկացող եղեւ այսմ կտակի. ի վայելումն անձին իւրոյ՝ բարեսիրի։ Եւ յետ աստեացս յիշատակ բարի յեկեղեցի. իւրն եւ ծնողաց իւրոց. հաւրն Եաղուպին. եւ մաւրն Մահպուպին. որոց Տէր Յիսուս Քրիստոս ողորմի. եւ վայելել տացէ զսա ընդ երկայն աւուրս Տէր Ա[illegible] [illegible]։ Եւ ես Թափուրս յամենայն բարեաց զՁ[illegible] [illegible] [illegible] [illegible] Գ[illegible]. եւ Յ[illegible] [illegible]. որ յասմ ամի փոխեցաւ ի դասս անմահից. եւ եղեւ ինձ մեծ սուգ։ Եւ տեսի զփափաք եւ զսէրն Փրէրիս մերոյ՝ յանձն առի եւ Աստուծոյ աջողութեամբն կատարեցի. գրով եւ ծաղկեալ ոսկով. եւ երանգ երանգ գունով աւճառեցի սիրայիր եղբաւրս մեր Տէր Ա[illegible] [illegible]։ Արդ որք հանդիպիք սմա տեսչութեամբ. եւ կամ աւգտութեամբ ինչ իւիք. յիշեցէք ի միտս բարիս եւ. ի հայցուածս պատկանաւորս զՏէր Ա[illegible] [illegible]։ Եւ զիս զմեռեալս մեղաւք՝ զՁ[illegible] [illegible] [illegible] եւ [illegible] այսմ տառիս։ Գրեցաւ սա ի Թվիս Հայոց. Ջ. ՂԳ. (1544). ի Սուլիման սատիրս ([illegible]) ի բռնակալութեան Սուլթան Սուլէմանին։ Եւ դուք հանդիպողք սմա՝ աղաչեմ զձեզ որ չասէք բանս Նախատանաց այլ մանաւանդ Աստուած ողորմի։„

Ակնյայտնի է յիշատակարանիս կարեւորութիւնը. որ Զաքարիայի անձին վրայ լոյս սփռեց։ Ձեռագիրս է այնու կարեւորագոյն՝ որ բուն Զաքարիայի խմբագրութեան օրինակն է, մինչ 57 Ա ընդօրինակութիւն է Սոյ օրինակին՝ նոյն խմբէն։ Կ'երեւայ թէ Զաքարիա շատ մ'օրինակութիւններ ըրած էր, որովհետեւ այս ձեռագիրս

[1] Ամէն տեղ, ուր կը յիշուի այս անձին անունը, ծածկագիր գրուած են յօրինակին անունն ու "պատրիարք," "քահանայապետ," "պըլետիկոս" եւ "տեսուչ" տիտղոսները։

նոյն չէ 57 Ա (Սսոյ օրինակին հետ, զոր ի Հռոմ գրած է Զաքարիա, եւ այն՝ "Եսայիա" "մեծ վարդապետին" համար:

Այս ձեռագրէս կ՚իմանանք դարձեալ թէ ինչ աղերս ունի Գրիգորիս կաթուղիկոս Զաքարիայի հետ: Զաքարիա ինք զինք "աշակերտ" կ՚անուանէ բաց ի "Յովսէփ վարդապետէն՝" Գրիգորիսի կաթուղիկոսին: Թէ սոյն այս Գրիգորիսը "աղթամարցին" է, որուն վրայ խօսեցանք վերը[1], յայտնի կ՚երեւայ նաեւ ուրիշ յիշատակարանէ մը "Ի գծողէ գԶաքարիայէ" վերնագրով, որ եւ կը սկսի այսպէս. "Ի մեղսամած մատեանցս ընկալ, տէր բաբունիդ իմ պանծացեալ:" Այս 20 տող ընծայական քերթուածին մէջ զիւր "վարպետըն սըխրալի" "եւ զտէր Յովսէփ" վերստին յիշելով "աղթամարցի" կը կոչէ, որով եւ անտարակուսելի կ՚ըլլայ որ "վերոյիշեալ Գրիգորիս կաթողիկոսն՝ չէ Էջմիածնին (1536—1541), այլ Աղթամարցին, յորմէ կարծեմ բաւական նշանաւոր հետեւութիւնք կը ծագին:" Ասով կ՚իմանանք նաեւ թէ ինչ առթիւ յօրիներ է Գրիգորիս իւր ոտանաւորները, եւ թէ ինչպէս մտեր են անոնք հայ ձեռագրաց մէջ:

Ամենէն վերջը կայ սոյն ձեռագրին մէջ ուրիշ ոտանաւոր մ՚ալ նոյն գրչէ գրուած, բայց "Ի յըստացողէ ի Տէր Աստուածատուր վարդապետէ" վերագրուած, որուն սկիզբն է. "Զատ եւ մաքուր յախտից մեղաց:" Սկզբնատառք "Զաքարիայի" կը կապեն. տաղն է 16 տող եւ կ՚աւարտի այսպէս. "Յորժամ չուես ի Սուրմպալէս եւ հեռանաս յանարժանէս, առ քեզ լիցի սա յիշատակ, յԱստուածատուր վարդապետէս:" — Ասոնցմէ զատ "երկու երեք տեղ" կը գտնուին նաեւ ասոնք միատող յիշատակագրութիւնք "յանուն Աստուածատրոյ ստացողի եւ Զաքարիայի գրչի:"

Ցիշեցինք որ քանի մը թուղթ պակաս է ձեռագրէս: Ասոնցմէ զատ տեղ տեղ կտորներ դուրս թողուած են

---

[1] Հմմտ. վերը՝ էջ 133—137:

գրչէն, եւ այն՝ երբեմն մեծ պատառիկներ[1]. կան նաեւ համառօտեալ հատուածներ[2], ինչպէս գտանք նաեւ 90Գ ձեռագրի մէջ: Ոտանաւորք “աւելի հնագոյն կը թուին, եւ նուազ ռամկաբանք եւ առաւելապէս պատշաճեալք նիւթոյ նկարուց.„ բայց ոտանաւորաց քով հեղինակաց անուանք չկան նշանակուած: Վերջապէս թէպէտ նաեւ այս ձեռագիրը զերծ չէ վրիպակներէ, սակայն շատ տեղ նաեւ Թ. 424էն աւելի “ընտիր եւ նախադասելի„ տարբերութիւններ ունի, ինչպէս կը վկայէ Գ. Երապ. տեղեկագիրը: Գոնէ սոյն կարծիքը կը հաստատեն իբրեւ ճաշակ նշանակուած քանի մը ընթերցումներ այն կտորին՝ զոր վերը դրինք համեմատելով Կալիսթենէսն եւ Արծրունին[3]: — Այսչափ ընդարձակ օրինակաց վրայ. այժմ անցնինք համառօտներուն:

Համառօտաց ներկայացուցիչ կրնանք համարիլ մեր Մատ. Թ. 68 ձեռագիրը: Որպէս զի այս “համառօտ„ կոչուած խմբին վրայ քիչ շատ գաղափար կազմենք՝ պէտք ենք քանի մը տեղեկութիւն տալ սոյն ձեռագրին վրայ: Ձեռագիրս 1638—

---

[1] Պակաս են՝ Պտմ. Աղէքս. Ա, էջ 2, 6 “երեննայ„ բառէն մինչեւ Դ, էջ 3, 14 “արտաքս„: — Է, էջ 5, 8 “նա պատասխանի„ մինչեւ ԺԳ, էջ 7, 31 “տայր նմա:„ — ՃԿԵ, էջ 92, 27 “Դարեհ„ մինչեւ ՃԿԶ, էջ 93, 15 “այսպէս„: — ՃՉԵ, էջ 103, 26 “բայց գիտեմ„ մինչեւ ՃՉԶ էջ 104, 15 “կազմեցաւ„: — Բաց աստի պակաս են նաեւ երեք սովորական թերի մասերը՝ Պտմ. Աղէքս. էջ 60—63, 108 եւ 184—185, որոնց վրայ խօսեցանք:

[2] Այսպէս՝ Պտմ. Աղէքս. ԳԵ, էջ 46, 9 “իւրաքանչիւր„ մինչեւ ԳԷ, էջ 47, 3 “սորա որդի իմ.„ (ուրեմն = 57Ա:) — ՃԻԶ, էջ 64, 1 “Աղէքսանդրոս„ մինչեւ՝ անդ, էջ 64, 18 “եւ արտաքոյ„ կտորին տեղ՝ գրուած է պարզապէս. “Եւ ցոյցս ամենայն ազգաց եւ սարեաց զինքն ի կռիւ եւ սաէ.„ (= 90Գ:) — Սպիտակ թողուած եւ չէ օրինակուած՝ Պտմ. Աղէքս. ՃԾ, էջ 85, 27 — անդ, 86, 2:

[3] Հմմտ. վերը՝ էջ 35—38 կտորը: Ձեռագրիս ընթերցուածքն են. “Մի ժողովեր, մի հատաներ.„ (տպ. “Մի ժողովել„ եւն.) “Ընդ աղաւտ —տ.„ (տպ. չունի “աւդ„.) “Զամենայն բանակսն ի ներքս եդեալ (տպ. “ի ներքոյ.„) “Զինուորքն ի մահ եւ ի վտանգ տուեալ զանձինս՝ ի լոյս անցանել.„ (տպ. “ի մահ-վտանգի . . . լոյս անցուցանել.„) “Զի զվայրս կոխես աստուածոց զոուն տեսանել, ով

1657ին Տրապիզոն քաղաքը Ամիրասի երզնկացիէն՝ թղթեայ յոռի նօտր գրով գրուած ձեռագիր մըն է. (Թուղթք՝ 315. Մեծութիւն՝ 19·5×13·5 սանթ. գրութիւն շատ տեղ երկսիւն՝ 16×10·5 սանթ. տողք՝ 24։) Ձեռագիրս բուն ժողովածոյ մըն է այլեւայլ կարգի գրութեանց. եւ միայն Թղ. 191a —250b գրուած է "Պատմութիւն մեծի աշխարհակալին Աղէկսանդրայի մակեդոնացւոյն։" Ինչպէս յիշատակարանք[1] կը ցուցընեն եւ գրութեան տառերու պէսպիսութիւնը, այլեւայլ ժամանակ գրուած են ձեռագրիս մասունք։ Աղեքսանդրի պատմութեան մասին յիշատակարանը[2] թուական չունենալով՝ այս մասին ճիշդ տարին դժուար է որոշել։

Այս համառօտ խումբը բուն անձուկ մտօք նոր խմբագրութիւն է. վասն զի ոչ այլ ինչ է՝ բայց համառօտ քաղուածոյ.ք մը Կալիսթենեայ հայ թարգմանութեան։ Այս պատճառաւ բնական է որ ոչ միայն ընդարձակաց բոլոր նամակները, երկար նկարագրութիւնները, խօսակցութիւնքն ու ճառերը կամ դուրս թողուած կամ քանի մը տողով բացատրուած են, այլ եւ բուն վէպին պատմական մասերը ծայրաքաղ եղած ծայրէ ծայր։ Համառօտողը շատ հանճարեղ գործք մը չէ արտադրած։ Շատ տեղ նաեւ կարեւոր կտորներ դուրս թողլով՝ պատմութեան թելն անյարիր եւ անկապակցեալ կը մնայ. երբեմն մինչեւ անգամ "ասէ այսպէս" եւ

---

Աղեքսանդրէ." (տպ. "զտուն տեսանելով։") Այսպէս ուրեմն շատ տեղ կ'ուղղէ այս օրինակը ցայժմ ծանօթ բոլոր օրինակները։

[1] Ըստ Թղ. 22b գրած է այս մասն ՌՁԷ (= 1638) տարւոյն "երզնկացի ... Ամիրասի ... ի դուռն սուրբ Աստուածածնին ի քաղաքն Պոնտոս որ է Տրապիզոն։" Թղ. 34b յիշատակարանը ՌՂԴ (= 1645) տարին կը կրէ, մինչ Թղ. 139a ընդարձակ յիշատակարանը, ուր գրչին բոլոր ցեղաբանութիւնը յիշուած է, ՌՃԶ (= 1657) թուականը կը կրէ։

[2] Թ. 68. Թղ. 249b, բ. "Տէր Յիսուս Քրիստոս ... պաղատիմք ըստ սուրբ եղբօրս Կէչառացի. աստուածաբան վարդապետի բարեխօսութեամբ եւ ամենայն սրբոց աջողեցէ զգործս ի բարի ... ոտից կոխան եզընկացի Ամիրասի։ ..."

գրչէն, եւ այն՝ երբեմն մեծ պատառիկներ[1]. կան նաեւ համառօտեալ հատուածներ[2], ինչպէս գտանք նաեւ 90Դ ձեռագրի մէջ։ Ոտանաւորք “աւելի հնագոյն կը թուին, եւ նուազ ռամկաբանք եւ առաւելապէս պատշաճեալք նիւթոյ նկարուց.” բայց ոտանաւորաց քով հեղինակաց անուանք չկան նշանակուած։ Վերջապէս թէպէտ նաեւ այս ձեռագիրը զերծ չէ վրիպակներէ, սակայն շատ տեղ նաեւ Թ. 424էն աւելի “ընտիր եւ նախադասելի” տարբերութիւններ ունի, ինչպէս կը վկայէ Գ. Երապ. տեղեկագիրը։ Գոնէ սոյն կարծիքը կը հաստատեն իբրեւ ճաշակ նշանակուած քանի մը ընթերցումներ այն կտորին՝ զոր վերը դրինք համեմատելով Կալիսթենէսն եւ Արծրունին[3]։ — Այսչափ ընդարձակ օրինակաց վրայ. այժմ անցնինք համառօտներուն։

Համառօտաց ներկայացուցիչ կրնանք համարիլ մեր Մատ. Թ. 68 ձեռագիրը։ Որպէս զի այս “համառօտ” կոչուած խմբին վրայ քիչ շատ գաղափար կազմենք՝ պէտք ենք քանի մը տեղեկութիւն տալ սոյն ձեռագրին վրայ։ Ձեռագիրս 1638—

[1] Պակաս են՝ Պատմ. Աղէքս. Ա, էջ 2, 6 “երեննայ” բառէն մինչեւ Գ, էջ 3, 14 “արտաքս”։ — Է, էջ 5, 8 “նա պատասխանի” մինչեւ ԺԳ, էջ 7, 31 “տայր նմա։” — ՃԿԵ, էջ 92, 27 “Դարեհ” մինչեւ ՃԿԶ, էջ 93, 15 “այսպէս”։ — ՃՁԵ, էջ 103, 26 “բայց գիտեմ” մինչեւ ՃՁԶ էջ 104, 15 “կազմեցաւ”։ — Բաց աստի պակաս են նաեւ երեք սովորական թերթի մասերը՝ Պատմ. Աղէքս. էջ 60--63, 108 եւ 184—185, որոնց վրայ խօսեցանք։

[2] Այսպէս՝ Պատմ. Աղէքս. ՂԵ, էջ 46, 9 “իւրաքանչիւր” մինչեւ ՂԷ, էջ 47, 3 “սորա որդի իմ.” (ուրեմն = 57Ա։) — ՃԻԶ, էջ 64, 1 “Աղէքսանդրոս” մինչեւ՝ անդ, էջ 64, 18 “եւ արտաքոյ” կտորին տեղ՝ գրուած է պարզապէս. “Եւ ցոյց ամենայն ազգաց եւ սարեաց զինքն ի կռիւ եւ ասէ.” (= 90Դ։) — Սպիտակ թողուած եւ չէ օրինակուած՝ Պատմ. Աղէքս. ՃԾ, էջ 85, 27 — անդ, 86, 2։

[3] Համմտ. վերը՝ էջ 35—38 կտորը։ Ձեռագրիս ընթերցուածքն են. “Մի ժողովեր, մի հատաներ.” (տպ. “Մի ժողովել” եւն.) “Ընդ աղաւտ ––դ.” (տպ. չունի “աւդ”.) “Զամենայն բանակսն ի ներքս եդեալ (տպ. “ի ներքոյ.”) “Զինուորքն ի մահ եւ ի վտանգ տուեալ զանձինս՝ ի լոյզս անցանել.” (տպ. “ի մահ-վտանգի . . . լոյս անցուցանել.”) “Զի զվայրս կոխես սատուածոց զոտնն տեսանել, ով_

1657ին Տրապիզոն քաղաքը Ամիրասի երզնկացիէն՝ թղթեայ յոռի նոտր գրով գրուած ձեռագիր մըն է. (Թուղթք՝ 315. մեծութիւն՝ 19·5×13·5 սանտ. գրութիւն շատ տեղ երկսիւն՝ 16×10·5 սանտ. տողք՝ 24։) Ձեռագիրս բուն ժողովածոյ մըն է այլեւայլ կարգի գրութեանց. եւ միայն Թղ. 191a—250b գրուած է “Պատմութիւն մեծի աշխարհակալին Աղէկսանդրայի մակեդոնացւոյն։„ Ինչպէս յիշատակարանք[1] կը ցուցընեն եւ գրութեան տառերու պէսպիսութիւնը, այլեւայլ ժամանակ գրուած են ձեռագրիս մասունք։ Աղեքսանդրի պատմութեան մասին յիշատակարանը[2] թուական չունենալով՝ այս մասին ճիշդ տարին դժուար է որոշել։

Այս համառօտ խումբը բուն անձուկ մտօք նոր խմբագրութիւն է. վասն զի ոչ այլ ինչ է՝ բայց համառօտ քաղուածոյք մը Կալիսթենեայ հայ թարգմանութեան։ Այս պատճառաւ ընական է որ ոչ միայն ընդարձակաց բոլոր նամակները, երկար նկարագրութիւնները, խօսակցութիւնքն ու ճառերը կամ դուրս թողուած կամ քանի մը տողով բացատրուած են, այլ եւ բուն վէպին պատմական մասերը ծայրաքաղ եղած ծայրէ ծայր։ Համառօտողը շատ հանճարեղ գործք մը չէ արտադրած։ Շատ տեղ նաեւ կարեւոր կտորներ դուրս թողլով՝ պատմութեան թելն անյարիր եւ անկապակցեալ կը մնայ. երբեմն մինչեւ անգամ “սաէ այսպէս„ եւ

---

Աղեքսանդրէ.„ (տպ. “զտուն տեսանելով։„) Այսպէս ուրեմն շատ տեղ կ'ուղղէ այս օրինակը ցայժմ ծանօթ բոլոր օրինակները։

[1] Ըստ Թղ. 22b գրած է այս մասն ՌՁԷ (= 1638) տարւոյն “երզնկացի ... Ամիրասի ... ի դուռն սուրբ Աստուածածնին ի քաղաքն Պոնտոս որ է Տրապիզոն։„ Թղ. 34b յիշատակարանը ՌՂԴ (= 1645) տարին կը կրէ, մինչ Թղ. 139a ընդարձակ յիշատակարանը, ուր գրչին բոլոր ցեղաբանութիւնը յիշուած է, ՌՃԶ (= 1657) թուականը կը կրէ։

[2] Թ. 68. Թղ. 249b, բ. “Տէր Յիսուս Քրիստոս ... պաղատիմք ըստ սուրբ եղբօրս Կէչառացի. աստուածաբան վարդապետի բարեխօսութեամբ եւ ամենայն սրբոց աջողեացէ զգործս ի բարի ... ոտից կոխան եզընկացի Ամիրասի։ ...„

նման բացատրութիւնք օրինակուած են՝ առանց յաջորդ ասոր համապատասխանող խօսքն օրինակելու։ Այսպիսի անիմաստ տեղեր դժբախտութեամբ շատ յաճախ են գրութեանս մէջ։ Ասոր վրայ աւելցնելու ենք գրչին բազմաթիւ սխալները[1], որոնցմէ ոմանք շատ հին են անշուշտ, (— ինչպէս կը ցուցնէ ընդարձակաց վրիպակաց նաեւ համառօտոյ մէջ գտնուիլը, —) այլեւայլ նորանշան ընթերցմունք եւ աղաւաղմունք[2], այն ատեն կրնանք գաղափար մ'ունենալ համառօտ օրինակաց վիճակին։ Համառօտաց լեզուն թէեւ ընդարձակ օրինակներէն քաղուած ըլլալով՝ շատ տեղ պահած է անոր սեպհական լեզուն ու ոճերը, բայց արդէն ռամկական լեզուին ազդեցութիւնը շատ զգալի է գրեթէ ամէն քայլափոխին[3]։

Տարակոյս չի կրնար ըլլալ՝ որ ուրիշ բնագրէ մը նոր թարգմանուած չեն համառօտք, այլ հայ թարգմանութեան ընդարձակ օրինակներէն ծայրաքաղ եղած։ Բարեբախտութեամբ այնպէս որոշ կը տեսնուի այս՝ ամէն տողին մէջ իսկ, որ մասնաւոր ցուցմանց պէտք չունինք[4] ապացուցանելու, զոր այ-

---

[1] Զոր օրինակ՝ Թղ. 196a, բ "Բաղիմէոս„ (Պտղոմէոս.) 207a, բ, 4 "Թերեւս եւ ի տես գալ„ (Թերսիդէս գոլ.) 212a, ա, 15 "Թափուր լերին„ (Թափուր լինին.) 228a, բ, 11 "բարակամանք„ (Պրաքմանք.) 233a, բ, 6 "մեծ բապոպոզք„ (մեղրապոպք.) եւն եւն։

[2] Այսպէս 200a, բ, 2 "խարճատու„ (հարկատու) եւ այլուր, ինչպէս նաեւ "խարճ„ (218b, բ, 11։) Թղ. 200b, ա, 18 "փոսայ տանել„ ("փոս հատանել.„ ՉԲ.) 203a, ա, 22 "զերիւս կիւղս որ զաւրօվայ կիւղ ասեն„ (Պտմ. Աղեքս. ՃԲ "զերիս գեօղսն զորաւիգն եղեալ նմա.„) 204b, բ "Բիւրոսի„ (Տաւրոսի.) 207a, ա, 4 "զոր խլեաց Հոմերիտոս„ (Պտմ. Աղեքս. 60, 28 "որպէս գրեաց Հոմերոս.„) 216b, բ, 8 "մաճլիս." 225b, ա, 12 "փլաւք„ եւ նմաններ։

[3] Օրինակի աղագաւ՝ 200b, բ, 8 "ի հօդ.„ 202b, բ, 11 "դիմանալ.„ 205b, ա, 6 "վախիցէք.„ 203b, բ, 1 "դուո̃նց իշխեցեր ընդ ծով անցանիլ.„ 209b, ա, "ձգեաց յիշխանութենէ.„ 215b, ա, 6 "կերպն նմանի իւրեն.„ 220a, բ, 1 "արտասուէր հանց որ յարտասուս շարժէր„ եւն եւն։

[4] Պէտք ենք յիշել սա դէպքը։ Ըստ Պտմ. Աղեքս. (ՀԳ, 34, 30) Աղեքսանդր պատրաստեց նաւս "լիբեռնեայս։„

ըսպէս պէտք էինք զանց չընել. վասն զի կարեւոր կէտ մը է այս՝ ծանրակշիռ խնդրոյ մը համար, ինչպէս կը տեսնենք։

Բնագրին նկատմամբ Թ. 68 սակաւ բացառութեամբ միաբան է ՀՀ օրինակաց հետ, այսինքն՝ Վենետիկոյ համառօտ օրինակաց ընթերցուածոց, զոր կը յիշէ հրատարակիչը, նաեւ հատածոց տեղափոխութեան եւ այլ փոփոխութեանց մէջ[1]։ Համառօտաց աւելի ունեցած կտորներուն վրայ քիչ մ'ետքը կը խօսինք. հոս նախ պէտք ենք տեսնել ուրիշ համառօտ ձեռագիրները։

Այս համառօտաց խմբէն են նաեւ Վենետիկոյ Թ. 893, 1107 եւ 1489։ Առաջինը թղթեայ նոտրագիր գրչութիւն մըն է. (թուղթք՝ 128. մեծութիւն՝ 13·5×9 սանտ. գրութիւն միասիւն՝ 10·5×6 սանտ. տողք՝ 20։) Ձեռագիրս՝ որ 1665ին գրուած է ի “Կաւզլով„ Մուզայ որդի Սարգսի անուն անձէն, ինչպէս կը պատմէ յիշատակարանը[2], Վենետիկոյ մատենադարանին ընծայ եկած է Սանահնէն։ Երկրորդն անթուական եւ անյիշատակարան[3] թըղ-

---

Հոս յոյնը թէեւ աղաւաղ է՝ բայց յայտնի է որ հոս Հայը յունին λιβυρνὶς բառը լով օրինակեր է։ Համառօտք յոյն բառս “լի„ եւ “բեռ„ ստուգաբանելով “բեռնատար„ կը գրեն հոս։ Թղ. 218b, բ, 5 “պատեալ ոսկով եւ աւազով„ կ'ըսուի Կիւրոսի գերեզմանին նկատմամբ։ Այս նորանշան խօսքը ծնած է այս նախադասութենէն. (Պատմ. Աղեքս. ՃՂԲ. 108, 11) “ի վերնում յարկին կայր յոսկւոյ աւազ„ (ղոխոս. պիտի ըլլայ “աւազան„, եւն։) Ուրեմն այս պակասը չունին նաեւ ՀՀ։ Բաց աստի համառօտութեամբ դուրս մնացած են օրինակի աղագաւ Պատմ. Աղեքս. ԼԹ—ԽԶ, ՀԱ—ՀԲ, ՂԳ—ՂԵ, ՃԺԳ—ՃԻԹ եւն հատածները, կամ քանի մը տողով միայն գրուած։

[1] Հմմտ մանաւանդ՝ Պատմ. Աղեքս. 61, Ծ. 1. 65, Ծ. 3. 96, Ծ. 1 եւն։ Տեղափոխութեան համար ի մասնաւորի՝ Պատմ. Աղեքս. 183, Ծ. 2. 65, Ծ. 3 եւն եւն։

[2] “Գրեցաւ մակեդոնացի Աղեքսանդրու պատմութիւնն. թվին ՌՃԺԴ (1665). յունիս ամսոյ. ձեռամբ անարժան Մուզայի, որդի Սարգսին ի քաղաքն Կաւզլով սուրբ Աստուածածին ...։„

[3] Կողին վրայ գրուած է. “ի վայելումն տիրացօ Պետրոսին է։„

թեայ գեղեցիկ բոլորգիր տառերով եւ ընտիր զարդերով գրուած է. (Թուղթք՝ 172. Մեծութիւն՝ 14·5×10 սանդ. գրութիւն միասին՝ 10×6 սանդ. տողք՝ 18։) Այս ձեռագրին թէ՛ դրիւք եւ թէ՛ գրութեամբ շատ նման է երրորդը՝ Թ. 1489, որ գեղեցիկ նօտրագիր թղթեայ գրչութիւն մըն է. (Թուղթք 124. Մեծութիւն՝ 16×10·5 սանդ. գրութիւն միասին՝ 10×6, 5 սանդ. տողք՝ 19։) Ըստ յիշատակարանին[1] Պետրոս անուն գրիչը լմնցուցեր է գրութիւնը 1673ին ի Պաղչասարա գիւղաքաղաք։

Համառօտաց դասէն է Պասմաճեան Ա. օրինակը, զոր շատ անգամ յիշեցինք։ Ըստ տեղեկութեան տիրոջ՝ "ձեռագիրն է նոր նօտրագիր, անթուական եւ անյիշատակարան, թերեւս դարուս սկիզբներն ընդօրինակուած. կը բաղկանայ 123 պարզ թղթեայ էջերէ. մեծութիւնն է՝ 23, 5×17 սանդ. գրութիւն միասին՝ 19×13 սանդ. 19—38 թիւերը պակաս են, որոնց տեղը ճերմակ թուղթ անցուած է։" Նկար, զարդագիր, խորան եւ այլ նմաններ չունի։ Վերնագիրը գրչէն յաւելուածներով ընդարձակուած է[2]. իսկ վերջաւորութիւնն համեմատ Համառօտներուն՝ այսպէս. "Անկաւ լուծ

---

[1] "… ի թվականիս Հայոց ազգի ՌՃԻԲ (= 1673). ի օգոստոս ամսոյ երեսունի. օրն ուրբաթ յաւարտ արի։ ի գիւղաքաղաքիս Պաղչասարայի. ի դուռն սուրբ Լուսաւորչին. ձեռամբ անարժան դպրի, որ եւ անուամբ Պետրոս կոչի … աստուած վայելել տացի. եղբօրս իմոյ եւ մըսըրի (տյոպէս) …։"

[2] "Կարգ եւ Պատմութիւն Մեծի Աշխարհակալի Աղեքսանդրի թագաւորին։ Կամաւ եւ կարողութեամբն Աստուծոյ ըսկսայ գրել զվարս եւ զպատմութիւնս եւ գործս աշխարհակալին Աղեքսանդրի մակեդոնացոց արքային. եւ թէ որպէս տիրեաց. զերորդ մասն աշխարհի. եւ թէ որչափ պատերազմունս արար ընդ ամենայն սեռից. զոր ըստեղծ. տէր Աստուած ի վերայ աշխարհի. եւ եղեւ ճոխ թագաւոր։ Եւ թիւն էր ի ստեղծմանէ աշխարհիս. մինչեւ յԱղեքսանդր. ՆՌԲՃ. եւ ի այնմ ժամանակի թագաւոր էր ի Հնդիկս յարեւելս. Պովրոս. իսկ ի հարաւոյ կողմըն ի վերայ Տաճկաց. եւ Պարսից թագաւոր էր մեծն Դարեհ. իսկ յարեւմուտս ի Հռոմ՝ թագաւորէր Դարսենիոս։"

ծառայութեան մեծին Աղեքսանդրի. ի պարանոցէ նորա. եւ թագաւորեաց Եգիպտոս Պտղոմէոս եւ ի Մակեդոնիայ Արէդիոս Փիլիպպոսի որդին: Այս է կատարած ծննդեանն եւ կենաց, գործոց եւ վախճան մեծին Աղեքսանդրի աշխարհակալին:„ Թ. 68 քիչ մը տարբեր ունի այս վերջաբանութիւնը:

Գերմանական Արեւելագիտական Ընկերութեան Ուսումնաթերթին մէջ[1] Ն. Քարամեանց “Աղուանից տառերու„ վրայ հատած մ'ունի գրած, որ գտնուած են ձեռագրի մը մէջ, որ միանգամայն Կալիսթենեայ գործքը կը բովանդակէ: Ըստ տեղեկութեան Ն. Քարամեանցի՝ Միւնխէնի արքունի մատենադարանապետը Վ. Մայէր (W. Mayer) պատմած է՝ որ փոքրասիացի յոյն նկարիչ մը՝ Սիմոն Սաբիդէս Մումեագմազ (Simeon Sabbides Moumyakmaz) Սեբաստիայէն՝ հայերէն ձեռագիր մ'առաջարկած է նոյն մատենադարանին գնելու, որ եւ Վարք Աղեքսանդրի է եղեր: Քարամեանց՝ տեսնելով նոյնը՝ կը նկարագրէ այսպէս. Ձեռագիրս այլեւայլ պատմութիւններ կը բովանդակէ, որոնց առաջինն է Վարք Աղեքսանդրի գեղեցիկ գրուած, գրեթէ ամէն էջ նկարով զարդարուած, եւ նկարաց շուրջն ուրիշ ձեռքէ ոտանաւորներ գրուած: Գրուած է Յովասափ սարկաւագէն ի Սեբաստիա՝ ՋՁԴ (= 1535) թուին, եւ Կալիսթենեայ ծանօթ հայ ձեռագրաց հնագոյններէն է:

Այս ձեռագիրն այժմ Պեռլինի արքունի գրատունն է, ինչպէս կը ծանուցանէ Մեծ. Կանայեանց “Հանդէսի„ խմբագրութեան ուղղած թղթով, որուն մէջ ինքնակամ շատ մ'այլ տեղեկութիւններ կու տայ այս ձեռագրին նկատմամբ: Ըստ այսմ՝ նոր շղագիր է ձեռագիրս. (մեծութիւն՝ 21×15 սանդ. տող՝ 23—27.) արդեամբք Սեբաս-

[1] ZDMG, 1886, Heft II, pp. **315—319**. մանաւանդ՝ **317—318**:

տիա գրուած նոյն թուին[1]։ Ձեռագիրս համառօտներէն է, ինչպէս կը տեսնուի նաեւ Կանայեանցի օրինակած քանի մը կտորներէն, որոնց միայն վրայ քիչ մ՚եւս կը խօսինք։ Երկու տեսակ գիր կը նկատուին որ շատ տարբեր են իրարմէ։ “Միջից յաճախ թերթեր ինկած, կտրուած, ճղճղած են։„ Հաստրակ թղթեայ այս գրչութիւնը “աղաւաղուած է շատ տեղ. արտագրողն տգէտ մարդ է երեւում.„ եւ “տառասխալներ, բառասխալներ, բոլորովին անկանոն եւ անիմաստ կէտադրութիւններ, անթիւ աշխարհաբար բառեր„ շատ յաճախութեամբ կը գտնուին։ Բաց ի բուն պատմութենէն ունի ձեռագիրս նաեւ Խաչատրոյ ստանաւորներն ու բարանութիւնքն, վերջինս՝ անանուն, եւ նոյն կարգաւ՝ որով տպուած են հրատարակութեան մէջ։ Պակաս է միայն չորրորդ բարանութիւնը (էջ 193—195)։ Ունի նաեւ Կեչառուեցւոյ “Փառք եւ գոհութիւն„ յիշատակարանը. իսկ “Եւ արդ„ յիշատակարանէն լոկ այսչափ. “Ով ընթերցողք յիշման արժանի ա-րարէք զաշխատող սորա որ +երՆողցրէՆ արարի անխոտորնակ ճանապարհ, որ ի յընթեռնուլն իմասցին պովետիկոսք եւ քարտուղարք եւ ապա գիտասցեն զաշխատանքս զայսոսիկ։„ Ասոր կը յաջորդէ Յովասափու յիշատակարանը[2]։

Ձեռագրոյս համառօտ նկարագրութիւնը դեռ չփակած՝ քանի մը կարեւոր դիտողութիւններ

---

[1] Յիշատակարանն է ըստ Կանայեանցի օրինակութեան՝ այսպէս. “... Եւ զգրող այսմ գրի ‖ ես Յովասափ մեղաւք ի լի ‖ որ ես ի յիմ ժամանակի ‖ չգործեցի մաս մի բարի։ ‖ Այլ ծուլ կենօք յաստնւորի ‖ կեցայ տմարթ ես յաշխարհի ‖ .... Ջ. Թւականիս ՋԴ աւելորդի. ‖ գրեալ եղեւ բան եւ գործ թագաւորին Աղեքսանդրի։ ‖ Սեբաստիայ այս քաղաքի ‖ առ ստն սուրբ Լուսաւորչի. ‖ փառք տանք աւրհնենք„ եւն։

[2] Ըստ տեղեկութեան Կանայեանցի՝ ինքն ունեցած է իր առջեւ ուրիշ ձեռագիր մ՚ալ Վարուց Աղեքսանդրի, որուն վրայ անշուշտ յետոյ ընդարձակ տեղեկութիւն պիտի տայ իր երկասիրութեան մէջ։

պէտք ենք ընել։ Ըսինք որ համառօտք եւ երկբայականք ընդարձակներէն աւելի հին նախագաղափար մ'ունեցած են։ Երկբայականաց համար աննշանակ չէ թերեւս հետեւեալ դիտողութիւնը։ Աղեքսանդրի կառամարտութիւնը նկարագրելու ատեն երկբայականք յաւելուած մ'ունին, ինչպէս տեսանք, ուր կը նկարագրուին Յունաց ողոմպիական խաղերը[1]։ Այս կտորիս սկիզբն է այսպէս. "Եւ էր Պիզան քաղաք՝ յորում կայր մեծ թէատրոն, որ այժմ յունարէն Պ——փ——ոմ կոչի, որ է ժողովատեղ։" Որդ կ'երեւայ թէ Մատթէոս Ուռհայեցի[2] տեսած է "երկբայական" օրինակ մը Վարուց Աղեքսանդրի. վասն զի Յունաց Ալէքս արքային համար կը գրէ՝ թէ "արար թագաւորն (Ալէքսն) նմա (Պետեւինի) մեծ ընդունելութիւն, ... եւ պ——փ——ոմ մեծածախք արար առաջի նորա։" Այս "պաւտռոմն" բառը յունարէն ἱπποδρομία (ձիարշաւ) բառէն աղաւաղած կ'ըսէ Փր. Միւլլեր[3]։ Աւելի լաւ է անշուշտ ἱππο-δρόμιον (կրկէս) ձեւէն ըսել, զոր "երկբայական" օրինակը "ժողովատեղ" կը մեկնէ։ Այս ալ երկբայականաց նախատիպ օրինակին բաւական հնութիւն մը կու տայ։

Դոյզն չէ որ ՄՀԳ. հատածին մէջ, ուր Աղեքսանդրի ծառի ճիւղերուն հանած փուշով Պարսիկները վախցնելու դէպքը կը պատմուի, համառօտք կը յաւելուն՝ թէ գիշերն ալ այծերու եղջիւրներուն վրայ ջահ կապել տուաւ[4] եւն։ Ընդարձակք չունին այս դէպքը. չունին նաեւ AV որ ամենէն աւելի նման են հայոյն։ Բայց ճիշդ հոս ունին նոյնը

---

[1] Պատմ. Աղեքս. էջ 23. ծ. 6։

[2] Մատթէոս Ուռհայեցի, Պատմութիւն. տպ. Երուսաղէմ, 1869, էջ 390։

[3] Հմմտ. Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, V. Band, Heft I. Wien, 1891, p. 68. Այս տեղւոյս հայ թարգմանութիւնը՝ Հանդէս Ամս. 1891, թ. 6, էջ 181։

[4] Պատմ. Աղեքս. էջ 96, ծ. 1։

BC ձեռագիրք. եւ որովհետեւ համառօտք հայ բնագրէ համառօտուած են, ուրեմն կրնայ գուցէ ըսուիլ՝ որ կար հոս նախնաբար նաեւ ընդարձակաց մէջ, եւ յետոյ դուրս ինկեր է։ Ասոր նպաստաւոր կ'երեւայ նաեւ Փարպեցւոյն մէկ խօսքը, զոր վերը դրինք[1]։ Մեծ առարկութիւն չէ այս տեղւոյ համար AV բնագրաց չունենալը. վասն զի նոյն իսկ ընդարձակաց սա խօսքը “Ելաներ փոշին մինչեւ ի լեառն յՈղիմպոս„ չէ նման A բնագրին, (— որ է. ὁ χονιορτὸς μέχρι νεφῶν ἔφθασεν, այսինքն՝ “ելաներ փոշին մինչեւ ցամպս.„ —) այլ BC բնագրաց, որ կ'ըսեն համեմատ հայոյն. Καὶ ἀνήρχετο ὁ χονιορτὸς ἕως Ὀλύμπου. (ամբառնայր փոշին մինչեւ ցՈղիմպոս։) Հոս ուրեմն հայն շատ հին ատենէ ի վեր թերի մնացած է։ Պակաս է, ինչպէս ըսինք, ընդարձակաց մէջ նաեւ ՄՁԳ հատուածը.

Նման խորհրդածութեան նիւթ կու տայ ՄՀԴ հատուածը, որուն ծայրը համառօտք կը կցեն նամակ մ'Աղեքսանդրու առ մայրն[2]։ Նամակիս մէջ կ'ըսուի՝ թէ վերջին գիրն է այն՝ մահամերձ որդւոյն, եւ կը խնդրուի որ “ժողովէ կանայս երգեցիկս, ողբս առեալ ապաշաւեա զվաղամեռ Աղեքսանդրէ որդին քո։„ Ընդարձակք չունին այս նամակը. չունին նաեւ ABV. բայց ճիշդ հոս ունի L նման նամակ մը[3]։ Նամակիս մէջ կը գրէ Աղեքսանդր՝ որ մայրը մեծահաց խնջոյք մը կազմէ եւ ամէն մարդ հրաւիրէ, որոնք սուգ մը չունին։ Ըրաւ մայրը նոյն պատուէրը, բայց ոչ ոք եկաւ սեղանի. վասն զի մէկը չկար՝ որ Աղեքսանդրի մահուան վրայ սգոյ մէջ չ'ըլլար. եւ ասով մխիթարուեցաւ մայրը։ — Ինչպէս կը տեսնուի՝ քիչ մ'այլայլ է նամակիս նիւթը, եւ որովհետեւ ուրիշ կողմանէ ալ կռուան մը չունինք՝

---

[1] Տես վերը՝ էջ 81—82։
[2] Պատմ. Աղեքս. էջ 181, ծ. 2։
[3] Zacher Pseudo-Call. էջ 174։

կը վարանինք պնդելու որ նաեւ հոս ընդարձակք ունէին նախնաբար նամակ մը։

Աւելի մեծ վստահութեամբ ուրիշ աղբիւրէ կը գտնենք համառօտաց երկար մէկ քանի ուրիշ հատուածները։ Համառօտք Վարուց Աղեքսանդրի վերջը[1] Աղեքսանդրի նուաճած ազգերը յիշելէն ետքը՝ կը յաւելուն երկար կտոր մը "երկաթի դրան„ մէջ հիւսիսական ազգերը փակելուն վրայ։ Այս դէպքը չունին ընդարձակք եւ A, եւ այն՝ իրաւամբք։ Նոյն իսկ համառօտայ մէջ այս պատմութեան բռնած դիրքն ու միջի խօսքերը հակառակ վկայութիւն կու տան։ Բայց որովհետեւ ունին նոյնը BC եւ ասորական վէպը, եւ շատ կը յիշեն հայ պատմագիրք այս կամ ասոր նման վէպ մը, եւ միւս կողմանէ անտիպ մնացած է սոյն կտորը, կը դնենք հոս ամբողջը ըստ Թ. 68 ձեռագրի[2], նշանակելով Յովասափու գրած օրինակին տարբերութիւնքը, զոր կը քաղենք Կանոյեանցի ուղարկած այս կտորիս ընդօրինակութենէն։

1. "Ընդ բազում թագաւորս պատերազմեալ՝ եկաց ամս ԼԳ ի հնկէտասանամեայ սկսեալ ի պատերազմի մինչեւ ի ԻԹ ամն. եւ զայլն եկաց ի խաղաղութեան[3]։ Սա հնազանդեցոյց[4] ի խուժադուժ ազգացն ԻԲ. եւ ի Հելլենացւոցն ԺԲ[5]. սպան զԴարեհ զՄարաց եւ զՊարսից թագաւորն. եւ միաւորեաց զերկիր՝ մինչեւ ի ծովն յԱրեգ քաղաք[6]։ Եւ տեսեալ ազգս[7] պիղծս եւ դժուարատեսակս յորդւոցն Քետուրայ[8], որ ուտէին զտղայսն եւ զգազանս եւ զմկունս[9] եւ զմարմին մարդոյ. զի ոչ թաղէին զմեռեալն այլ ուտէին.

---

[1] Պատմ. Աղեքս. ՄՁԵ, 186, 2 տողէն ետքը։

[2] Թ. 68, Թղ. 244b, ա—245a, բ եւ 245b, ա։

[3] Կ (= Կանոյեանցի օրինակ) "մինչեւ ԻԹ ամ եւ զայլ եկաց ի խաղաղութիւն։„

[4] Թ. 68 "հնազանդեցուց՝„

[5] Կ "ԲԺանս։ Եսպան։„

[6] Կ "մինչեւ ի ծով յԱրեգ քաղաքի։„

[7] Թ. 68 ". . յազգս պիղծ։„

[8] Կ "Քետաա։„

[9] Լոկ Թ. 68 ունի "եւ զմկունս։„

եւ զամենայն պիղծ եւ չարագործութիւնս[1]. ժողովեաց զնոսա յամենայն երկրէ եւ վարեաց մինչեւ ի հիւսիսոյ ծագն. զի ոչ գոյ մուտ յարեւելից մինչեւ ի մուտս արեւու. վասն բ. լերանցն[2] որ յեցեալ է ի միմեանս. [illegible] ամրացոյց զմուտն. եւ կամ Աստուծոյ եղեւ արգելուլ զնոսա անդ. մինչեւ կատարեսցի մարգարէութիւնն[3] Եզեկիելի, որ ասէ թէ Յաւուրս կատարածի աշխարհի ելցեն Գոգք եւ Մագոգք[4] յերկիրն Իսրայէլի: Եւ են ազգ ԻԲ թագաւորաւք[5] իւրեանց՝ ի կղզի անդ, որոց անուանքն են այս[6]. Գոգ, Մագոգ, Անիկք, Գիգք, Քեներիզք, Քոփարք, Փոտացիք, Յունիսացիք, Լողինացիք, Խքելեզփք, Սարմարազգ, Թերլացիք, Բահոնացիք, Արմատանք, Համազարդք, Դարտիարք, Մակարդիք, Ազիկ ազանց, Քոսողինք, որ են Շանագլուխք, Աթարբիացիք, Ազտոբիկ[7]: Յելանել նոցա սասանի երկիր մեծաւ, եւ մարդիկ փախիցեն ի լերինս եւ ի ծերպս. եւ ոչ ոք իցէ անկանելոց ապրիլ ի ձեռաց նոցա.[8] զի են մարդակերք, եւ զարիւն գազանաց ըմպեն շանց եւ ձիոց: Յետ եօթնեկի միոյ իցէ հասանին յԻրուպէ.[9] եւ առաքեսցէ Տէր զզաւրավարն Միքայէլ եւ սատակեսցէ զնոսա. եւ ի սպառ ջնջեսցէ զնոսա յերկրէ:„

---

[1] Թ. 68 "եւ ի չարայգործութիւնս:„

[2] Կ "վասն երկուց երանց:„

[3] Կ "անտ . . . մարգարէութիւն:„

[4] Կ "Գոգ եւ Մագոգ:„

[5] Թ. 68 "թագաւորք:„

[6] Թ. 68 "այսոքիկ:„

[7] Այս անուանք են ըստ Թ. 68: Կ քիչ մ՚այլազգ է. "...Փոտիացիք Ունիւացիք ... Եքեղեզք, Սարմարասք, Թերլացիք, Բակոնացիք ... Համայզարդք ... Նմակարդիք. Ազիկ անզանք ... Անթարբիացիք, Ազտոբիք:„ BC լոկ 15 անուն կը յիշեն, որ են. Γὼθ, Μαγὼθ, ᾿Ανουγοὶ, ᾿Εγεῖς, ᾿Εξενὰχ, Διφὰρ, Φοτιναῖοι, Φαριζαῖοι, Ζαρμαντιανοὶ, Χαλόνιοι, ᾿Αγριμάρδοι, ᾿Ανούφαγοι, Θαρβαῖοι, ῎Αλανες, Φισολονικαῖοι, Σαλτάριοι. (Գոթ, Մագոթ, Անուգք, Եգիք, Եքսենաք, Դիփարք, Փարիսացիք, Զարմանտիացիք, Քաղոնիք, Ագրիմարդք, Անուփագք, Թարբացիք, Ալանք, Փիսողոնիկացիք, Սաղտարիք:)„ Այս վէպիս մեկնութիւնը տես Zacher, 186:

[8] Կ "ոչ ոք յանկանելոցն ապրի:„

[9] Կ "հասանին Երուպէ:„

2. “Այս Աղեքսանդրոս հասեալ յԵգիպտոս՝ ետես զգերեզմանն Երեմիայ մարգարէին որ պատուէին[2] մեծապէս եւ թէ աղաւթիւք սորայ կոկորդիլոսն եւ քարբն եւ Նէփոտն[3] սատակեցան ի քաղաքէս[4]։ Եհան զնայ եւ տարաւ զնշխարս նորա յԱղեքսանդրիայ[5] փառաւորապէս. եւ անդ սատակեցան, որ անդ քարբքն[6] էին մնասակարք եւ կոկորդիլոսք. եւ մինչեւ ցայսօր առնուն հող ի գերեզմանէն եւ զհարուածս[7] քարբին բժշկէ եւ զկոկորդիլոսն եւ զջրային գազանքն փախցընէ[8]։” (Կը յաջորդէ Կ—ֆ—յ մը։)

3. “[9]Ծնեալ Աղեքսանդրոսի ըստ Եգիպտացոց տումարի ամսոյ ի Ա. օրն յարեւելս, եւ կատարեցաւ ի Փարփուփիր ամսոյ ի Դ.[10] օր։ Եւ զօրն բազում խառնակութիւն եղեւ ի վախճանին մեծի աշխահակալին. եւ զաւրքն ցրուեցան իւրաքանչիւր տեղիս իբրեւ զոչխար՝ որ ոչ ունիցի հովիւ. եւ Մակեդոնացոց իշխանքն եւ մեծամեծքն ընդ միմեանս անկեալ՝ սրով սպառեցան։ Եւ յետ սակաւ ժամանակաց մայրն Աղեքսանդրի եւ կինն եւ քոյրն ի սիրելեացն կորեան։ Եւ հեռաւոր թշնամեաց խնդութիւն եղեւ ի մեռանելն նորա զի խորտակեցաւ եղջիւր հարկանողին։ Եւ թագաւորեաց Պտղոմէոս յԵգիպտոս եւ յԱրադիս[11]. Փիլիպպոսի որդին ի Մակեդոնիայ։ Այս է կատարումն ժամանակաց Աղեքսանդրի ծննդեանն, քաջութեանն եւ թագաւորութեանն, հանճարոյն եւ իմաստութեանն, որ վերին նախախնամութեամբն վճարեաց զվախճան հասարակաց։”

Ըստ BC բնագրաց Աղեքսանդր կը գտնէ երկու մեծ լեռ, որ “Ստինք Հիւսիսի” (Μαζοὺς τοῦ

---

1 Կ “հասեալ” կրկին անգամ, եւ “Եմիա”։
2 Թ. 68 “որ●պատուէին” չունի։
3 Թ. 68 “Նեփոտն”։
4 Թ. 68 “քաղաքէն, սեհ զնայ”։
5 Կ “զնշխարհս յԱղեկսանդրիա”, Թ. 68 “զնշխարս նորա յԱղեգսանդրիայ”։
6 Կ “քարբն էին մնասակար եւ կոկորդիլոսն”։
7 Կ “զհարուած”։
8 Թ. 68 “կոկորդիլոսն եւ ջրային...։
9 Թ. 68. Թղ. 245a, բ, 25—245b, ա, 25։
10 Այսչափն է = Պտմ. Աղեքս. 186, 13 եւն։
11 Այսպէս օրինակը։ Հմմտ. վերը Պասմաճեան Ա օրինակին ընթերցուածը, էջ 164—165։

Βορρᾶ) կը կոչուին։ Աղեքսանդրի աղօթելովը լեռները իրարու կը մօտենան մինչեւ ԺԲ կանգուն. եւ այս միջոցը կ'ամրացընէ Երկաթի դռներով, զոր "Դրունք Կասպից" (Πύλας Κασπίας) կ'անուանէ, լեռն ալ "Մասիս" (Μαζούς.) Այս դռան ետեւը կը փակուին ԻԲ պղծակեր ազգեր, իսկ այն դուռը կը պատէ անայրելի եւ անգծելի նիւթով մը։ Շատ ընդարձակ եւ այլեւայլ մանրամասնութեանց մէջ տարբեր է ասորական վէպ մ'Աղեքսանդրու այս գործոց վրայ[1]։ Գլխաւոր տարբերութիւնն է որ Հոնք են երկաթի դրանց ետեւ փակուողը, եւ թէ նոյն դրան վրայ արձանագրութիւն մը դրաւ Աղեքսանդր, եւ գրեց թէ 940 տարի ետքը (ուրեմն 628/29 Յ. Ք.) Հոնաց առջեւ պիտի բացուի դուռը, եւ ելլելով պիտի աւերեն աշխարհքներ։ Հայ պատմագրաց ոմանք այս վերջնոյն նման կ'աւանդեն այս զրոյցը գրելով՝ թէ Մսլիմ արաբ զօրավարն երբ Դարբանդու պարիսպը կը քակէր, գտաւ քար մը դրուած վրան. "Մարկիանոս ինքնակալ կայսր շինեաց զքաղաք եւ զաշտարակս զայս՝ բազում տաղանդօք յիւրոց գանձուց. եւ ի յետին ժամանակս որդիքն Իսմայէլի քանդեսցեն զսա եւ յիւրեանց գանձուց վերստին շինեսցեն[2]։" Ուրիշներն աւելի համեմատ կը պատմեն համառօտաց, բայց Վարդան բոլորովին համեմատ ասորականին[3]։

---

[1] Nöldeke, S. 27—31 եւն։

[2] Ղեւոնդ երէց, Պատմութիւն, տպ. Պետր. 1887, գլ. ժբ. էջ 41։ Համմտ. Ասողիկ, տպ. Պետր. 1885, Գիրք Բ. գլ. դ. էջ 127։ Կիրակոս Գանձակեցի, տպ. Վենետ. 1865, էջ 36։

[3] Համմտ. Հեթում Պատմիչ, տպ. Վենետ. 1842, գլ. թ. էջ 13։ Կաղանկատուացի (Ա. գլ. իէ. տպ. Մոսկ. 1860, էջ 70. բայց համմտ. էջ 105) Աղեքսանդր բերաւ, կ'ըսէ, կովկասի ազգերն Ձորայ դրան կողմերը։ — Իսկ Վարդան (Աշխարհագրութիւն) "Հոնաց դրան" վրայ կը գրէ. "Սկսեալ ի դրանէն Հոնաց որ է դուռն Ալանաց Երկաթի զոր եդեալ է Աղեքսանդր Մակեդոնացին. զի նա ժողովեաց յամենայն ազգաց զփանաքիս եւ զկարճահասակս, զխեղս, զգօղս եւ զմնասակարս. եւ տարեալ ի կողմն հիւսիսոյ՝ բնակեցոյց եւ

Երկրորդը, այսինքն՝ Դանիէլի գերեզման գտնելը, բոլորովին նորամուտ է, թէեւ նոյնն ունէր, ինչպէս տեսանք, նաեւ 57 Ա բոլորովին ուրիշ տեղ[1]: Ինքնին յայտնի է նոյնպէս երրորդ կտորին յետամուտ ըլլալը:

Ստոյգ է՝ որ օտար աղբիւրէ մըն է Յովհաննու կաթուղիկոսի պատմած զրոյցը թէ Ամասիա քաղաքն Աղեքսանդրի հրամանաւ շինուած ըլլայ[2]: Աւելի դժուար չէ նոյնն ըսել Ասողկայ մէկ աւանդութեան վրայ[3], որ Իբն-Խոսրով Աղեքսանդրի կը նմանցընէ այն գործքին պատճառաւ որ շանց վրայ "Նաւթ եւ Հուր" դնելով շամբապատ քաղաք մ'այրեց. վասն զի նաեւ Աղեքսանդր "Թռչնօքն զփայտակերտ ապարանսն ի վերայ բարձր դիտանոցի վիմին ելոյց:" Ուրիշ աղբիւրէ, եւ այն՝ բաւական հին թարգմանութիւն են "Բանք Խրատուց Նախնի Իմաստասիրաց" մէջ գտնուած Աղեքսանդրի վրայ քանի մը մանրավէպները[4]: Վերջապէս այսպիսի

---

պարսպեալ ամրացոյց, եւ եդ զդուռն երկաթի ի վերայ Մոգաց: Եւ գրեաց ի վերայ դրանն՝ թէ յորժամ ի յետին դարէն անցանի ՊԿԴ տարի՝ անկանի դուռն այն. եւ ելանեն ԻԴ թագաւորութիւնք եւ ապականեն զաշխարհս՝ Աճուճայ եւ Քաճուճայ ազգ կոչեցեալ, զոր Յովհաննէս աւետարանիչն Գոգ եւ Մագոգ կոչէ վասն անթիւ բազմութեանն:"
Վարդանայ պատմածն արաբական աղբիւր մը կ'ենթադրէ:

[1] 57Ա. էջ 25. (Պատմ. Աղեքս. ՋՋ հատածին մէջ:)

[2] Յովհ. կաթողիկոս, Պատմութիւն, տպ. Մոսկ. 1853, էջ 19. "Այս Միհրդատ երթայ ունի եւս եւ զԱմասիա, որ բազում ամօք յառաջ շինեալ էր յԱմասեայ եղբօրորդւոյ Նեքտանիպայ հրամանաւ Աղեքսանդրի, որդւոյ Նեքտանիպայ:"

[3] Ասողիկ, Գ. գլ. ժզ. էջ 191:

[4] Հմմտ. Սոփերք Հայկականք, Հտր. Ա. Վենետ. 1855: — Էջ 11. "Զաղեքսանդր յօժարեցուցանէին բարեկամքն ստանալ որդիս. եւ նա ասէ. Մի տագնապիք, քանզի թողում ձեզ յետամնաց զբանս եւ զիմաստութիւն եւ զարութիւն իմ:" — Էջ 11. "Սա իբրեւ ելանէր ի պատերազմ ի տղայութեան, ասէ Արիստոտէլ. Համբերեա մինչեւ յաւուրս կատարեալ հասակի քո: Ասէ. երկնչիմ դուցէ կորուսանեմ զերիտասարդական համարձակութիւն:" — Էջ 21. "Աղեքսանդրոս՝ քանզի տակառապետ նորա զըմպանակ ոսկի կորուսեալ՝ խնդրէր մորմոքելով, ասէ. Պատանի, մի

ուրիշ տեղեր եւ ակնարկութիւններ[1] մի առ մի թուել մեր նպատակէն դուրս է. վասն զի մեծաւ մասամբ ուրիշ աղբիւրներէն են այն զրոյցք: Միայն Աղուեսագրոց քանի մը վէպիկները պէտք է հոս յիշել, որոնց գոնէ մի քանիին հայ Կալիսթենեսէն են:

պատժիր, զի որ ունի զնա՝ ընդ մերով իշխանութեամբ է:,, — Էջ 23. “Աղեքսանդր խրատեալ լինէր ի բարեկամացն ի գիշերի երթալ ի պատերազմ. ասէ. ոչ է թագաւորական գողանալ զյաղթութիւն: Սա տեսեալ զոմն անուանակից իւր զի երկնչէր ի պատերազմի, ասէ. Պատանի դու կամ զանունդ փոխեա ի քէն եւ կամ զսիրտդ:,, — Էջ 38. “Աղեքսանդրոս ի հարցանիլն թէ ընդէ՞ր Ղակեդեմոնացիքն սիրեն զպակասաբանութիւն, ասէ. Զի մերձ է ի լռելն:,, — Էջ 40. “Աղեքսանդրոս տեսեալ զԴիոգինէս զի ննջէր ի կարասի, ասէ. Ո՛վ կարաս լի իմաստութեամբ: Եւ նորա զարթուցեալ՝ ասէ. Ո՛վ թագաւոր, կաթ մի բախտի լաւ է ինձ եւ ոչ խելքն կարասով, յոր ոչ մերձակայիլն՝ վատաբախտին խելքն: Եւ ոմն ի մերձակայից զայն լուեալ ասաց. Շիթ մի իմաստից լաւ է ինձ եւ ոչ ծովակս բախտից:,, — Հմմտ. էջ 30 աղաւաղ մանրավէպն՝ աղեղնահարի մը վրայ:

[1] Զոր օր. Մխիթար Այրիվանեցի, Պտմ. տպ. Պետր. 1867, էջ 3 կը գրէ. “Եւ Աղեքսանդր, որ իմաստութեամբ եւ արիութեամբ աշխարհի տիրեր՝ ի կնոջէ միոջէ ի կալանս ըմբռնէր:,, Հմմտ. Պտմ. Աղեքս. Մխ: — Յիշենք հոս նաեւ Աղուեսագրոց (տպ. Մարսիլիա, 1683) սկիզբն եղող Աշխարհագրութեան մի քանի կտորները: Էջ 67. “Թիւամիս գետ՝ ի Բաղուայ ելանէ. եւ ընդ Մսըր եւ ընդ Բաբելոն անցանէ. եւ ձգի՝ ի Գանդգիրոն ի ծովն հարաւոյ:,, Հոս գոնէ գետոցս ընթացքին մէկ մասը շատ նման է Պտմ. Աղեքս. ՃԾԹ. հատուածին: — Էջ 68. “Գանգէս եւ Եղիմոս գետք, որոց խորութիւնն մինչեւ յանդունդս է, եւ Բաղ ծառացեալ մինչեւ յերկինսն, եւ լայնութիւն նորա 30 մղոն. անցանի ընդ Ճենաս քաղաք. երթայ ի Սապռապիոն ի Սապռ՝ եւ Յակիապոն. անցանի ի Խորին Հնդիկս՝ մերձ ի Խորթէբասան՝ ի Համազունս (Ամազոնս)՝ որ թարգմանի կանանց աշխարհ՝ մօտ յանծանօթ երկիրն. եւ անգանի ի Հետամիտոն ծովն:,, Այս կտորին գրիչը թէեւ կարդացած կ'երեւայ զԿալիսթենէս, բայց հոս իւր բուն աղբիւրն ի հարկէ բոլորովին ուրիշ է: “Ամազոն,, բառն այսպէս կը մեկնէ Վարդան, Պատմութիւն, տպ. Վենետ. 1862, էջ 13. “Ուփիր՝ զաշխարհ Ոսկեհանաց, որ է Հնդիկք...: Յայնմ ժամանակի ասեն լինել զԱմազոնս, որ է կանանց զինուորութիւն:,, — Վերջապէս՝ անդ էջ 81 կ'ըսուի. “Չին եւ Մաչին.. սիրեն զքրիստոնեայսն եւ լաւ ընդունին՝ յԱղեքսանդր թագաւորէն ի վեր. զի ի նմանէ շատ աղէկ են գտեալ եւ ազատութիւն եւ զհռոմն խիստ սիրեն:,, Այս եւ այսպիսիք ի հարկէ մեր խնդրոյն հետ կապ չունին:

Շատ մը գլխաւորաբար վէպիկներ կ'ըլլան Աղուեսագրոյ սկիզբները, որոնց գոնէ ոմանք Վարուց Աղեքսանդրի Հայ թարգմանութիւնն ունին գույէ առջեւնին: Այս ռամկախօս առակներէն մի քանին կը գտնենք հոս իրենց բնիկ ընտանեկան լեզուաւ ըստ ձեռագրի Մեր Մատ. Թ. 117Ա[1]:

1. "Աղէքսանդր թագաւորն երթայր ամենայն տեղիքն ելչի. օր մի գնաց ի Պօլոս թագաւորին ի մօտ. եւ նա եաղութ թասոմն այախ երետ, նա խմեց զգինին եւ ղայեախն ի ծոցն եդիր: Եւ ասացին՝ թէ յէ՞ր ծոցդ դրիր: Ասաց Աղէկսանդրն թէ իմ թագաւորին սահմանքն հանց է: Եւ Պօլիոս հնազանդեցաւ: Եւ քոյրն Պօլիոսի իմաստասէր էր. ճանաչեց զԱղէկսանդրն. եւ ասաց արի փախիր՝ թէ չէ յայս պահս կու բռնեն. եւ նա հեծաւ ի ցլագլուխ ձին եւ փախեաւ:"[2]

2. "Յորժամ մեռանէր Աղէքսանդր անդարձ արար՝ թէ զիս իմ տունն տարէք, եւ յիմ թապութին յառջեւն Ռ մարդ ոսկի սինով ակն եւ մարգարիտ վերցնեն, եւ Ռ մարդու սեւ չուլ հագուցէք, եւ Ռ[3] ձիու զբաշն եւ զագին կտրեցէք, եւ քէշ եւ պէլիկ եւ աղեղն եւ բռումզ ի վերայ կապեցէք, եւ ՃՌ սրաւոր ի փշին յառաջ ուղարկեցէք. Նոյնպէս արարեալ տարան: Եւ տեսեալ մայրն եւ կնոջն ոչ արարին սուգ: Իշխանացն հարցեալ թէ ընդէ՞ր ոչ արարիք սուգ, ասաց մայրն՝ թէ իմ որդին պատուիրել էր՝ թէ ճար չկայ ի մահուն փրկիլ. ես զայս ամէնս ի դէմ ղրկեցի եւ ոչ մռեց մահն, եւ սուգն պիտի մռէ՞[4]:"

3. "Աղէկսանդրն հանդիպեցաւ օր մի յանմարդաբնակ եզր աշխարհիս. եգիտ իմաստասէրք ի յաշխարհէս փախուցեալք, մերկ եւ կերակուր

---

[1] Ուրիշ ձեռագիրք ալ ունին զասոնք. զոր օր. Մեր Մատ. Թ. 51, հատած՝ ՄԼ — ՄԺԳ: Հմմտ. Աղուեսագիրք, տպ. Մարսիլիա, 1683, էջ 83 եւն: Ձեռագրաց տարբերութիւնքն հոս նշանակել մեր նպատակէն դուրս էր:

[2] Հմմտ. Պատմ. Աղեքս. ՃԶ, ՃԶԱ:

[3] Օրինակն էր "ՃՌ." բայց ուրիշները (զոր օր. Թ. 51) "Ռ" կ'ըսեն:

[4] Հմմտ. Պատմ. Աղեքս. էջ 181, ծ. 2 եւ էջ 182, ծ. 3:

նոցա կայթն եւ բրինձ: Եւ ասաց Թագաւորն Աղէկսանդր. եկէք ընդ ես եւ տամ ձեզ բազում ինչս. եւ ասացին իմաստասէրքն թէ մէկ խնդիրք ունիմք. թէ զայն կարես տալ, նա գամք հետ քեզ: Ասէ Թագաւորն. զի՞նչ խնդիրք ունիք. եւ նոքա ասեն՝ թէ անմահութիւն կարե՞ս տալ: Ասէ Թագաւորն զայրացեալ. ոչ էք իմաստասէրք. ես մարդ եմ մահկանացու. զիա՞րդ տամ մարդկան զանմահութիւն. մարդ զոր ունի՝ զայն կու տայ, զոր չունի զիա՞րդ կարէ տալ: Ասացին իմաստասէրքն. թէ յիրաւի գիտես թէ մահկանացու ես, եւ զիա՞րդ զաշխարհս կու աւիրես: Ասէ Թագաւորն. ես ոչ եմ աւիրել. Աստուած տեսաւ որ ամէն մարդ ի ճանապարհէ ելաւ. եւ քան զիս այլ չար եւ վատ չկար, նա զիս ի ձեռն էառ եւ զաշխարհս ինով կու խրատէ, որ ի ճանապարհ գան. եւ հաւանեալ իմաստասիրացն բանին:[1]„

4. Հանդիպեցաւ Աղէքսանդրն յեզր տեղի մի հեծելովն. եւ բերեալ նուռ մի կտրեցին եւ ելից զթափսին. եւ կտրէին ողկոյզ մի եւ կուժ լցուէր գինով: Եւ իմացեալ Աղէկսանդրն՝ հարցաւ թէ ում է այս տեղս. եւ ասեն թէ Աղէկսանդրին է: Եւ խորհեցաւ չարիք առնուլ, եւ բարութիւնն այն խափանեցաւ. եւ Գ. Ե. նուռն զթափսին չէր լցնէր. եւ ի մէկ ողկոյզ խաղողոյն կուժ չէր լըցվիր. եւ ասացին թէ մեր Թագաւորին սիրտն ծռեր է:„

5. “Աղէկսանդրն բազում զօրօք իջեալ ի կղզի մի մեծ ծովուն. եւ ամենեքեան կրակ վառեցին. եւ սկսաւ կղզին ի շարժիլ. եւ իմացեալ ի նաւ մտին. զի կրիայ էր:[2] Ասացեալ են իմաստասէրքն թէ աշխարհքս Գ կենդանի կայ՝ որ քանի շատ ապրի՝ պիտի մեծանայ. մէկ՝ կրիան, եւ մէկն՝ ձուկն, եւ մէկն՝ օձն, որ վիշապ լինի:„

6. “Աղէկսանդրն բազում զօրօք պատահեցաւ ի տեղի մի, եւ եղեւ ձիւն մեծ[3] եւ սկսան զօրքն ի կոտորել ի սովուն. եւ ասաց Թագաւորն՝ թէ այժմ զայժմուս[4] պիտի հոգալ. յորժամ յաս-

---

[1] Հմմտ. Պատմ. Աղէքս. ՄԻԳ:

[2] Հմմտ. Պատմ. Աղէքս. ՄԻԴ, էջ 138—139:

[3] Օր. “ձիւնամեծ:„ Թ. 51 “ձիւն մեծ„ եւ այլք:

[4] Այսպէս Թ. 51: Թ. 117 Ա “այժմ զժամյաղիս պիտի հոգալ . . . յայնժամ զայլ աղին:„ — Հմմտ. Պատմ. Աղէքս.

*տից ազատիմք՝ յայնժամ զայլ վաղիւն հոգանք․ կոտորեցէք զծիանդ եւ կերէք։„*

*Այսպիսի կտորներ կը գտնուին ուրիշ ձեռագրաց մէջն ալ ընդհանրապէս բաւական տարբերութեամբ ընթերցուածոց։ Ասոնց առաջինը թէեւ Կալիսթենեայ Նիւթն ունի, սակայն շատ փոփոխուեր է։ Դարեհի տեղ "Պօղոս„ եղած է (անշուշտ կ'ուզուէր "Պօրոս„ գրել։) Հոս "Պօղոսի„ քոյրը կը ճանչնայ զԱղեքսանդր եւ կը խրատէ փախչիլ․ իսկ Կալիսթենէս կ'ըսէ՝ թէ "Պարասանգէս„ իշխանը ճանչցաւ։ — Երկրորդը Համառօտաց միայն ունեցած Աղեքսանդրի վերջին Նամակին նման Նիւթ մ'ունի․ գուցէ նաեւ ակնարկուի Համառօտայ այն կտորը՝ թէ Աղեքսանդր "ետ կապել զպատանս ի ծայրս ձողի եւ ի շուրջ ածել զամենայն Բաբելոն ասելով, թէ Աղեքսանդր յամենայն գանձէն զայս կտաւս տանի միայն, որ երեք անկեան աշխարհիս տիրեր[1]։„ Բայց բուն բոլորովին ուրիշ զրոյց է։ — Երրորդ, հինգերորդ եւ վեցերորդն Կալիսթենէսէն են բոլորովին, թէեւ գրիչը քիչ մ'եղանակաւորած է տեղ տեղ։ Չորրորդը նոր զրոյց մըն է ուրիշ աղբիւրէ։ Օտար աղբիւրէ մըն է միեւնոյն ձեռագրին ուրիշ զրոյց մ'ալ "տըլըսմի„ մը վրայ[2]․ միայն զար-*

---

*ՃԻԴ, այսինքն բոլոր ընդարձակաց մէջ պակսած տեղը։ Ուրեմն առակացս գրիչը հին ձեռագիր մ'ունէր առջեւը։ Թէեւ կան ձեռագիրք՝ որ այս ամէն կտորներուն մէջ աւելի գրաբարաձեւ լեզու մ'ունին, մենք ընտրեցինք Թ․ 117Ա (եւ 51) իբրեւ աւելի ռամկալեզու։*

[1] *Պատմ․ Աղեքս․ էջ 182, Ծ․ 3։*

[2] *Ձեռ․ 117Ա․ Թղ․ 3b․ "Տըլսըմ եօթն կայ ի վերայ աշխարհիս զարմանալի, եւ հինկ ի Ստամպօլ քաղաքն է մէկ քարէ մարդ է շինած եւ անուն ամբծախօս է, որ զինչ ի քաղաքն անգին կումաշ ծախուէր որ ոչ ով գին չկարէր առնէր՝ նա պիտէր զգինն ասէր։ Օր մի ձի մի ծախէին որ ՃՌ ապ․ գին կուզէին, եւ գնացին ամբծախօսն. եւ ասաց այսօր աժէ ՃՌ եւ վաղն ի այս ժամս մէկ փլորի արժէ։ Ե․ մէկայլ օրն սատակեցաւ, եւ սաղըին մէկ փլորի եբեր։„ Ուրիշ պատմութիւն մ'ալ "ամբծախաւսի„ վրայ կայ՝ Թղ․ 4a։*

մանք է որ այս "տըլըամ" կ'անուանուի "ամբծախօսս․„ որ Հայ Կալիսթենեսէն առնուած է[1]։

Թէ մեր մանաւանդ ռամկական մատենագրութեան մէջ քիչ չկան այսպիսի մանրավէպներ Աղեքսանդրի գործոց վրայ, յայտնի է։ Այսպէս օրինակի աղագաւ ձեռագիր Մեր Մատ. Թ. 51 ունի երկու ուրիշ կտոր ալ, մին աղքատի մը քաղաք պարգեւելու եւ միւսն՝ "խասալիաթ„ ունեցող պատուական քարի մը վրայ[2]։ Բաց աստի նոյն ձեռագրի մէջ է աղամանդի վրայ պատմուածը, զոր ունի նաեւ Մեր Մատ. Թ. 83, այսինքն՝ Առաքելի Պատմութեան չորրորդ օրինակը. վասն զի այս վէպիկն Առաքել իր գրութեան մէջ առած է[3]։ Ուրիշ կտոր

---

[1] Այս բառն՝ որչափ ծանօթ է՝ միայն Վարուց Աղեքսանդրի մէջ գործածուած է նախնաբար։ Հմմտ. Պատմ. Աղեքս. ճԻԵ, էջ 63, 20 եւ 27. "Եբարձ գնաց զամբծախօսն եւ զեռոտանին„ եւ "ասաց ամբծախօսն գէտ։„ "Ամբծախօս„ բառական թարգմանութիւն է յոյն բնագրին Φοιβολάλος բառին. V պարզ sacerdos կ'ըսէ։

[2] Թ. 51. Թղ. 33b, Հատած՝ Իզ. "Ասի ի Պատմութեանց թէ աղքատ ոմն եկն առ Աղեքսանդր թագաւորն խնդրել ողորմութիւն. եւ թագաւորն ետ նմա մեծ քաղաք մի սեպհական։ Իսկ մեծամեծքն տրտնջէին թէ ոչ էր արժան աղքատոդ այդ քաղաքիդ, զի մեզ գիւղ մի չի տար մեր թագաւորն, իսկ դմա քաղաք մի բովանդակ։ Կոչեաց թագաւորն զնոսա եւ ասէ. թէպէտ ինքն արժան չէր այդ դեղեցիկ քաղաքիդ, այլ ինձ արժան էր տալ զդեղեցիկն, զի առատ եմ ես՝ որ թագաւոր եմ բոլոր աշխարհի։ . . .„ — Թղ. 71a, Հատած՝ Ղզ. "Ասի թէ արքայն Աղեքսանդր ի քաղաքի մի բազում ընդունելութիւն ընկալաւ, եւ ակ մի ընծայ ետուն, եւ այն ակն այնպէս խասալիաթ ունէր, զի յորժամ ի կիչեռ (կշիռ) դնէին՝ հակէր զամենայն կշռորդն։ Իսկ մի ոմն հող էարկ ի վրայ ակին եւ մանր յարդ. յայնժամ յոյժ թեթեւացաւ եւ միտեցաւ։ Եւ Աղեկսանդր զարմացաւ, ասաց. զի՞նչ նշանակէ այդ։ Ասացին՝ թէ զքո թագաւորութիւնդ. զի այժմ անյաղթ ես եւ հզօր եւ անխոնարհելի, եւ գերիվերոյ ես քան զամենայն թագաւորս. եւ յորժամ մեռանիս՝ հողն տէր լինի ի վերայ քո . . .։„

[3] Թ. 51. Թղ. 11b։ Հմմտ. Թ. 83. Թղ. 384b, (Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն, տպ. Էջմիածին։)
Երկու ձեռագրաց տարբերութիւնքն ոչ ինչ է։ Ըստ այսմ զրուցի "...Աղեքսանդր գնաց ի զուլումաթն. ի լեռան մի տակն հասաւ, յանկարծ ձիոյն նալն զըլըղաւ։ Հարցաւ թէ զի՞նչ լինի այս. նա իմաստունքն՝ որք կային ի հետն,

Մ՚ալ ունի նաեւ Մեր Մատ. Թ. 56Ա[1], որ կը գտնուին Գոշի առակաց մէջ։ Այսպիսի շատ կտորներ կրնայինք յիշել։ Բայց ասոնք մեր սահմանէն դուրս են. վասն զի ասոնք ընդհանրապէս զատ — անշուշտ մեծաւ մասամբ արաբական — աղբիւր ունին։ Մի քանին ալ որ ի մէջ բերինք՝ ըստ բաւականի գաղափար կու տան այս կարգի մանրավէպներու վրայ։ — Ա՛յլ գործք է նոյնպէս "Արիստոտէլի առ Աղեքսանդր„ Թուղթը Աշխարհիս վրայ[2]։

Ի վերջոյ կը գտնենք հոս գերմանացի Ռէօմհէլդ գիտնականին իւր անգամ մը յիշուած[3] գրութեան մէջ գրածը՝ թէ ԺԷ դարու վերջերն "Երեմիա Չէլէպին„ Վարուց Աղեքսանդրի հայ բնագրէն թարգմանած է տաճկերէն նոյն գրութիւնը։ Չկրցանք այս կարեւոր դիտողութեան նկատմամբ աւելի որոշ

---

ասացին՝ թէ ալմաստ է, յերկնից ցօղէն հասըլ կու լինի...։ Ասացին Աղեքսանդրի՝ թէ այս լեռան յետեւն աւազոտ դաշտ է, ամէնն ալմաստ է եւ անմարդաբնակ է, եւ թռչնոց ի զատ այլ իրք չկայ ի հոն։ Աղեքսանդր ուզեց ի յայն ալմաստէն, նա ասացին՝ թէ հեծեալքն թող ի լեռան գլուխն ելնին, եւ ի լեռան գլուխն անասնոց լաշ ձգեն, նա ի հոն մեծ թռչունք կան, ալմաստն կու կպնա ի լաշերն՝ կառնուն թռչունք ու. կելնան ի լեռան գլուխն նստին կուտեն, նա հեծելքն երթան թռուցանեն, ինչ որ կպեր է ի լաշերն՝ ամէն ի հոն կու մնայ, եւ այնպէս արարին՝ որչափ կարացին . . . ։„

[1] Ձեռ. Թ. 56Ա. էջ գզ. (հմմտ. Գօշ, տպ. Վենետ. 1842, էջ 132, ճԿԵ։) "Ի թագաւորէն Աղեքս. մեծարեալ լինէր երկրագործ մի (տպ. չունի "մի„) քան զհիւսն, յորժամ ապարան նմա շինէին. եւ նախանձ ընդ նմա կալեալ հիւսն եւ հողագործն. ոմն ասէր զընակութիւն առնել եւ ոմն զկերակուր։ Եւ (տպ. չունի "եւ„) նորա լուեալ իմաստասէր գալով՝ կոչէ եւ այլ եւս (տպ. չունի "եւս„) իմաստունս ի մէջ նոցա առնել ընտրութիւն պատուոյ։ Եւ ասեն նոքա. եթէ առաջին ասացաւ Ադամայ գործել զերկիր. բայց դարբնութիւն կանխաւ ցուցաւ. եւ զի զիւր առնէ զգործի եւ նովաւ՝ զհիւսան եւ զմշակի. վասն որոյ առաջին է պատուով. իսկ հողագործն (ձեռ. "հողագործին„) երկուցն պէտս ունի։ Եւ այնպէս համոզեն զնոսա չնախանձել։„

[2] Արիստոտէլի իմաստասիրի թուղթ առ Աղեքսանդրոս թագաւոր. Պատմութիւն Յաղագս Աշխարհի. Վենետիկ, 1833 (Դաւիթ Անյաղթէն ետքը՝) էջ 603—628։

[3] Տես վերը՝ էջ 8։

մանրամասնութիւններ գտնել. բայց եթէ կարելի ըլլայ այսպիսի թարգմանութիւն մ'արդեամբք գտնել եւ համեմատել, կարծենք շատ տեղ կրնայ լաւ ծառայութիւն ընել հայ բնագրին աղաւաղութիւններն ուղղելու։

Կեսարիոյ Ս. Կարապետ վանաց երկու ձեռագրաց վրայ համառօտ տեղեկութիւն տուած է վերջերս Գ. Եր. Առաջնորդ Կեսարիոյ՝ Տրդատ Վրդպտ. Պալեան։ Ըստ այսմ տեղեկութեան՝ առաջինը “քիչ մը խոշորկեկ, բայց ընտիր բոլորգիր, 104 փոքր քառածալ թղթերու վրայ գրուած երկսիւնեակ„ ձեռագիր մըն է, որուն գրիչն ու գրութեան ժամանակը չի յիշեր Գեր. տեղեկատուն։ Թէ՛ այս եւ թէ՛ երկրորդ ձեռագրին ճակատը խորագիրն է. “Պատմութիւն Մեծի եւ աշխարհակալի Աղեքսանդրոյ Մակեդոնացւոյ եւ կտակք վարուց քաջութեան եւ գործոց արիականաց նորին եւ վաղճանն նշանօք գոլ ցուցանի։„ “Ապէնիազն„ կտորէն յառաջ ունի “Որք լսէք եւն„ կտորը[1], եւ ի վերջոյ նաեւ Կեչառուեցւոյ յիշատակարանը համեմատ անոր, զոր հրատարակեցինք ըստ Թ. 424։[2]

Երկրորդը “33 փոքր քառածալ թղթերու վրայ գրուած է երկսիւնեակ, խիտ ու մանր նոտրագիր, գիրն ոչ այնչափ մաքուր, համառօտութիւնք յաճախ են։„ Այս ալ “Ապէնիազն„ կտորէն ետքն ունի կեչառուեցւոյ յիշատակարանը. բայց շատ այլափոխ եղած միջանկեալ աննշանակ կտորներով։ Գոնէ կարեւոր նոր տեղեկութիւն մ'աւելի չի բովանդակեր. եւ արդէն սոյն ձեւոյ այլակերպութիւնն ալ գրչին գործք կ'երեւայ։ Սակայն վասն

---

[1] Տես վերը՝ էջ 107։

[2] Տես վերը՝ էջ 88—91։ Ձեռագիրս ունի “ի գրչութիւն գրոյս„ սաութիւնը. (Հմմտ. էջ 89, ծ. 4։) Միւս տարբերութիւնք են. “շաղկայ բայիւք — կարծիւք — Պըտղոմէոսիւ պատուեցաւ — զոր գրեցի իմով ձեռամբս որբացրեալ ի հնոցն (Հմմտ. էջ 90, ծ. 2) — քերեալ քերողաւրէն — զի յընթեռնուլն։„

ամբողջութեան կը գտնենք հոս սոյն յիշատակարանը:

"Յիշատակարան պատմագրոյս առ դնի ի լաւ մտաւորութեան:" — "Եւ արդ մեր զայսքան համեմատեալ վասն յօմանց բանաւոր պատճառաց. եւս օգտութեան վասն վերնագունիցն զոր ճառեցաք, յորում ընթերցեալ զայս յուսամ յիշման զիս առնուլ զխաչատուր տրուպ կեչառեցի ի բարեպաշտութենէդ ձերմէ վսեմագունիցդ, որ ի յարմարումն սակաւ բանիցս, եւս ի գրչութեան գրոյս, հաւաստեաւ արդարեւ աշխատեցայ: Առ ի հեթանոսական գրոցս յարմարումն վասն զի մինչ յոկ ընթերցեալ, անվայելուչ եւ անմիաբանք երեւին, անոտի կարծեօք որակացեալք, եւ խաբէութեամբք, որպէս եւ առ գրասիրաւն Պտղոմէոսիւ պատուեցաւ՝ բանալ միտս գրոց: Իսկ զայս պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրի՝ զոր աշխատեալ եւ յարմարեալ զփոխանգրեալսն իմով ձեռամբ՝ ի յարմարութիւն ածեալ սակս օգտի ինձ նուաստիս, եւ ամենայն մերազնեայ բանասիրացդ, որք կամին օգտիլ եւ յելանել ըսբօսումն ի սմին՝ լսել զհանճարեղ արարմունս կորովամիտ բանիցն մեծին Աղեքսանդրի աշխարհակալին: Ուրեմն մաղթելի աղերսանօք ժտեմ ի գնալն ձեր ի յանխոտորնակ ճանապարհ սորա ո՛վ պուէտիկոսք եւ անսղալ քարտուղարք, իմանալոց էք զիմ աշխատանս որ ի սմայ վաստակեցայ՝ եւ ձեզ ընծայեալ թողի յիշատակ ի լումայաստրաս՝ յորում գոհացեալ մեք ձեօք հանդերձ ի վայելն հանցուք շնորհակալութիւն աչաւոր սրբոյ երրորդութեան անզրաւ յաւիտեանս ամէն:"

Այս յիշատակարանէն ետքը կան բազմաթիւ կեչառուեան ոտանաւորք (43 տուն), որ կը սկսին "Ա՜յ ծեր դառնացեալ ոգի" կտորէն: Ասոնցմէ վերջը սիւն մը դատարկ է, ապա կան դարձեալ 9 տուն ոտանաւորք, եւ "Գրութիւնը կը վերջանայ վերջին ընդօրինակողի յիշատակագրութեամբ:" Չունենալով զայս առ ձեռն՝ ձեռագրիս գրչի անձն ու ժամանակն անյայտ կը մնան ինձ:

---

Հոս ի վերջոյ կը յաւելունք դիտողութիւն մը, զոր Կրաֆորդեան ձեռագրին նկատմամբ յղած

է "Հանդիսի„ խմբագրութեան՝ Մեծ. Կ. Պասմաճեան։[1]

"Հանդէս„ վերջին թուոյն մէջ[2] Գեր. Ս. Պարոնեանի՝ Աղեքսանդրի վարուց կրաւֆորդեան ձեռագիր օրինակին վրայ տուած տեղեկութիւնը տպուած էր։ Այդ ձեռագրի յիշատակարանին մէջ ուշադրութիւնս գրաւեց սա կտորն. "Գրեցաւ սա Թվիս Հայոց Ջ. ԴԳ. Ի Սուլէման տաճարս.„ զոր պէտք է կարդալ. "Գրեցաւ... ի Սուլէ մանատաճարս։„ Վասն զի, ինչպէս կ'երեւի, ձեռագրին մէջ գրուած այլեւայլ յիշատակարանք կը յայտնեն՝ թէ ի Կ. Պոլիս գրուած է այն, հետեւաբար "ի Սուլէ մանատաճարս„ Սամաթիոյ, երբ տակաւին Պատրիարքարան էր, եւ ոչ "ի Սուլիման սատիր.„ որ գոյութիւն չունի։„

"Մայրաքաղաքիս Սամաթիա թաղի Սուլումանաստը կամ Ս. Գէորգ եկեղեցին՝ Զաքարիայէն յառաջ ուրիշ նշանաւոր գծողներ եւ գրիչներ ալ ունեցած է յիւր ծոց, ինչպէս կը տեսնուի անցեալ տարի յայտնուած ձեռագիր Աւետարանին մէջ, զորմէ գրած եմ ի "Ծաղիկ„ շաբաթաթերթի, 1891, Թ. 25։ Ըստ յիշատակարանին՝ զԱւետարանն "Կարապետ եպիսկոպոս կաֆայեցին„ "նկարել . . . եւ կապել„ տալով յիշատակ դրեր է "ի Ս. Գէորգ տաճարիս որ կոչի Սուլու մանատաճարս։... Թվ. ՋԽԴ„ (= 1495). այսինքն՝ 49 տարի յառաջ քան զԶաքարիա։„

"Ասկէ ուրիշ դիտողութիւն մըն ալ կը ծագի։ Եթէ "Սուլիման սատիր„ ձեւն ընդօրինակող վարդապետին չէ, կրնամք ըսել՝ թէ Զաքարիայինն ալ չէ. վասն զի կարելի չէ՝ որ Զաքարիան այս սխալը գործէր նոյն իսկ իւր նստած վայրին նկատմամբ. ուստի այլ ձեռաց արդիւնք է, եւ հետեւաբար

---

[1] Տես Հանդէս Ամս. 1892, Թ. 1, էջ 21։

[2] Հմմտ. Հանդէս Ամս. 1891, Թ. 11, էջ 324։ Տես վերը՝ էջ 158։

կրաւֆորդեան օրինակը Զաքարիայի իսկական ձեւագիրը չէ։„

## 6.

### Թարգմանութեան ներքին արժէքն ու լեզուն:

Խնդրոյ տակ չի կրնար ըլլալ՝ որ ուղղակի յոյն բնագրէ եղած է այս թարգմանութիւնը։ Բայց թէ ի՞նչ յատկութիւններ ունի թարգմանութիւնը՝ այս կէտը պիտի ջանանք պարզել, որչափ կարելի է՝ համառօտիւ։ Ապա քանի մը խօսքով քննութեան կ՚առնունք թարգմանութեանս լեզուն։

Գիտնալով Ե դարու մեր թարգմանչաց հմտութիւնը յոյն լեզուին, եւ մեծ վարժութիւնը՝ ամէն բան բուն հայ ոճոյ փոխելով թարգմանելու, պէտք ենք նոյնն սպասել նաեւ այս գրքէս, որուն թարգմանիչը՝ Մ. Խորենացի՝ ունէր արդեամբք այս յատկութիւնները։ Բայց նոյն իսկ այն՝ որ թարգմանիչը Մեսրոպայ երկրորդ դպրոցէն էր, ինչպէս սովոր ենք ըսել, այսինքն՝ այն խմբէն, որոնք քիչ շատ յոյն լեզուի օրինակին կ՚ուզէին նմանցընել իրենց լեզուի ոճը, կը ստիպէր զմեզ ընդունելու՝ որ այս թարգմանութեան լեզուն չի կրնար բոլորովին զերծ ըլլալ յոյն լեզուի ազդեցութենէն։ Ասով արդէն թարգմանութեանս գլխաւոր կէտերը ճանչցած կ՚ըլլանք. այսինքն՝ ճշդութիւն եւ հաւատարմութիւն բնագրի, բնիկ հայ ոճոյ յեղուած թարգմանութիւն, Խորենացւոյ յատուկ կորուկ եւ ճղոտ՝ ըսենք նաեւ մեր յուսացածէն շատ աւելի անխառն՝ լեզու, սակայն ոչ թէ բնիկ Մեսրոպեան (առաջին դպրոցին յատուկ) դասական լեզու ամէն տեղ. այլ շատ տեղ արդէն լեզուի այլայլութեան նշանները կրելով, եւ ըստ բաւականի ալ յունականին ազդեցութեան ենթարկուած։ Թէ աստ անդ կրնան փոքր զարտուղութիւնք, անճշդութիւնք եւ նման կէտեր գտնուիլ, այս՝ զարմանալի չէ, եւ

քիչ շատ ամէն թարգմանութեանց ալ սովորական։

Բնական է որ յոյն բնագրի մը նշանները չեն կրնար միշտ անհետ ըլլալ թարգմանութենէ մը, որչափ ալ ջանայ թարգմանիչը։ Կան օրինակի համար շատ մը բառախաղեր եւ այլ նման ակնարկութիւններ, զորոնք թարգմանիչը չէր կրնար միշտ այնպէս թարգմանել, որ մութ չմնան հայ ընթերցողին։ Այսպէս կը հրամայէ Աղեքսանդր աղեղնաւորի մը որ եղջերուի մը վրայ նետ արձակէ։ Նետը կը վրիպի իւր նպատակէն, եւ Աղեքսանդր կը գոչէ. “Այր դու տարապատկան եղեւ քեզ։„ (παράτονόν σοι γέγονεν.) Հոս Կալլիսթենէս կը յաւելու՝ որ ասոր համար նոյն տեղը “Պարատոնիոն„ կոչուեցաւ[1]: Հայ մը չի կրնար ըմբռնել՝ թէ ինչ գործք ունի “տարապատկան„ բառը “Պարատոնիոն„ անուան հետ. բայց երբ յոյն բնագիրը քննենք՝ կը տեսնենք բառախաղը եւ կը հասկընանք. — παράτονος կը նշանակէ “տարապատկան„. իսկ Παραιτόνιον “Պարատոնիոն„ անունն է։ — Երբ Աղեքսանդր կառարշաւի մէջ յաղթելով Նիկողայոս արքային՝ կը պսակուի, այսպէս կ'ըսէ իրեն Արամազդայ տաճարայարդարը. “Որպէս Նիկողայոսի յաղթեցեր, այնպէս դու բազմաց (այսինքն՝ ազգաց) յաղթեսցես[2].„ (ὥσπερ γὰρ Νικόλαον ἐνίκησας, οὕτω πολλοὺς νικήσεις ἐν πολέμοις.) Յոյն բնագիրը հոս ակնարկութիւնը կ'ընէ Նիկողայոս (Νικόλαος) անուան մեկնութեան իբր “Ազգայաղթ„ նշանակութեամբ, ուստի իբրեւ νικάω եւ λαὸς բառերէն բաղադրեալ:

[1] Պսմ. Աղեքս. ՀԸ, էջ 37, 2։ Քաղաքին անունն է ըստ A παρατώνων; B παράτονον; C παρατόνη; V Paratonium, իսկ M կ'առաջարկէ Παραιτόνιον. V օրինակեր է հոս պարզապէս յոյն բառը՝ գրելով. paratonon istud factum videri.

[2] Պսմ. Աղեքս. ԾԵ, էջ 27, 11։ V այս տեղ պարզ է. Ut quod primo certamine Nicolaum vicisset, esset sibi conjecturae, perfacile multos eum populos vinciturum.

— Աղեքսանդրիա քաղաքը տարածուեցաւ, կ՚ըսէ Կալիսթենէս,[1] մինչեւ Հերմեայ քաղաքը. “բայց, կը յաւելու, ոչ կոչէին Հերմուպոլիս, այլ Հերմոպոլիս. քանզի ամենայն որ ելանէր յԵգիպտոսէ կամ իջանէր, անդր դիմէր։„ Ցունագէտ չեղող հայը չ՚ըմբռներ սոյն “Հերմուպաւլիս„ եւ “Հերմապաւլիս„ ձեւերուն նկատմամբ եղած այս ակնարկութիւնը, եւ աւելի եւս՝ անոր տրուած մեկնութիւնը։ “Հերմուպաւլիս„ (Ἑρμούπολις) է “Հերմեայ քաղաք,„ իսկ “Հերմապաւլիս, (յոյն՝ Ὁρμούπολις= Հորմուպաւլիս„) առնուած է ὁρμὴ (բուռն դիմումն, յարձակումն, ամբոխ) բառէն, ուստի կը նշանակէ քաղաք մ՚ուր կը դիմէ ամէն մարդ, ինչպէս կը մեկնէ Սուտ-Կալիսթենէս։ — Աղեքսանդր եկաւ ի “Տապոսիրիս.„ եւ հարցըներով իմացաւ “գերեզմանն Ոսիրեայ լինել մեհեան։[2]„ Գրիչը հոս “Տապոսիրիս„ (Ταφόσιρις) անունը կը մեկնէ τάφον Ὀσίρεως (գերեզման Ոսիրեայ) բառերով։ — Աղեքսանդրիոյ մէջ շինուեցան, կ՚ըսէ Կալիսթենէս, ստորերկրեայ “Ջրամղահոսներ„ որոնք իրենց անունն առին Հիպոնոմոս ճարտարապետէն[3]։ Թառախաղ մըն է այս. վասն զի “Ջրամղահոս„ յունարէն “հիւպոնոմոս„ (ὑπόνομος) կ՚ըսուի։ Հայը դժուարութենէն ազատեր է մասամբ

---

[1] Պամ. Աղեքս. Ձ, էջ 38, 6—8։ Ցոյն բնագիրն է. *Οὐ καλεῖται δὲ Ἑρμούπολις, ἀλλὰ Ὁρμούπολις, ὅτι πᾶς ὁ κατερχόμενος ἐκ τῆς Αἰγύπτου καὶ ἀνερχόμενος ἐκεῖ προσορμεῖ.* Ուրիշ մեկնութիւն կու տայ V գրելով Sed enim nomen hoc longe secus ac se veritas habet in usu appellationis resedit, Hormo enim polis, non Hermopolis, dicta est, quod portuosus illic alveus Nili latiusque in latera descendens fidam stationem navibus per sese labentibus faceret.

[2] Պամ. Աղեքս. ՀԹ, էջ 37, 5—7։ Ցոյն է *ἦλθεν εἰς Ταφόσιριν... Οἱ δὲ ἔφησαν, τάφον Ὀσίρεως εἶναι.* V աւելի որոշ կ՚ըսէ՝ թէ գերեզման Ոսիրեայ էր անունը, որ ապա աղաւաղուելով եղաւ Տապոսիրիսոս. (Sepulchrum Osiridis, ... quod a veteri compositione corruptum Taposiridus dictus esset.

[3] Պամ. Աղեքս. ՁԲ, էջ 39, 11—14։

այնու՝ որ հոս այս յոյն բառը փոխ առեր է. բայց տոր հակառակ ամբողջ խօսքը յունախօս անյաջող լեզուաւ թարգմանուեր է այսպէս. «Եւ կոչեն (այս «Ջրամղահոս» փոսերը) [illegible] վասն այնր՝ որ եցոյց լիբէացին Հիպոնեմոս կոչել։»[1] — Շատ կարեւոր է հետեւեալ բառախաղը։ Աղեքսանդրի հետ յերազի խօսող դից անունը յայտնի չի յիշեր Կալիսթենէս, այլ այս հանելուկով կ'ուզէ իմացընել. «Երկիցս հարիւր, կ'ըսէ,[2] այսպէս եւ զմի համարն խառնեա. ապա հարիւր եւ մի. եւ չորիցս քան եւ տասն, եւ զառաջին գիրն առնլով արասջիր վերջին, եւ յամենայն ժամ իմասջիր ո բնաւորեցայ գոլ ես սատուած։» Այս թուաբանական հանելուկն է 200+1+100+1+80+10+200, որմէ հայ ընթերցողը բան մը չի կրնար հասկընալ. բայց խնդիրը կը լուծուի, երբ այս թուերուն համապատասխանող յոյն տառերը դնենք, այսինքն՝ σ+α+ρ+α+π+ι+ς, եւ կ'ունենանք «Սարապիս» դից անունը։ — Ըստ Կալիսթենեայ Աղեքսանդր Ծուր առնելէն յառաջ երազ մը տեսաւ՝ որ ինքը պանիր մը կը կոխկրտէր ոտքին տակ։ Երազագէտ մ'ալ, կ'ըսէ, մեկնեց երազն այսպէս. Աղեքսանդր Տիւրոս պիտի առնու՝ երազին մէջ պանիրն ալ ոտն կոխելուն համար[3]։ Այս մեկնութիւնը շատ պարզ կ'երեւայ, երբ մտածենք որ յունարէնի մէջ Τύρος է «Տիւրոս» եւ τυρός «պանիր։» Այսպիսի կտորներ կրնայինք դեռ յիշել։

Ինչպէս տեսանք, թարգմանիչն եւ ոչ այսպիսի տեղեր փոփոխութիւն մ'ըրած է, որով կրնար հայ ընթերցողին ըմբռնել տալ այն կտորները։ Տեղ մը միայն դիմած է թարգմանիչը վերջին միջոցին։ Աղեքսանդրիայի շինութեան ժամանակ հինգ

---

[1] Այս է բնագիրը. A : Καλοῦνται δὲ ὑπόνομοι διὰ τὸ[τὸν] ὑποδείξαντα Λιβυκὸν Ὑπόνομον καλεῖσθαι.

[2] Պատմ. Աղեքս. ԳԳ, էջ 45, 10—14։

[3] Պատմ. Աղեքս. ԾԱ, էջ 49, 11—14։

գիր արձանագրել տուաւ Աղեքսանդր[1]. *A, B, Γ, Δ, E*, որոնց մեկնութիւն է. *A= Ἀλέξανδρος, B= βασιλεὺς, Γ=γένος, Δ=Διὸς, E=ἔκτισε (πόλιν ἀείμνηστον)*, այսինքն՝ "Աղեքսանդր՝ արքայ, ազգ Դիոսի, շինեաց (զքաղաք մշտայուշ։") Այս խօսքը V երկար մեկնաբանութեամբ թարգմանած է. իսկ Հայը քանի մը մանր փոփոխութիւններ ընելով կրցեր է հայերէն Ա, Բ, Գ, Դ, Ե գրերուն յարմարել խօսքը, եւ թարգմաներ է. "Գրեաց ի վերայ գիրս հինգ Ա, Բ, Գ. Դ. Ե. այբն՝ Աղեքսանդրոս. բենն՝ բարձրագոյն թագաւոր. գեմն՝ գերագոյն ազգաց. դայն՝ դեր Արամազդայ. եչն՝ էջ եւ շինեաց քաղաք անմանելի։"

Մանր փոփոխութիւններ կրնան գտնուիլ տեղ տեղ. բայց ընդհանրապէս շատ յաճախ չեն։ Քանի մը փոփոխմունք եւ յաւելուածք թարգմանչին՝ առիթ ունեցանք յիշելու յընթացս գրութեան, ինչպէս Յուշկապարկայ կռուոյն[2], Հայոց Անգղայ գաւառին[3], "գերերի" անկոյն ի Հայս գտնուելուն[4] եւ նմանեաց կտորները։ Նշանաւոր յաւելուած մըն է հետեւեալը։ Ըստ Կալիսթենեայ[5] Դարեհ փախաւ "ի դրունս Կասպից" (*ἐπὶ τὰς Κασπίας πύλας*, V: Portas Caspias.) իսկ Հայն յաւելուած մ'ալ կցեր է. "փախստական է ի Կասբիական դրունս մերձ յաշխարհն Թաւրիշ ի գաւառն Գիլանոյ։"

---

[1] Պատմ. Աղեքս. Ձե, էջ 40, 28—32։

[2] Հմմտ. վերը՝ էջ 45—46։

[3] Հմմտ. վերը՝ էջ 42—43 եւ 78—79 եւ այլուր։ Հոս թարգմանչին յաւելուածն է Արածանի գետին համար գրելը. "Որ հոսի ի Ծաղկաւէտ լերանցն Անգղայ գաւառին յակունքն Եփրատայ հանդէպ լերինն Այրարատայ։" ABC կ'ըսեն լոկ *Παραγίνεται εἰς Εὐφράτην*, բայց V ուրիշ յաւելուած մ'ունի գրելով որ Արածանի շատ մեծ գետ է. (Ad Ephratem veniens fluvium magnitudine haud cuique facile secundum.)

[4] Հմմտ. վերը՝ էջ 83—84։

[5] Պատմ. Աղեքս. ՃՂԴ, էջ 110, 4։

Ուրիշ տեղ մ'ալ գրեր է[1]. "ի Կասբիական դրունս յաշխարհն անառիկ եւ դժուարական։" Վերջին խօսքը յաւելուած է։

Արեգական եւ լուսնոյ մեհենի ծառոց համար կ'ըսէ հայը[2]. "Երկու ծառք էին հանդէտերկնեայք[3], որք էին հաւասարք սարոյց ծառոց՝ որ առ մեզ լինին։" Վերջինը յաւելուած մըն է, իսկ "սարոյց" է ըստ յոյն բնագրի χυπάρισσος (cupressus.) —

Մանր փոփոխութիւնք ալ քիչ չկան. բայց ասոնք բնագրի հաւատարմութեան դէմ աննշանակ են։ Այսպէս հռոմէական "էքսփլորատորէս" (exploratores, յոգնակի ձեւով) բառը մեկնել՝ թէ "առ Հայս՝ լրտեսք[4]" կոչուին։ Հոս յոյնն անգամ մեկներ է նոյն բառը[5]։ — Նամակի մը գլուխը թարգմանիչն իրեն ծանօթ սովորական ոճոյ փոխեր է գրելով. "Թագաւոր Աղեքսանդրոս ... գրեմ ամենայն բնակչացդ որ ի Պարսկաստան յաշխարհիդ էք Արեաց եւ Անարեաց (յոյնը չունի այս բացատրութիւնը), գեղջէից եւ քաղաքայնոց[6]։" — Կալիսթենեայ առակաւոր մէկ խօսքը տեղական ոճոյ փոխեր է դոյզն յաւելուած մ'ընելով. "Մարդ որ այլում չար կազմէ, իւրում իսկ լերդին կազմէ[7]։" Այս առածին կից "եւ չար խորհուրդ խորհեցելումն յոյժ չար է" խօսքը չունին ABCV. (վերջինս առածն ալ չունի։)

---

[1] Անդ, ՃՂԳ, էջ 109, 15։

[2] Անդ, ՄԻԴ, էջ 145, 17։

[3] Ձեռագիրք ունին "հանդէտ երկեանք." միայն Թ. 424 "հանդէտ երկնեանք։" Յոյնը չունի նման բացատրութիւն մը (δένδρα ... παραπλήσια κυπαρίσσοις) բայց նման է V, որ կ'ըսէ arbores coelum ferme proceritate intervectas.

[4] Պատմ. Աղեքս. Բ, էջ 2, 15։

[5] I, 2. A: ... ἐξπλωράτορές τινες ... κατὰ δὲ Ἕλλινας κατάσκοποι.

[6] Պատմ. Աղեքս. ՃՂԹ, էջ 114, 4—7։

[7] Անդ, ԾԴ, էջ 27. 3։ Յոյնն է. Ὃς ἄλλῳ κακὰ τεύχει ἑαυτῷ κακὸν τέτευχεν. (որ այլում չարիս նիւթէ, անձին իւրում չար նիւթեաց։)

— Աննշանակ չէ թերեւս որ այն տեղ՝ ուր կ՚ըսէ Կալլիսթենէս թէ Աղեքսանդր հրամայեց նշանալուծին "լուծում տալ" նորանշան դէպքի մը, Հայը կը գրէ. "Հրամայեաց զըններցանոնին առնել վասն նորա[1]։" Թերեւս հոս Հայոց դիւթիչներու սովորութեան ակնարկութիւն մը գտնել անպատեհ չըլլայ։ — Բնագրի անհաւատարմութիւն չենք կրնար համարել անուանց ազգայնացումն կամ Հայոց սովորական կամ այլուստ ծանօթ անուամբ թարգմանել, ինչպէս Արածանի, (յոյն՝ "Եփրատ".) Դկղաթ (յոյն՝ "Տիգրիս", որ եւ բնիկ հայերէն է) որ Ս. Գրոց թարգմանութենէն ծանօթ էր թարգմանչին. Կաւոս (յոյն՝ "Կիւրոս") որ սովորական ձեւ է ասորի բնագրէ եղած թարգմանութեանց. Արիվարդան (Ἀριοβαρζάνης, Արիոբարզան.) "Արեգ" քաղաք[2] (πόλις τοῦ ἡλίου.) եւն։ Նոյնպէս են նաեւ դից անուանք. զոր օր. "Անահիտ"[3] փոխանակ Ἥρα (Հերա.) զոր "Երա" կ՚ըսէ Հայը ուրիշ տեղ մը.[4] "Միհր" (Μίθρα, Միթրա)[5], "Արամազդ" (յոյն "Դիոս" եւն։)։ Այսպէս նաեւ յոյն բնագրին քանի մ՚անուանք թարգմանուած են, զոր օրինակ "Ցարկ" (Στοὰ), "Աղբեւք (Κοπρία.)[6] Պտղոմէոս "Փրկիչ"[7] (փխ. Սովտէր = Σωτὴρ) եւ վերջապէս նաեւ "Այծք" անուն քաղաքի[8] ուր յոյնը (Αἰγὰς) է։ Շատ դիւրաւ կրնար ըլլալ՝ որ միւս անուանց մէջ ալ երբեմն աւոր հակառակ մինչեւ անգամ յունական հոլովման վերջաւորութիւնք պահուէին.

---

[1] Պտմ. Աղեքս. ՄԾԹ, էջ 170, 22։ Յոյնն է. τὴν σύγκρισιν ποιήσασθαι.

[2] Հմմտ. Պտմ. Աղեքս. "Ցանկ անուանց։"

[3] Անդ, Ղ, էջ 42, 24 եւն։

[4] Անդ, ՄԾԳ, էջ 164, 4։

[5] Անդ, ՃԳ, էջ 49, 32 եւն. եւն։

[6] Երկուքն ալ՝ Պտմ. Աղեքս. ՁՋ, էջ 40, 20 եւ 26։ Վերջին անունը գրի սխալով "Աղբիւրք" եղած է։

[7] Պտմ. Աղեքս. ԽԷ, էջ 22, 13 եւ ՄԻԹ, էջ 151, 14։

[8] Անդ, ՄԹ, էջ 123, 2։ Յոյնն է. τὴν πόλιν ἔκτισα Αἰγὰς [B Αἶγας] προσονομάσας.

օրինակի համար "Թրասիլէոնտա"[1] (Θρασιλέοντα, հայցական։) Այսպիսի օրինակք քիչ չեն։ — Քանի մ'անգամ յիշեցինք նաեւ յետագայ գրչաց ըրած դոյզն յաւելմունքը։

Այս դոյզն փոփոխութիւնք չեն կրնար խախտել թարգմանչին հաւատարմութիւնը, որ կէտ առ կէտ միաբան է բնագրին։ Այս ըսել չէ՝ որ չենք կրնար գտնել հայերէն թարգմանութեանց յատուկ ճոխ ոճը նաեւ ասոր մէջ. վասն զի հայ թարգմանիչք՝ (գոնէ ինչ ինչ գրոց) սովորութիւն ըրած են շատ տեղ պարզ բնագիր մը ճոխ ասութիւններով ու ոճերով, նոյնանշան բառերու յորդութեամբ փոխել հայերէնի։ Ահա այսպիսի ճոխաբանութեանց քանի մ'օրինակ։ "Այժմ փախստական մազապուր՝ եղէ անապատ աւերակ" կ'ըսէ Դարեհ իւր անձին համար[2]. (νῦν φυγὰς ἐγενόμην ἔρημος.) — "Ապա սակաւ մի ուշաբեր եղեալ եւ ընդկանգնեալ եւ յինքն եկեալ եւ զգաստացեալ ի բազում հեծեծմանէն եւ ի դժնդակ հառաչմանէն եւ ի վտանգալից արտասուացն՝ ջանաց կազդուրիլ կալ ի վերայ մտացն, յետս ընկրկեալ զծփումն ալէկոծեալ վշտացն[3]։" Այս խօսքին շատ մեծ մասը ("ի բազում հեծեծմանէն" սկսեալ մինչեւ վերջը) չունի յոյն բնագիրը։ — "Այլ իբրեւ երկոցունց կողմանցն կոչ առնէր պատերազմողականն փող, բազում թնդիւն ի միմեանս բախեալ ճայթմունս ուժգին եւ դոփիւն սաստիկ առնէին, եւ կանչիւն եւ գոչումն զօրականացն ամպոց որոտումն գործէր, եւ մեծաւ յօժարութեամբ գումարտակեալ հասանէին ի գործ պատերազմին[4]։" Այս ամբողջ խօսքը ("բազում թնդ.իւն" կտորէն սկսեալ) չկայ բնագրին մէջ։ — Սակայն ի հարկէ այսպիսի ճոխացեալ կտորներ շատ յաճախ

---

[1] Պտմ. Աղեքս. ՄԻԴ, էջ 146, 14 եւն. եւն։
[2] Անդ, ՃԶԹ, էջ 106, 1։
[3] Անդ, ՃՂ, էջ 106, 10—14։
[4] Անդ, ՃԶԷ, էջ 104, 24—29։

չեն պատաՀիր։ Թերեւս այս տեղեր քիչ մ՚ալ տարբեր էր յոյն բնագիրը, զոր Թարգմանիչն առջեւ ունէր։ Կան գոնէ այնպիսի տեղեր, որ կրնային Թարգմանչէն փոփոխուած կարծուիլ, բայց չեն անշուշտ։ Այսպէս Դեմոսթենէս ընդդէմ խօսելով Դէմադէսի, որ Աղեքսանդրի դէմ պատերազմելու կը յորդորէր Աթենացիները եւ օրինակ կը բերէր որ Քսերքսէսի անթիւ բանակին յաղթեցին Յոյնք, կ՚ըսէ՝ թէ Քսերքսէս թէեւ մեծ ամբոխ զօրու ունէր, բայց “բարբարոս„ էր այն եւ “Յունաց Հանճարէն„ յաղթուեցաւ։ Նման իմաստով է նաեւ V օրինակը։ Ճիշդ Հոս Հայն բոլորովին ուրիշ իմաստ ունի[1]. “Քսերքսէս մեծ էր եւ Հզօր զօրականօք, այլ ի պարտութիւն մատնեցաւ յայնժամ. եւ էր մեզ ըստ կամաց մերոց իրք, զի նուաճեալ գտաւ Քսերքսէս։„ Հայը կարծես կ՚ուզէ ըսել՝ որ ըստ դիպաց յաղթուեցաւ Քսերքսէս, մինչդեռ յոյն բնագիրք պարծելով կը յիշեն “Հելլենացւոց Հանճարը։„ Ուրիշ տեղ մ՚ալ “քաջ„ ածականով մը պատուուած է Քսերքսէս Հայ Թարգմանութեան մէջ[2], զոր չունի յոյնը։ Կրնար այս ամենայն Հայոյն փոփոխութիւն Համարուիլ, որ իրենց տերանց եւ դրացեաց Պարսից Հաչակաւոր արքային Համբաւը խնայել ուզած ըլլայ։ Բայց այսպիսի դիտաւորութիւն մը ճշդիւ Ե դարուն Խորենացւոյն ընծայել անՀնար է։

Կրնայինք ենթադրել որ պիտի չպակսին այսպիսի ընդարձակ Թարգմանութեան մէջ նաեւ տեղեր, որ չափէն աւելի Հաւատարիմ գտնուած են բնագրին, եւ բառական կամ գրեթէ ստրկօրէն Թարգմանութիւն են յոյն բնագրին, որով նաեւ խորթ եւ շատ անգամ անիմանալի Հայ ընթերցողին։ Այսպիսեաց Հետ պէտք է յիշել նաեւ

[1] Պտմ. Աղեքս. ՃԽԲ, էջ 80, 1—4։ Յոյնն է. A. *Καίτοι Ξέρξης τὸ μὲν πλῆθος μέγας ἦν, ἀλλὰ βάρβαρος, καὶ ὑπὲρ τῆς τῶν Ἑλλήνων φρονήσεως ἡττήθη.*

[2] Անդ, ՃԽԱ, էջ 78, 19։

թարգմանութեան եթէ կամաւ եւ եթէ ակամայ եղած մանր անճշդութիւնքն։ Թէեւ կան այսպիսի տեղեր մեր թարգմանութեան մէջ, բայց բարեբախտութեամբ ցանցառ են։

Հոս կը դնենք ըստ իմիք նորանշան՝ բայց ոչ ամէնը խոտելի կտորներու քանի մ'օրինակներ։ Դեմոսթենէս կը պարսաւէ՝ թէ «Եսքինէս վարեցաւ խառնեալ բանիւ առ ձեզ[1].» (ἐχρήσατο κεκραμμένῳ λόγῳ.) այսինքն՝ անորոշ խօսքեր ըսաւ, ոչ յայտնապէս յորդորեց կռուելու եւ ոչ որոշութեամբ խորհուրդ տուաւ ետ կենալու։ Բայց այս բացատրութիւնը կրնայ գուցէ ընդունուիլ, ինչպէս որ «վարել» բային այս գործածութիւնք՝ նախնաբար թերեւս օտարութիւն՝ բաւական յաճախ են։ — «Տուեալ ըստ ամսոյ ամսոյ առն հաջոփի ոսկիանակս երիս եւ հեծելոյ ոսկիանակս հինգ։[2]» Հոս «հարուստ» կը նշանակէ պարզապէս «հետեւակ» զօրական, ինչպէս յաջորդ «հեծեալ» բառը կը ցուցընէ։ Բայց «հարուստ» բառին այս տեղ առած նորանշան կիրարկութիւնը բնագրէն ազդուած չերեւար. (A : ἀνδρὶ εὐώνῳ [i. e. πεζῷ] χρυσοῦς γ′.) վասն զի A հոս հակառակը կ'ըսէ «անարգ», «դոյզն» կոչելով փոխանակ «հարուստ»։ Այս տեղ «հարուստ» բառական չերեւար, ուստի եւ լոյս կը սփռէ մեր «հարուստ» գունդ, «հարստաձեռն» բանակ եւ նման ասութեանց։ — «Բերին ի վերայ նորա սրաւորեալ զձեռս[3].» Այս զուտ յունախօս թարգմանութիւն է. (ABC ἐπηνέχθησαν ξιφήρεις Δαρείῳ.) — «Զճանապարհս Պարսից զվաճառ առնել.[4]» լոկ բառացի թարգմանութիւն կ'երեւայ, եթէ չէ աղաւաղութիւն գրչաց։ Յոյնն է. τὰς δὲ ὁδοὺς Περσίδος ἐμπορεύεσθαι καὶ πραγματεύεσθαι. ուստի բուն

[1] Անդ, ճԽԲ, էջ 79, 16։
[2] Անդ, ճՂԳ. էջ 109, 17։
[3] Անդ, ճՂԵ, էջ 110, 19։
[4] Անդ, ճՂԹ, էջ 115, 18։

«զճանապարհս . . . երթալ եւ զվաճառ առնել» թարգմանուած էր։ — «Աչքն՝ մին խաժակն, աջն վայրաբերէր[1].» շատ բառական, բայց նաեւ նշանաւոր այնու՝ որ կը հաստատէ Berger գիտնականին առաջարկած ընթերցուածը, որ է τὸν μὲν δεξιὸν κατωφερῆ (փոխանակ κατοφερῆ, ինչպէս ունի BC.) ուր M կ'ախորժէր աւելի κυανοχόρην կարդալ, այսինքն՝ «կապուտաբիբ։» — Միտումն յաղթութեան ի վերին խնամոց լինի[2].» (ἡ ῥοπὴ τῆς νίκης.) ինչպէս նաեւ այլուր[3]. «Գիպուած բախտի ոչ կայ հաստատուն անցեալ ի վերայ միոյ միտման.» (հոս յոյնը τόπος կ'ըսէ։) — Թէեւ բառ առ բառ ըստ բնագրի, բայց եւ ոչ բոլորովին խորթ են այս ասութիւնք. «Զանձամբ քով լեր.» (περὶ σεαυτὸν γενοῦ.) «Զօրութիւն ունէր զիւրեաւ բազում» (πλείστην δύναμιν ...περὶ ἑαυτὸν ἔχων.)[4] — «Զարդարէ զմեհեանն յիւրմէ վերագրութենէ (A. ἐκ τῆς ἑαυτοῦ ἐπιγραφῆς)՝ Հօր աստուածոյ Ամոնի որդի Աղեքսանդրէ[5]»։ — «Ես նախկին գրեմ ձեզ . . . համառօտ ասեմ զգլուխսն[6]» (τὰ κεφάλαια.) այսինքն՝ էական կէտերը եւն. բայց «գլուխ» բառին նման նշանակութիւնք արդէն յաճախ են մեր մատենագրաց քով։ — «Ունելով ի ձեռն քարոզականն,»[7] այսինքն՝ դեսպանութեան նշան եղող գաւազան. (κηρύκιον)։ — Շատ նորանշան է այս խօսքը. «Պատրաստեալ զթագաւորական զգեստն, զպատուականն, զամբարտաւանն քան զամենայն թագաւորական տեսութիւն.»[8] (πάντα κόσμον τίμιον ὑπερήφανον ὑπὲρ πᾶσαν βασιλικὴν θεωρίαν.) Հոս վերջին

---

[1] Անդ, ԺԸ, էջ 15, 8։
[2] Անդ, ՃԷ, էջ 53, 17։
[3] Անդ, ԾԱ, էջ 25, 10։
[4] Անդ, Կ, էջ 29, 10 եւ ԿԷ, 31, 14։
[5] Անդ, ՀԷ, էջ 36, 10։
[6] Անդ, ՃԼԷ, էջ 75, 30։
[7] Անդ, ՃՀԳ, էջ 97, 5։
[8] Անդ, ՄԹ, էջ 122, 16։

ման բառացի թարգմանութիւն է. իսկ “ամբարհաւանն„՝ որ հոս չի յարմարիր, անյաջող թարգմանութիւն է ὑπερήφανος բառին, որ այս տեղ “մեծաշուք„ կամ նման բառով պէտք էր թարգմանուիլ։ — Վերջապէս բառական թարգմանութիւն են այս խօսքերը. “Հարցեալ զիւր խորհուրդն[1].„ (ἐξετάσας τὸν ἴδιον λογισμὸν) “Բարուց իմոց տէրն[2].„ (ὁ τῆς γνώμης μου δεσπότης.) “Եւ էր ահն եւ երկիւղն՝ որ ոչ ունէր զյապաղումն[3].„ (ὁ δὲ ἀγὼν ἀναβολὴν οὐκ ἔσχεν.) “Եղաք ի բնութեան ճանապարհն որ տանէր ի Պրասիական քաղաքն[4].„ (εἰς τὴν κατὰ φύσιν ὁδόν.) “Գեղեցկութիւն ամբարտաւան[5]„ (κάλλος ὑπερήφανον.) այլովքն հանդերձ։

Այս մասն դիտմամբ քիչ մ՚ընդարձակ գրինք։ Միայն ըսենք նաեւ՝ որ շատ բան կրնայ նախնաբար օտարութիւն ըլլալ, բայց ատոնց գոնէ ոմանք սովորական ըլլալով՝ կրնան ընդունելի ըլլալ. ուստի ոչ ամէնն՝ զոր յիշեցինք, պէտք է խոտելի կարծել։

Վերջապէս կան տեղեր ալ, որ ուրիշ ընթերցուած կ՚երեւան։ Աղեքսանդրի խորհուրդ կուտային որ մեծ քաղաք չշինէ, վասն զի մարդով լեցընել չի կրնար։ “Եւ եթէ լցցես, կը յաւելուն,[6] ոչ կարասցեն ցամաքք զառ ի պէտս հարկաւոր կերակրոցն մատուցանել։„ “Ցամաքք„ հոս այնչափ չի յարմարիր, եւ եթէ բնագիրը համեմատենք (A. ἔμποροι, թանգարականք. BC. ὑπηρέται, սպասաւորք.) կ՚իմանանք որ ἔμποροι բառին տեղ ἤπειροι (ցամաքք) կարդացեր է թարգմանիչը։ — “Ըն-

---

[1] Անդ, ՄԺԵ, էջ 133, 3։
[2] Անդ, ՄԻԳ, էջ 137, 24։
[3] Անդ, ՄԻԴ, էջ 142, 10։
[4] Անդ, էջ 143, 17։ Տպագիրը “բնութեան ճանապարհ„ կը կարդայ՝ սխալմամբ։
[5] Պտմ. Աղեքս. ՄԻԽ, էջ 149, 15։
[6] Անդ. Զ, էջ 38, 14։

ցեալ գնայ ընդ Ծուրքաղաքաւն երթալ[1]." յոյնը կ'ըսէ „ընդ Ասորիս" (παρὰ τὴν Συρίαν.) ուստի կ'երեւայ թէ Συρία անուան տեղ Τυρία կարդացեր է, եւ „Ծուրաստան" թարգմաներ՝ իբրեւ Τύρος (Ծուր) անուանէն ածանցեալ։ — Կալիսթենէս[2] կը գովէ զԻսմենիաս իբրեւ քաջ երգիչ, եւ իբրեւ „ի ձեռն այլոց հմտութեան քաջ լինել։" Այս անիմաստ խօսքը դիւրաւ կը մեկնուի. յոյնն է հոս διὰ τῆς τῶν αὐλῶν ἐμπειρίας ἀριστεύων, այսինքն՝ „Սրնգաց հմտութեամբ քաջ լեալ." ուրեմն թարգմանիչը αὐλῶν (սրնգայ) բառին տեղ, որ հոս ի դէպ է, ἄλλων (այլոց) տեսեր է։ — „Ցամաքաւ ցածոյ կամէր անցանել Աղեքսանդրոս, քանզի գիտեաց զառ մայրն եղեալ զԱնտիպատրեայ լուծանել զթշնամութիւն[3]։" Այս բոլորովին յունախօս խօսքին մէջ „գիտեաց" բառին այս կիրարկութիւնը յոյն բնագրին ազդեցութեամբ է, (բայց կարելի է նաեւ ուղղել „փիտեայց.") եւ „ցամաք" թարգմանութեան տեղ թերեւս աւելի լաւ էր „Եպիրոս" գրել. Ἤπειρος (V: Epirus) կը նշանակէ ցամաք կամ հաստատուն եւ միջերկրեայ երկիր։ — (ՃՀԷ, էջ 98, 25.) „Եւ արձակեալ ի վերայ յոյժ զարմանալիքն Դարեհի." բոլորովին յունախօս անյաջող կտոր մըն է. (Յոյնն է. ὁ δὲ ἀθροίσας τὸ πολὺ θαῦμα Δαρείου։) — Աղաւաղման բնագրի ալ օրինակ է հետեւեալը։ Աղեքսանդր բազմութիւն զօրաց առնլով՝ երբ որ „հուպ էր Կեչառոնն որ կոչի Տաւրոս[4]," նիզակը գետին ցցեց եւն։ Բոլոր յոյն օրինակք հոս կ'ըսեն. „անցեալ ընդ կոչեցեալն Տաւրոս." (ὑπερπεράσας

[1] Ընդ. ՃԲ. էջ 49, 26։
[2] Ընդ. ՃԻԸ. էջ 65, 15։
[3] Ընդ. ՄԿԱ. էջ 172, 16։ Յոյնն է. Εἰς Ἤπειρον διαδραμεῖν ἐβούλετο. Ἀλέξανδρος [δὲ], διαγνοὺς τὴν ἐνεστῶσαν πρὸς τὴν μητέρα Ἀντιπάτρου λῦσαι ἔχθραν.
[4] Պատմ. Աղեք. ՃԻ, էջ 59, 33։

τὸν καλούμενον Ταῦρον.) ուստի “Կերատոն„ անուն մը չէին գիտեր: Բայց V ունի հոս այսպէս. Tumque summo in culmine Tauri (ի գագաթան Տաւրոսի:) Ուրեմն կրնանք ըսել որ հայն առջեւ տեսեր է κέρας, կամ κεράτιον (եղջիւրք, կատար) կամ նման բառ մը, եւ նոյնն իբրեւ անուն գրեր է “Կերատոն.„ անոր համար բնագիրն էր անշուշտ. “եւ մինչդեռ հուպ էր ի կատար լերին որ կոչի Տաւրոս:„ — “Առաքեցի զՊրոտէոս զմեր, որ փաղփաղակի զլեզուս ձեր կտրեալ ի բաց բերցէ առ մեզ:[1]„ Այս տեղ A է. Πέπομφα πρότερος τὸν ἡμέτερον ἐν τάχει Λεόντην (cod. λόγον), այսինքն՝ “առաքեցի նախ զմեր փաղփաղակի զԼէոնտաս„ (ձեռագիր “զէոն:„) Ուրեմն Ե դարու աղաւաղ էր արդէն յոյն բնագիրը եւ Լէոնդաս անունը դուրս ինկած: Հայը πρότερον (“կանխաւ„ բառը) անուն ըրեր է. եւ կամ ըսելու ենք՝ որ հոս πρότερος անուան մ՚աղաւաղութիւն է: Բայց այս վերջինը հաւանական չէ, վասն զի նաեւ V կը կարդայ անունը Leontam: — “Եւ յԻսի գօգն շինեցի քաղաք Աղեքսանդրիա զԿատիսոն.[2]„ (ἔχτισα πόλιν Ἀλεξάνδρειαν τὴν κατὰ Ἰσσόν,) այսինքն՝ “զԱղեքսանդրիա՝ որ է վերայ Իսոնի.„ ուստի յոյն նախադրութիւնն իսկ օրինակուած է կամաւ, ինչպէս կը ցուցընէ նոյն անուան կրկնութիւնը: — “Եւ զմնացեալ ոսկերս նոցա ի Սպետրիդաս տանել.„[3] (τὰ περιλειφθέντα αὐτῶν ὀστᾶ εἰς τὰς πατρίδας αὐτῶν πεμφθῆναι,) այսինքն՝ “զոսկերս նոցա ի հայրենիս տանել.„ ուստի հայը εἰς πατρίδα իբրեւ անուն Իսպետրիդաս փոխեր է. (այսպէս պէտք է գրել անշուշտ՝ փոխանակ “ի Սպետրիադա:„) Եւ կամ պէտք է ըսել՝ որ հոս յունին մէջ նման անուն մը պէտք է ուղղել:

---

[1] Անդ. ՃԼԹ. էջ 76, 16:
[2] Անդ. ՄԹ. էջ 123, 3:
[3] Անդ. էջ 125, 1:

Կրնայինք այսպիսի կտորներ յիշել. բայց ասոնք կրնան նաեւ ուրիշ մեկնութիւն գտնել: Թէ յոյն եւ թէ հայ բնագիրք շատ աղաւաղուած են, եւ այսպիսի խնդրական կտորներու լեգէոն մը կրնայինք գտնել հոս: Զոր օրինակ այս խօսքը[1]. «Եւ է յիմմէ տեսութենէ ընտանեացն բաժանումն ցուցանելով:» Այս զուտ յունախօս խօսքին մէջ «հնածու» անսովոր բառը ցայս որ առնուած էր իբր «նախկին եւ գլխաւոր առաջնորդ» նշանակութեամբ եւ իբրեւ «նիւթական թարգմանութիւն յն. բառիս ἀρχηγὸς» (Հայկազնեան Բառարան:) Սակայն «հնածու» գրի սխալ մըն է «խնամածու» բառին, ինչպէս բնագրին τῶν ἐπιμελητῶν ասութիւնը կը ցուցնէ:

Աղեքսանդրի մեռած օրը «նուիրած» կոչուեցաւ[2]. Աղեքսանդրի «մանուկ» մեռնելուն համար: Առեղծուած մըն է հոս «նուիրած». յոյնն է νεομηνία (ամսագլուխ, նորալուսին) ըստ առաջարկութեան M ի. (BC νεομαχίαν, L: νεόμαγα.) ասորին լաւ եւս՝ «մանկապան» կ'ըսէ: — «Լուցին զարփատոյ ապարանս[3].» եթէ չէ աղաւաղութիւն, թարգմանութեան սխալ է, վասն զի պէտք էր ըլլալ «զարուարձանս» (τὰ προάστεια.) — «Կին սմա (Արտաւերոնի) շնկանէն կղուատր Փիլիպպոսի[4].» Այս տեղ յոյն բնագրէն չենք կրնար իմանալ թէ «Կիւանէ» ուղիղ է թէ ոչ. (յոյնն է՝ καὶ γυναῖκα τούτῳ κοινὴν τὴν Φιλίππου θυγατέρα.) հոս κοινὴν չի կրնար ըլլալ, եթէ անուան մ'աղաւաղութիւն չէ. իսկ V չունի հոս անուն: Գուցէ հոս իրաւունք ունի հայն, թէեւ անունն աղաւաղած ըլլայ: — Նոյնպէս է այս յաջորդը[5]. «Ո՞չ ահա

[1] Անդ, ՄՀԲ, էջ 179, 9:
[2] Պտմ. Աղեքս. ՄՁՋ, էջ 186, 17:
[3] Անդ, ՄԼԳ, էջ 153, 6:
[4] Անդ, ՄՀԴ, էջ 179, 30:
[5] Անդ, ՃԿԵ, էջ 92, 30:

քերեցի զԱնկուրան, զ՚ի յարեւելից կողմանէ Աստուածս ի մուտս արեւու բնակեցուցանել։» Հաս լաւ կրնայ ըլլալ ամբողջ խօսքը. բայց հոս յոյնն ուրիշ է բոլորովին, այսինքն՝ Ἐν τύχῃ οὐχ οὕτως ἤδη ἕξεις ἂν τὴν ἄγκυραν, ὥστε οὖν ἀπ᾽ ἀνατολῶν θεοὺς εἰς δύσμας κατοικεῖν. (ոչ այնպէս ըստ բախտի ունիցիս արդեօք զօգնութիւն, մինչեւ զդիս եւս յարեւելից յարեւմուտս տանել բնակեցուցանել։) Յայտնի կը տեսնուի հոս ἄγκυραν (զխարիսխ, զօգնութիւն) բառին «Անկուրան» անուան հետ ունեցած կապը։ Անշուշտ հայն է ուղիղը. բայց զարմանալի է այն ատեն որ V ալ չէ տեսեր այսպիսի անուն մը, եւ V ի ընթերցուածը յոյնին աւելի նման է քան հայոյն[1]։ — Երբ Դեմոսթենէս խօսեցաւ՝ ամէնքը հաւանեցան, կ՚ըսէ Կալիսթենէս[2], եւ նաեւ «այլք ամփիքտիոնացիքն վարկանէին։» Անիմաստ է այս բառը, եւ կրնար գուցէ ըսուիլ որ սխալ իմաստով առեր է թարգմանիչը ἐψηφίσαντο (հաշուէին. վճռէին, որոշէին. հաւանէին, օգնական լինէին վճռով եւն) բառը. բայց ո՞վ կրնայ ըսել որ նախնաբար «արժան վարկանէին» կամ նման բան մը չէր գրուած։ — «Փիլիպպոս զԱղեքսանդրոս ոչ ինչ դժուարաւ խորհեցաւ[3].» անիմաստ է նաեւ այս որ ըստ յոյնին պիտի ըլլար «Փիլիպպոս ոչ ինչ չառակար զԱղեքսանդրէ խորհեցի.» (ὅτι Φίλιππος κατὰ Ἀλεξάνδρου οὐδὲν χαλεπὸν ἐβουλεύσατο.) Աղաւաղութիւն է անշուշտ աւելի քան անյաջող թարգմանութիւն այս ամբողջն. ինչպէս խնդրական է՝ «Գրեաց որ մօտն անդր նախարարք էին պիտակաց այլ[4].» գուցէ թէ անուան մը աղաւաղում է այս. վասն զի A կը կարդայ այս տեղ ἔγραψεν τῷ

[1] V: Non igitur adeo pertaesos deos regni mei et orientis sui esse sedis existimo, ut ad occidua tecum pariter migraturi sint.

[2] Պատմ. Աղեքս. ճԽԳ. էջ 81, 10։

[3] Անդ. ճԾԷ. էջ 89, 16։

[4] Անդ. ճԿԹ. էջ 95, 3։

ἔγγιστα σατράπῃ Πηνγάλῳ: [այսպէս]. որով "Պիտակաց այլ" եւ Πηνγάλῳ երկուքն ալ աղաւաղանուն ըլլալուեն: — "Զեղխեալ Ծուէտանա բարուք[1]." (յոյն՝ φρενοβλαβεῖς γνώμας) ուստի անշուշտ "միտ" եւ "վնաս" բառեր կան աղաւաղուած այս բառին մէջ, ինչպէս կ'ըսենք նաեւ "վնասեալ" կամ "պակաս ի մտաց" եւն: — "Պատեալ Խնձնաքոյս քարամբք.[2]" դժուար է սոր ուղիղը գտնել, ուր ABC չունին նոյն խօսքը, եւ լոկ V ունի "ամուր պարսպաւ". (muro quam validissimo est circumsepta.) — "Եւ Հասեալ ի Պարատանքետ եկի ի Հերակլեայ արձանս." "Գայաք ի Պարատանքետ... որ կոչի Թերմոդոն գետ:[3]" Յայտնապէս անտեղի է "Պարասանգաս" անունը, որուն տեղ յոյնն է միշտ ἀνὰ παρασάγγας ("փարսախս") որ շատ աւելի կը պատշաճի, բայց միայն որ երկու տեղն ալ փարսախի թիւը կը պակսի, ինչպէս նշանակուած է սաղով: Յունին փարսախ բառը "Պարասանգաս" բրած է Հայը, ինչպէս կ'երեւայ: — ՄԸ, 122, 2 "առաքեցի բերել ձեզ զԿարանոս Մակեդոնացին." յունարէնին մէջ անուն է աւելի, վասն զի է ἀποπέπομφα κομίζοντα Κάρανον. (բառ առ բառ՝ "առաքեցի բերող զԿարանոն:") Հ ալ կրնայ ըլլալ այսպէս, բայց միայն "Մակեդոնական" վերադիրը չի յարմարիր անուան մը: Յայս վայր տեսածնիս կը հաստատէ նաեւ այն՝ որ շատ աղաւաղ են Վարուց Աղեքսանդրի Հայ օրինակք, որուն վրայ քիչ մ'ետքն աւելի ընդարձակ կը խօսինք: Այժմ տեսնենք Համառօտի գրոյս լեզուն:

Լեզուի կողմանէ առանձին ուշադրութեան արժանի գործք մըն է Կալիսթենէս: Հինգերորդդարու վերջին կիսուն այն գրութեանց կարգէն է,

[1] Անդ, ՃԴԵ, էջ 110, 12:
[2] Անդ, ՄԻԵ, էջ 149, 8:
[3] Անդ, ՄԾԸ, էջ 167, 4 եւ 17:

որոնք թէեւ չեն պահած Մեսրոպեան նախնական դպրոցին անխառն նկարագիրը, բայց որոնց քով լեզուն իւր կորովը պահած է. ուստի այն գրքերէն՝ որոնց խումբն “արծաթի դարու„ անուամբ կը յորջորջենք: Նաեւ ասոնց մէջ եթէ ոչ առաջին, գոնէ շատ կարեւոր տեղ կը բռնէ, եւ աւելի կանոնաւոր ու կտրուկ լեզու մ՚ունի: Բազմաթիւ նորանոր բառեր կը գտնենք գրութեանս մէջ,[1] որոնք կամ այնչափ հնութեամբ այլուր դեռ չեն գտնուած, (— ի հարկէ որչափ մեզ ծանօթ է. —) կամ շատ ցանցառ հնոց, այսինքն՝ Ե դարու գրոց[2], որոնց հետ միայն

---

[1] Օրինակի աղագաւ՝ ԽԷ, էջ 22, 17 “խրխնջեաց... խոխոջն„ (φοβερὸν, ահագին:) — ԾԴ, 26, 30 “անկեալ արտախէն կառքն„. (καταπίπτει ὅλως τὸ ἅρμα, ամկանին... կառք.) եթէ չէ աղաւաղութիւն: — ՃԹ, 54, 28 “ճանկարան„ (κρόταλον, բոժոժ): — ՃԺ, 55, 17 “սնգմայ„ (κόραξ), բայց այս յունարէն է: — ՃԻԹ, 68, 9 “մաղաղեցաւ.„ (καθηλώθη). 69, 24 “գեղձեցաւ„ (ἱκετεύσας, աղերսեալ): — ՃԼԱ, 70, 8 “հուրբ մաղեցից... մոխրեցից զարմատս:„ Հոս “մաղել„ շատ ապահով չէ: — ՃԼԴ, 72, 21 “մի ոմն ի մարտիկ ֆոռշտրընկերացն.„ (εἷς τῶν ἀθλητῶν, մի ոմն յըմբշամարտաց:) — ՄԹ, 127, 11 “գերբրի„ (ὕδνον): — ՄԻԴ, 141, 14 եւ յաճախ “լիկ„ (= լիճ): — ՄԿԶ, 175, 3 “ծողփեալ ընդունայն ործալով,„ (որ դեռ խնդրական է,) եւ ՄԿԷ, 175, 9 “լեզուն պործեցաւ.„ (իբր՝ փոթոթիլ.) եւն: — Յիշելու է նաեւ այս բառերը. ԺԶ, 9, 30 “մօրուարձակք„ (γένειον, ծնօտք.) ԺԷ. 10, 26 “խոյեղջիւր„ (κριοκέρατος.) ԻԶ, 14, 4 “բացակտուր„ (ἀπόκοπος, կուրտ.) դարձեալ՝ ԾԵ, 27, 9 “տաճարպայարդար.„ ՀԹ, 37, 18 “Նրբափողոցք.. վարազափողոցք.„ ՃԺԳ. 57, 11 “կոուածակատ.„ ՃԻԹ. 67, 20 “կշռապող„ եւ 69, 10 “արդնակիր.„ ՃՁ, 100, 23 “ընդկանգնել.„ ՃՂԹ, 114, 12 “ամէնուրհի„ (= դիցուհի.) ՄԸ, 122, 5 “ամենայականող.„ ՄԻԷ, 150, 19 “կուրբանոց.„ (στατὴρ, կշռորդ, սատեր.) ՄԾԲ, 162, 23 “տօնս ամէնժողովս.„ (πανήγυρις, տօն, կցուրդք.) ՄԾԸ, 168, 30 “լորանոց„ (ὀρτυγοτροφεῖον.) ՄԾԵ, 165, 16 “փիղք մարամուտք.„ ՄՀԶ, 181, 13 “կակղանալիք„. եւն եւն:

[2] Պատմ. Աղեքս. Գ, 3, 22 “ընդդոգել:„ — ԾԱ, 25, 21 եւն “աղաջուր„ (իբր՝ ժանտ.) “տողուք„ (թուք, խուխ.) “ժմտել:„ — ԾԷ, 28, 2 “երկապաշտեայ հացկատակ:„ — ՂԱ, 43, 10 “յականել.„ (նայիլ): — ՃԼԲ, 71, 10 “զառամալոյն կայր.„ (երդիքին վրան կեցած էր:) — ՃՁԲ, 101, 24 “շմորեցուցանել.„ (չփոթեցընել.) “ըմպանակ„ (բա-

պէտք ենք համեմատել, երբ խնդիրը հնագոյն լեզուի համար է։ Մասնաւոր մտադրութիւն կը գրգռեն կարգ մը բառերու քովերովին նոր կամ հնագոյն, բայց անսովոր իմաստով գործածուիլն, զորոնք կամայական չեն կրնար ըսել դիւրաւ. զոր օր. (ԺԳ, 8, 17) “շինուած„ իբրեւ “տիեզերք„ (οἰκουμένη). եւ այլ այսպիսիք[1]։ Բայց սատի շատ բան, որ յետնոց

---

ժակ։) — ՃԴԶ. 111, 20 եւն “տխրեալ ծմրէր.„ եւ “տխատէր տրամէր։„ — ՃԴԹ, 115, 10 “ապաշէն.„ եւ 116, 24 “առցէ.. պատմուճան պարսիկ ոսփոփ։„ — Այսպէս նաեւ ՄԺԲ, 130, 29 “ահել.„ ՄԻԴ, 141, 5 “ցմախ.„ ՄԾԶ, 165, 32 “ի ձմերուես մատնել.„ ՄՀԴ, 180, 9 “տեառ.„ ՄՁԱ, 184, 2 “շամանդաղ.„ եւ ՄԻԳ, 135, 25 եւ այլուր “բարձեալ թողեալ„ եւն եւն։

[1] Ա, 2, 9 “մկրատեր զնաւս.„ (ընկղմէր։) — ԼԳ, 17, 22 “բաժ.„ (μοῖρα, ճակատագիր.) եւ “բաժանել.„ (μοιρολογέω, ճակատագիրը վճռել՝ գուշակել։) — ՃԹ, 54, 28 “կոճ.„ (ἀστράγαλος, վէգ։) — ՃԺԴ, 57, 20 “հրամայեաց հանգրէճել փողահարաց ազդ առնել պատերազմական փողոք...„ (Յոյնն է. σημαίνειν [ἐκέλευσε] τοὺς σαλπιστὰς [τὸ] πολεμικὸν μέλος. Հրամայեաց նշան առնել երգովք պատերազմականաց)։ — ՁԱ, 38, 29 “հրաման տայ փոխել բնակչացն, եւ ի գեօղ երթալ ի բացեայ իբրեւ երեսուն մղոնաւ.„ (καὶ κελεύει τοῖς κατοικοῦσι... μεταβαίνειν κτλ. Հրամայեաց բնակչաց... անցանել երթալ եւն,։ “փոխել„ հոս “տեղի տալ, քաշուիլ„ իմաստով ընտանեկան բացատրութիւն մը կ'երեւայ։ — ՃԻԹ, 67, 4 “զքո նախարարս բերելով զատուածածն հնձանեան փողաւորի Դիոնեսի„ եւն։ Հոս յոյնն թերի եւ աղաւաղ է, բայց “նախարար„ բառն, եթէ չէ աղաւաղութիւն, դրուած է իբր թարգմանութիւն προπάτορας (զնախահարս) բառին։ — ՃԽԲ, 79, 9 եւ այլուր “խնջոյ„ կամ “ամբոխ խնջոյի„ իբրեւ աղմկալից բազմութիւն, ամբոխ (.յոյնը՝ θρόος). — ՃԼԶ. 74, 14 “աշճկան մեհեան„ (τὸ τῆς Θεοῦ τέμενος, դիցուհւոյն տաճար։) — ՄԺ, 129, 16 “անօղոյ եւ ամայի վայր.„ իբր՝ անշէն։ — ՄԿԹ, 176, 25 “Աղեքսանդրի իրացն ընկալուող փոխանորդ.„ (Ἀλεξάνδρου πραγμάτων διάδοχος, Աղեքսանդրի իրացն յաջորդ։) — Պէտք յիշել նաեւ հետեւեալները. ՃՁԳ, 102, 15 “հայեր տեսանել կոռկոծս անձին իւրում.„ (σημεῖον, նշան, կանխանշանակ ապագայի համար։) ՃՁԹ, 106, 6 “յողջամոուղջս ի վայր իջուցանէ.„ (εἰς ζόφον [L ᾅδην] κατάγει,) այսինքն՝ յանդունդս. ՃԴԳ, 109, 12 “իրաւունք են քեզ սրտմտել ի վերայ իրացս զոր կրեցի.„ (ἀγανακτῆσαι, ցաւիլ, տրտմիլ.) եւ վերջապէս՝ ՄԿԸ, 176, 10 “փոքր նշխէհէ քեզ իմոց փառացս բառնալ ի քէն.„ եւ այլ նմանները։

քով միայն յաճախ կը գտնենք, եւ որոնք թերեւս նորագոյն բառ կը կարծուէին, մեծ հնութիւն կ'առնուն Կալիսթենեայ վկայութեամբ[1]։ Մեծ ճարտարութեամբ յօրինուած են անթիւ ուսումնական բառեր, որոնք անհրաժեշտ են Կալիսթենեայ նման յոյն գրքի մը թարգմանութեան մէջ. այսպէս ի մասնաւորի անասնոց, տնկոց եւ այլ այսպիսի բառեր, զոր օր. ունդեղջիւր, գիշերաղուէս, եզնախոյ, զուարակափիղ, շնակաքաւ եւն եւն, որոնք ամէն քայլափոխին կը հանդիպին[2]։ Քիչ կայ տեղ, ուր անյարմար բառեր գնելով՝ մթին կամ անյաջող նախադասութիւն մը ծնած է։

Հին լեզուի կենդանութիւնը կ'երեւայ գլխաւորաբար ասութեանց եւ այլ ձեւերու առատ պէսպիսութեան մէջ։ Այս կողմանէ ալ աննշանակ չէ մեր այս գիրքը, որ ճոխ է շատ մը հին ու բնիկ հայ դարձուածներով։[3] Ասոնց եթէ մաս մը չերեւայ

[1] Քանի մը հատ կը յիշենք հոս։ Գ, 3, 8 "համգունդ.„ ԾԱ, 24, 27 եւ այլուր "դիպուած բաստի.„ ՁԷ, 41, 20 "լորտու.„ ՃՁԱ, 101, 15 "ընդկողմնեալ.„ ՄԻԴ, 141, 30 "չէկ.„ ՄԽԷ, 160, 4 "բալ.„ ՄԾԹ, 170, 8 "խինձ.„ եւն եւն։

[2] Մասնաւոր մատղրութեան արժանի են ի մէջ այլոց. ՄԻԴ, 142, 20 "բռնաժանի.„ (ὀδοντοτύραννος, Odontotyrranus.) ՄԻԷ, 150, 27 "ցուպք սեաւք հնդիկք.„ (այսինքն՝ եբենոս. յոյնն է՝ ըստ A ῥάβδοι ἐβέννιναι, BC ἐβελλίνας). ՄԼԷ, 155, 25 "խոյակքն հնդէկ փայլ արտափայլ փղափիւն.„ (τὰς κεφαλίδας ἐλεφαντίνοις χροιαῖς ἀπαστράποντες, խոյակքն փղափիւն իբրեւ գեղեփանտական [փղական] գոյն.) եւ 155, 29 "ծիրանի քար.„ (ἐκ πορφυρίτου λίθου, պորփիւր.) ՄԼԹ, 156, 16 "օդագոյն քար.„ (ἐξ ἀερίτου λίτου, B ἀργίτου λ., C ἀρρήτου λ. V nam lychnitem etiam vocant, այսինքն՝ սպիտակ մարմարի տեսակ մը.) ՄԻԷ, 150, 16 "բերին քեղ.. պոպկոյ երկերիւր.„ (Ψιττάκους s, մինչ Հայկազնեան Բառագիրք սխալմամբ կը կարծէն որ հոս "պապկայ„ յունին σφίγγας խօսքին կը համապատասխանէ։) Բնական գիտութեանց յատուկ բառերու մեծ բազմութիւն ունի Կալիսթենէս։

[3] Զոր օրինակ. Բ, 2, 25 "որք միանգամ յարեւ[illegible]կան ազգ.„ (ἐπὶ τῆς ἀνατολῆς, ինչպէս նաեւ այլ ՕՕ. ունին "յարեւկոյս„ կամ "յարեւելս կոյս.„ գուցէ մեր-

այնչափ ըստ ճաշակի նախնական մեսրոպեան լեզուի եւ մաս մ'ալ ոչ բոլորովին նոր, սակայն շատ մեծ թուով կը մնան տակաւին գրոցս յատուկ ասութիւնք, ինչպէս նաեւ այլ քերականական ոճք[1]:

---

ջինս է ուղղագոյն ընթերցուածն։) — ԺԳ, 8, 1 "Հանդերձ եղջիւրովքն խուլամոյին.,, (σὺν τοῖς κέρασι τῶν κροτάφων αὐτοῦ, Հանդերձ եղջիւրովքն ծամելեաց նորա)։ — ՃԵ, 51, 17 "Հրաման ետ պէտս-յետս զհրեշտական կապել։,, — ՃԺԴ, 57, 27 "բախեալ զմիմեանս... մեծ ժամս ,, (πολὺν χρόνον.) — ՃԺԶ. 58, 29 "ձի կալեալ բազում եւ նոր՝ հանգոյց է հանգոյց փախչէր.,, (ἐκ διαδοχῆς, յաջորդաբար։) — ՃՁԱ, 101, 11 "ոչ է վրէպ ի փիլիպեանն.,, որ սակայն ապահով ընթերցուածք մը չէ. (յոյնն է լսա BC: Οὗτός ἐστιν ὁ τοῦ Φιλίππου παῖς. Սա է որդի Փիլիպպոսի.) եւ 101, 13 "է թող ուրեք գնայցեն շրջիցին.,, խնդրական է նաեւ այս. (յոյնն է BC: κἂν ἐν σκότει διάγωσιν, եթէ եւ ի խաւարի շրջիցին։) — ՄԹ, 126, 18 "դոյգ գոյն քարանց ընդունէին.,, ՃԺԵ, 58, 19 "յառաջ ժամանակս.,, ՄԾԳ, 164, 10 "ի սարուցն գլուխ.,, եւն եւն։ Ի հարկէ այսպիսիք յատուկ չեն միայն այս գրոցս, եւ արդէն հոս յիշուածներէն ոմանք կը գտնուին Ե. դարու ուրիշ մատենագրաց քով։

[1] Այսպէս՝ ԺԷ, 10, 24 "Նիզակակուր զաշխարհս եւ զքաղաքս արարեալ.,, (δορυαλώτους τὰς πόλεις ποιούμενος, տիրեալ նիզակաւ։) — ՀԸ, 37, 2 "տարապատական եղեւ քեզ.,, (παράτονόν σοι γέγονεν, նետը նպատակին չհանդիպեցուցիր)։ — Զ, 4, 20 "ի թագուհին մածուցեալ կառուցաւ առանց թափելոյ.,, եւ նաեւ՝ ՃԼԱ, 69, 27 "ի նմա յերկար զակն կառուցեալ։,, — ՃԺԲ, 56, 20 "չարահաւ խորհեցեալ վասն այսորիկ տեսանեմ զքեզ.,, (κάκιστα οὖν πεφρόνηκας.) — ՃԼԱ. 70, 20 "քաջութիւն ձեր ամօթ-խօթ եղեւ.,, (κατῃσχύνθη.) — ՃԽԱ, 77, 13 "ընդ բերան եհար զեսքինէս.,, այսինքն՝ խօսքն ընդհատեց. (յոյնն է՝ καὶ ἀποκόπτει τὸν Αἰσχίνην.) Այս "հարկանել,, բայը հնոց քով անթիւ ասութիւններ կը կազմէ, որոնք առատութեամբ կը գտնուին նաեւ կալիսթենեայ մէջ, զոր օր. ՃՀԷ, 99, 7 "զիմեանց բութն հարեալ ի հաշիւ գնացից.,, ՃՂԵ, 111, 4 "զճախոյ զծունկն յոգինն նորա հարեալ եւ յետկոյս բեկեալ.,, ՄԾԴ, 165, 6 "բազմաց ի մանկտւոյն ոտքն թրջեալ հարան վասն բոկութեան.,, ՄԾԹ, 171, 8 "տեսեալ զնա այրքան հարեալ յանցիցն.,, եւն եւն։ — ՃԾԵ, 88, 14 "ի բաց թափել ի նմանէ զախտ հիւանդութեան.,, հմմտ. նաեւ՝ ՃԾԶ, 89, 5 "ի բաց թափեաց ըմպելով զդեղն.,, ուր նշանակութիւնը տարբեր է, այսինքն՝ բաժակը պարպեց խմելով. (յոյնն է՝ καὶ εὐθέως ἔπιε, եւ վաղվաղակի ըմպէր։) Իսկ ՄԾԹ, 171, 2 "Սոքա զայս ասացեալ, զխարդ եւ էր՝ թափեցան ի նմանէ.,, գեղեցիկ խօսք մըն է, մինչ յոյնը չոր ու

Մեծ մաս մ՚ալ հարկաւ աղաւաղութեան արդիւնք է պարզապէս[1]։

Լեզուի կանոնաւորութեան կողմանէ ունի թէեւ ոչ սակաւաթիւ խոտորումներ հնագոյն մեսրոպեան լեզուէն, բայց ընդհանրապէս կանոնաւոր է։ Ոչ-մեսրոպեան ոճեր ու բառեր, զոր օր. ըստ յունին յօրինուածներ ("արտ, գեր, վեր„ եւ նման մասնիկամբք բաղադրութիւնք եւն) պակաս չեն, բայց եւ ոչ բազմաթիւ։ Քիչ մ՚աւելի են մեսրոպեանց ոչ այնչափ հաճոյ դարձուածքներ, եւ երբեմն նաեւ անքերական կտորներ[2]։ Բայց այսպիսիք քիչ

---

ցամաք "զայս ասացեալ՝ ազատեցան„ կ՚ըսէ. (καὶ οἱ μὲν ταῦτα εἰπόντες ἀπηλλάγησαν.) — ՃՋ, 100, 19 "իբրեւ ի մէջ էին գինարբուաց.„ ինչպէս նաեւ՝ ՄԺԴ, 131, 24 "արեալ ի քաջալերութիւն զզօրն.„ ՄԹ, 124, 15 "անցաք մնացաք„ եւն։ — ՄԿԲ, 173, 12 "ի մտոյ առ ձեռն ունելով զբարկութիւն։„ — ՄԿԶ, 174, 17 "բան արկին ի ներքս.„ այսինքն՝ խօսք նետեցին. որպէս զի երկարի խօսակցութիւնը եւն. (յոյնն է՝ λόγου δὲ προσπεσόντος.) — ՄԾԶ, 166, 1 "ի նոյն երկիր եթէ ոք զինքն փող ժուժասցի.„ թէեւ այսպիսիք նախնաբար օտարաբանութիւնք են սեմական լեզուներէ։ — ՄՀԶ, 181, 17 "խնդրեալ ջուր յողողել զբերան.„ ինչպէս այսօր իսկ ռամիկը "ողվել„ կ՚ըսէ բերանը ջրով. — ՄՀԷ, 182, 19 "հանդերձին ներքոյ առնէր զերեսն եւ գաղտաբար արտասուէր.„ եւ վերջապէս ՄԿԸ, 175, 27 "անցոյց զճրագն, եւ ի դուրս ելեալ ի չորս գնայր առ գետով.„ (յոյնը վերջինը կը բացատրէ այսպէս. καὶ τὰς θύρας ἐξελθὼν τετραποδιστὶ.) Այսչափն ալ կը բաւէ ցուցընելու գրոցս լեզուին կորովը։

[1] Զոր օր. ՁԵ, 40, 4 "վարեալ Աղեքսանդրի.„ անշուշտ "վարկանել„ պիտի ըլլայ եւ ոչ "վարել.„ յոյնը "արտամեալ„ կ՚ըսէ, թէեւ աղաւաղեալ է այս տեղ։ — ՃՋԴ, 103, 4 "ոչ կարացին անդէն հետի յալ.„ անշուշտ պիտի ըլլայ "զհետ գալ.„ (Զորս ՕՕ. "զհետ երթալ.„) յոյնը διαπερᾶσαι (անցնիլ՝ գետը) կ՚ըսէ։ — ՃՂԵ, 110, 32 "սրովք իւրեանց վանեցին զնա.„ ուր խօսքն է թէ սպաննեցին զԴարեհ երկու դաւադիրք (յոյնն է՝ φόνοις αὐτὸν ἀμύναντο, սրովք լուծին զվրէժ իւրեանց։) Այսպիսի աղաւաղութեանց վրայ յետոյ կը խօսինք։

[2] Օրինակի աղագաւ՝ ԻԳ, 13, 9 "Իսկ Անտիփոնոս, որ ատ—անչէն փեղէկո—բի—նել սատուծոյ կամօքն ճշեցեալ եղե—յանձն իւր, ասէ։„ Այս խօսքն սարսափանութեան կերպարանք մ՚առած է, բայց բուն յոյն բնագրէն պզտուեր է. (ὁ δὲ σημειολύτης εἶπεν ἐμπνευσθεὶς ὑπὸ τοῦ θεοῦ.)

շատ ամէն գրոց մէջ կան։ Քիչ մ՚աւելի մտադրութեան արժանի են անկանոն ձեւեր, թէեւ ասոնց ալ մեծ մասն աղաւաղութիւն ըսելու է։ Ո՞վ կրնայ երաշխաւորել "յականջում," "անտից," "Հասայ" եւ նման ընթերցմունք։[1] Բայց ասով չենք կրնար ամէն բան ալ՝ որ ընտանեկան կամ նաեւ ռամիկ լեզուի նկարագիր ունի, առանց քննելու մերժել։ Այնպիսի ձեւեր մեսրոպեան քանի մը գրոց մէջ ալ շատ յաճախ են. Խոտելու չենք ուստի "ալի," "երեքպաշիք," "որպէս որ" եւ նմանները, մանաւանդ "որ" յարաբերականին գործածութիւնքն, ընդունելութիւն անցելոյն ունեցած ընտանեկան կիրարկութիւնք եւն միայն անոր համար՝ որ ռամիկ ձեւեր են աւելի քան ոսկեդարեան գրաւոր լեզուի[2]։ Այսպիսիք աննշանակ են իրենց սակաւու-

---

— ՄԻԴ, 141, 31 "Եւ աՀա ամանց կորուսելոց եւ զմահկանց վաղվաղակի լալիւնս եւ կառաչ ոչ սակաւ ունէր զմեզ.," եւ անթիւ նմաններ, եթէ չեն աղաւաղութիւն։ — ՃԺԹ, 59, 26 "Զընդ-ձեռ զգունդդ եւ զօրութիւնդ՝ զոր ունիս, ի մօտ լեր առ մեզ.," այս անքերական խօսքը բառական թարգմանութիւն է. (τὰς ὑπό σε φάλαγγας καὶ πᾶσαν δύναμιν ἔχων [cod. ἔχοντα] τάχιον παραγενοῦ σὺν αὐταῖς πρὸς ἡμᾶς.) Համա. ՄԾԹ, 171, 15 "պաՀանջէր ի նմանէ զյաղագս սորա բանն.," եւ նմաններ։ — Բառս չքարդելով յառաջ եկած մթութեան օրինակ է՝ ՃԻԸ, 65, 11 "իմանիաս.. փողոյն-նուագաւոր-երգոց տեղեակ.," փխ. "արնգաՀարութեան տեղեակ.," (τῆς αὐλομελῳδίας ἔμπειρος.) — Դարձեալ՝ ՃՂԹ, 114, 22 "Իւրաքանչիւր ոք որում կարգի Հաւանելում ի վարս կենցաղոյս կացցէ պարսիկ.," որ անյաջող խօսք մըն է. ՄԺԲ, 131, 8 "զերկիր պարարտ վայելեմք.," եւն եւն։

[1] Համմ. ՃՀԷ, 98, 21 "տարերուք." ՄԺԲ, 131, 9 "երթ ժողովեցիր." եւ ՄԽԱ, 158, 3 "կոչեցիր Անտիգոնոս." (երկուքն ալ Հրամայական.) ՃԺԽ, 58, 3 "զդարեՀացիքն." ՄԹ, 126, 21 "ջուրբ աղբերացով." ՄԻԴ, 147, 3 "յականջում տասցին ինձ.," (որ գրի սխալ է փխ. "յականջս.," ՄԻՋ, 149, 21 "Հասայ յԵգիպտոս.," ՄԻԴ, 140, 6 "անտից ակիզբն արարեալ.," Համա. ՄԹ, 123, 24 եւն։ Սակայն այսպիսիք Հարկաւ աւելի աղաւաղմունք են գրչաց։

[2] ՃԼԱ, 70, 5 "կոյր աչաւ.," եթէ չէ ուղիղ "աչաւք," գրել Հոս. (Զորս ՕՕ. "աչարու.," մին ի լուսանցս. "աչացու։,,) — ՃԿԲ, 91, 15 "էզարկ զթագն։," — ՃՁԸ, 105, 16 "ալքն յափշտակեաց էառ զամենեսեան։," — ՄԹ, 125,

թեամբն, մինչ օրինակի համար Փարպեցի մեծ առատութեամբ ունի նոյն ձեւերը։ Տեղ տեղ կարծես բուզանդեան գրչէ ելած են նախադասութիւնք[1]. բայց այս ՚ամէնը գրքին ծայրէ ի ծայր կանոնաւոր լեզուին զարդ են աւելի, եւ ոչ թէ սովորական։

---

5 "երիքօշէ+.„ Համմ. 126, 33 "վեցաչիք։„ — ՄԻԴ, 138, 24 "զիւրեանց նօ—ջնեօրն մարձին-թողին.„ Համմ. 144, 28 "որք միանգամ են ի +օղօ+նեօրք մարդիկ.„ եւ 145, 28 "Էր իրիք են մօրջնեանս։„ Ասոնք եւ այլ այսպիսիք հնագոյն լեզուին գեղեցկագոյն զարդերէն են կրնանք ըսել, որ ապատիրող եղած են նոր լեզուի մէջ։ — ՄԹ, 126, 29 "Ոչ գիտեմք օօր ԷջՋօմ+։„ — ՃԷ, 53, 26 "օրպեօ օր գրեցերն առ իս.„ Համմ. 54, 2 "զգուշոյս օր նշանակեցեր ինձ.„ եւ ՃՂԳ, 109, 26 "յոր տեղի օր ժամ եդաք գալ ժողովել.„ եւն։ — ՃՁԹ, 105, 30 "շատ քաղաքս ծառայեցուցի.„ Համմ. ՃՂ, 106, 19 "այր եղեր շատ եւ բաւական ի յիշատակս.„ եւն։ — ՃԺԴ, 57, 18 "աջոյ դեհն.„ ՃԽԸ, 85, 14 "ս ջեօէ, ցոյցս առնել կամեցեալ„ եւն. ՃՀԳ, 96, 12 "իմանայր էՃ կորուն Աղէքսանդրոս„ այսինքն՝ բան մը կը խորհէր հնարել (ἐπινοεῖ οὖν τι) — ՄԽԱ, 157, 21 եւ 23 "ես ջնէլ սրտմտիմ, զի ոչ ունիմ զսուսերն իմ.„ եւ "սպանանէի զքեզ նօխէլն.„ — ՃԽԵ, 82, 29 "հանդերձ էօջեօնց յօնջէն էօլէօլ ձեռնարկութեամբ.„ Համմ. ՄԺԴ, 132, 15 "յէնէն պօրէջօղմօ— հօջէօլ ազինքն„ եւն։ — ՄԾԲ, 162, 15 "Եմք ամազոնական գեօոյ այլ յայսկոյս.„ (եթէ ու գետ է.) ՄՀԷ, 182, 17 "Ջեղջէ խօսէր։„ Բայց աղաւաղութիւն է ՄՀԲ, 178, 19 "յայս ելաք կօմօց.„ փխ. "փառաց,„ ուր բառ մ՚ալ պակաս ըլլալու է գուցէ. (εἰς τοῦτο προήλθομεν δόξης) ՃԺԵ, 58, 11 "Ոչ էջջէն+ երեւէր եւ ոչ երկիր տեսանէր մօրջ՝ ի բազում եղելոյ ապաժուժին.„ (οὔτε γὰρ ὁ ἀὴρ ἐφαίνετο, οὔτε ἡ γῆ ἐθεωρεῖτο ὑπὸ τῶν πολλῶν λύθρων.) եւն եւն։

[1] Համմ. ԿԵ, 30, 31—31, 4 "Հայրն իմ յորժամ էր անորդի, հարկս տայր ձեզ. բայց յորժամ եղեւ նմա որդի Աղէքսանդր, հարկս այլ ոչ տայ ձեզ. բայց զոր առէք հարկս ի նմանէ՝ ոչ թողից ձեզ, այլ գամ այսրէն դարձուցանեմ եւ պահանջեմ ի ձէնջ։„ — ՃՂԱ, 107, 27 "Եթէ յառաջագոյն այսր աշխարհի նա էր իշխան, ղօյօ շօհ էջջէօլ ջօջջէ։„ — ՃՂԳ, 109, 20 "առաքեցից զկես աւարին՝ յորոց թէ առից զթշնամեաց։„ Մատդրութեան արժանի է "բիւր„ բառին իբրեւ անորոշ բազմութեան թիւ գործածուիլը, զոր օր (ՄԹ, 125, 23) "Եկն ի վրայ մեր . . ջէօջ+ անթիւք, բայց մեքեաք բիւրք չորք„ եւն եւն։ — ՄԻԴ, 140, 21 "քարոզաւ հաչակեցուցեալ ազգին փօօն օջօջէ (յոյնը լոկ κατεκήρυξαν).

Դժբախտաբար յոյն լեզուի ազդեցութիւնը բաւական կը զգայուի, որուն համար պէտք է միայն վերը դրուած քանի մ՚օրինակներն աչքէ անցընել: Ի մասնաւորի մատղրութիւն կը գրգռեն բազմաթիւ յոյն բառեր[1] նաեւ հոն՝ ուր բոլորովին աւելորդ կ՚երեւար, զոր օր. "ելատէ" (եղեւին)

---

[1] Նոր յունարէն բառերուն գլխաւորքն են. Բ, 2, 15 "էքսփլորատորէս." (ἐξπλωράτορες, բուն լատիներէն՝ exploratores, որ յոգնակի է.) — Ը, 5, 18—20 "Լուսին ադամանդինէ եւ Արէս էմատիտէս ... Կռոնոս օֆիտէս եւ ժամադէտն լիւգդինոս." (B ἡ δὲ σελήνη ἀδαμαντίνη. AL τὸν Ἄρεα αἱματίτου λίθου, ... τὸν Κρόνον ὀφίτου λίθου, AB ὁ δὲ ὡροσκόπος λύγδινος (A յաւ. λίθου) եւն։) — ԺԶ, 10, 5 եւ այլուր "բիբղոս." (βύβλος, կամ նաեւ՝ βίβλος.) — ԻԶ, 14, 4 "գալլոս." (γάλλος, զոր "բացակտուր" կը մեկնէ։) — ՀԴ, 34, 30 "Նաւս լիբեռնեայս." (λιβυρνὶς, ցռկանաւ։) — ՁԷ, 41, 4 եւ 15 "տուբի." եւ "աթերայ." (τύβι ամսոյ անուն, ἀθῆρα, խիւս։) — ՁԸ, 41, 29 "քեզ Փէբոս խոյեղջիւր ասեմ. (ուղիղն է՝ "Փիւբոս." Φοῖβος, անբիծ։) — Ղ, 42, 25 "զյոբելիսկան եանս." (ὀβελίσκος, բուրգն.) — ՃԺ, 55, 17 "սնդմայիւք կապեալ." (σύνδεσμος.) — ՃԻԹ, 68, 21 "ելատէ." (ἐλάτη, եղեւին։) — ՃԼԴ, 72, 15 "հանդէս Իսթմեանց." (τὸν Ἴσθμιον τῶν ἀγώνων.) — ՃԼԷ, 74, 3 "Կորէն պաշտեն." (τὴν Κόρην, զԱղջիկ։) — ՃԾ, 86, 4 "սկետեայ." (σκύτος, փոկ։) — ՃՂԲ, 102, 5 եւ 8 "պեւկէ." (πεύκη, մայրի։) — ՄԹ, 125, 4 "իբրեւ զգունս որ առ մեզ կոչին դանդակէս." (δάνδηκες, ուր հայն յոգնակի ες վերջաւորութիւնը պահած է.) 126, 6 "իբրեւ զպարսիկ ստակտինէ." (ὥσπερ συκῆς στακτὴν, որ սխալ գրութիւն մըն է, եւ περσικός ածականն որոշ կը տեսնուի։) — ՄԻԴ, 139, 8 "կիտոս," (κῆτος, կէտ ձուկ։) — ՃՀԵ, 99, 5 "կոչէկս սեպտոփանն," (որ խնդրական է, վասն զի հոս յոյնն է լոկ "եւ կոչէկս զարդարեալս ակամբք։") — ՄԹ, 123, 12 "քղամիդն անաֆէնդոն." (խնդրական է ոս ալ. յոյն է լոկ χλαμὺς, քղամիդ.) եւ 124, 4 "ծառ որ կոչի յանաֆինէդոն." (յոյնն է՝ B ἀνάφαντον, L ἀναφάνδα, C ἀναφνήτων ուստի աղաւաղ են։) — ՄԻԴ, 145, 20 "միրաբաղանոն." (μυροβάλανος.) 148, 22 "առողոմոսթենայց (ՀՀ "սաղոմորեաց,") վեցկանգնեանս կշիռս քանքարաւորս. յսողեբոս երկքանքարաւորս." (ամբողջը խնդրական է, եւ հոս ABCV չունին կտոր մը,) նոյնպէս նաեւ 148, 30 "սպունգք ծիրանիք երեսուն եւ գղաւկէ յիսուն." (եթէ չէ = γλαὺξ, որ է "բու.") 150, 11 "սկիւտաղ." (σκυτάλη, Ջայլոտ.) եւ

եւն։ Աւելի դիւրաւ կը մեկնուին բազմաթիւ բառեր, որ ըստ յոյն կաղապարի յօրինուած են, թէեւ երբեմն անյաջող եղանակաւ[1]։ Զափազանց առատութեամբ կը տեսնուին յոյն լեզուի քանի մը կանոնաց նմանողութիւնք, զոր օր. բացարձակ սեռական, հայցական ենթակայ, յոգնակի ենթակայի եզակի բայ (ուր չէզոք է յունին մէջ) եւ վերջապէս նախադրութեանց հոլովառութեանց անկանոնութիւնք եւ այլ այսպիսիք[2]։ Պէտք է միայն յիշել

150, 19 "հորմոյ." (ὅρμος, քայռ, մանեակ։) — ՄԼԽ. 154, 18 "մեղրապուպ." (μηλοπέπων, հոս յոյնն է պարզ πέπων). — ՄԼԷ, 155, 21 եւ ՄԽԶ, 159, 31 "ոնիքսեայք եւ բիւրղայք." (բիւրեղ է βηρύλλιον, բայց "ոնիքսեայք" երկրորդ տեղը չի գտնուիր, իսկ առաջին տեղն ալ A աղաւաղ է։ A. δι' ὠνίων καὶ βιούλιων կը գրէ, զոր M ὀνύχων կ'ուղղէ, որ է "եղնգնաքար" ինչպէս է եւ V. onyx.) Երկրորդ տեղն կայ նաեւ "վակաս ոխնովրոն" խնդրականբառը, ուր յոյնն է Θώρακα διὰ λίθων (վակաս յականց։) — ՄՁԳ, 185, 1 (լոկ ՀՀ) "մեղր ծխախոխոփոխան եւ հալուէ հեղուտիքեան." (այս տեղ չունին յոյնն ու V.) — ՄՁԶ, 186, 14 եւ 15 "տուբիլ" եւ "Փարմուփիր." (A: Τυβίος, Φαρμοῦθ.) եւն՝ Հարկաւ ասոնց ոչ ամէնը նոր են։

[1] Ի մէջ այլոց՝ Հմմտ. ՀԷ, 36, 10 "վերագրութիւն." (ἐπιγραφὴ.) 36, 13 "մշտայուշ քաղաք" (ἀείμνηστον πόλιν.) — ՁԲ, 39, 10 "ջրամղահոս." այսինքն՝ ջրմուղ. (ὑδραγώγιον.) — ՃԸ, 54, 13 "մեծախոհեմութիւն." (μεγαλοφροσύνη.) զոր այլուր "վսեմախոհութիւն" թարգմանած է. (տես՝ ՄԺ. 129, 12։) — ՃԺԲ, 56, 14 "անպատերազմափորձ Հելլենացւոց." (Ἕλλησι ἀπειροπολέμοις.) — ՃԻԽ, 63, 20 "ամբծախօս." (Φοιβολάλος, V sacerdos.) — ՃԼԱ, 70, 29 "Երկաւորեակ փողոց հնչմունք." (διδύμων ὀργάνων.) — ՃԿԴ, 92, 17 "զԱղեքսանդրի վերաելութն ազնիս մերոյ." (τὴν Ἀλεξάνδρου ἐπίβασην κτλ.) — ՄԻԳ, 135, 23 "Ետես զամենեսեան մերկավերարկուս." (πάντας γυμνοπεριβόλους.) — ՄԽԶ, 159, 32 "Քղամիդ աստղաճաճանչ ի բոլորածիրանէ ոսկեթել." (χλαμύδα ἀστεροφεγγῆ ὁλοπόρφυρον διὰ χρυσοῦ.) — Հմմտ. ՄԾԲ, 163, 8 "Պսակ յարայիշելի." (ἀείμνηστος.) ՄԾԷ, 166, 17 "մերկակրթութիւն." (γυμναστική, մարմնամարզ.) 168, 7 "Ծակասոյզք." (τρωγλοδύται) եւն եւն։

[2] Հմմտ. ՂԹ, 48, 8 "Հզօր կռուոյ եղելոյ՝ զբազումս սպանին." (κραταίας μάχης γενομένης.) ՃԺԽ, 58, 16 "Հզօր գլման եղելոյ՝ ի փախուստ դիմեցին." (τροπῆς δὲ ἰσχυρᾶς γενομένης.) ՃԼԳ, 72, 12 "Այսպէս պատասխանւոյ տուե-

վասն ամբողջութեան նաեւ այն ալ որ այսպիսի „յունաբանութիւնք" արդէն բաւական տիրած են, եւ նաեւ մեսրոպեան գրոց մէջ աստ անդ՝ թէեւ ցանցառ՝ կ'երեւան։ Եւ վերջապէս թէ՛ անկանոնութեանց, թէ՛ ռամկաբանութեանց եւ ըստ իմիք նաեւ օտարաբանութեանց նկատմամբ եթէ համեմատենք միեւնոյն ժամանակի միւս գրութեանց հետ՝ շատերէն աւելի անխառն եւ ընտիր լեզու ունի Կալիսթենեայ հայ թարգմանութիւնը։

Մասնաւոր մտադրութեան արժանի է այն՝ որ Կալիսթենեայ լեզուն շատ նմանութիւն ունի ինչպէս Խորենացւոյ Պատմութեան, նոյնպէս նաեւ Փիլոնի, Նիւսացւոյ եւն թարգմանութեանց լեզուին։ Շատ անգամ կը տեսնուի միեւնոյն բառերն ու ասութիւնք, որոնք այլուր (ի հարկէ հնոց) քով անգործածական են, այս գրոց մէջ միաբան հաւանութեամբ գործածուած։ Հոս կը դնենք քանի մ'այս-

---

ցելոյ՝ կայրին ապաքէին իրացն լինելոյ.„ ՄԻԴ, 144, 1—3 "Անյայտ ամպին եւ օդոյն մթին եղելոյ եւ թանձրացելոյ առանց բերելոյ՝ ապա տեսաք„ եւն. Համմտ. ՀԲ, 34, 6. ՄԹ, 124, 26 եւն եւն։ — ՁԷ, 41, 3 "ի մուտս յահս եղելոց տանց.„ (εἰς τὰς οἰκίας τὰς ἤδη γενομένας.) ՃԼԱ, 71, 28 "ի խարխարումն կրել պարսպացն՝ Իսմենիոս փող հարկանելով զհետ երթայր երգոց.„ (κατασκαπτομένων δὲ αὐτῶν ὁ Ἰσμηνίας ἐπηκολούθει.) ՃՁԴ, 102, 25 "Ձին բերեալ լինէր ի սաստկութենէ ջուրցն.„ այսինքն՝ կը յափշտակուէր. (ὁ μὲν πῶλος ἐφέρετο ὑπὸ τοῦ ὕδατος ἁρπαγείς.) — ՃԽԴ, 82, 11 "Մինչ զի առաջին զնա ... լինել.„ (πρῶτον αὐτὸν γεννηθῆναι.) ՃՀԷ, 98, 18 "կարծիցին աստուած գոլ զնա.„ (Θεὸν αὐτὸν εἶναι.) ՄԽԷ, 160, 3 "Ուր ասաց նմա ... զառաջնորդութեան գնալ չոգել.„ եւն եւն։ — ՄԹ, 126, 2 "Եւ էր ի գետ անդ ծառք սքանչելիք.„ (καὶ ἦν ... δένδρα, վասն զի հոս չէզոք է յոգնակի ենթական։) — ՄՁՁ, 186, 18 "Վասն զԱղեքսանդրոս՝ որ մանուկ վախճանեցաւ.„ (διὰ τὸν Ἀλέξανδρον.) ՃԼԱ, 49, 14 "Վերիվայր բերցես զնա՝ վասն քո զպանիրն ի գետինն կոխել.„ Համմտ. ՄԻԴ, 144, 13 եւն եւն։ — Սակայն ոչ ամէնը պէտք է բնագրի ուղղակի ազդեցութիւն կարծել. շատ բան սովորական եղած է արդէն հնոց։

պիսի բառեր, որոնք ինքնին մեր առջեւ ելած, են ուսումնասիրութեան մէջ[1]:

1. Պտմ. Աղեքս. ԼԳ, 17, 14 "Հարուածս . . ի ւէւոն:" (Հոս BC *ἰσχίον*, ազդր. A *ἐγκέφαλος* ուղեղ, V cervix ծոծրակ:)

Փէւ. ւմնեւ-ոն. Բ, 24. "Ի լանջացն ի վերկոյս յետկոյս յողնեալք. որոց լարքն ցաւեն եւ ճէւէ:"

2. ԽԷ, 22, 17 "Խրխնջեաց . . . քաղցր, ջամոջ եւ գողտրիկ:"

Փէւ. էմտոտն. "Ականէ դեգերանս հեշտ եւ ջամոջ:"

3. ԾԱ, 24, 27 "Դիպուածով բաստից . . . ֆոըն-ջոյեռւ." (յոյնն է՝ *φρυαττόμενος*, գոռոզացած:)

Փէւ. Ժ. բան. ե— ւէնեւոն. "Փքանալ ֆոնֆոլով առ նմանս." "Որ բարձրավիզն է եւ ֆոնֆոյե:" (Այլոց քով "փռնկալ" աւելի = փռնչել է:)

4. ՃԻԱ, 60, 8 "Երոժէւոն." (իբրեւ "մուսայ." *Μοῦσαι*, V Musae.)

Փէւ. ւէնեւ. Ա. 6. "Զոր օրինակ քերթողքն ասեն պէրոժէւոյն պար." եւն:

5. ՃԼ, 69, 25 "Աղաչեաց զարքայ եւ ֆեղնեցոռ:"

Փէւ. ւէն. Գ. 24 "արտօսրահոս ֆեղնոռն:" "Շար-ժիլ ի ֆեղնոռն." եւն:

6. ՃԽԲ, 79, 9 "Ամբոխն խնճոյէն." (իբր՝ խուռն բազմութիւն, ժողով: (յոյնը՝ *θρόος*.)

Փէւ. ոյւոբ. "Խնճոյն եւ բազմամբոխն եւ խառ-նիճաղանճ ժողով:"

7. ՄԻԷ, 150, 16 "Պապկայ." (*Ψιττακὸς*, թու-թակ:)

Փէւ. ւէոռ. "Որ ի Հնդիկս պողջոյք են." (յաճախ:)

8. ՄԾԹ, 170, 8 "Զմանուկն եդեալ . . է խնձէ." (BC *ῥάκιον*, ցնցոտիք. A *προκόλπιον*, ծոց:)

Փէւ. որեռ. "Յերկոցունց կողմանց խէնջ ի վայր թողացուցեալ." հմմտ. Նէռռ. բն. "Գեղձքն որ ի խինձս մարմնոյն են" եւն:

9. ՄԿԵ, 174, 14 "Գեռոխոնչ հպարտութիւն:"

Փէւ. բոն ե— ւէն. Դ, 25. "Գեռոխոնչ բարեբախ-տութիւն:"

10. ՃԼԱ, 69, 28 "Ի նմա յերկարողոյն ջոռոոոյեռւ" (*ὄμμα πρὸς αὐτὸν μηκύνας*, զակն առ նա յերկարեալ:)

Փէւ. որեռ. "Զոյւն ի նմա ջոռոոյանեն:"

---

[1] Ուստի եւ Փիլոնի օրինակք առնուած են "Հայ-կազնեան Բառագրոց" վկայութիւններէն:

11. ՄԺԱ, 130, 10 "Ապահովանալ ի բարկութենէ." (λῆξαι τῆς ὀργῆς.)

Փիլ. "Յետ յապահովանալոյ չարին." (ի բաց փարատելոյ:)

12. ՃՂԹ, 115, 3 "Զամենայն վրէժական զինուց. եւ զվահանս." (յոյնն լոկ՝ πᾶν δὲ ἀμυντήριον ὅπλον, զամենայն զէն վրիժու կամ պաշտպանութեան:)

Փիլ. Նխ. "Ի սպառազինութենէն վրիժականն մերկք եղեն." եւն եւն:

Կրնայինք այս օրինակները շատ բազմացընել, բայց աւելորդ կը համարինք: Բաց աստի ոչ ամէն բառերու համաձայնութիւն կարելի է իբրեւ հաստատուն կռուան առնուլ, ըստ որում շատերն այլազգ ալ կրնան մեկնուիլ, եւ ոմանք նաեւ այլուց քով ալ կը գտնուին: Լեզուէ առնուած այսպիսի փաստերու վրայ ապահովութեամբ յենուլ եւ հետեւութիւն հանել՝ շատ քիչ անգամ կարելի է, եւ այն՝ երբ խնդրոյ առարկայ եղող ոճն ալ սեպհական գոյն մ'ունի: Այսպէս քիչ շատ վստահութեամբ կրնանք համեմատել Կալիսթենեայ այս խօսքը. (ՄԻԹ, 151, 19.) "Գայի ի տարեւորական խորհուրդ խուզագլխութեան կատարել." (ἐνιαύσιον μυστήριον τελέσαι, V: ad sacrificium annuum, այսինքն՝ ի կատարել զտարեկան զոհս:) Այսպէս "խուզագլխութիւն" իբրեւ "զոհք, ձօն, նուիրումն" նշանակութեամբ եզական ասութիւն մըն է, այնպէս որ մեծ նշանակութիւն ունի, երբ հնոց քով միայն Փիլոն կը գործածէ այն ասութիւնը. (Համմտ. Փիլ. Ժ բան. եւ Իմաստն. եւ Եւ. Բ, 51. "Պարտ է մեծի խուզագլխոյ լինել [զոհագործել] խուզագլխութեամբ." "Խուզագլխել իցէ զխուզագլխութիւն." "Արժանաւորս խուզագլխեցէք խուզագլխութեամբ." Փիլ. Բոգն. "առ խուզագլխօքն եւ առ խորհուրդս." եւն եւն:) Յետնոց ոմանք օրինակած են այս բառն, զոր օր. Լուծմունք գրոց Փիլոնի, Մագիստրոս եւն: — Տեղւոյս չէ Փիլոնի, Նիւսացւոյ եւն ճառից լեզուն քննութեան առնուլ մանրամասն, թէեւ կա-

րելի էր այնու հիմնովին լուծել Կալլիսթենեայ եւ այս գրոց լեզուի նմանութեան խնդիրը։

## Է.

### Հայ բնագրին յոյն օրինակաց հետ ունեցած համեմատութիւնը:

Մեր ցայս վայր գրածներուն եթէ լաւ միտ դրուի, կրնայ ընթերցողն ինքնին հետեւցընել՝ թէ ի՛նչ արժէք ունի Հայը նկատմամբ իւր բնագրին՝ եթէ՛ հաւատարմութեան եւ եթէ՛ աղաւաղման տեսակէտէ։ Սակայն աւելի մանրամասն համեմատութիւն մ՚աւելորդ չըլլալով՝ կը ջանանք համառօտիւ դնել այս բնագրաց համեմատութիւնը՝ քիչ մ՚ետքը։ Բայց նախ քան այս կէտը՝ քանի մ՚ուրիշ դիտողութիւններ աւելորդ չենք համարիր ընել։

Նպատակ չունենալով լիուլի համեմատութիւն մը յօրինել, չենք առած համեմատութեան ասորին։ Բաց աստի Հայ բնագրին նկատմամբ ալ միայն Կալլիսթենեայ տպագրութեան հետ կը համեմատենք յոյնը՝ առանց միջամուխ լինելու՝ թէ այս կամ այն կտորն ինչ մանր փոփոխութիւն կրած է այլեւայլ ձեռագրաց մէջ։ Սակայն յայտնի է որ այս կամ այն ձեռագրին մէջ կարելի է շատ մը կարեւոր տարբերութիւններ անգամ գտնել։ (Հմմտ. վերը՝ ձեռագրաց մասը, էջ 138—183։)

Ասկէ աւելի կարեւոր ա՛յն է, որ Հայոյն մէջ կը գտնուին քանի մը կտորներ, որոնք ակնյայտնի կրկնութիւն են միեւնոյն կտորին, բայց զարմանալի եղանակաւ կէսը յոյն այս ինչ բնագրին, միւս կէսը միւս բնագրին համեմատ է, որով կարծես երկու խմբագրութիւնք քովէքով կեցած կը գտնուին։ Այս տեղ կը դնենք այսպիսի կտոր մը, որ Սարապեայ դից պատգամին վերջին մասն է՝ Աղեքսանդրիա քաղաքին տեւականութեան նկատմամբ։

| (ՊԳ., էջ 44, 20—34։) | (ՊԳ., էջ 44, 34—45, 7։) |
|---|---|
| „Եւ քաղաք կարգեալ զաս կալ մնալ միշտ հաստատուն... որպէս զի իրք չարդիւաց ոչ ինչ կարասցեն առնել ընդ քաղաքս. քանզի շարժումն ունի առ սակաւ մի եւ ժանտախտ. միանգամայն եւ սով.. նոյնպէս պատերազմ, բայց ոչ ծանր ապառնմամբ, այլ իբրեւ երազ վաղվաղակի անցցէ ընդ քաղաքս։ Եւ բազում թագաւորք առ կենցաղով աշխարհիս զքեզ յամենայն ժամ իբրեւ զաստուած եղեալ երկիր պագցեն. եւ դու իբրեւ աստուածացեալ երկրպագեսցիս մեռեալ...։„ | „Բայց ես...վերակացու եւ պաշտպան եղէց, որպէս զի մի դժուար ինչ կատարելապէս կացցէ մնասցէ՝ ժանտախտ ինչ մահաբեր կամ շարժումն, այլ որպէս զերազ ինչ անցցէ զքաղաքաւս։ Եւ բազում թագաւորք եկեսցեն ի սա ոչ պատերազմ տալ, այլ երկիր պագանել քեզ իբրեւ աստուածացելոյ եւ երկրպագեցելոյ՝ մեռեալ„ եւն։ |

Հոս յոյնը (A) առաջին կտորէն (էջ 44, 20—34) ետքն անմիջապէս կը կցէ սա խօսքը (45, 7—9.) „բնակեսցես ի սմա մեռեալ եւ ոչ մեռեալ. զի քաղաքս այս՝ զոր շինես, սա գերեզման լիցի քեզ.„ մինչդեռ հայերէնին մէջ այս խօսքը միջանկեալ կտորէն (44, 34—45, 7) ետքն է։ Այս կտորներուս մէջ Հ եւ A շատ տարբերութիւն ունին։ — Արկին խմբագրութեան հետք կրնայ առնուիլ նաեւ Դարեհի մօր առ Աղեքսանդր գրած նամակին այս մասը։

| (ՄԵ, էջ 121, 2—8. = A[1]) | (ՄԵ, էջ 121, 9—13. = B[1]) |
|---|---|
| „Գրեցաք Պարսից մնացելում ազինդ, որպէս զի աղաչեաց[2] զՊարսս աստուածդ աթոռակից նրա- | „Գրեցաք եւ Պարսից ազինդ այսպէս, զի գիտասցես՝ այժմ զԴարեհ գիտեմք[3]. որ եւ այժմ Դա- |

[1] II, c. 22։

[2] Գրի սխալ կ'երեւայ փխ. „աղաչեսցեն.„ (A: ὅπως ἐρωτήσωσι κτλ.)

[3] B „Նոր Դարեհ զԱղեքսանդր գիտեմք՝ զմեծ արքայ.„ (νέον νῦν Δαρεῖον οἴδαμεν Ἀλέξανδρον μέγιστον βασιλέα.)

տուցանել Արամազդայ, երկրպագութիւն կրել զոյգ ընդ նմա. եւ զՀռոքսիանէս զոր ընտրեցեր եւ վարկար[1] աթոռակից լինել քեզ, երկիր պագցուք իբրեւ Անահտայ[2], յորժամ Արամազդ զՀռոքսիանէս յամուսնութիւն իւր առցէ։"

րեհի գաւազան թագաւորութեան ուղղեալ կանգնի[3]. քանզի Արամազդն՝[4] մեծ Աղեքսանդրոս՝ զՀռոքսիանէ յամուսնին իւր առնու։"

Ինչպէս յընթացս գրութեանս, նոյնպէս նաեւ յաջորդ համեմատութեան մէջ յիշած ենք ընթերցուածներ, զորոնք Հ. արդէն Ե դարու աղաւաղ գտեր եւ այնպէս օրինակեր է։ Այսպէս յիշեցինք "ամոճոգէտ" բառը[5], զոր նոյնպէս ունի A: ἀμουμάντες անիմաստ, (զոր կ'ուզեն ուղղել կարդալ ἀμμομάντες=աւազագէտք։) — Հթ համածին (էջ 31 — 38) շատ կտորներուն վրայ՝ համմտ. յաջորդ համեմատութիւնը. (համմտ. ըստ իմիք նաեւ՝ ՁԲ, էջ 39, 3 եւ Ղ, 43, 1 եւն։) — ՃԽԱ, 78, 22 "Զնաւսն այրեցաք եւ զգումարտակս (Պարսից) ի բաց հալածեցաք Կիւնէգերայ եւ Անտիփոնտայ եւ Կղէսորքեայ։" Դեմադէսի այս խօսքին մէջ յայտնապէս պակաս է նախադրութիւն մը. ("առ Կիւնիդերաւ" եւն.) բայց այսպէս էր՝ կ'երեւայ՝ նաեւ Ե դարու, վասն զի նաեւ A չունի այսպիսի նախադրութիւն. (A: καὶ τὰς ναῦς ἐπρήσαμεν [ἐπὶ, որ պակաս է] Κυναιγείρου (Հ գրի սխալով "Կիւնէգերայ" փխ. "Կիւնեգերայ.") καὶ Ἀντιφῶντος καὶ Μνησοχάρους ("Կղէսորքեայ" դրեր է տպագրիչը, մինչ OO "Մնեսիքորայ"="Մնեսիքորայ" ունին։) — ՃԽԷ,

---

[1] A մէկ բառ է (ἔκρινας.)

[2] "Իբրեւ Անահտայ" հոս A չունի։

[3] "Որ եւ այժմ — կանգնի" չունի B.

[4] B կ'ըսէ քիչ մ'այլազգ. "Բախտն՝ Աղեքսանդր արքայի ամենայն տիեզերաց զՀռոքսիանէ յամուսնութիւն առցէ." (ἡ τύχη Ἀλέξανδρῳ βασιλεῖ πάσης τῆς οἰκουμένης Ῥωξάνην πρὸς γάμον ἄγει.)

[5] Է, էջ 5, 2։ Այս ամբողջ կտորը՝ տես վերն էջ 128 եւ ծ. 1։

85, 3.) Լակեդեմոնացւոց համար կը գրուի՝ թէ «փակեցին զդրունսն եւ հրձիգ արարին զնաւս զօրականացն. քանզի տեղեակք էին նաւօք մարտնչել առաւել քան որ ի վերայ երկրի քաջ պատերազմողք»: Հակառակը կը պահանջէ իմաստը. վասն զի նաւամարտիկ Լակեդեմոնացիք չէին կրնար իրենք իրենց ձեռօք այրել իրենց նաւերը: Սակայն արդէն Ե դարուն այսպէս անճահ գտած է Հայը յոյն բնագիրը, ինչպէս կը գտնենք այսօր A բնագիրը, որ կը կարդայ՝ καὶ τὰς ναῦς ἔπρησαν («այրեցին զնաւս», զոր M կ'ուղղէ ἐπλήρωσαν, լցին:) — (ՃԾԴ, 87, 33.) «Ովկէանոս» գետոյն վրայ՝ տես վարը համեմատութեան մէջ, ինչպէս նաեւ ՃԾԹ համարը (Եփրատ եւ Տիգրիս գետերու ընթացից նկատմամբ:) ՄԼԷ. 155, 21 «ունիոչինայց.» ՄԽԷ, 160, 7 «Թմբիւն լռութեամբ ծառայել.» ՄԿ, 172, 1—2 եւն եւն: Այս կտորները մեր համեմատութեան մէջ յիշուած են:

Ասոնց թէեւ մի մասն այլազգ ալ կարելի ըլլայ մեկնել, կը մնայ կարծենք միշտ մաս մ'ալ, զոր պէտք ենք յոյն նախաբնագրին արդէն աղաւաղ ըլլալովը մեկնել: Իսկ թէ ինչ մեծ աղաւաղութիւն կրած են Հայ բնագիրք Ե դարէն ցայսօր՝ ըստ բաւականին կրնայ գուշակուիլ մեր ցայս վայր գրածներէն՝ ի մասնաւորի այլեւայլ ձեռագրաց նկատմամբ: Թէ անթիւ աղաւաղմանց կոյտ կայ նոյն իսկ Թ. 424ին մէջ, որ հիմն է տպագրութեան, յիշեցինք առ անդ, եւ պիտի յիշենք՝ մանաւանդ քանի մ'անուանց նկատմամբ՝ յաջորդ համեմատութեան մէջ: Սակայն հոս ալ կը դնենք քանի մը կարեւոր սխալներ որոնք՝ բաց ի բուն տպագրական աղաւաղումներէն[1]՝ սպրդած են նաեւ տպագրութեան մէջ եւ տեղ տեղ իմաստն այլայլած:

---

[1] Հմմտ. ՃԽԱ, 77, 28 Դեմադէս կ'ըսէ. «Այժմ Երկնչէմ պատերազմել ընդ Աղեքսանդրի՝ առէ Եոփինէս: Պատկառեցի ի մէնջ յառաջնորդ վարդապետացս Աղեք-

Այսպէս՝ Բ, 2, 14 «բազում ժամանակի գնացելոյ ... եկեալ պատմէինն փխ. «գնացելոյ.» ուստի Ց եւ Ե շփոթուած. (χρόνου δὲ ἱκανοῦ γενομένου.) — Է, 5, 1 «Բազմօրինակ են ... խուզից քննութեան կամք» փխ. «կորզք.» (B : ἡ τῆς σκέψεως αἵρεσις. C : ... εὕρεσις. A : ἡ κρίσις.) — Ժ, 6, 29 Ներտաներոս սարարեալ մորճոհ մահճայ» փխ. «մահճակս,» ինչպէս ունին Երեք ՕՕ. (լոկ V ունի lectulum ei fabricatur.) — ԼԱ, 16, 18 Ջուարակագլուխ ձին պիտի փակուէր վանդակաւ եւ «սանձն եղեալ էր որոյ բանդու:» Ընդհակառակն է յոյնը, որուն համեմատ պիտի փակուէր ձին վանդակելով առանց սանձի. (καὶ τοῦτον ἐγκλεῖσαι ἀχαλίνωτον.) — ԼԵ, 18, 18 «մորակոն թաղմամբ» փխ. «եգիպտական.» որ յետամուտ ռամկականութիւն է: — ԽԵ, 21, 18 «Մի արհամարհեալ ի բաց առաքէր.» անշուշտ պիտի ըլլայ «մի արհամարհեալ» եւն: — ԾԹ, 28, 22 Յուշկապարկաց համար կ'ըսուի՝ թէ «զինուք պարէին» փխ. «վարէին.» (յոյնը՝ BC : ὅπλοις ἐχρήσαντο.) — ՁԵ, 40, 9 «Եղիցին ի սմա ծնեալք մարդիկ քան զԽոսրովանք, ընդ ամենայն աշխարհք շուրջ ածին,» փխ. «... քանզի Խոսրովանք ընդ ամենայն աշխարհ շուրջ յածին.» — ՁՋ, 40, 26 «Աղբիւրք» անուան վրայ՝ տես վերն էջ 189, Ծ. 6. Նոյնպէս ՂԹ, 47, 33 «զօրաժողով արարեալ հզօր» խօսքին վրայ՝ էջ 60, Ծ. 2: — ՃԺԴ, 57, 18 «Արարեալ հանդէպ սոցա պարսից կողմն» փխ. «զՊարսից.» (A : τῶν Περσῶν κτη.) — ՃԺԶ, 58, 24 «Ա-

---

սանդրոս եւ ամաչեացէ յերեսաց մերոց. դէմ յանդիման զամենեսին զմեզ թշնամանեաց» եւն: Այս տեղն այսպէս կէտադրուած՝ հակասական է. այլ պէտք էր այսպէս բաժնել. «Այժմ երկնչիմ պատերազմել ընդ Աղեքսանդրի: (Աստուածաբան.) Ա... «Պատկառեցի ի մէնջ ... յերեսաց մերոց:» (Պատասխան) Դէմ յանդիման զամենեսին զմեզ թշնամանեաց» եւն: — ՃԽԶ, 84, 14 «Աղեքսանդրի՝ օգնեալ էք» փխ. «օգնեալ էք:» — ՃՂ, 101, 1 «Բազում լռութիւն եղեալ, Աղեքսանդրոս յիշեաց եւ ի միտ էառ յամենեցունց ի նոցանէ: (Հաս նոր հատուած՝ ՃՂԱ) Պարսաստանէ ամն իշխան եւն»: Պէտք է բաժնել «Բազում լռութիւն եղեալ՝ զԱղեքսանդրոս յիշեաց եւ ի միտ էառ՝ յամենեցունց ի նոցանէ Պարսաստանէ ամն...:» — ՄԼԳ, 153, 9 «Հրամայեաց Աղեքսանդրոս կոչել ի Ներքս զԿանդաւղէս: Թագաւոր մեծ զօրութեամբ եւ սաստ հրաման տայ ձեզ» եւն: Պիտի ըլլայ. «Հրամայեաց Աղեքսանդրոս կոչել ի ներքս (ի քաղաքն) թէ կանդաւղէս է թագաւոր մեծ զօրութեամբ» եւն: — ՄԾԱ, 161, 30 «Առեալ հարկ ի նոցանէ բարբարոսք. Նոքա յիւրեանց տեղիս կալ մնալ» փխ. «... բարբարոսք նոքա»: Հմմտ. ՄԹ, 127, 10 եւն եւն:

ղեքսանդրոս առաւել փիլոմենեան վարեալ.,, անշուշտ "քա-ջութեամբ վարեալ." (յոյնը՝ φιλοτιμούμενος.) — ՃԺԷ, 59, 10, 11. "Եւ անկելոց Մակեդոնացւոցն էր յայժ. հետեւակք հինգհարիւր եւ յիսուն, եւ հեծեալք հա-րիւր եւ վաթսուն, եւ վիրաւորք յոլովակի քան չհարիւր եւ վաթսուն.,, Յայտնի է որ վերջին 160 թիւը շփոթ-մամբ կրկնուեր է. ըստ B վիրաւորեալք են 300, C: 350, V:2000: — ՃԻԸ, 65, 13 "զթեբայեցիսն կոր-ծանեալ ... եւ զամենայն հոլովոյս սատակեալ.,, կ'ե-րեւայ թէ պէտք է կարդալ "զամենայն հասակս.,, (յոյն է՝ πᾶσαν ἡλικίαν.) — ՃԻԹ, 67, 22 "զքո անդա-տանս մի առանց հասանելոյ է վայր՝ աւերերո փխ. "հա-սանելոյ է ներքոյ,, (յոյնն է՝ ἀκρίτως, անխորհրդաբար:) — ՃԻԹ, 68, 16 "Ատամոր է Նոա վաղեալ անկա-յանդնդային ալիսո փխ. "Ինոա,, անուն. (յոյնը՝ Ἰνώ.) — ՃԻԹ, 68, 27 "Այս վտակ է գարշեցելոյ Դրկայ, փխ. "Դիրկայ,, (Δίρκη) անուն գետոյ. Նաեւ "գարշեցելոցն ա-ղաւաղութիւն է եւ գոնէ աւելի լաւ է Թ. 424ի "փար-շեցելոց,, ըսելն, թէեւ նաեւ ասով որոշ իմաստ մը չ'ել-լեր: Հոս Գ եւ Դ, Ց եւ Յ, Ք եւ Փ շփոթուեր են: Յաջորդ (էջ 68, 29) "Մեփինքս,, անուան մէջ պէտք ենք "Սփինքս,, կարդալ. (յոյնը՝ εἴσφηξ. M կ'ուղղէ ἡ Σφὶγξ.) (69, 3) "Այս աստուածոց աղբիւրն է.... յորմէ բղխեն գեղեցիկ Նոհանք,,, փխ. "Նհանք,, (յոյնը՝ ἀναβλύζουσιν ... νύμφαι.) բայց ասոր կից "եւ հրովէ,, չի յարմարիր (յոյնը՝ εἰς τὰ λιβάδια կ'ըսէ), ինչպէս որ քիչ մ'ետքը (69, 4) "Դուսագրէ Աքտէոն,, սխալ է փխ. "Դուսագրէ Աքտէոն (յոյնը՝ ὁ δὲ δύσαγνος Ἀκ-ταίων.) — ՃԼԴ, 72, 21 "մի ոմն ի մարտիկ քուշտըն-դրացն՝ այր շահաւոր,, փխ. "... այր Նշանաւոր,, (παρά-δοξος ἀνὴρ) եւ (73, 19) "ի պատիւ երեք աստուածոցն՝ Հերմեայ, Հերակլեայ եւ Լեւդեւկեայ,, փխ. "..Պողե-դեւկեայ.,, (εἰς τιμὴν θεῶν τριῶν Ἑρμοῦ, Ἡρακλέους, Πολυδεύκους.) — ՃԽԸ, 85, 6 "Ուսեալ Աղեքսան-դրի ղողոփմոթեան նոցա առ պատերազմ,, փխ. "..ղողոփ-րոփոփոթեան..,, նոյնպէս նաեւ (85, 10) "զինչ կամս ու-նիք ի նախնեաց՝ ամբողջ պահել,, պիտի ըլլայ "... փառս,, կամ նման բառ մը (յոյնը՝ φήμη.) — ՃՂ, 107, 6 "Արամազդ իսկ զքեզ Մեծարեսցէ.,, փխ. "Մեծ արասցէ.,, (միայն A: Ζεύς σε ποιείτο μέγαν.) — ՄԸ, 122, 5 "Երկիր պագէք ամենայակաողին Նեմեսեայ Եւդիկեայ.,, պիտի ըլլայ՝ "... Նեմեսեայ եւ Դիկեայ.,, (BC: προσκυ-νεῖται τὴν παντέποπτον Νέμεσιν καὶ Δίκην.) — ՄԹ, 125, 11 "Հմակեր մարդիկ, փխ. "հօրակեր ...,, (B: τῶν Μηλοφάγων.) միջին-մեսրոպեան գրութեանց Մ եւ

Տ շատ դիւրաւ կը շփոթուին: — Աւելի դժուարաւ կը մեկնուի (125, 16) "Լրբաբար հայէր ընդ մեզ" փխ. "... հայէր..." (κατώπτευσε.) այսպէս է նաեւ (128, 6) "խմայաք էշ մատակ" (տես վերը՝ էջ 37 եւ Ծ. 2.) զոր պէտք ենք ուղղել "ընտրեցաք" (ἐπίλεξον κτλ.) — ՄԾԸ, 169, 13 "Գաւառս արուեստն յարմարականս առ- ար....:" Ասոր վրայ տես վերը՝ էջ 141–142, Ծ. 3: — ՄԿԱ, 172, 20 "Եւ դժեցաւ Անափպատրես զՀնարսն Աղեքսանդրի" փխ. "...դժուացաւ...:" Նաեւ Ա եւ Ե կրնան շփոթուիլ միջին-մեսրոպեան գրութեանց մէջ: — ՄՀԸ, 182, 27 "Արդ ընկալ զիս Հերակլէ եւ Աթենա եւ դուք որք ամենայն աւրայն վերաւք:" Դժբախտաբար այս կտորը չունինք այլ բնագիրը. բայց՝ որչափ կ'երեւայ՝ պէտք է ուղղել. "որք ամենայն աւրաւք (կամ եւրեք) ի վերայ եւ..." եւն եւն:

Այս քանի մ'օրինակները կը բաւեն ցուցընելու՝ թէ մեր ցայժմ ունեցած ամենէն ընտիր ձեռագիրն անգամ որչափ աղաւաղ է: Մեր այս տեղ դրած ցանկն եւ ոչ հարիւրին մէկն է՝ կրնանք ըսել. բաց աստի շատ բան ալ յընթացս գրութեան յիշեցինք եւ պիտի յիշենք յաջորդ համեմատութեան մէջ: Նաեւ աւելի մեծ կամ ամբողջ հատածներ գրեթէ բոլորովին կամ շատ խիտ առ խիտ աղաւաղութեամբք խճողուած են, մանաւանդ քանի մը կտորներ, որոնց յոյն բնագիրն ալ նոյն բախտն ունեցած է: Այսպէս են օրինակի համար ՃԻԹ, ՃԼԲ եւն հատածները: Այս եւ այլ այսպիսի կտորները ծայրէ ի ծայր ուղղելու եւ բուն բնագիրը վերակազմելու համար նոր անկախ ձեռագրաց պէտք կայ:

Այս ընդարձակ աղաւաղութեանց քով մանր ինդրական կամ աղաւաղական ամբողջնախադասութիւններ կարելի է գրեթէ ամէն էջի մէջ գտնել: Մենք կը դնենք հոս միայն մի քանիին: Փիլիպպոս, կ'ըսէ Կալիսթենէս[1], լսելով՝ որ զուարակազլուխ ձին մարդակեր է, ըսաւ. "Ճշմարիտ է այս որ յեղլենացիքն էին եղեն. զի ի մօտ ի բարիս եւ ի չարիս բնաւորեցաւ:" Այս խօսքը դժուարաւ կը հասկցուի

[1] Պատմ. Աղեքս. ԼԱ, 16, 14:

իւր այժմու աղաւաղ ձեւին մէջ. բայց ըստ յունին դիւրըմբռնելի է. (ABC: Ἀληθῶς ἐν τούτῳ πληροῦται τὸ ἐν τοῖς Ἕλλησι παροίμιον [BC: προοίμιον], ὅτι ἐγγὺς ἀγαθοῦ πέφυκε κακόν [B: ἀγαθῶν . . . καλόν]. այսինքն՝ "Ճշմարիտ է յայսմ առածն Հելլենացւոց թէ մօտ ի բարիս եւ չարիք բնաւորեցան:" Գոնէ այսպէս կամ նման ըլլալու էր նախնաբար հայերէնին այս մասը: — Աղեքսանդր յիշեցընելով Նիկողայոսի բախտի փոփոխական ըլլալը կ'ըսէ[1]". "զի յեղյեղուածն փոփոխէ միշտ, եւ զայլանդակն ընդունելն է," Այս կտորն առանց նոր ձեռագրի օգնութեան ուղղել շատ դժուար է: Ըստ BC պէտք էր ըլլալ "Զի միտումն (բախտի) անարգէ զհպարտացեալս." իսկ ըստ A "զի միտումն (բախտի) փոփոխէ զհպարտացեալս [եւ] սպանանէ." (BC: ῥοπὴ δὲ τοὺς ἀλαζόνας κατευτελίζει. A: ῥοπὴ δὲ μεταβάλλει τοὺς ἀλαζόνας [καὶ] αὐγενίζει.) — Փիլիպպոսի թաղման համար կ'ըսուի.[2] "Եւ թաղեցաւ եղեւ Փիլիպպոս թագաւոն եւ զօս հանեցաւ թաղէ Ոլոմպիադա:" Այս ոչ այնչափ յարմար խօսքն ուղղելու ենք թերեւս այսպէս. "Եւ թաղեցաւ եղեւ Փիլիպպոս թագաւորօրէն." (այսպէս է յոյնը՝ θάπτεται οὖν βασιλικῶς, եւ այսպէս ունին երկբայականք, որ պահած են "թագաւորօրէն" բառը:) Բայց "եւ զօս հանեալ" եւն կտորը կամ աւելորդ պէտք է ըսել կամ այլազգ ուղղել: — Աղեքսանդր բագին մը գտնելով "հարցեալ ուսանէր ո՛ յանտի բնակչացն աստուած է:" Պէտք է ուղղել. "Հարցեալ ուսանէր յանտի բնակչացն թէ ո՛ այն աստուած է:"[3] — Եգիպտացւոց երկրին բերրի ըլլալը յիշեցընելով կ'ըսէ անոնց Աղեքսանդր. "Քանզի թէ հանդերձ այսուքիւք, զոր ունէիք պարգեւս, եւ թագաւորք մեռա-

---

[1] Անդ, ԾԱ, 25, 11:
[2] Անդ, ԿԹ, 32, 23:
[3] Պտմ. Աղեքս. Գ, 42, 21: Յոյնն է. Ἐπυνθάνετο οὖν τῶν ἐκεῖσε κατοικούντων τίς ἄρα ὁ ἐνταῦθα θεὸς τυγχάνει.

նին խուժադուժքն, որ զայս ոչ ունէին ստացեալք:» Յունին համեմատ պէտք է այս անիմաստ խօսքն ուղղել այսպէս. «Քանզի թէ հանդերձ այսոքիւք՝ զոր ունիք պարգեւս՝ եւ թագաւորէիք, մեռանէին խուժադուժքն» եւն[1]: — Դարեհի մէկ նամակը կը սկսի[2]. «Թագաւոր Դարեհ՝ յայնկոյս Տաւրոսի խնդալ:» Պակաս է «զօրավարաց որ յայնկոյս» եւն: — Դեմոսթենէսի ճառին մէջ կ՚ըսուի.[3] «Քան զամենայն գործ սկիզբն փութով եղեալ՝ քաջայայտ է. որոյ եւ կատարածն վաղվաղակի ի տեսումն գայ:» Այս աղաւաղ կտորն ըստ յունին պէտք էր ըլլալ. «Քանզի ամենայն գործոյ սկիզբն փութով եղեալ՝ քաջայայտ է ինէ եւ կատարածն վաղվաղակի ի տեսումն գայ:» — Դարեհի զգեստն ստորագրելով կը գրուի՝ թէ «էր յղկեալ կազմ կերպարանացն ձեւ, եւ է մինչ ժամանակէն անցեալէ:[4]» Այս անյարիր եւ անիմաստ կտորը չունին ուրիշ բնագիրք: — Աղեքսանդր կը հրամայէ զօրաց հանգչել, «զի . . . կազդուրեցին սակաւիկ մի զօրականքն՝ յեղելով ընձակեր ձորքէին.[5]» Ըսինք վերն (էջ 217) «ընձակեր» բառին

[1] Անգ, ԴԷ, 47, 17—19: Յոյնն է. A: εἰ γὰρ μετὰ τούτων ὧν ἔχετε δωρεῶν και βασιλεύετε, ἔθνησκον ἂν οἱ βάρβαροι ταῦτα μὴ κεκτημένοι. V այլազգ է:

[2] Անգ, ՃԹ, 54, 20: Յոյնն է. . . . τοῖς ἐπέκεινα τοῦ Ταύρου στρατηγοῖς χαίρειν. Ասոր կից խօսքին «Ապաքէն ինձ յարուցեալ խաղացեալ Աղեքսանդրոս» նոյնպէս թերի է սկիզբը, եւ պիտի ըլլայ «Ապաքէն ինձ ազդ արարին՝ յարուցեալ» եւն. (ἐπιστέλλουσί μοι ἐπαναστάντα Ἀλέξανδρον.) — Շատ աւելի աղաւաղ է ամբողջ ՃԺԱ հատածը, որ է Դարեհի նամակն առ Վշտասպ եւ Սպանդիատաս: Հայը այս կտորին մէջ աղաւաղութեամբն գրեթէ անիմանալի եղած է: Նաեւ յիշեալ նախարարաց նամակին սկիզբը (55, 13) նոյն բախտն ունեցած է, վասն զի կը կարդանք. «Այսքան ազգն է վերայ մեր, զարմանամք՝ թէ զիարդ քեզ յանդէտս եղեւ» եւն: Հոս պէտք է բառ մը միայն յաւելուլ. «այսքան ազգն ի վերայ մեր յարուցելոյ՝ զարմանամք» եւն, (ինչպէս է յոյնը. Τοσούτου ἔθνους ἐπανελθόντος ἡμῖν.)

[3] Անգ, ՃԽԴ, 81, 31:

[4] ՃՀԷ, 99, 1:

[5] ՄԹ, 125, 11: Յոյնն է B: καὶ ἤλθομεν ἕως τῶν Μηλοφάγων. Հմմտ. վերը՝ էջ 217: — Այսպէս կրնանք

սխալ ընթերցուն ըլլալը: Նաեւ ամբողջ “յիշելով„ եւն անկապ կտորը պիտի ըլլայ նոր նախադասութիւն մը. “Եւ գնացաք առ հօտակեր մարդիկն.„ ինչպէս է յոյնը. եւն եւն:

Այս քանի մ՚ըստ կամի ընտրուած կտորներէն, ինչպէս նաեւ ցայս վայր մեր ըսածներէն՝ կըրնանք գոնէ գաղափար մ՚ընել Հայ բնագրին աղաւաղութեանց վրայ: Եթէ ապագային փորձուի վերակազմել անարատ Հայ բնագիրը, միայն բազմաթիւ ձեռագրաց ընթերցուածոց խիստ համեմատութեամբ կրնանք փորձ մ՚ընել՝ միշտ մտադիր ըլլալով յոյն բնագրաց, ի մասնաւորի AV խմբին: Թէ նաեւ շատ բան կրնանք օգտուիլ ասորիէն՝ յայտնի է, թէեւ վերջինս ուղղակի գործք մը չունի հայոյն հետ, ըստ որում պահլաւիկ բնագրէ թարգմանուած կ՚երեւայ: Այս իսկ պատճառաւ մեր գրութեան եւ նաեւ յաջորդ համեմատութեան մէջ չենք առած զայն համեմատութեան. թէեւ Հայ բնագիրն իւր նախկին անարատութեան վերածել ձեռնարկողը պէտք չէ մոռնալ օգնութեան առնուլ նաեւ զայն: Բաց աստի Կալիսթենեայ Պատմութեան ասորւոյն միւս բնագրաց նկատմամբ ունեցած աղերսը կրնայ տեսնուիլ նաեւ Նէօլտէքէի գրութեան մէջ[1], որ իւր համեմատութեան մէջ շատ տեղ յիշած է նաեւ Հայերէն բնագիրը:

---

յիշել նաեւ յաջորդ կտորները: Աղեքսանդր կը քաջալերէ իւր զօրքն ըսելով. (ՃԴ, 51, 15). “ուստից մեզ . . . ամօթ վարկանել զդարպասանսն՝ առնել մտանել եւ ըմբռնել լեցուս:„ BC լոկ “զի մի պարտեալ՝ յամօթ եղիցուք„ կ՚ըսեն, իսկ A “զի մի յանկարծակի ըմբռնել՝ ի պարտութիւն մատնեալ լիցուք.„ (ἵνα μὴ ἀπροσδόκητα ληφθέντες ἡττῶμεν.) — Դեմոսթենէս կ՚ըսէ Աթենացւոց (ՃԽԲ, 79, 10) “Արք քաղաքացիք. ոչ ասեմ աթենացիս տան թէ յեր օտար էր ոչ տաղատացի, պարտէր արդեօք ասել արք աթենացիք„: Յայտնի է որ պէտք է կարդալ. “Քանզի թէ յեղ օտար էր ոչ տաղատացի.„ (A: εἰ γὰρ ἦν ὑμῶν ξένος κτλ.) Այսպիսի կտորներ անթիւ են մեր բնագրին մէջ:

[1] Nöldeke, Beiträge zur Geschichte des Alexanderromans, pp. 18—24:

Մեր ուսումնասիրութիւնը չաւարտած՝ պէտք ենք տեսնել նաեւ թէ ինչ աղերս ունի Հայն յունին հետ, այսինքն՝ թէ հայ թարգմանութեան հիմն եղող յոյն բնագիրը այժմու գտնուած ABC խմբագրութեանց որ կարգէն է, եւ որուն աւելի նման։ Ճշդիւ խօսելով այս խնդրին լիուլի պատասխանն աւելի եւրոպական գիտնոց համար յարգ ունի, որոնք հայ բնագրին ընթերցուածովքը յոյն բնագիրը կ՚ուզեն ուղղել կամ վերահաստատել, ինչպէս ալ կարելի է շատ տեղ։ Բարեբախտաբար եւրոպական գիտնոց այս իրաւացի խնդիրքը լիովին կատարուելու մօտ է։ Ինչպէս "Հանդէսի" խմբագրութեան ուղղեալ նամակներէն կ՚իմանանք՝ Մեծ. Կանայեանց թարգմանած է բովանդակ հայ բնագիրը գերմաներէն, եւ որ լոյս պիտի տեսնէ հանդերձ ծանօթութեամբք եւ ներածութեամբ։ Ասով մեր այս մասն ըստ կարելւոյն համառօտ պիտի ըլլայ. վասն զի մեր նպատակն է միայն մեծ տարբերութիւնքն նշանակել հայ բնագրին, եւ այն՝ ի հարկէ առանց երկար մանրամասնութեանց մէջ մտնելու։ Այսչափն ալ հայ ընթերցողին լոյս կուտայ ճանչնալու հայոյն ունեցած դիրքը ABCV բնագրաց համեմատ։ Լատինական թուանշանով նշանակուած են յոյն բնագրին գրոց ու գլխոց թիւն։

1. (I, 1—16=Ա–ԼԸ:) Պատմութեանս սկիզբը կը սկսի հայն "Իմաստունք Եգիպտացւոց„ եւն, ուստի ALV ձեռագրաց համեմատ, ուր BC երկար նախերգանք ունին: Սակայն յընթացս այս մասին Հ շատ անգամ B բնագրին աւելի մերձաւոր է: Այսպէս ԺԳ հատածն, ուր Նեքտանեբայ շնութիւնը մանրամասն կը պատմուի ըստ B (A շատ կարճ է.) նոյնպէս չունի A ամբողջ ԺԴ հատածը, որ շարունակութիւն է նախընթացին, ինչպէս նաեւ ԼԾ, ուր Նեքտանեբայ եւ Աղեքսանդրի թաղման պարագայք կը համեմատուին:

Ա, 2, 1 "առնելով ղըէկանադէ-բաւ-բէ-նա." ըստ B: ἐποίει λεχανομαντείαν. իսկ գիւթու-

թեան Ջրոյն "աղբերային" ըլլալն B կը հաստատէ, ուր A անձրեւի Ջուր կ'ըսէ. իսկ (2, 4) "շնչաւոր լինէին մարդիկքն" միայն V ունի, որ շատ աւելի նման է նաեւ 2, 5—10 կտորներուն մէջ, զոր օր. 2, 8 "զերկրային չաստուածս եւ զօդային դեւսն". = V deos superos inferosque, այլ A: ἀγγέλους καὶ θεὸν Λιβύης Ἄμμωνα կ'ըսէ: — Բ, 2, 22—24 ազգաց անուանքը շատ տարբեր են ամէնուն մէջ, զորոնք յիշել աւելորդ կը համարինք: — 2, 26—29 Հոմերոսի երկու տողերը միայն L ունի=Հ, որ կ'ըսէ "Անկցի ի սիրտ քո հոմերական երկու տունքն. Ոչ է պարտ եւ արժան զգիշերն ամենայն ի քուն կալ անխորհրդաբերի (βουληφόρον, ուստի բառական), որում ժողովուրդք յանձին են եւ այսքան հոգք." (ᾧ λαοὶ ἐπιτετράφαται κτλ.) — Գ, 3, 14 "Հրաման — գնալ." եւ 3, 16 "կառուցեալ զակնն ի լականին՝ տեսանէր" ունի լոկ A (L վերջինը.) իսկ 3, 19 եւ 20 "այր սովորեալ" եւն լոկ BC. իսկ թէ Նեքտանեբոս Պելլէս փախած "կտաւիս զգեցեալ" կը նստէր, համեմատ է A V բնագրաց: — Ե, 4, 2 Եգիպտացիք փնտռեցին իրենց թագաւորը, եւ պատգամ տուաւ "որ ի սանդարամետն Սինոպեայ աստուածն էր." հոս "Սինոպայ" = (BC ὁ δ᾽ ἐν τῷ ἀδύτῳ τοῦ Σεραπείου (Սերապեայ,) ուր AL: πρὸς τὸν ἀόρατον τοῦ Σινωπίου, թէեւ ամբողջ խօսքը հայուն մէջ աւելի նման է BC բնագրաց. իսկ V չունի Ե հատածը: — Զ, 4, 11—25 աւելի համեմատ է A, այսպէս (4, 23) թէ Նեքտանեբոս արժանի չըրաւ զՈղոմպիադա թագուհի անուանել՝ յիշելով իր թագաւոր ըլլալը: — Է հատածին, ի մասնաւորի 5, 1—5 կտորին համար՝ համմտ. վերը, էջ 128, եւ ծ. 1: — Ը հատածին մէջ AVBC անել խառնակութիւն մ'ունին ընթերցուածոց, իսկ Հ շատ տեղ ուրոյն ընթերցումն ունի: Համմտ. էջ 207, ծ. 1: Թ. հատուածն, ուր Ողոմպիադա եւ Նեքտանեբայ խօսակցութիւնք դրուած են, ընդ-

հանրապէս BC բնագրաց համեմատ է, A շատ տեղ թերի. բայց տեղ տեղ ալ Հ սեպհական կերպարանք ունի. այսպէս՝ 5, 23 "ընդ աստեղաց սքանչելի տեսութիւն". 6, 7 եւ 8 "եւ եթէ (ընկեցեալ) լիցիս, գտցես որ խնդրեսցէ զվրէժ քո." 5, 16 Ողոմպիադա բրած հարցումն Ամոնի հասակին վրայ ընդարձակ է ի Հ, ուր ABCV լոկ կ'ըսեն Ποταπὸς ἆρα ἔστιν ὁ θεός. — Ժ=BC ընդհանրապէս: Նեքտանեբոս իւր հմայութեանց համար "առնու բանջար կոտոպլէոյ՝ զոր գիտէր առ երազափորձութիւն ի ճահ՝ յառաջարէն քաղեալ:" Բոլոր բնագիրք հոս պարզ "բոյս" կ'ըսեն (ABC βοτάνας, V herbas, իսկ "երազափորձութիւն" BC ὀνειροπολία, A ὀνειροπομπία, V somniorum imperia.)

Յաջորդ ԺԱ—ԺՁ հատածները, ուր Նեքտանեբայ շնութիւնքը մանրամասն կը պատմուին, ըստ BC բնագրաց է. A շատ համառօտ է: Այսպէս չունի A կամ համառօտ կը լմնցընէ՝ ԺԳ, 7, 31—8, 13, ամբողջ ԺԴ, այսինքն՝ 8, 21—9, 11. ԺՁ, 9, 22—29, այսինքն՝ Նեքտանեբոսի բաղէի մը ձեւով զՓիլիպպոս կախարդելու փորձը, ուր A քանի մը խօսքով կը լմնցընէ: — ԺՁ, 9, 27 "Եւ կոչեցեալ առ ինքն զերազոյ մեկնիչն զԲաբելոնիոս" այն քիչ տեղերէն է, ուր Հ=C է (C: ἀποστείλας εὐθέως ἤγαγεν ὀνειροπόλον τινὰ Βαβυλώνιον ἐπίσημον ὄντα.) Հայոյն 10, 9 "եւ ազդել ինչ ոչ" անիմաստ կտորը չունին ABC, ինչպէս նաեւ յետոյ ԻԱ, 12, 9 "իսկ թէ ուր չոքաւ, աւելորդ է ինձ ասել" խօսքը, նոյնպէս Ի, 11, 21 "Լսէր զայն Նեքտանեբոս՝ զոր ասէին" եւն: Այս կտորներն ալ (ԺԷ—ԻԲ) Հ աւելի=BCV, իսկ A տեղ տեղ թերի է. այսպէս չունի A՝ ԻԲ, 12, 11—18 կտորը: — ԻԴ, 13, 4 "Փիլիպպոս . . . յղեալ կոչեաց զԱնտիփոնտա" նշանալոյծը: Այս կտորը BC անուն չեն տար, այլ ունին AV (*A*: τὸν . . . ἐπίσημον σημειολύτην Ἀντιφῶντα, V: Antiphontem. ուստի հայն

մինչեւ անգամ յունարէնի վերջաւորութիւնը պահած է։) — ԻԵ, 13, 21 — ԻԵ, 14, 22 A այլաձեւ է եւ աղաւաղ, այնպէս որ ըստ M "առանց ուրիշ ձեռագրի մ'օգնութեան ուղղել անհնար է։" V ալ պակասորդ է, զոր օր. 13, 24—14, 16, զոր M ուրիշ ձեռագրէ մը (Bibl. Regiae Paris. Cod. 8519, fol. 7.) կը լրացընէ — ԻԸ, 15, 11 "քաջայայտ — մանուկն" լոկ A։ — ԻԹ, 15, 15 հմմտ. վերը՝ էջ 17։ Յաջորդները ըստ A (որ աղաւաղ է) BCV բնագրաց է, միայն 15, 18 "վարդապետ երէոց" γραμμάτων, V: literaturae. 15, 19 "հռետորականրանից Անաքսիմենոս Արիստոկլէս Լամփսակենացի." վերջինքն ունի լոկ V (. . . Aristocles Lampsacenus.) իսկ 15, 22 "Արիստոտելէս Նիկոմաքեայ ստագիրացի." վերջինք չկան VBCV բնագրաց մէջ։ Շատ կարեւոր կտոր մըն է 15, 29—25 "Բայց յիշեաց եւ Պափովրանոս յաղագս այսոցիկ ի չորրորդում գիրս՝ իւրում յամենազան հնարագէտ պատմութեանց". ունի միայն V (. . . graecum Favorini librum, qui Omni genere historiae superscribitur.) — ԼԱ, 16, 6 "մատկապանք" չեն ըստ A, այլ οί τῆς Καππαδοκίας ἄρχοντες (իշխանք Գամրաց) որ Փիլիպպոսին բերին ցլագլուխ ձին ("ձի" լոկ C, այլք՝ "մորուկ.") ուստի հոս Հ=B։ Իսկ թէ այս ձին "գեղեցկութեամբ եւ արագութեամբ առաւել քան զՊեգասոսէ-ան զԱրիոնեայն. զի եւ ի Լաոմեդոնտեայ բերեալ մատուցանեմք քեզ." ըստ մասին միայն ունին BV. (առաջինը՝ κάλλει διαφέροντα τοῦ Πηγάσου, եւ pedibus ad Pegasi fabulam opinabilem, et si quis fuisse Laomedonti ejusmodi praedicatur.) Հարկաւ հայը աղաւաղ ըլլալով՝ "Լամոմենտեայ" ուրիշ դիրք առած է։ Իսկ 16, 12 "Գեղեցիկ է, երդուեալ յիմ փրկութիւն" չունին ABCV. — ԼԲ, 16, 26 "ի ձի աշտանակէր" խօսքէն ետքը ABCV կը յաւելուն՝ թէ Փիլիպպոս ըսաւ. Որդեակ Աղեքսանդրէ, կը սիրեմ քու ծնունդդ,

բայց ոչ “Նկարագիրդ„, վասն զի անունման ես ինձ եւն։ Այս խօսքերը կը կրկնուին նաեւ յետոյ I, 16, ուստի հոս Հ իրաւամբ չունի։ — ԼԳ, 17, 14 “ի չիչան„ եւ 17, 22՝ էջ 50, Ծ. 5 եւ 210, 1։ — ԼԴ, 18, 6 “մտեալ առաջի մօրն„ խօսքէն յառաջ՝ BC կը յաւելուն թէ Ողոմպիադա հարցուց. “Զինչ է այն, որդեակ։ Եւ նա ասէ. Նոր Ենէաս զԱնքիսէ կրեմ.„ (Νέος Αἰνείας τὸν ᾿Αγχίσην βαστάζω.) Այս անձահ կտորը չունին AV եւ Հ։ — Ամբողջ ԼԵ (18, 14—19) չունի A. — ԼԶ, 18, 28 “Որ ի ցլագլուխ ձին հեծեալ՝ ընդ մէջ Եղլատրոյ անցցէ.„ ABC: διὰ μέσης τῆς πόλεως. V: medimu Pellae. — ԼԷ, 19, 1 “Աղեքսանդրոս Արիստոտէլեաւ ստագիրացւով միայն վարժէր„ BC ունի ᾿Αριστοτέλει (A յաւ. τῷ Μιλησίῳ) . . . ἐχέχρητο. նոյնպէս V: Aristotele Milesio uteretur. Ուստի “ստագիրացի„ հայոյն սեպհական, եւ գուցէ յետամուտ, ինչպէս նաեւ ԻԹ, 15, 22։ — Յայս վայր Հ գլխաւորաբար = B եւ նաեւ = V քան A. իսկ C ունի շատ յաւելուածներ։

*2. (I, 16=ԼԹ—ԽԶ։) Կը յաջորդեն ութ նամակ. 1. Զեւքսիսի առ Փիլիպպոս. 2. Ծնողաց Աղեքսանդրի առ Արիստոտէլ. 3. Արիստոտէլի պատասխան. 4. Ծնողացն առ Զեւքսիս. 5. Արիստոտէլի առ Աղէքսանդր. 6. Աղեքսանդրի պատասխան. 7. Ծնողաց առ Աղեքսանդր եւ 8. Աղեքսանդրի պատասխան։* ABC *չունին այս նամակները, այլ լոկ* V։ — *Ուստի Հ=*V.

Նամակաց մանրամասնութեանց մէջ V բաւական տարբեր է, եւ ընդհանրապէս՝ համառօտ։ Օրինակի աղագաւ բոլոր այս վերջաւորութիւնք չկան. ԼԹ, 20, 5 “Ողջ լինել ձեզ ըղձամ.„ ԽԳ, 21, 5 “Ողջ լեր ինձ որդի փաղջո—էնէ.„ ԽԴ, 21, 12 “Ողջ լինել քեզ աղաչեմ.„ ԽԵ, 21, 21 “Ողջ լեր մեզ, քաղցր եւ իմաստուն որդեակ„. եւն եւն։

*3. (I, 17—25=ԽԷ—ՀԲ։) Անկէ սկսեալ Հ գլխաւորաբար* AV *ընագրաց հետ նմանութիւն ունի, մինչ* B *եւ աւելի* C *շատ տեղեր այլազգ են, եւ աւելի յաւե-*

լուածներ ունին: Ասոր փոխարէն A չունի ծԹ հատածը, այսինքն՝ Յուշկապարկաց կռուոյ յիշատակութիւնը, ինչպէս նաեւ ԿԲ կտորը, որ Լիւսեայ անուան վրայ է: Բաց աստի ԿԸ—ԿԹ հատածներն, որ Փիլիպպեայ սպանուիլը կը պատմեն, աւելի նման են B բնագրին, ուր A երկար եւ տարբեր է հոս: Ուստի Հ աւելի = V (A) է:

ԽԷ, 22, 11 "Զինչ է ձայնս, խրխնջիւն ձիոյ է եթէ գոչիւն առիւծու." Հարցումն ըստ AV բնագրաց է, նոյնպէս յաջորդ խօսքին մէջ Պտղոմեայ "Փրկիչ" (Σωτὴρ, Soter) կոչուիլը: — ԽԹ, 23, 11 Աղեքսանդրի "Հնդեստանամեայ" ի Պիսսա ոզոմպիական խաղերու երթալը կը պատմեն նաեւ AV, ինչպէս նաեւ այս առթիւ եղած խօսակցութիւնք (23, 14 - 24, 2 եւն.) C ինչպէս ի սկզբան այս հատածին, նոյնպէս մէջն ալ տեղ տեղ տարբեր է ամէնէն: Զարմանք է որ "Պիսսա" անուան տեղ (Ծ. 24, 22), զոր ունին ABC, հոս քանի մը հայ օրինակ "Մեքին" անունը կը դնեն, որուն արձագանգ կու տայ նաեւ V: secunda admodum tempestate Elim appellitur. — ԾԱ, 25, 21 Նիկողայոս կը թշնամանէ զԱղեքսանդր ըսելով. "Մի բարի լիցի քեզ, պատանեակ ողաջոյր:" Այս վերջին բնիկ հայ անէծքը չունին ABCV. իսկ 25, 26 Աղեքսանդրի երդումը՝ թէ Երդնում "յանդէտ հայրն իմ եւ յորովայն մօրն ի սքանչելին որ նկարեցին զիս." միայն A ունի, եւ նման մ'ալ V. վերջինը ("որ կրեաց զիս") չունին նաեւ ասոնք. — ԾԲ, 26, 7 "Եղաւ սափորն, վիճակեցան առնթեր ոնէոփէ." խնդրական է. (A լոկ ἐχληρώτη, BC ἡ χάμπη ἐχληρώτη. V չունի 26, 3—6:) Յաջորդ ըմբշամարտից անուանց մէջ կան տարբերութիւնք. զոր օր. 26, 9 "չորրորդ՝ Կլիտոմաքոս Աքայեցի." A: Κλεινόμαχος. (BC լաւ եւս Κλειτόμαχος) Ἀχαιὸς. միայն V ունի "բաղկեցի", բայց իբրեւ ուրոյն ըմբշի անուն. (V: Balcheus quinto). "վեցերորդ՝ Պիերոմն" = V: Pierus, այլ ABC Περίερος,

եւ "հինգերորդ՝ Նէկոմաքոս." AB: Κλινόμαχος, իսկ "եօթներորդ՝ Կէմոն Լակոնացի." AB: Λάκων Λύδιος ուստի բոլորովին ուրիշ է։ Միայն V ունի իբրեւ ութերորդ "Alcan" անուն մը։ Յաջորդ ԾԳ կտորին մէջ C երկար յաւելուած մ'ունի՝ 26, 23էն ետքը։ — ԾԴ, 27, 3 առակը չունի V. — ԾԵ, 27, 11 Նիկողայոս անուան բառախաղին վրայ՝ տես էջ 184։ — ԾԶ (I, 20) C ի սկզբան երկար յաւելուած մը եւ Ոտանաւոր օրհնութիւն մ'ի պատիւ ըմբշական յաղթութեան Աղեքսանդրի եւն։ ԾԶ—ԾԷ Փիլիպպոսի զԱտտաղայ դուստր կին առնելու եւ Լիսիմաքայ սպաննելուն վրայ՝ տես էջ 45, եւ Ծ. 4 եւ 5։ Նշանաւոր է որ Լիւսիմաքայ խօսքը (28, 3) "Ամենայն քաղաքաց հզօր . . . մանկունս հարազատս արացես անշնացեալս" AC միայն ունին. A: Φίλιππε βασιλεῦ (C յաւելու πάσης πόλεως δυνάστα) . . . ἀμοιχευτοὺς (A սխալմամբ՝ . . . ἀμευχεσίους.) միաբան է եւ V վերջնոյս։

Կարեւոր է յաջորդ ԾԹ հատածը, ուր յիշատակութիւն կ'ըլլայ Յուշկապարկաց կռուոյն, եւ Ոդիսեւսի կը նմանցուի Աղեքսանդր։ A չունի, այլ BCV. սակայն թէ կար նախնաբար՝ վկայ է նաեւ Խորենացի, որ օրինակած է հայոյն այս մասն, որ քիչ մ'ալ աւելի ընդարձակուած է։ Տես վերը՝ էջ 46։ Խնդրական կը մնայ (28, 28) այն խօսքը՝ թէ զինուորները զՓիլիպպոս "ընկողմեցուցին ի վերայ գահոյիցն ղէրջէնան վարելով." (BC: κατέκλιναν αὐτὸν… κακῶς [C: ἐσχάτως] ἔχοντα.) — ԿԲ հատուածը, այսինքն այն խօսքը՝ թէ Լիւսիայ անունը հարսանեաց ժամանակ կը ջանան չյիշել, վախնալով որ հարսանեաց լուծում չըլլայ, չունի A, բայց ունին BCV. — ԿԳ հատածին կամ Մոթոնէի առման եւ այս տեղւոյ ունեցած վերնագրոյն վրայ՝ տես էջ 98—99։ — (ԿԴ) Դարեհի հրեշտակաց Փիլիպպոսէն հարկ պահանջելու կտորն քիչ մ'ընդարձակ է, ի մասնաւորի 30, 25—30, 29, բայց գոնէ ըստ A է

յետկանու: B աւելի հարցում մ՚ունի Աղեքսանդրի՝ թէ ինչ կ՚ուզեն այն հարկապահանջները, եւ կը պատմեն՝ թէ «Զոստ ոսկի հարիւր ի քսան լտերդ ոսկւոյ» պէտք է որ հարկ տրուին. զոր V չունի: Ի վերջոյ B կը յաւելու թէ սոյն Պարսիկք նկարել տուին Աղեքսանդրի նկարն եւ Դարեհի տարին ի Բաբելոն: — ԼԷ հատածին վերջերն, այսինքն՝ Պաւսանիասի զՈղոմպիադա յափշտակելու պատմութեան մէջ A շատ անճահ յաւելուածներ ունի, նոյնպէս նաեւ ամբողջ ԿԸ—ԿԹ հատածներուն մէջ, որ Պաւսանիասայ Աղեքսանդրէ սպանուիլը կը պատմեն: Այս ամէն տեղ Հ=B, իսկ V շատ տեղ համառօտ է: Բայց (32, 10) Ողոմպիադայ յորդորը՝ թէ «Զգեա, որդեակ, զաշտեդ, զի ինձ Ամոն օգնէ» V ունի միայն: Հայոյն ըսելը թէ (32, 11) Աղեքսանդր աշտէն նետեց եւ «ողան զՊաւսանիաս» գրչի-սխալ պիտի ըլլայ, ինչպէս յետոյ կ՚ըսուի՝ որ Փիլիպպոս անձամբ սպաննեց զանի: Ամբողջ այս կտորն այլադգ է ի C, որ Պաւսանիաս եւ Անաքսարքոս գնդով յափշտակած կ՚ըսէ զՈղոմպիադա: Փիլիպպոս գնդով կը հալածէ, կը հասնի նաեւ Աղեքսանդր, եւ ճակատ տրուելով՝ Փիլիպպոս կը վիրաւորուի. բայց Աղեքսանդր կը յաղթէ եւ կը բռնէ զանոնք, զորոնք Փիլիպպոս կիսամահ՝ կը սպաննէ: — ՀԲ հատուածին մանաւանդ վերջերը շատ մթին եւ յունաբան կտորներով լի են: Իսկ 34, 6 «յաղագս փողոփին յաղթել»՝ յոյնն է «հայրենեաց» (ὑπὲρ τῆς πατρίδος νικῆσαι) են:

4. (I, 26—36 = ՀԳ—ՃԲ:) Այս կտորն ամէնէն խառնաշփոթն է այլեւայլ բնագրաց մէջ: Աղեքսանդրի զօրաժողովէն ետքը (ՀԳ) BC անմիջապէս կ՚անցնին ուրիշ պատմութեանց, այսինքն՝ Աղեքսանդրու պատերազմաց ընդդէմ Հելլենաց եւ Յոնիականաց: AV այս պատերազմները յետոյ կը յիշեն, իսկ հոս կը պատմեն անմիջապէս Սիկիլիա, Իտալիա երթալն եւ Ափրիկէ արշաւելն, Աղեքսանդրիայի շինութիւնը, ապա ծուրայ

առում: Այս պատմութիւնքն ունին նաեւ BC, բայց վերոյիշեալ կտորներէն ետքը. այնպէս որ բոլոր ձեռագիրքը կը միանան I, 29 (= ՀԴ. 35, 6) տեղը: Այս կարգի տեղափոխութեան, եւ ընդհանրապէս այս ամէն կտորներուն մէջ Հ=AV է, ուր BC շատ տեղեր չունին, զոր օր ՀԹ (մասերը), ՁԳ, ՁԴ եւն:

Ի սկզբան (ՀԳ հատուածին) B կը յաւելու՝ թէ Աղեքսանդր ԺԸ ամաց թագաւորեց, եւ Փիլիպպոսի մահուան առթիւ ծագած աղմուկը խաղաղեցուց Անտիպատրոս. իսկ C հոս կը նկարագրէ Դարեհի հրեշտակայ գալը, որ "ոսկի հարկ կ'ուզէին, այլ Աղեքսանդր մերժեց եւ նոյն թուղթը պատռեց: Անկից ետքը կ'անցնին Աղեքսանդրի բանակին հաշուին, ուր Հ շատ ուրոյն ընթերցումներ ունի, եւ կ'երեւայ թէ նաեւ կրկնութիւններ. Համմտ. 34, 16ff եւ 19ff: Նաեւ ABC թուերու մէջ հոս անմիաբան են մանրամասնութեանց մէջ, իսկ V շատ աւելի այլազգ է հոս. Հ շատ տեղ աւելի ուղղագոյն կ'երեւայ: — AVՀ անմիջապէս կը կցեն այս թուերէն ետքը՝ թէ Աղեքսանդր անցաւ "Մագոն" — (որ գրի սխալ կ'երեւայ. A: διὰ τοῦ Θερμώδοντος —) գետը եւ Լիկաւոնիա գնաց: Այսպէս է եւ Հ (ՀԴ. 35, 1—6:) Բայց B կը պատմէ (I, 27) հոս՝ թէ Համբաւ ելլելով որ Աղեքսանդր մեռած է՝ Թեբացիք ոտք կ'ելլեն: Աղեքսանդր կ'արշաւէ հոն եւ կը կործանէ զայն, որուն կործանման նշաններ կ'ըլլան նախ, զոր օր. Դիրկեայ ջուրը կ'ըլլայ արիւնագոյն եւն: (Համմտ. AVՀ յետոյ՝ ՃԻԶ—ՃԼԴ:) Անկէ ետքը (I, 28) կու գայ Թրակիոյ կողմերն երթալը (=ՀԴ, 35, 1—6:) Անկէ կ'անցնի Աղեքսանդր յԱսիա, եւ կը ցցէ իւր նիզակը իբր նշան տիրելու Ասիոյ (Diodor. XVII, 17, 2: Համմտ. նաեւ Խորենացւոյ նման Պատմութիւնը Արշակայ նկատմամբ:) Գրանիկոն գետը կու գայ, ուր ճակատ կը տրուի Դարեհի սատրապաց դէմ. ապա կ'առնուին Յոնիա, Կարիա, Լիւդիա եւն:

Զարմանալիք մ՚ալ կ՚ըլլայ. վասն զի Աղեքսանդր նաւ չունէր, բայց ծովը տեղի տուաւ, եւ այնպէս կրցաւ անցնիլ: Իսկ C այս կարդաւ, բայց ուրիշ բաներ կը պատմէ. վասն զի Թեբայ եւ Իտալիոյ արշաւանքէն ետքը՝ Արեւմտից աշխարհքները, կ՚ըսէ, առաւ Աղեքսանդր, եւ ապա մինչեւ Ովկիանոս գնաց, եւ աշխարհքը շրջելով դարձաւ Մակեդոնիա: Ապա կրկին անգամ կը պատմէ Իտալիա եւն երթալը, եւ այն՝ այս անգամ I, 28 բնագրին պէս: Ուստի առաջին անգամ պատմուածն ուրիշ գրքէ մըն է: — Ամէնքը կը միանան Սիկիլիա եւն արշաւելը պատմելու յաջորդ գլխուն մէջ (I, 29=ՀԳ, 35, 6:) Հռոմայեցւոց հիւպատին "Մարկոս Եմիլիոս„ կոչուիլն ունին միայն ՀAV, ինչպէս նաեւ այն՝ թէ այն պսակն՝ որով պսակեցին զԱղեքսանդր, "Արամազդայ Կապիտողեայ„ էր. (լոկ A: *τὸν τοῦ Καπιτωλίου Διὸς στέφανον.*) — ՀԷ, 36, 1 Աղեքսանդր նաւեց Ափրիկէ եւ հրամայեց զօրաց մնալ "Փարիտիս„ կղզին: Լոկ A հոս ունի սոյն անունը՝ *τὴν Φαρίτιδα* (C: *Πρωτηίδα*) *νῆσον*. B "ի կղզի ինչ„ կ՚ըսէ: Աղեքսանդրին երազի մէջ տեսնուած Ամոն դից պատգամը (36, 14–21) "Ով Թագաւոր„ եւն յունին մէջ չափական է, բայց նաեւ յոյն բնագրաց մէջ շատ խառնակ: Տես վերը՝ էջ 47 եւ Ծ. 1: Յաջորդ հատուածին (36, 24) "Պրոտէոտէա„ անունը յոյնին ազդեցութիւնն է. (*τὴν Πρωτηίδα*, V. Proteiam:) — Իսկ "Պարատոնիոն„ եւ "Տապոսիրիս„ անուանց (37, 2 եւ 5) բառախաղին վրայ՝ տես նաեւ վերը՝ էջ 184, Ծ. 1 եւ 185, Ծ. 2:

Շատ կարեւոր է ՀԹ հատուածն, որ է Աղեքսանդրիայի այլեւայլ կողմանց ստորագրութիւնը: Համաձայն ABC բնագրաց "երկոտասան„ գիւղ կը դնէ հայն Աղեքսանդրիայի (V "վեշտասան„ կ՚ըսէ:) Բայց գիւղերուն անունները չունին BCV, այլ լոկ A. սակայն թէ Հ եւ թէ A շատ աղաւաղ են այս տեղ: Ըստ հայոյն գիւղերն են. "Ստերամփիս (*Στειραμ-*

φεῖς,) Փրոնէտէտէ (A: Φανέτι καί.) Եւդիմաս (տպ. սխալմամբ "Եւ Եդմիտաս. A: καὶ Εὔδημας), Ակոնէս A: Ἀκάμης), Եպիւրգոս (Ἀπύρος), Տետրակովտիս (Ταραχώτης. M կ'ուղղէ τε Ῥαχώτης, այսինքն՝ Ῥαχῶτις. սակայն արդէն Ե դարուն հայր կ'արդացեր է այն սխալը.) Եգիոս (Ἡγιῶσα, տպ. սխալմամբ "Եգիոս„.) Ապաւնիս (Ὑπονῆς), Կամբեաք (Κραμβεῖ τε, M կ'առաջարկէ Κράμβουτις. Հ սխալմամբ տպուեր է "Սկամբեաք.„ A կը յաւելու հոն՝ Κραπαθεις καὶ Λυϊδίας, Παύσας, Τέρεσις τῷ [τε?]) Նեփելէաք (Νεφέλη τε), Մեմնէս (Λημνία τε vel Μημνία τε, վերջինս=Հ), Տիաաք (ուստի Հ թերեւս ըլլալու է "Մեմնէստիաաք=Μημνία τε աղաւաղութեան), Պելասոս (Πέλασος): Աստ կ'ըսուի թէ երկոտասան գետակներ կային քաղաքին մէջ, որոնց "մինչեւ ցայժմ ելք ընթացից խցեալ կան,„ խմատն հակառակը կը պահանջէ. սակայն այն սխալն արդէն Ե դարուն կար, ինչպէս վկայ է եւ A: αἱ διεχδρομαὶ [supple καίπερ] πεφραγμέναι ἐστίν. M կը յաւելու թէ պէտք էր ըլլալ՝ δῆλαι vel φανεραί εἰσι = "յայտնի են„. V: sicut nunc etiam . . . datur visere): Ինչպէս այս՝ նոյնպէս յաջորդ մասերն ալ շատ աղաւաղ են թէ Հ եւ թէ A բնագրին մէջ. զոր օր. "Հաւակովտացին գետ՝ որ այժմ ընթանայ, մեծին Սարապեայ աստուծոյ է, (ὁ δρόμος τοῦ μεγάλου θεοῦ Σαράπιδος), ապա ջրադարձն որ վաճառէ է վաճառաքաղաքացոյն (εἶτα διορύσσε [M: διερρύη] τοῦ Ἀγορίου [M կ'ուղղէ՝ Ἀγοραίου]), մեծ գետն որ այժմ անուանի Քուզերաս (A: ξυλέρῳ անհեթեթ գրչութիւն մը), . . . ապա ջրադարձն նորա որ է Քախոյ տուն (εἶτα διορύει [διερρύη] τῷ Τυχέῳ [ուղ. τοῦ T.]. հոս յայտնապէս հայր τύχη բառը կարդացեր է.) եւ մեծ գետն որ Կանոպոնիայն է եւ է Ջրադարձն մեծ է (սոյնք չունի A) գետն Նեփրուտայի որ այժմ արտաքս դիէրքն են (յոյնն ալ՝ τὰ νῦν Ἐχθέματα

οὗ ἐστίν եւն), . . . Արգէոս որ կոչի Արգէայն (պէտք է յաւելուլ «սիւն». *A*: Ἀργέου στύλος), ապա Ջրադարձն Արեայ (A չունի), . . . ի տեղւոջէն որ կոչի Պանդիւրա (ἀπὸ τοῦ Μενδίου) մինչեւ յայն տեղի՝ որ կոչի Հերակլէովտակայնի բերան.» (յոյնը՝ «Հերմուպոլեայ...») եւն եւն: Այս ամբողջը չունին BC, իսկ V վերջին մասը՝ 37, 20 ff. վերջին կտորը (38, 1 ff), ունին եւ մասամբ համեմատ հայոյն, զոր օր. ἀπὸ τῆς Πανδύσεως (= Հ «Պանդիւրա») անունը, զոր M ἀπὸ Πλινθίνης եւն կ'առաջարկէ գրել. Նոյնպէս նաեւ «Հերակլէովտակայնի բերան» = *B*: Ἡρακλεωτικοῦ στόματος [*B*: στύλου], A քիչ մ'աւելի յառաջ բառած էր [ἕως τοῦ] Ἡρακλείου στόματος. V «Պանդիւրա» անուան տեղը՝ Interdidium կը գրէ:

Յաջորդ կտորին (Ջ) «Հերմուպոլիս» եւն անուանց բառախաղին նկատմամբ՝ տես էջ 185, նոյնպէս նաեւ (38, 14) «ցամաքք» բառին վրայ՝ էջ 194: — ՋԲ, 39, 3 «Եւ էին նոցա ոչղքօանէ ֆօղոցէ ֆնացէյ գիւղէցն Եւփլոքոս եւն» խօսքին նկատմամբ *A* ἀρχέφοδοι, *B* ἀρχέποδες, C ἀρχιτέκτονες: «Եւփլոքոս» անունը հոս լաւ է, բայց վերը (38. 28) «Եղիւրեքոս» եղած էր (τοῦ Εὐρυλόχου, *B* Εὐρυλόφου.) իսկ նոյն տեղւոյ 38, 27 «որ առ Կանոբաւն է» խօսքին մէջ գրի սխալով մը «Կանոբաւ» եղած է անունը, փխ. «Կանոբաւ.» (V ունի միայն «a Canopo usque» etc.) Հեպոնիմոսի գործքին եւ ջրամղահոսաց վրայ՝ տես 185—6: -- Յաջորդ (ՋԴ) հատուածն չափ այլեւայլ մեծ քաղաքներու հին աշխարհքին, զոր չունին BC, այլ միայն AV: Հայոյն մէջ կայ նաեւ Ասորւոց Անտիոք քաղաքին չափը (8 ասպարէզ եւ 72 ոտք.) զոր չունին այլք. բայց վերջինք ալ Հռոմայ չափն ալ ունին, զոր չունի Հ: — Ինչպէս այս, նոյնպէս յաջորդը՝ (ՋԴ), որ Պրոտեայ շիրմին շինութիւնը կը պատմէ, ունին միայն AV: (Տես 47, ծ. 2:) V կը յաւելու հոս վերջը. Exinque civitas Pharos est; ejusque mos ad nos usque

prolapsus Sacrum inter nostros Heroon dicitur. Հոս կը սպառի BC բնագրաց պակասը: — Զե ունին ամէնքը, բայց արդէն ՉՁ ունին դարձեալ միայն AV: Այս հատուածը կը պատմէ Աղեքսանդրիայի շինութեան ժամանակ վիշապի մ'երեւեալն ու գործքը խափանելն եւն: V շատ աւելի մանր ալ ունի. եւ այն խօսքէն՝ թէ Աղեքսանդրիա սկսաւ շինուիլ "ի Մէջոյէ Պոլոյին" (ἀπὸ μέσου πεδίου), ուստի ալ իր անուանակոչումն առաւ, կը յօրինէ V:Mesonpondio անուն մը, որ յունարէն յիշեալ բառերուն ընդօրինակութիւնն է: Այս մասին մէջ "Յարկ" եւ "Աղբեւք" անուանց եւ յաջորդ հատուածին (Զէ) Ա. Բ. Գ. Դ. Ե տառերով բառախաղին վրայ՝ տես էջ 187 եւ 189, ծ. 6: Զէ հատուածին, այսինքն՝ Աղեքսանդրիոյ "լորտու" պաշտելուն վրայ գրուածը՝ տես վերը, էջ 47—48 եւն:

Կարեւոր է այն՝ որ հինգ բարձրաւանդակաց վրայ գտաւ Աղեքսանդր զերկիրն, "որ է արեգական եւ Եղիոպոլսայ սիւնք". (41, 23:) Հոս բնագիրք շփոթեալ են. A է. Ἥλιος καὶ ἡλίου στῦλοι (C σίλωνος στύλους, B σιρήνους πόρους.) — Յաջորդ կտորին (ԶԹ) մէջ, որ աղօթք է Աղեքսանդրի "դիւցազինն տաճարի" բագնոյն առջեւ, յոյն բնագիրը չափական է. Ղ, 42, 28 կտորին վրայ՝ տես էջ 141, ծ. 3: — Աղեքսանդրի գտած մեհենագիր արձանագիրն (Ղ, 42, 34 եւն) է ըստ Հ. "...Սեսոնքոսիս աշխարհակալ՝ նախ Եղէ-եցելո-մն աշխարհիս աստուծոյ Սարապեայ նուիրեալ կանգնեցի:" Յոյնն աղաւաղ է (A: Σεσόγχωσις τῷ προστάτῃ [cod. το προφανῆ] τοῦ κόσμου ἀνέθηκε.) բայց V համաձայն է հայոյն գոնէ մասամբ. Praesuli mundi totius deo Serapi consecrat). — Սոյն դից Աղեքսանդրի տուած երկար պատգամը (ՂԳ) չափական է յոյնին մէջ: Կարեւորն հոս այն է՝ որ Եբէն բնագրի հետք ունի հոս հայն, այնպէս որ 44, 33—45, 6 Եբէնո-ըն-ն է նախընթացին (մին աւելի

=A, միւսը՝ B)։ Տես վերը՝ էջ 213։ Իսկ վերջին կտորին, այսինքն՝ Սարապիս անուան բառախաղին վրայ՝ տես վերը՝ 186: — Հոմերոսի կտորին վրայ (ԳԴ, 45, 27 եւն)՝ տես էջ 29: Այս հատուածին հետ կը լմննայ նաեւ BC բնագրաց պակասը, որոնք քիչ ընդհատութեամբ Գ, 42, 28 — ԳԴ, 46, 3 կտորը չունին, եւ ի մասնաւորի այս Հոմերոսի կտորը։ BC այս կտորներուն տեղ համառօտ կտորով մը միայն կը շատանան, եւ որ զարմանալի եղանակաւ հայ բնագրին յիշեալ կտորին (44, 33—45, 6) բառական նման, այնպէս որ կարծես AB խմբագրութեանց ձուլուածն ունէր հայն իր առջեւ։ — Վերջապէս ԳԷ կտորէն բառական մաս մը (47, 8—20) BC շատ համառօտիւ միայն ունին։ Նմանապէս AV ունին միայն վերջին դիտողութիւնը (47, 30 եւ 31) թէ Աղեքսանդր գունդն առնելով սկսաւ Ասորիք արշաւել:

Ասկէ ետքը կու գան Տիւրացւոց պարապայ մէջ փակուելին ու թղթակցութիւնն եւն։ Ասոնք մանրամասն համեմատութեամբ դրինք վերը՝ Խորենացւոյ փոխառութեանց առթիւ։ (Համտ. վերը՝ էջ 60—63) Տիւրացւոց պատմութիւնը կը փակի առ այժմ երկու նոր հատուած ալ աւելցնելով (ԺԱ—ԺԲ։) Առաջինը կը պատմէ Տիւրացւոց թղթաբերաց տանջուիլը, իր տեսած երազը եւ Սատիրոսի մեկնութիւնը. (Համտ. նաեւ այս կտորներէն մի քանին՝ յէջն 141, ծ. 3 եւ 186) իսկ երկրորդը՝ Տիւրայ առումն ու Աղեքսանդրի արշաւելն ի "Տուրաստան." (Համտ. առոր վրայ՝ էջ 195։)

5. (I, *36—42=ԾԳ—ԾԺԹ:*) *Այս մասն է Աղեքսանդրի եւ Դարեհի կռուոց առաջին մասը: Բնագիրը սովորաբար համեմատ է* A՝ *բնագրաց. այսպէս չունին* BC *ի մասնաւորի ԾԺԴ հատուածը: Ասոր փոխարէն* A *բնագրէն թուղթ մը պակաս է (ԾԺԸ եւն:)*

ԺԳ, 49, 31 եւ այլուր "աթոռակից արեգականն աստուծոյ Միհրեայ" (*Μίθρα.*) այս կտորը

լոկ AV ունին, որ “արեգական„ աստուածութիւնը չունին հոս: Դարեհի դեսպանաց աղաչանքն՝ որ չարամահ չընէ զիրենք Աղեքսանդր “Ծուրացուց նախանձեալ՝ որ ի խաչ հանին զդեսպանսն քո. զայդ մի ուսուցաներ ամենայն աշխարհի„ (ՃԵ, 51, 22—24) չունին ABCV: Ամբողջ այս հատուածը V համառօտած է. — ՃԸ, 54, 14 եւն “Եւ Աղեքսանդրի զզօրականսն առեալ զամենայն, եւ զԱսորիս զընաւ հնազանդեալ՝ անցանէր գնայր յԱսիա:„ Այս խօսքն լոկ ըստ A է. (հոս տպագրութեան մէջ սխալմամբ է “եւ զԱսորիս Եւ զընաւ հնազանդեալսն անցանէր„ եւն: — ՃԺ, 55, 12 Դարեհի նախարարաց գրած թղթին սկիզբը “Վշտասպ եւ Սպանդիատար„ անուանքն ըստ AV բնագրաց են միայն (A: Ὑδάσπης καὶ Σπίγχθηρ [Σπίνθηρ] V: Hystaspes et Spinther.) BC անուն չունին հոս: Այս կտորին (55, 16) “ինն արս երկաթով եւ սնդմայիւք կապեալս„ լոկ AV ունին. (A թիւ մը չունի հոս. Ἄνδρας σιδήρῳ καὶ χόρακι δεδεμένους, V “հինգ„ կ'ըսէ:) — Դարեհի պատասխանն առ Վշտասպ (ՃԺԱ) շատ աղաւաղ է հայոյն մէջ, բայց կարելի է վերակազմել մասամբ ըստ A եւ մասամբ ըստ B բնագրաց: Օրինակի աղագաւ (55, 32) “Զիմ թագաւորութիւնս յամօթ արարիք՝ պատճառս տալով առն աւազակի„ խօսքն աւելի ըստ B է (πρόφασιν δίδοτε, A: ἄνεσιν δεδωκότες) — “Պինդարոս„ գետը (ՃԺԲ, 56, 2) գրչի սխալ կ'երեւայ. յոյնն է τῷ Πινάρῳ (A սխալմամբ՝ Τινάργῳ, BC: Πιναρίῳ) Այս կտորին մէջ եղած Դարեհի թուղթն առ Աղեքսանդր՝ գոնէ սկիզբները (56, 6 “Քեզ„ — 17 “ինոցանէ.„ հմմտ. նաեւ 56, 24—26) ըստ A է, ուր BC քիչ մ'այլազգ ունին: V հոս համառօտութեան օրինակ կրնայ ըլլալ: Ասոր հակառակ ՃԺԳ հատածին մէջ BC երկարաբան են: Այլ Հ=AV է այս տեղ, որ Կալիսթենեայ գեղեցկագոյն կտորներէն է, եւ է նկարագիր առաջին ճակատամարտին Դարեհի: Այս

նկարագրութեան երկրորդ մասը (ՃԺԳ) չունին BC, այլ լոկ AV (վերջինս համառօտ.) BC կը սկսին 57, 29 «Որ եւ աստանօր» տեղէն. իսկ ի սկզբան նկարագրութեան երկայն բարակ կը ստորագրեն Դարեհի զօրութիւնը, Աղեքսանդրի Կիլիկեան Տաւրոս անցնելով Տարսոն գալը, Կիւդնոսի մէջ լուացուելով հիւանդանալը եւն։ Այս ամէնն ունին AVՀ, բայց յետոյ (II, 8=ՃԾԴ եւն) ուր BC նոյնը կը կրկնեն երկրորդ անգամ։ — ՃԺԶ, այսինքն՝ Աղեքսանդրի հոս զԴարեհ հալածելու կտորը՝ տես էջ 48—49։ Այս կտորէն վերջը (59, 2) A բնագրէն թուղթ մ'ինկած ըլլալով՝ պակաս է։ — Դարեհի երկրորդ արշաւանաց պատրաստութիւնը (ՃԺԸ) հայոյն մէջ նոյն է V ի հետ. BC երկայն բարակ գնդերու զօրութեան թուերը կը նշանակեն։ — Ի վերջոյ Աղեքսանդր փոքր նամակ մը գրէ առ «Սկամանդրոս.» V իսկ միշտ նամակի ձեւով չէ հոս. ABC: Κάσσανδρος կը գրեն այս անունն ըստ M ի. այլ բուն ձեռագրին մէջ էր Σχαμάνδρῳ տրականը, ուստի եւ հայը սոյնպէս տեսեր է Ե դարուն։

*6. (I, 42—57=ՃԻ—ՃԼԴ.) Այս մասը կը պատմէ Աղեքսանդրի Տիւրացւոց, Թեբայեցւոց եւն հետ ունեցած կռիւները։ A թուղթ պակսելով չունի սկիզբները եւ հազիւ ՃԻԴ հատուածէն կը սկսի։ Յաջորդ (ՃԻԵ) կտորէն կը սկսի մեծ տարբերութիւն մը, վասն զի սկսեալ (I, 45=ՃԻԵ) մինչեւ երկրորդ գրոց սկիզբները (II, 6=ՃԽԹ) չունին հոս BC, որ նոյններն այլուր կը պատմեն եւ տեղ տեղ աւ այլազգ։ Հ է աստ=AV։*

ՃԻ, 59, 33 «Կերատոն» անուանն նկատմամբ՝ տես 195—6։ — Յաջորդ (ՃԻԲ) հատուածին մէջ՝ Եքտուրի յիշատակութենէ ետքը՝ V ոտանաւոր մը կը յաւելու։ Սկամանդրոսի վրայէն ցատկելը՝ տես էջ 25։ Հոս գետին անունը BCV ունին, բայց ինչ ինչ բան լոկ B, զոր օր «զվահան Էանդեայ չէօրնկաչէան» խօսքին մէջ B միայն կ'ըսէ τὸ ἑπταβόειον: «Էանդոս» անունը չունի եւ ոչ մէկը։ — Այս տեղ (61,

1—63, 6) բոլոր հայ ընդարձակ օրինակաց մէջ պակաս է, որով չկան հայոյն մէջ Աղեքսանդրի Աբդերա, Ողինթոս եւն արշաւելը, բանակին մէջ կերակրոյ պակսելով՝ ձիեր ուտելը եւն։ Համմտ. վերը՝ էջ 140 եւ 176, Թ. 6 եւ Ծ. 4։ — Յաջորդ կտորէն սկսեալ (ՃԻԵ) չունին BC, այլ լոկ AV. Հոս (63, 11) կ'ըսուի թէ Աղեքսանդր "եկն յԱկրագանդինեացիսն." A կ'ըսէ ἐπὶ τοῦ Ἀχραγαντινοῦ, V: Agragantum. այլ լատինականին ուրիշ երկու ձեռագիրք Tragacinthes կամ Traganes կը գրեն, եւ M կ'առաջարկէ ուղղել Tegyra, ըստ որում կարելի է որ, կ'ըսէ, յոյնն ըլլար նախնաբար ἐπὶ τοῦ Τεγύρας μαντείου. Բայց Հ արդէն հինգերորդ դարուն այլազգ տեսեր էր, այսինքն՝ համեմատ այժմու AV բնագրաց։ Իսկ "Ամբծախօս" (63, 13 եւն) տես՝ էջ 178. Ծ. 1։ "Եղիւրեփացւոց" յոյնը "Լիւդացւոց." (Λυδῶν.)

Ամբողջ ՃԻԶ—ՃԻԷ հատածները մանրամասն համեմատութեամբ տես՝ էջ 63—69։ — Կը յաջորդէ Իսմենեայ նուագը. "Ի ձեռն այլոց հմտութեան" խօսքն (65, 15) եւ նուագին վերնագրութիւնն՝ տես էջ 195 եւ էջ 99. Իսմենեայ այս երգն թէպէտ համեմատ է A բնագրին, բայց վերջինս այնպէս աղաւաղ է որ "առանց ուրիշ ձեռագրաց վերակազմել անհնար է." ինչպէս M կը վկայէ։ Նաեւ սկիզբըն A այլազգ կը սկսի, իսկ Հ ալ անիմաստ աղաւաղութեան կոյտ մ'եղած է։ Իսկ V շատ կարճ կտրեր է՝ գրելով ի վերջոյ՝ ի թէ Իսմենիաս շատ մը դիցաբանական վէպեր աւելցուց իր երգին մէջ (Addedat et fabulas, quaecumque Thebanae sunt etc.) Ուրիշ բախտի չեն արժանացած նաեւ յաջորդ կտորները (ՃԼԱ—ՃԼԲ), որ Աղեքսանդրի պատասխանն է առ Իսմենիաս եւ նկարագրութիւն քանդման Թեբայեցւոց՝ դարձեալ չափական, եւ նոյնպէս աղաւաղ A եւ Հ բնագրաց մէջ։ Այս մասերուն այլեւայլ կտորները յիշեցինք շատ անգամ։ Վերջինը (ՃԼԲ) ամենեւին չունի V բնագիրը։ — ՃԼԳ

եւ ՃԼԴ կը պատմէն Իսթմեանց խաղերը, որոնց մէջ յաղթող ըլլալով Թեբայեցի մը խնդրեց Աղեքսանդրէ շինել զԹեբաս, որ եւ եղաւ: Համեմատ. վերը՝ էջ 31. իսկ այս մասին վերջաւորութեան վրայ (73, 24 եւն) տես 6, 13 եւ 93: Այս տեղ կը լմննայ առաջին գիրքը:

7. (II, 1–6=ՃԼԵ–ՃԽԹ:) Այս ամբողջ հատածը, որ Աղեքսանդրի Աթենացւոց հետ ունեցած խնդիրը կը պատմէ, չունին հոս BC, այլ լոկ AV:

Ճիշդ ՃԼԻ հատածով կը սկսին AV «երկրորդ գիրքը» Կալիսթենեայ: — ՃԼԷ, 75, 29 «Եսնախկին գրեմ ձեզ . . . համառօտ ասեմ զգլխաւորն» խօսքը տես էջ 193, նոյնպէս նաեւ (76, 16) «առաքեցի զՊրոտեայ զմեր» կտորին վրայ՝ էջ 196: — ՃԽ, 76, 24 պատմութեան մէջ քիչ մը տարբերութիւն կայ: Ըստ Հ Աթենացիք առին Աղեքսանդրի թուղթը եւ «[illegible]՝ ոչ առնեմք, եւ առաքեցին». ուստի նոյն թուղթը յետս խաւրեցին: A լոկ կ՚ըսէ οἱ δὲ ἀντέγραφον. „Οὐ ποιοῦμεν." (Արարին պատասխանի. «Ոչ առնեմք:») — ՃԽԱ, 78, 1 «[illegible], կ՚ըսէ Դեմաթէս, զժողովոյս մերոյ զԹշնամին անդ կացոյց զօրավար:» A այս անունը չունի, այլ Κιθόωντα[M:Κηφισοφῶτα?] կ՚ըսէ. իսկ V անունն չունի հոս, եւ ընդհանրապէս շատ աւելի ընդարձակ է այս տեղ: Այս կտորիս մէջ եւ թէ յետոյ (80, 1 եւն) Քսերքսեսի վրայ եղած յիշատակութեանց քիչ մը փոփոխութիւն կրած ըլլալը՝ տես էջ 191: — ՃԽԲ, 79, 7 «Իսկ Դեմոսթենէս յոտն կացեալ [illegible]» փետագիր կտորները չունին AV: Այս կտորիս 79, 21—26 մասը լոկ = A: — ՃԽԳ, 81, 5 «գովութիւն եղեւ [illegible]» համեմատ է լոկ V ընագրին (acclamatio protinus nimia Amphictyonum erat.) A «Աթենացւոց» կ՚ըսէ. (πολὺς ἔπαινος παρ' Ἀθηναίοις ἐγένετο.) — ՃԽԴ,

81, 16 են անիմաստ եւ խառնակ եղած է հայն՝ քանի մը բառ դուրս իյնալով։ Արդեամբք ալ AV հոս քանի մը տող աւելի ունին։ Այս տեղ նաեւ տպագրական սխալ բաժանում եղած է հայ բնագրի մէկ երկու նախադասութեանց մէջ։ Միայն V ունի 82, 18—21 կտորը “Եւ թէ զօր կամի, տայ. թէ ցորեան պահանջէ, ունի տալ առ ի յագեցուցանել. ոսկի կամի ի հարկս, առնու.„ զոր կ'ըսէ Դեմոսթենէս Եգիպտոսի համար։ Ըստ 83, 1 Աթենացւոց հրեշտակք գնացին ի Պղատիա եւ տուին Աղեքսանդրի “զվարկ յանձնակալութեան թագաւորութեանն„. AV միայն “զհրամանսն„ մատուցին՝ կ'ըսեն. (A:τὰ ψηφίσματα, V:mandata.) — ՃԽԷ, 85, 3 կտորն այնպէս անիմաստ դարձեր է հայն. հմմտ. վերը՝ էջ 215։ — ՃԽԸ Աղեքսանդրի նամակն առ Լակեդեմոնացիս շատ աղաւաղած է հայուն մէջ. իսկ V նամակի ձեւով չէ, այլ արձակ։ — ՃԽԹ, 85, 21 են Լակեդեմոնացիք, կ'ըսէ, այնպէս ուժգին յարձակումն ըրին, “մինչեւ որք ի պարսպին զինեալք էին՝ ի վայր անկանել. եւ զայն որ ի նաւսն՝ հրկէզս առնել. Եւ հուրբ այրեցեալ նաւքն, որ մնացեալքն եղեն՝ եկին յաղաչանս առ արքայն, մաղթելով զի մի գերեսցին։„ Ասկէ աւելի բացայայտ աղաւաղութիւն անհնար է գտնել, եւ գրիչն առանց հասկընալու գրեր է այս կտորը. A է ὥστε καὶ τοὺς ἐκ τῶν τειχῶν μαχομένους τοῖς ὅπλοις καταπεσεῖν, τοὺς δὲ ἐν τοῖς ναυσὶ καταφλεχθῆναι, ուստի “... եւ որոց (այնոքիկ որ) ի նաւսն՝ հրկէզս լինել. իսկ որ մնացեալքն եղեն„ են։ Այսպէս “Եւ հուրբ այրեցեալ նաւքն„ խօսքն օտարոտի է։ AV այստեղ կտոր մը կը յաւելուն, այսինքն՝ թէ երբ Լակեդեմոնացիք աղաչեցին ներել՝ Աղեքսանդր փոքրիկ յանդիմանութիւն մը տուաւ անոնց։

8. II, 7—13=ճծ—ճհԴ:) Այս մասը կը պատմէ Աղեքսանդրի արշաւելը Դարեհի վրայ շատ մը մանրամասնութեամբ մինչեւ այն տեղ ուր Աղեքսանդր ծպտեալ ղես-

պան մնաց Դարեհի: Հընդհանրապէս =AV, զոր օր. ճծթ հատածն ունին միայն ՀA. բայց նաեւ տեղ տեղ միաբան է աւելի BC ընագրաց:

ՃԾ հատածով կը միանան ABCV բնագիրք: Այս հատածիս մէկ կտորը (86, 10 "մի անգամնելով" — 86, 14 "ըմբռնեալ լեզուք") չունի A, այլ BC. իսկ 86, 21 "Զայս Դարեհի ասացեալ" ունի միայն V. — ՃԾԱ, 86, 22 "Ոքսիդարկէս" անունը = BC: Ὀξυδέρκης, այլ A: Ὀξυάθρης, V: Oxyathrus. — ՃԾԲ, 87, 16 "զի ազինք շատ են քո" լոկ C ունի (ἔστι γὰρ ὑπὸ τὴν χεῖρα σου ἔθνη πολλά.) բաց աստի լաւ եւս է Հ., երբ Դարեհի հպատակ ազգաց կարգին մէջ "Լիբէացւոց" կ'ըսէ, քան A որ καὶ τὴν Ἰλλυρίαν կ'ըսէ. V չունի այս անունն եւ ոչ BC. — ՃԾԳ, 87, 33 կը յիշուի Սիլիկիոյ մէջ "գետ մի որ կոչի Ոկէանոս:" Այսպէս ալ ունին AB: Ὠκεανὸν, զոր M կ'առաջարկէ Κύδνον (Կիւդնոս) կարդալ: Ուրեմն հայն արդէն Ե դարու տեսեր է սոյն անյարմար անունը: Բայց Դարեհի դստեր "Գափիփարտա" անունը գրի սխալ մըն է (ՃԾԵ, 88, 21 եւ ՃԾԷ, 89, 20.) AC միայն ունին այս անունը. (A: Δαδιφάρταν, C: Δαδηφάρταν.)

ՃԾԷ, 89, 16 տես վերը՝ էջ 198: — ՃԾԸ կտորին ի սկզբան եղած յաւելուածն՝ ուր կը յիշէ թարգմանիչը ծաղկաւէտ լերինքն Անգղայ, յիշեցինք. տես վերը՝ 43, 78—79 եւ 187, Ծ. 3: Միտ դնելու է որ նաեւ այս խօսքին մէջ (89, 29. "գնաց շատ աւուրս ընդ անջրդի տեղիս եւ ընդ խորաձոր ծործորս եւ ընդ Արիակէ.") հայոյն սեպհական է "օձուտ" բառը, որ նշանակութիւն կրնայ ունենալ. V եւ ոչ "Արիակէ" անունն ունի. (per deserta regonis emensus est.) այլ ABC ունին (διὰ τῆς Ἀρειανῆς), բայց "Արիանէ" ձեւով:

Կարեւորագոյն է յաջորդ (ՃԾԹ) հատածը: Հոս կ'ըսուի թէ մեծ գետ են Դկղաթ եւ Արածանի, որոնք Նեղոս կը թափին. վասն երբ Նեղոս

կը զեղու, ասոնք թափուր կ'ըլլան, եւ երբ ասոնք կը զեղուն՝ Նեղոս կը նուաղի։ Այս կտորը ունի միայն A. զոր M կը կարծէր թէ ի սկզբան անդ A բնագրի լուսանցքին վրայ գտեր էր այս անհեթեթ կտորը։ Զիարդ եւ իցէ՝ Հայն արդէն Ե դարուն գտեր է սոյն կտորն իւր բնագրին մէջ։ Հայոյն ըսելը Նեղոսի համար՝ թէ “աշխարհաբոյծ„ է, չունի հոս A. (“Դկղաթ„ = Τίγρις.) — ՃԿԲ, 91, 16 ծպտեալ պարսիկ մը, կ'ըսէ, զարկաւ Աղեքսանդրի թագն եւ “ջախեաց զտողտարփ նորա„. այսպէս է նաեւ A (τὴν κορυφήν.) իսկ B անհեթեթութեամբ “զգլուխ„ կ'ըսէ (τὴν κεφαλὴν.) Այս հատածին վերջն (91, 33) եւ այլուր ալ կը գործածուի “Սէանդարն անց մնաց„ եւն անունը փխ. “Աղեքսանդր„, ինչպէս որ յոյնը միշտ Αλέξανδρος կ'ըսէ։ Այս աղաւաղ “Սքանդար„ անունը չեմ գիտեր երբ մտած է հայ բնագրին մէջ։ — ՃԿԳ, 92, 10 “Առ այդմ շնորհակալ եմ.„ ընտանեկան բացատրութիւնը չունին ABCV. — ՃԿԵ, 92, 30 “Անկուրանի„ կտորը տես վերը՝ էջ 198։ — Աղեքսանդրի իւր ստրապաց գրած հրովարտակին մէջ (ՃԿԷ) Հայը քանի մ'աւելի կտորներ ունի. զոր օր. այն՝ թէ ամէն ստակող անասնոց կաշին Անտիոք պիտի խաւրուի (94, 10) եւ բացի երեք հազար ուղտերէն (94, 15) հրամանն կը տրուի գործել նաեւ “այլ եւս երից հազարաց ուղտուցն՝ որ են յԱնտիոք.„ որով 6000 կ'ըլլայ ուղտուց թիւը։ — Դարեհի նախարարին “Նոտարեսայ„ անունը (ՃԿԸ, 94, 24) չունին BCV, այլ լոկ A եւ այն ալ՝ այլայլ. (A: Οἰμητάδης կ'ըսէ։) Նոյն կտորին մէջ “Կովասրէս„ անունն ալ գրի սխալներով աղաւաղած է. A: Κωμάρξης (Կովմարքսէս) կ'ըսէ. հայոյն մէջ Ս եւ Մ դիւրաւ կրնան շփոթուիլ։ Ասոր կից “Աննիաս„ անունն ալ “Նանիաս„ կը կարդայ A (Νανίας), բայց քիչ մ'ետքը (94, 33) Հայոյն “Միհրդատ„ անունն ուղղագոյն է քան յունին τοῦ Θριδάτου (Թրիդատ) ըսելը, ինչ-

պէս Θρ տառերը կը ցուցընեն։ «Պիտակաց այլ» անուան վրայ (ՃԿԹ, 95, 3) տես վերը՝ էջ 198։ — Վերջին կտորին մէջ Դարեհ կը գրէ՝ թէ (95, 9) «Հրամայեցի այնոցիկ որ ի Կով՝ գալ.» A որ միայն ունի այն նախադասութիւնն, ուրիշ բան կ'ըսէ. (προσέταξεν δὲ καὶ τοῖς περὶ Κοβάρζην ὁδεύειν κτλ. այսինքն՝ «Հրամայեաց այնոցիկ՝ որ զԿոբարզէաւ էին՝ յուղի անկանել» եւն։) — ՃՀԳ հատածին վրայ, որ Աղեքսանդրի այծերու եղջերաց վրայ լոյս կապելով եւն Պարսիկները վախցընելը կը պատմէ, խօսեցանք արդէն. տես վերը՝ էջ 81—82 եւ 167—168։ — Յաջորդ կտորը (ՃՀԴ) կը նկարագրէ Աղեքսանդրի երազը, որով յորդորուեցաւ անձամբ դեսպան երթալ ծպտելով։

9. (II, 14–22=ՃՀԵ–ՄԸ։) Այս մասը կը պատմէ Աղեքսանդրի ծպտեալ դեսպան ըլլալը, Դարեհի վերջնականապէս յաղթելն ու տիրելն Արեւելից եւն։ Հ ընդհանրապէս = ABCV, բայց շատ տեղ ուրոյն ընթերցուածներ ունի եւ կարեւոր կտորներ ալ միայն = A, զոր օր. ՃՂԹ հատածին վերջերը՝ գրեթէ երկու ամբողջ էջ. եւն։

ՃՀԵ, 97, 26 «Մեղդէոս» անունը գրի սխալ մ'ունի գոնէ սկիզբը. (յունարէնն է Εὔμηλος, V նախ Eumedus, այլ յետոյ՝ Eumelus:) Երկու վերնագրաց վրայ (97, 24 եւ 98, 1) տես վերը՝ էջ 99։ — ՃՀԶ, 98, 7 Աղեքսանդր ծպտեալ «հեծեալ ի ձի» գնաց առ Դարեհ. այսպէս ալ V, բայց ABC անճահ եղանակաւ «ցլագլուխ ձին» կը դնեն հոս։ — ՃՀԷ հատածին վերջը Դարեհի զգեստուց ստորագրութեան տեղը շատ այլեւայլութիւն կայ այլեւայլ բնագրաց եւ նաեւ հայոյն մէջ, ուր կայ նաեւ «սեպաստանոն» խնդրական բառը. (տես վերը՝ էջ 207 Ծ.։) — Յաջորդ (ՃՀԹ) կտորը, որ Դարեհի Աղեքսանդրի ըրած խնջոյքը կը նկարագրէ, կարեւոր է այնու որ հայը բազմութիւն մ'անուանց կը դնէ մեծամեծաց որ ներկայ էին հոն։ BCV չունին այս-

պիսի անուանց (100, 4—13) հետքն իսկ, այլ լոկ A. բայց թէ Հ եւ թէ A շատ աղաւաղած եւ յաճախ աննման են իրարու: Նախ, կ'ըսէ Հ, բազմեցաւ Դարեհ, ապա իւր եղբայրը՝ "Ոքսիդարկէս" (*A*: Ὀξυάθρης), "երրորդ՝ Ոփտօ Նախարար Ոքսիդարկեայ (A կ'ըսէ՝ τρίτος δὲ ὁ σατράπης Ὀξυδράκης[αν], ապա Ադրօպիտէս որ ի վերայ Շօշայ (A աղաւաղ՝ εἶτα πάλιν Δουρίτης ὁ ἐκπισσύσης. Հոս վերջին աղաւաղ բառին մէջ ἐπὶ եւ Σουσα բառերը կը ճանչցուին, իսկ Δουρίτης հայերէնի "Ադրօպիտէս" անուան վերջին մասին հետ նոյն է.) եւ Փաառտիտէս (*A*: Φαλάρτης) եւ զկնի նորա Միհրդատ (*A*: Μιθριάδης ἕκτος κατεκλίθη), անդէն բազմեցաւ եւ Տրդատ (*A*: Γεδιδάνης τοξοτῶν πρῶτος = աղեղնաւորաց պետ), ապա Կանդաւղէս Եղոփպացւոց Նօտասօրն եւ Պաւլիօպրէս իշխան (Κανδαύλης ὁ νυκτίχωρος [= "գիշերերկրեայն"] ἔχειτο, Μένωπος ἐπανέκειτο Αἰθιόπων ἄναξ πολυάρης, ուրեմն ըստ յունին Կանդաւղէս այլ անձ է հոս եւ այլ Եթովպացւոց թագաւորն, որոնց մէջ մտած է "Մենոպոս" անուն մ'ալ. վերջինը՝ πολυάρης կը համեմատի հայոյն "Պաւլիադրէս" անուան.) յորս էր եւ Առնիփատոս (*A*: Ὀρνίφατος) եւ Դիովսիոս (*A*: Ὀδιώνης, ուր հայն Ո սկզբնատառ մը չէ տեսած,) Կարդերովկէտէս (*A*: Καρτερόφωτος) եւ Աղկիդէս (A երկու անուն ունի հոս՝ Συναρίτης Δελεάκλιδες) եւն: — ՃՂԱ, 101, 12 "եւ ի կերպարանաց" — "շրջեցին" ունին միայն BC. Համմտ. վերը՝ էջ 203 ծ.: C շատ երկայն կը պատմէ այս դէպքը. V համառօտ: Այս փախչելու դիպաց առթիւ ըսուածը (102, 6)՝ թէ "գիշեր էր խոր խաւար յՈլոմպոսին" ունի միայն C (καὶ σκότος κατ' Ὀλύμπου πρὸς ὄρθρον:) Այս տեղւոյն յաջորդող տողերը (102, 7—14) շատ խառնակ վիճակի մէջ են: — ՃՂԵ, 103, 15 այն խօսքը թէ Աղեքսանդր իւր զօրաց մէջ էր "որպէս

Արամազդ յերկնի„ լոկ A ունի։ Այլք հոս իրարմէ տարբեր են. մանաւանդ Աղեքսանդրի քաջալերական խօսակցութիւնը հայը քիչ մ'աւելի ճոխութեամբ կը պատմէ եւ է տեղ տեղ = L. — ՃՁԷ հատածին պատերազմի ստորագրութեան մէջ հայոյն շատ ճոխ ըլլալը՝ տես վերը էջ 190. ինչպէս նաեւ յիշեցինք յաջորդ կտորներէն քանի մ'այսպիսի ճոխ կտորներ (ՃՁԹ, 105, 20—25, 106, 8—9 եւ 10—14 եւն)։

ՃԴ հատածին մէջ, ուր Դարեհ աղերսանաց թուղթ կ'ուղղէ առ Աղեքսանդր, հայը տեղ տեղ չէ նման A բնագրին, որ նաեւ աղաւաղեալ է տեղ տեղ. զոր օր. (106, 25) Քսերքսէսի համար ըսելը թէ "մեծ ցանկութիւն ունէր յԵլլադա զօրու երթալ„ միայն է BC բնագրաց (μέγαν ἔρωτα ἔσχεν εἰς τὴν Ἑλλάδα στρατεύσασθαι, ուր A է μεγάλως ἔρωτα ἔσχεν εἰς τὴν ἐλπίδα, որ կապ չունի։) Հայոյն սեպհական է Դարեհի խոստման այս խօսքը (107, 2) "խոստանամ ցուցանել քեզ զգանձն որ ի Մինա գաւառին է եւ ի Շոշ„ եւն։ "Մինա„ անուան տեղ A: ἐν Μινυάδι կ'ըսէ, B: ἐν Μηδίᾳ. CL: ἐν Μυσιάδι. V չունի անունը։ Հմմտ. էջ 154, ծ. 4։ — ՃԴԱ, 107, 31 Աղեքսանդր հրամայեց Դարեհի դեսպանաց՝ պատմել Դարեհի իւր խօսքերը. "բայց, կը յաւելու, թուղթ ոչ գրեաց։„ Այս կէտը չունին AC, այլ միայն B. — ՃԴԲ հատածն է նկարագրութիւն կործանման Քսերքսէսի արքունեաց եւ Կիւրոսի գերեզմանին նկարագրութիւնը: V յամենայնի նոյն է հայոյն հետ, մինչդեռ ABC կը յիշեն նախ "գերեզման Նաբոնասարայ, որ կոչի յունարէն Նաբուքոդոնոսոր. (εἶδε καὶ τὸν Ναβονασάρου [L ունի զայս] τάφον τοῦ κεκλημένου Ναβουχοδονόσωρ κατὰ τὴν Ἑλλάδοι φωνὴν.) եւ զնուէրս (ἀναθήματα) Հրէից որ անդն էին։„ Հայը (եւ V) շատ աւելի լաւ է հոս. բայց դժբախտաբար ճշդիւ հոս է

11 տող պակասը հայ ձեռագրին, զոր յիշեցինք այլուր. հմմտ. վերը՝ էջ 141, 162, ծ. 4 եւն։ Աղեքսանդրի հրամանը՝ տալու "եզինս իւրաքանչիւր ումեք մէն վեց", ունին միայն AC (βόας ἑκάστῳ ἕξ.) Հոս (109, 15) Կասբիական աշխարհին "անառիկ" կոչուելուն վրայ՝ տես էջ 188. իսկ (109, 17) իւրաքանչիւր "առն հարստի" տրուելիք դրամին վրայ՝ էջ 192։ Յաջորդ խօսքին մէջ (109, 22), ուր Դարեհ կը խոստանայ Պօրոսի "եւ զայնս որ է Շող հարճքն են հարիւր եւ ութսուն" եւ գիւղեր, BC չունին ոչ Շոշայ յիշատակութիւնն եւ ոչ հարճերու թիւը. V համեմատ հայոյն 180 կը դնէ հարճերը, բայց Շոշ չի յիշեր. միայն A բնագրի մէջ Շոշի աղաւաղութիւնը կարելի է նշմարել, բայց հարճերու թիւը A կը դնէ 108. (A է. καὶ τὰς ἐνούσας [ἐν եւ Σουσα հոս կը զանազանուին] τούτοις παλλακὰς ρη΄.) — ՃՂԴ, 110, 3—5 Թալէշ եւ Գիլան անուանց կտորին վրայ՝ տես վերը էջ 187։ Հոս (109, 31—110, 5) "բայց ոչ կարծեաց" կտորէն մինչ "մտանել" միայն AV ունին. BC պակաս են հոս։ Իսկ "Գիստանեայ" ներքինւոյ (110, 6) անունը չունի A, այլ միայն V, որ Bazanus կ'անուանէ։ "Առիվարդանայ" (տես էջ 189) "զեղխեալ մետեաւնաս" կոչուիլը՝ տես վերը էջ 199, եւ ասոնց համար "բերին ի վրայ նորա սրաւորեալ զձեռս" ըսուածը՝ էջ 192, ինչպէս նաեւ "սրով իւրեանց վանեցին" խօսքը՝ էջ 204, ծ. 1։

ՃՂԶ հատածին մէջ՝ որ կը պատմէ Աղեքսանդրի ողբն՝ երբ կիսամահ գտաւ զԴարեհ, երկար խօսք մը կը դրուի Աղեքսանդրի բերանը. այս խօսքէն մաս մը (112, 1 "քանզի քեզ" — 112, 12 "պանծայ") չունին BCV. միայն A ունէր, զոր չէ հրատարակած M (որ A բնագրին համար կ'ըսէ A . . . pluribus etiam verbis haec persequitur.) Դարեհի ալ այս առթիւ խօսածին վերջին մասը (112, 25 "բայց տես" — 113, 14) շատ աւելի ճոխ եւ ընդարձակ է հայոյն

քան ABC բնագրաց մէջ։ — ՃՂԸ, 113, 18 Աղեքսանդր հրամայեց Դարեհի դին “Նաֆթով բառնալ եւ թաղել։„ Այս բառն է ռամկօրէն (ճշդիւ եւս՝ արաբերէն) “թափութ„ որ դագաղ կը նշանակէ։ Բաւական հին աղաւաղութիւն մըն է այս, այնպէս որ նաեւ քիչ մ'ետքը (113, 23) ուր Թ. 424 “դդէն„ կ'ըսէ, չորս օրինակք կը կրկնեն “թափութ„ բառը։ Ցոյնը հոս “զմարմինն„ կ'ըսէ (AB տող մը պակաս են հոս՝ 113, 18. ուստի միայն C ունի՝ ἐκέλευσε τὸ σῶμα αὐτοῦ βαστάζεσθαι.) — ՃՂԹ հատածին սկիզբը, որ հրովարտակ մըն է Աղեքսանդրի առ ամենայն ազգս Պարսից, հայը քիչ մը փոխեր է. հմմտ. վերը՝ էջ 188։ Մտադրութեան արժանի է (114, 9) այն խօսքը՝ թէ “դեկամ Ջոխոփ ինչ արար զիս հակառակ Պարսից յաղթութիւն տանել։„ Այս տեղ A պարզ εὐδαιμονία (յաջողութիւն) կ'ըսէ։ Հայոյն ասութեան կերպը Պարսից եւ Հայոց հեթանոսաց գաղափարաց համեմատ է։ Այս հրովարտակին շատ մասերը աղաւաղուած են յոյն բնագրին, ինչպէս նաեւ հայոյն մէջ (հմմտ. օրինակի աղագաւ՝ 115, 18 “զճանապարհս Պարսից զվաճառ առնել„ խօսքը՝ էջ 192։) Վերջին մասը՝ գրեթէ երկու էջ՝ միայն A համեմատ է Հ բնագրին (115, 21—117, 10). BC քիչ մը բան միայն ունին այս կտորէն։ Նոյնպէս Մ հատածը լոկ A ունի (= Հ։) — Էջ 118, 5 վերնագրին վրայ՝ տես էջ 99—100։ — ՄԴ հատածին մէջ, ուր կը դրուի թուղթն Աղեքսանդրու առ Ստատիրա եւ Հռոդոգունէ, կայ կտոր մը, զոր միայն L ունի (119, 31 “բայց բարիոք„ — 120, 2 “ի տրտմութենէ.„) ինչպէս ասոր ճիշդ նախընթացը (119, 17—28) Հ աւելի = A էր, իսկ BC քիչ մը համառօտած։ Նամակիս վերջերը (զոր օր. 120, 11 եւն) Հ աղաւաղ կ'երեւայ։ — ՄԵ, 121, 2—19 հատածին վրայ՝ տես վերը էջ 213։ — ՄԶ, 121, 20 Ստատիրայ եւ Հռոդոգունեայ առ Աղեքսանդր գրած նա-

մակը ապառած ատեն կը գրէ Կալիսթենէս՝ թէ Աղեքսանդր “Քաւոն հարբեալ զքանէն՝ անդէն սոսց պատմել.„ եւ կը յաջորդէ նամակ մը։ BC սոր տեղ շատ աւելի լաւ կը գրեն՝ թէ “առեալ զթուղթսն՝ գրեաց պատասխանի։„ Բայց Հ արդէն հինգերորդ դարուն տեսած կ'երեւայ նոյնպէս. (A ալ կ'ըսէ հոս նոյնը. Ὁ δὲ Ἀλέξανδρος μεταλαβὼν εἶπεν.) BC այս նամակն ալ երկու երեք խօսքով լմնցուցեր են, նոյնպէս ՄԷ (երկու տող) միայն A ունի։ — Հոս (122, 14) երբ նամակը կը լմնայ, AV կ'անցնին Հնդկական արշաւանաց եւ կը լմնայ Բ գիրքն այս տողերով “զոհս մատուցեալ գաւառային աստուածոց՝ գնայր ի Հնդիկս, ուսեալ զՊաւրոսէ թէ մարտակից օգնական գայ լինել Դարեհի.„ (որ է Հ էջ 128, 27—31։) Այսպէս կը լմնայ նաեւ V այս տեղ, որոնք կը սկսին հազիւ III, 1 գլխով։

*10.* (II, *23—43=ՄԹ միայն։) Այս կարեւոր հատուածը (էջ 122, 15—128, 27), որ Աղեքսանդրի նամակ մըն է առ իւր մայրն ու Արիստոտէլ եւ իւր ճամբորդութիւնը կը պատմէ առասպելախառն, չունին* AV. *այլ միայն* BCL. *սակայն ասոնք՝ ի մանաւորի* C՝ *բազմաթիւ գլուխներ յաւելուած ունին ուրիշ դէպքեր պատմելով։*

**ՄԹ**, 122, 16 “զգեստ ամբարհաւաճ„. տես վերը՝ էջ 193. նոյնպէս “Այծք„ եւ “կատիսոն„ անուանք (123, 2—3)՝ էջ 189 եւ 196, եւ վերջապէս “անամեսիտոն„ անուան վրայ էջ 207 Ծ.։ Էջ 123, 26 “ըստ սայլից շրջանի„ (κατὰ τὴν ἄμαξαν τοῦ πόλου): — Էջ 123, 24 C երկար՝ իբր ութ գլուխ յաւելուած մ'ունի, որուն օտար ըլլալն՝ բաց յայլոց՝ յայտնի է նաեւ անով որ ցայս վայր առաջին դէմքով էր խօսքը, (վասն զի նամակը Աղեքսանդրի բերնէն էր,) իսկ C ասկէ սկսեալ երրորդ դէմքի կը փոխէ։ C կը պատմէ Աղեքսանդրի արշաւելն ի Հրէաստան (II, 24), յԵգիպտոս՝ ուր պաղ ջրով լողացուելով կը հիւանդանայ եւ Փիլիպպոսի դե-

ղովը կ՚առողջանայ (II, 25. Համմ. II, 8). Եգիպտացւոց հնազանդիլն՝ երբ կը յիշեցընէ իւր Նեկտանեբայ ցեղէն ըլլալը (II, 26,) արքունի դղեկին մէջ Նեկտանեբայ արձանը գտնելն, (II, 27), Աղեքսանդրիայի շինութիւնը (II, 28), անբնակ տեղեր արշաւելն եւ այլեւայլ հրէշներ տեսնելն, եւ "երեքօրեայ" լայնութեամբ գետը հասնիլն (II, 29) այս գետէն անցնիլն կամրուրջ մը շինելով Ἀμμοφορος (աւազաբեր) անուամբ, վասն զի գետն երեք օր ջուր եւ երեք օր աւազ կը հոսէր (II, 30), տաս օրէն ամայի տեղ մը հասնիլն, ուր կը գտնէ Սեսոնքոսի արձանագրութիւնը, եւ ուր երեք օր կեցաւ (II, 31) եւն: — BC կը միանան եւ հայոյն հետ կը սկսին շարունակուիլ "Եւ անտիցառեալ" խօսքով (123, 24), բայց C՝ թէեւ նիւթով նոյն՝ բոլորովին ուրիշ է ասութեանց կերպովն (այսպէս ամբողջ գլուխ մը՝ II, 33 = էջ 124, 17 եւն) եւ յետոյ դարձեալ յաւելուած ունի: "Սպետրիադա" անուան (125, 1) վրայ՝ տես վերը էջ 196, նոյնպէս "կանափնիտով" (124, 4) եւ "դանդակէս" (125, 4) բառերուն վրայ՝ էջ 207 Ծ.: Նորանշան է այս խօսքը (125, 6) "տեսաք եւ լու՝ որպէս առ մեզ կրիայքդ են, ազգ երկրափեռակ+ եւ խոռովարար:" B այս լուերը կը համեմատէ "ցատկող գորտերու" հետ. (εἴδομεν δὲ ἐκεῖ φύλλας ὡς τοὺς παρ᾽ ἡμῖν βατράχους πηδῶντας.) "Հմակերաց" վրայ՝ տես վերը՝ էջ 217: — C այս ամէնը շատ տեղ այլայլած եւ ընդարձակած կը պատմէ, նաեւ երկար յաւելուածներով: Այսպէս (ըստ C) Աղեքսանդր 5 օր ճամբայ ընելով կը հասնի երկուոսկիէ սիւնարձանաց "Հերակղեայ եւ Շամիրամայ" (Համմ. III, 27 = **ՄԾԸ** եւն), կը բնակի Շամիրամայ տան մէջ, ապա 13 օր կը ճամբորդէ այլեւայլ հրէշներ տեսնելով եւ վերջապէս դեռ եւս 10 օր անցնելով Շանադլեաց երկիրը՝ կը հասնի ծովափ մը (II, 34:) Պտղալից ծովափնեայ երկիր մը գալով՝ կը տեսնէ ցամաքէն 6 ասպարէզ հեռու կղզի մը

“Բրաքմանաց:„ Եգիպտացիք նաւ մը կը շինեն իւր հրամանաւ եւ Փիլոն նախ կ'երթայ կղզին եւ յունախօս մարդիկ կը տեսնէ (հմմտ. III, 17 = ՄԻԴ.) Անկէ ետքը Հ. կը պատմէ C Բրաքմանաց հետ տեսնուիլը, զոր յետոյ ունին այլք՝ ինչպէս եւ Հ. որուն վրայ քիչ մ'ետքը:

BC կը միանան Հայոյն հետ՝ էջ 125, 29 “Եւ անդուստ խաղացեալ:„ Այս մասերուն վրայ արդէն շատ անգամ խօսեցանք. այսպէս՝ 126, 2—16 կտորը մանրամասն համեմատութեամբ տես վերը՝ էջ 33—35. — անգլուխ, վեցոտնեայ, շնագլուխ եւն մարդկան վրայ (126, 30—127, 9) տես վերը՝ էջ 80—81. “գերերի„ քաղելու կտորը (127, 10—11)՝ էջ 83—84, եւ վերջապէս գրեթէ ամբողջ յաջորդ մասը (127, 14—128, 18) մանրամասն համեմատութեամբ՝ էջ 35—40: Ինչպէս այս վերջին էջերուն մէջ շատ տեղ յիշեցուած է՝ C մէջ ընդ մէջ ուրիշ կտորներ հիւսած է հոս: Օրինակի համար 127, 30 տեղէն ետքը կը դնէ Աղեքսանդրի ծովու խորքն իջնալը տակառով, եւ ձկան մը բերնէն ցամաք նետուիլն, որմէ ետքը դաշտ մը գալով կամուրջ կը շինէ եւ քանդակել կու տայ արձանագիր մը հելլէն, պարսիկ եւ եգիպտական լեզուաւ: “Երջանկաց վայր„ մտնելու կտորը (մանաւանդ՝ էջ 128, 6—8) C երկար խօսակցութեամբք եւ նկարագրութեամբք կը զարդարէ, իսկ բուն մտնելու պատմութեան մէջ (128, 8 եւն.) ոչ միայն C, այլեւ BC աւելի ընդարձակ են քան Հ. այսպէս թէ “Անդրէաս„ անուն խոհակեր մը նոյն մթութեան մէջ գտնուած աղբեր ջրով կը լուայ ձուկ մ'որ կը կենդանանայ եւն: — Նամակին՝ ինչպէս եւ այս հատածը կը լմնայ B բնագրին մէջ՝ դոյզն տարբերութեամբ՝ Հայոյն հետ միաբան, որով եւ Բ գիրքը B բնագրի համար: Սակայն C դեռ չորս գլուխ ալ կը շարունակէ նոյնը: — II, 41 կը պատմեն CL նոյն մթին տեղէն դուրս գալն, եւ տեսնելն որ բոլոր առածնին

մարգարիտ է եւն։ Խոհարարը պատմելով իւր դէպ-
քը՝ կը պատժուի, բայց չի յայտներ որ նոյն ջրէն
բերեր է, զոր խոհարարը խմցընել կու տայ Կալի
անուն աղջկան։ Աղեքսանդր նախանձելով նոյն աղջ-
կան անմահութեան վրայ՝ կը մերժէ զանի, որ ծո-
վադիցուհի կ'ըլլայ (Νηρεΐς), իսկ խոհակերը ծով
ձգել կու տայ, որ նոյնպէս դեւ (δαίμων) կ'ըլլայ եւ
իւր բնակած տեղը Ἀνδρεαντικός կը կոչուի։ Երկու
թռչուն լծակով կառքի մը կապէ եւ յօդս կը վե-
րանայ, բայց մարդադէմ թռչնէ մը կը խրատուի՝
երկիր դառնալ։ (Հոս կը լմննայ Լի մէջ նամակը։)
— II, 42 մեղրահամ լիճ մը կը հասնի եւ լուսատու
քար մ'ունեցող ձուկ մը կ'որսան. այս քարը գի-
շերները լոյս կու տար։ Լճէն կանայք կ'ելլեն ու
կ'երգեն. եւ վերջապէս կը հասնի նետաձիգ ձիա-
մարդոց երկիրը եւ կռիւ կ'ըլլայ, ապա 16 օր կը
ճամբորդեն՝ եւ բնակեալ երկիր կը հասնին։ — II,
43 Կրկնութիւն նամակի մը, յորում նոյն բաները
դարձեալ կը պատմուին, որ կային արդէն II, 23—
42 գլուխներուն մէջ։ — II, 44 Աղեքսանդր Հնդկաց
դէմ կ'արշաւէ եւ "Հեղիոսի„ քաղաքին մէջ
պատգամ կ'առնու իւր մահուան եւն. (հմմտ. III,
17=ՄԻԴ) ապա անապատ մը կը հասնի, ուր գա-
ճաճներ կը տեսնէ միոտանի եւ ոչխարագլի եւն։ Ա-
սով կը փակի Բ գիրքը։

*11.* III, *(1—15=ՄԺ—ՄԻԳ։) ՄԺ հատածով, որ Ա-
ղեքսանդրի Պաւրոսի դէմ ըրած արշաւանքը կը պատմէ, կը
սկսին միաբան* ABCVՀ*։ Պաւրոսի եւ Հնդկաց դէպքերէն
ետքը՝ կու գայ Մերկիմաստասիրաց կտորը։ Բնագիրք
շատ այլեւայլութիւն ունին՝ մանաւանդ* BC, *զորոնք
նշանակել աւելորդ էր։ Միայն* AV *վերջէն կը յաւե-
լուն քանի մը գլուխ ալ, զոր չունին* BC=Հ*։*

ՄԺԴ, 132, 23 Աղեքսանդր զարմացաւ
փղերուն վրայ, "քանզի տեսեալ զնորոգ եւ զսքան-
չելի գործ գազանացն. զի ընդ մարդկան ունէին սո-
վորութիւն կռուել եւ ոչ ընդ գազանս„։ A չունի

տածը չունին ABC (V միայն սկիզբն ունի,) որոնք ասոր տեղ Բրաքմանաց Դանդամէս պետին հետ խօսակցութիւն մը կը դնեն. (այս Դանդամէսի կտորը չունի հոս C.) — Մերկիմաստասիրաց կտորին վերջը կը յաւելուն BL՝ թէ Աղեքսանդր ուզեց ոսկի, զգեստ, գինի եւ ձէթ պարգեւել, բայց Դանդամէս չառաւ. միայն ձէթ առաւ եւ փայտակարկառ ըրաւ եւ վառեց՝ ձէթն ալ կրակին մէջ հեղլով: — Հոս (138, 3) AV ընդարձակ յաւելուած մ'ունին, որ կը գրաւէ III, 7—16 գլուխները: Առաջին (7 եւ 8) գլուխներուն մէջ կը պատմուի թէ ինչպէս հեղինակը Թեբացիէ մը, որ մինչեւ Հնդկաստան գացած էր, Բրաքմանաց վրայ այլեւայլ տեղեկութիւն առած է, եւ ապա (գլուխ՝ 9 եւ 10) այլեւայլ տեղեկութիւն կու տայ նոյն երկրին վրայ եւն, եւ վերջապէս կը յաջորդէ երկար բարոյական խօսակցութիւն մը (գլուխ՝ 11—16) Աղեքսանդրի եւ Դանդամէսի մէջ: Գլուխ 11էն սկսեալ ունի նաեւ C, թէեւ այլազգ ընդհանրապէս: Այս ներմուծեալ կտորը՝ զոր չունին BՀ (C մասամբ) առանձին գրքոյկ մըն է Պաղղադեայ անուամբ (τοῦ Παλλαδίου περὶ τῶν τῆς Ἰνδίας ἐθνῶν καὶ τῶν Βραχμάνων.) եւ այլեւայլ անգամ լոյս տեսած յԵւրոպա: V այս յաւելուածոյ մասերուն մէջ բաւական տարբեր է:

12. (III, 16—17=ՄԻԴ:) Այս ընդարձակ հատածը՝ նամակ Աղեքսանդրու առ Արիստոտէլ՝ կը բովանդակէ ի Հնդիկս տեսած առասպելական զարմանալիքներու պատմութիւնը: Ամբողջն ունին միայն AV այս տեղ եւ այսպէս:

A կը սկսի առանձին վերնագրով՝ Ἐπιστολὴ Ἀλεξάνδρου Ἀριστοτέλει. իսկ BC ունին այս նամակին շատ մը կտորները, բայց ոչ թէ հոս նամակի ձեւով, այլ պատմութեան մէջ խառն հիւսուած, միայն Հնդկաստանի գազանաց վրայ եղածներն ամենեւին չունին BC. (V թէ եւ շատ տեղ համա-

ռոտեր է, տեղ տեղ աւելի լաւ է քան A:) — էջ 138, 25 Աղեքսանդրի բարեկամին անունն, որ իր կեանքը զոհեց, «Փիդոն» է նաեւ ըստ Հայոյն, ինչպէս ունի եւ A (*Φείδωνος* սեռական), զոր M *Φίλωνος* կը փոխէ, ինչպէս ունէր C (որ այլուր կը պատմէ զայս. հմմտ. II, 35:) Այսնաւակի ընկղմելուն մանրամասնութիւնք (139, 5—16) չկան յAV, որոնք շատ համառօտ են այս կէտերուն նկատմամբ: — էջ 139, 19 կ'ըսուի. «կայցեալ մնացաք աւուրս ութ ի վերայ սարաւանդակին. տեսաք յեօթներորդամ աւուրն զգազանն զի փիղն ունէր ի վերայ իւր.» այլ նշանաւոր են հոս AV, վասն զի A է՝ *καὶ εἴδομεν ἑβδομαδάριον τὸ θηρίον* (cod. *καὶ δάμεν εὐδόμενον τὸ θηρίον*) այսինքն՝ . . . տեսաք զգազանն եօթներեակ (հեբդոմադարիոն). այսպէս նաեւ V: bestiam quoque vidimus, . . . quam Hebdomadarion vocant, adeo immensae potentiae, ut illi perfaciie insistentes etiam super dorsum elephantos cerneremus. Հայը չունի ուրեմն այս նորանշան անասնոյ անունն (անուան տեղ՝ «յեօթներորդ աւուր» թարգմանած կ'երեւայ Հայը՝ ձայնից նմանութեամբ, ըստ որում *ἑβδαμὰς* է «եօթնեակ.») իսկ Հայոյն ըսելը՝ թէ սոյն անասնոյ վերայ փղեր կային, ունի միայն V: — էջ 140, 5 Աղեքսանդր թակոյկներ գտաւ այնպէս մեծ՝ որ «տանէր մի մի թակոյկ բաժակ իննսուն:» Ուրիշ օրինակներ «վեց» բաժակ կ'ըսեն, իսկ Թ. 424 գրուած է բուն «բաժի՛ննսունն»: Նոյնպէս աղաւաղ է եւ բնագիրը. A է *ὡς χωρεῖν ἕκαστον κρατῆρα ἕνα ἥμυσι, ἄλλον ὀκτὼ.* (V չունի:) — էջ 140, 26 կը տեսնէ Աղեքսանդր եղեգնակերտ քաղաք մ'ուր «եղէգն կանգնոց երեսուն շրջափակ չափաւորութիւն» ունէր: Այսպէս է եւ V: castrum consitum undique arundinibus, quae ad triginta cubitorum spatia supercrescerent. *A: κάλαμοι πηχῶν δ΄ περίμετρον ἔχοντες* կ'ըսէ: — էջ 142, 9 տես վերը՝ էջ 81.

նոյնպէս նաեւ (142, 11) "եւ էր ահն եւ երկիւղն՝ որ ոչ ունէր զհապաղումն." տես էջ 194: — Ճիշդ հոն՝ ուր "Քանաքանէ" անասնոյ վրայ կը խօսի (142, 16—31), չունի A, որով "բանաժանւոյ" այս հատածն ունի միայն V: Այն բառին վրայ՝ տես էջ 51: — Էջ 143, 9—14 չունի A, այլ միայն V. — "բնութեան ճանապարհ" խօսքին վրայ՝ տես էջ 194, ծ. 4:

Օգոյ նորանշան տեսլեան (143, 23 եւն) ժամանակ կ'ըսէ Հայն "յամսեանն Նաւասարդի որ օր երեք էր ամսոյն." յոյնը՝ μηναίᾳ τρίτῃ կ'ըսէ: — Էջ 143, 28 "եւ փաղփաղակի" — 144, 13 "կանգունս երիս" հատածը չունի A, այլ միայն V (որ մանրամասնութեանց մէջ ասութեանց այլեւայլութեամբ կը տարբերի Հայէն:) — Էջ 144, 21 կը սկսին BC նոյն դէպքերը պատմել՝ այլակերպ եղանակաւ. Հմմտ. քիչ մը վերը: — Էջ 145, 5—11 չունի A, իսկ V համառօտ: "Հանդէտերկնեայ" (145, 16) բառին վրայ՝ տես վերն էջ 188: — Էջ 145, 21 պատգամատու երկու ծառերը տեղացիք "կոչէին զարուականն՝ արգոյց խորհրդոց, եւ զիգականն՝ իգաց. եւ անուն էր արուականին արեգակն, եւ իգին՝ լուսին, զորս նոքա ասէին իւրեանց ձայնիւ՝ մուխոաւմ ամոաաս:" Բառական թարգմանութիւն է խօսքիս առաջին մասը. յոյնը ճշդիւ՝ προσηγόρευον δὲ ... τὸ μὲν ἀρρενικὸν ἀρρένων λογισμῷ, τὸ δὲ θηλυκὸν θυλικῷ λογισμῳ (A չունի այս վերջին բառին կրկնութիւնը, ինչպէս եւ ոչ Հ:) Իսկ "մութուամ ամուսա" ըստ A է գրի մը տարբերութեամբ. A: μουθοῦ ἐμαῦσαι, B: μουθεὰ μαθούς, C չունի եւ ոչ V: — Էջ 146, 13—15 անուանց մէջ "Ուղղոն" (որ կը կրկնուի եւ այլուր) է = Ἰόλλας [cod. Ἴουλον = Հ). "Թրասիլէոնսա" տես վերը՝ էջ 190. յոյնն ու լատինը կը յիշեն նաեւ "Գիփիփիղոն" անուն մ'ալ. իսկ "Սաքայոմնա" սխալ մըն է փխ. "Մաքայոմնա", զոր ունի միայն V

(Machaona). — Էջ 148, 12 «ապա անդուստ» — 148, 30 «յիսուն» չունին ABCV: Հայը կը նկարագրէ պրասիական քաղաքն երթալու դէպքն եւ այլեւայլ զարմանալիքներ տեսնելն, զոր օր «ուզոմուրենայ», «յուղիդաս», «գղաւկք» եւն: Այս բառերուն վրայ՝ տես վերն էջ 207, ծ. 1:

*13. (III, 18—25=ՄԻՆ—ՄԾ:) Այս կտորը կը պատմէ Կանդակէ դշխոյին դէպքերն, Աղեքսանդրի ծպտեալ երթալն անոր արքունիքն ու տեսնելն այն ապարանից չքեղութիւնն եւն: Հ ընդհանրապէս = A. բայց նաեւ շատ պէսպիսութեամբք:*

**ՄԻԵ**, 149, 8—14 «չինեալ էր» չունին ABC, այլ V. «ինքնաբոյս քար» ասութիւնը՝ տես էջ 199. ինչպէս նաեւ «սկիւտաղ» «Հորմայ» եւ «յուպքսեաւք հնդիկք» բառից համար՝ էջ 207 եւն: — **ՄԻԹ**, 151, 19 «իւղագլխութիւն» բառին առթիւ՝ համմտ. վերը էջ 211: Նոյնպէս (**ՄԼԳ**, 153, 6) «արտաքոյ ապարանք» բառին համար՝ տես վերը էջ 197: (III, 20 գլուխը C թէեւ նոյն իրը կը պատմէ, բայց այնպէս տարբեր որ M առանձին դրեր է զայն:) — **ՄԼԵ** նկարագրութիւն է Աղեքսանդրի՝ իբրեւ Անտիգոնոս ծպտեալ՝ ճամբորդելուն դէպ ի Կանդակէի երկիրն: Երկրին բերքերը կը նկարագրուին շատ ճոխութեամբ: Բայց շատ նորանշան է այս կտորը (154, 15 եւն). «Խնձորենիք էին ոսկեգոյնք՝ որ խանձուտն պտղոյն ունէին որպէս առ Հելլենացիս վարունգ+ են. իսկ ողկոյզ՝ զոր ոչ կարէ կրել զմի փոխել ի փէր. եւ նուռն+՝ որ քան զմեղրապոպս մեծ էին:» Հոս ABC են. *Μηλέαι γὰρ ἦσαν χρυσίζουσαι, τὸν ὄγκον τῆς ὀπώρας ἔχουσαι ὡς τὰ παρ᾽ Ἕλλησι κίτρα, καὶ βοτρύων σταφυλαὶ παμμεγέθεις (A: β. στ. ὡς μὴ δύνασθαι ὤρακον ἐγχωρῆσαι,* զոր M կ'ուղղէ *ῥῶγα τὸ στόμα ἐγχ.,) κάρυα [δὲ] τὸ βαλάνων ἔχωντα περίμετρον* [BC *κάρυα δὲ ἔχοντα περίμτερον πεπόνων*], այսինքն է՝ «խնձորենիք . . . որ զխայծուտն պտղոյ աշնան ունէին՝ որ-

պէս առ Հելլենացիս կէտրոնք են (Հ “վարունգք„. բայց կայ դդմոյ տեսակ մը citrium անուամբ) եւ խաղողք ողկուզաց մեծամեծք (A յաւ. ըստ Mի՝ “որպէս զի ոչ կարէ տանել բերան.„ Հ “ոչ կարէ նոյն զմի տանել ի գէր.„) եւ ընկոյզք ունէին զշրջափակ մեծութիւն նռնենոյ.„ (BC “մեղրապոպայց„ = Հ:) Հ “ընկոյզի„ տեղ “նուռունք„ կ'ըսէ: V ալ կ'ըսէ. Poma . . . ad magnitudinem ferme quae apud nos est citri excrescentia. Uvae ponderis et densitatis immensae prorsus ut singulis acinis vel implearis si majoris [oris] hiatibus non occursas. Granatis vero . . ., non minus pepone. — Քիչ մ'ետքը (154, 19) “մողէզք քան զիշկաղ մեծ էին„ խօսքին մէջ “վիշապ„ գրուած է փխ. “հետահան„ (A: σαῦροι ἰχνευμόνων μείζονας.) Թերեւս թարգմանիչը չէր գտած առժամն յարմարագոյն բառ մը:

Յաջորդ (ՄԼԷ) հատուածն ալ է ճոխ նկարագրութիւն Կանդակէի արքունեաց: “Ունիոնեայց եւ բիւրղայց„ խօսքերուն համար՝ տես էջ 208 ծ., նոյնպէս նաեւ “հնդիկ փայտ սեւաթոյր„ ասութեան համար՝ էջ 202, ծ. 2: — ՄԽԲ, 158, 6 “Մարպեսգա„ անուն է Կանդակէի դստեր: A: ματέρσα կ'ըսէ, B: ἅρπουσα ἡ ἁρπαγεῖσα; C (զոր կ'ընտրէ հոս M) Ἄρπυσσα; V: Margia: Իսկ Կանդակէի երկրորդ որդւոյն “Կարաբօվս„ (158, 12) անունը՝ զոր չունին հոս ABC, գրի սխալ է փխ. “Կարագով„ (հմմտ. ՄԽԴ, 159, 3), ինչպէս ունի նաեւ V: Charogos. — ՄԽԶ, 159, 31 կտորը (“յունիովնայց„ եւն)՝ տես վերը էջ 208 ծ.: — ՄԽԷ նկարագրութիւն է Աղեքսանդրի՝ Դից անձաւին այց ելլելուն, զոր C այլուր ունի: BC այս տեղեր շատ թերի կտորներ ունին: Էջ 160, 3 “պատուածս գնալ շրջել„ խօսքին համար՝ հմմտ. վերը էջ 209 ծ.: Ասոր կը յաջորդէ սա խօսքը. “արտաքուստ երեւոյթք դիւաց, եւ Նմբիւն լուսաճեմ ծառայել:„

*Այսպէս գտած է Հայն իւր բնագիրը, վասն զի* ABC *կ'ըսեն*: ἔξωθεν δὲ [A *ունի զասոնք*] φαντασίαν εἰδώλων, καὶ θρυόην [θορύβην?] σιγὴν (l. σιγῇ) δεδουλωμένην. *ուրեմն ճշգիւ նոյնպէս՝ ինչպէս Հայը*. V *է՝* et cum his una crescit turba formarum, et murmur praesentium usurpatur. — **ՄԽԷ**, 160, 16 “*Եւ ասեմ*” — 161, 4 *Հատածի վերջը՝ չունին* ABC. *իսկ* V *այլով ձեւով՝ անանուն*: *Այսպէս ի Մանաւորի* (160, 21) *պատգամի մէջ ըսուած քաղաքներու անունք, զոր Աղեքսանդր պիտի շինէր, այսինքն՝* “*Սքանդարիա* (*Աղեքսանդրիա*), *Սոփփղոյս, Իսլան, Դրաղ, Ղոստալ.*” *խրնդրական անուանք, զորոնք նաեւ* V *չունի*: — **ՄԽԹ** *Հատածին շատ մասերը՝ կրկնութիւն են նախընթացներուն*. (*Հմմտ*. I, 33=ԼԳ:)

14. (III, *25—30=ՄԾԱ—ՄԿ*:) *Այս մասն է Ամազոնաց հետ ունեցած թղթակցութիւնը, նամակ առ Ողոմպիադա՝ իւր ճամբորդութեանց վրայ, եւ ի Բաբելոն եղած ցուցանքին վրայ*: BC *շատ տեղ տարբեր ու յաւելուածներ ունին*: *ՄԾԵ* (*164, 35*) — *ՄԾԷ* (*166, 18*) *չունին* ABC, *այլ միայն* V: *Ողոմպիադայ նամակին սկիզբը* (*166, 26—167, 20*) *ունին միայն* AV, *պակաս են* BC, *որ չունին նաեւ ՄԿ հատուածը*:

**ՄԾԲ**, 162, 23 *Ամազոնք ունէին տարեւոր* “*կացուրդս, տօնս ամէնժողովս* (*յոյնը լոկ՝* ἄγομεν πανήγυριν), *ձիապանութիւնս՝ զենլով Արամազդայ եւն*” (ἱπποφανίαν)։ *Այս դից անուանց մէջ յոյնը՝* “*Արէս*” *ալ կը յաւելու, զոր չունի Հ*։ — **ՄԾԳ**, 164, 28 *Ամազոնք կը գրեն Աղեքսանդրի՝ թէ* “*Հաւանիմք քեզ դէմ յանդիման եւ ի բացեայ.*” *այսինքն՝ թէ՛ ներկայ ըլլաս եւ թէ՛ բացակայ*. (πειθαρχοῦμεν δέ σοι καὶ παρόντι καὶ ἀπόντι.) — *Այս* **ՄԾԳ** *նամակին բոլորովին ուրիշ եղանակաւ կը պատմէ*։ C *կը յաւելու ուրիշ կտորներ ալ, զոր* AV *չունին, իսկ* B *առ Ողոմպիադա գրած նամակին մէջ կը հիւսէ*։ *Աղեքսանդր կ'արշաւէ Եւրի-*

միթրոս արքային դէմ եւ անկէ կ'անցնի Հիւսիսի Սարինք կոչուած լերանց, ուր կը փակէ Երկաթի դրան մէջ պիղծ ազգերը։ Համմտ. վերը՝ էջ 169—172։ — **ՄԾԵ**, 164, 35 — **ՄԾԷ**, 166, 18 մեծ կտորը միայն Հ V ունին. չունին ABC։ Այս հատուածը կը պատմէ նախ "Պարսատնգացւոց աշխարհն" երթալը ու կը դնէ Արիստոտէլի գրած նամակը։ Հայոյն սեպհական խօսք մըն է. (165, 1-5) "Եւ յոյժ ի հեղգութիւն պղերգութեան եկին զինուորքն դորքեամբն մեջոյցելոյ. Արդարմարդ ոչ դադարեաց տեղալով աւուրս Խ." լատինն է՝ Nam aestatis ferme jam medio (ուրեմն "ամառան մէջոյցելոյ"), repentini imbres fluxere etc., որով "Արդմազդ" անունը չունի։ Ասոր հակառակ (165, 10) "ձայնք այսր անդր ընթանային յաղագս այնոցիկ՝ որ ի գնդին" չունի այն իմաստը, զոր V կու տայ, այսինքն՝ թէ փայլատականց հետ "անորոշ ձայներ" կը լսուէին. (voces incertas resonantes audierant.) էջ 165, 12 "անցանել ընդ գետ" կ'ըսուի առանց անուան. V:Hypanimque flumen կը կոչէ (Միլանու ձեռագիրը՝ Trypanim, *B*: *πρὸς τὸν Πρύτανιν*:) Հայն ըսած է թէ "են նորա փիղք մարտամարտք." (165, 16.) V չունի "մորամուտ" բառին համապատասխանող մը։ Նոյնպէս քիչ մ'ետքը (165, 20) "Եւ աւուրս ի ձեռն իւրոյ զօրուն ղօհս մատուցանէր". V լոկ sacrificia . . . facit.

Բաւական մաս մը (165, 31 "քանզի ի Հնդկաց" — 166, 14) աննման է V բնագրին։ **ՄԾԷ** յիշատակութիւն է Աղեքսանդրի Բաբելոն երթալուն եւ "մերկակրթութեան" հանդէս կատարելուն։ — **ՄԾԸ**, որ նամակ է Աղեքսանդրի առ Ողոմպիադա, կը միանան ABCVՀ. AV ճշդիւ = Հ, բայց B կը կցէ նամակիս մէջ նաեւ "Հիւպանիս" գետն երթալու ուղին, չունի Հերակղեայ արձանաց վրայ պատմուածն եւ վերջերը կը պատմէ Երկաթի դրան դէպքը։ C նոյն կարգաւ կը պատմէ Bի հետ,

բայց ոչ նամակի ձեւով, այլ արձակ եւ ի վերջոյ կը յաւելու նամակ մը։ — Ուստի Հերակղեայ ար-ձանին դէպքը (166, 26—167, 20) միայն AV ու-նին հոս։ «Պարասանգա» անուան վրայ՝ տես էջ 199։ Նոյնպէս նաեւ (167, 13) «մաղալ» բառին յիշուած կարգը՝ էջ 142, ծն. 1։ — «Թերմադոն» (θερμόδον) գետը «ելանէ եւ մտանէ ի Պափոս» (165, 19.) այս անունը չունին A (որ հոս աղաւաղ է) եւ V: Այս տեղ կը սկսի B նամակը (եւ C) եւ կը պատմէ Պրիւտանիս գետ գալն ու օդոյ յանկարծ մթագնիլն եւն։ — Էջ 167, 32 ըսածը՝ թէ «գնա-ցաք ի կարմիր ծով կոյս ի Նեղ տեղի» համեմատ է Ai (ἐπὶ τὸν στενὸν τόπον, BC անուն ունին Նմա-նաճնչէ-ն՝ εἰς τὸν Τένοντα ποταμόν. V չունի հոս, ինչպէս չունի «Ատլաս» գետի անունն ալ։) — Էջ 168, 5—9 «անգղուխ» եւն մարդկան կարգը՝ տես էջ 81: Նոյնպէս (168, 10, 11) «Արեգ» քա-ղաքին հետ «Պղնձի քաղաքի» յիշատակութիւնը՝ էջ 142, ծն. 1։ — Թէ Արեգ քաղաքն «վաթսուն» աստիճանաւ ոսկիէ եւ զմրուխտէ աշտարակներ ունէր (168, 14), գիտէ միայն C (AB «եօթն» կ'ըսեն։) — Ցանայիս գետին յիշատակութենէն սկսեալ ութը տող (168, 21—28) AV ունին։ BC հոս երկար խօսակցութիւններ կը յաւելուն եւ կը պատ-մեն Նիւսայեան դաշտն (BC: Λύσου λιμένα. Zacher կ'ուղղէ՝ εἰς τὸν Νυσαῖον կամ Νῦσον λειμῶνα) հասնիլն, բարձր լեռ մը գտնելն շափիւղեայ պարս-պով վրան եւ դիւցազանց արձաններով, արծաթով լի տներ եւն։ Վանդակի մէջ աղաւնւոյ մեծու-թեամբ թռչուն մը կար. երբ վանդակն ուզեց առ-նուլ, անկողնոյ մը վրայ սառած ծերը սկսաւ շար-ժիլ։ Երբ ճաշի նստան, որոտում հնչեց ծնծղանե-րու, փողերու, թմբուկներու, եւ լեռը սկսաւ ծխել եւն։ — Էջ 169, 4 «յարքունիսն եւս ի Շոշ-շա գտաք թակոյկ արծաթի որ տանէր սափորս ՅԿ։» Այս անունը չունին այլք. իսկ սափորներու թիւն

այլեւայլ է. (M կ'ընտրէ 60, B:7, C:160, AV:360 = Հ:) — Էջ 169, 13 "գ––կայ . . .„ բուն՝ տես էջ 141—142, ծ. 1: — Նամակին վերջը (169, 24) C կրկին անգամ կը պատմէ նոյներն՝ այս անգամ նամակի ձեւով. այսպէս Կաւկասի Երկաթի դրան շինութիւնը եւն: — ՄԾԹ, որ Աղեքսանդրի մահը գուշակող ցուցանքի դէպքն է, B նամակի ձեւով ունի: Էջ 170, 18 "զծնեալ հրաշն„ ցուցանք իմաստով է. (յոյնը նոյնպէս՝ τέρας): "Զընթերցանութիւն առնել„ (170, 22) ասութեան վրայ՝ տես էջ 189: Առաջին նշանալոյծներուն ըսածը (170, 24—171, 3) չունի V: "Թափեցան ի նմանէ„ ասութեան համար՝ տես էջ 203, ծ. 1: — ՄԿ, 172, 1 "Ո՜ Արամազդ, զդաւաճանն՝ ի վախճան ածեալ վասն իմ. վասն որոյ եթէ այդպէս քեզ կամ եղեւ, ապա ընկալ եւ զիս զայսպիսի մահկանացու.„ այսպէս ճշդիւ գտեր է Հ բնագիրը, վասն ճիշդ այսպէս է նաեւ A (῏ω Ζεῦ, τὴν μὲν ἐπιβουλὴν δι᾽ ἧς ἡμᾶς ἐπὶ τέλος ἄγειν * * δυὸ οὕτως σοι ἔδοξεν, δέχου κἀμὲ τοιοῦτον ὄντα θνητόν. V այլազգ. „Pro bene, Juppiter, quam bona res est ignoratio metuendorum!“) Այս (ՄԿ) հատուածն ամենեւին չունին BC:

15. (III, *31–32=ՄԿԱ–ՄՀԱ:*) *Այս մասը կը նկարագրէ Աղեքսանդրի Թունաւորուելու պարագաները: Բնագիրք շատ այլայլութիւն ունին:* V *մեծամեծ կտորներ չունի.* BC *երկար յաւելուածներ, իսկ ՄԿՁ–ՄԿՂ ունի միայն* A:

ՄԿԱ, 172, 16 "յամբաւ ցամաք„ եւն կտորին համար՝ տես վերը՝ էջ 195: Էջ 172, 27 Աղեքսանդրի տրուելի Թոյնին համար կ'ըսուի. "Բերեալ զքաղցրական դեղն՝ զորոյ զօրութիւնն գիտէր թէ յոյժ դժնդակ է, եւ արկեալ ի ջրոյ (°) զեղամանէ (˚) [այլք՝ "ի ջորոյ„ եւ "դեղ յամանի„ եւն) խառ-նեալ առ կարել ողջ պահել զբազմութիւն դեղոյն:„ ABCV այսպիսի մանրամասնութիւնք չու-

նին. (յոյնը պարզապէս φάρμαχον δηλητήριον կ'ըսէ. V:venenum Antipater laborat curiosum admodum efficaxque etc.) — Մտադրութեան արժանի է որ V մեծ պակաս մ'ունի հոս, վասն զի էջ 173, 1—183, 26 բաց ի կտակէն շատ մասեր չունի։ — ՄԿԳ եւ ՄԿԴ չունին ABC, բայց եթէ քանի մը տողով։ — ՄԿԵ, 174, 1—7 Աղեքսանդրի սեղանակցաց անուններն միայն A ունի, որ աղաւաղ է։ Ըստ Հ ներկայ էին «Պերդիկկաս, Մելէագրոս (A սար տեղ Δι... ανος), Փիլոտաս, Լէոննատոս, Կասանդրոս (A լոկ՝ Κα...), Պովկեստես (A: Πύθεστος, զոր M կ'ուղղէ Πευχέστης = Հ), ... Փիլիպպոս, Ողկիաս, Եւմենէս (երեքն ալ չունի A), ... Նէարքոս կրէտացի (A երկու անուն՝ Νέαρχος, Κριτίας, եւ կը յաւելու ... άνωρ անուան մը վերջաւորութիւնը), Հերակղիտես, Եւրոպղեոս (A: Εὐρ.. πιος) Արիստոն, Փարսադիոս, Փիլիպպէ մեքենայից հմուտ (A: Φιλ... μηχανικός), Փիլոտաս (Φιλώτας), Մենանդրէս, Դարդանոս (A երեք անընթեռնլի անուն ունէր, վասն զի M կ'ըսէ alia 3 nomina, quae legi jam nequeunt.) — ՄԿԶ, 174, 18 «բան արկին ի ներքս» խօսքին վրայ՝ տես 204 Ծ.։ — ՄԿԶ, 174, 26—176, 9՝ ամբողջ հատածներ՝ չունին BC. այլ միայն քանի մը խօսքով կը բացատրեն Հռոքսանէի դէպքը (ՄԿԸ) եւն։ V ամենեւին չունի. իսկ A ունէր թէեւ նախնաբար, բայց A ալ ի սկզբան էջ մ'անընթեռնլի է. իսկ ընթեռնլի մասը կը սկսի էջ 175, 23 «Եփրատեան» տեղէն։ «Թեւ» խնդրելուն (174, 27) վրայ՝ տես էջ 30։ — ՄԿԹ, 176, 17 «եւ նոքա» — 176, 20 չունին BC հոս այսպէս։ «Կոմբափոն» անունը «Կոմբարոն» պիտի ըլլայ ըստ A (Κομβάρην, հայցական.) հայոյն մէջ 176, 23—24 տպագրութեան մէջ կիտադրութեան սխալով՝ իմաստն այլայլեր է։ Էջ 176, 28 «Ղուկիաս» է «Ողկիաս (Ὀλχίας), որ շատ անգամ կը յիշուի։ Իսկ էջ 177, 6 «Պերդիկկաս» հայն ունի.

նոյնպէս AB. C “Անտիոքոս„ կ'ըսէ, զոր M “Անտիգոնոս„ կ'ուղղէ: “Պեւկաղաւոս„ գեղջուկին (177, 16) անունն ունի միայն A: “Պեւկաւոս„ (Πευχῶος.)

16. (III, 33=ՄՀԲ—ՄՀԴ:) Այս մասն է Աղեքսանդրի կտակն, որ կարեւոր կտոր մըն է: BC ամենեւին չունին այս մասն, այլ միայն AV. որոնք ընթերցուածոց անհաւատալի տարբերութիւններ ունին:

Կտակն A շատ թերի պահած է. աղաւաղ է նաեւ Հ, համառօտ է V, որ ուրիշ տեղ դրեր է զայն: BC չունին. այլ միայն կը յիշեցընեն՝ թէ Աղեքսանդր հրամայեց, որ եթէ արու ծնանի Հռոքսիանէ՝ թագաւոր դնեն, իսկ թէ էգ՝ զով կ'ուզեն զայն ընտրեն. ապա կ'անցնին Աղեքսանդրի մահուան ժամուն երկնից երեւոյթները, աստղ երեւեալն եւն նկարագրելու: A կտակը կը սկսի նոր վերնագրով մը՝ Διαθήκη Ἀλεξάνδρου. — Էջ 178, 31 Թեբայեցւոց տրուելի քանքարներն 300 են ըստ Հ, ըստ A 305. պատերազմական նաւաց թիւը՝ զոր 40 կ'ըսէ Հ, թերի է A բնագրին մէջ. իսկ Եգիպտոսէ տրուելիցորենի չափը Հ “գրիւսերկուսբիւրս„ կ'ըսէ, A միայն 2000: — Էջ 179, 4 “իսկ Պտղոմէոս„ կտորէն յառաջ A կը դնէ քանի մը տող՝ բաժանում տէրութեան Կրատերեայ, Պտղոմէոսի, Պերդիկկայ, Անտիգոնեայ եւ Ոզկիասի մէջ: Այս մասն աւելորդ կցկտուր է հոս, զոր իրաւամբք չունի Հ: — Կտակն ի սկզբանէ մինչեւ 179, 10 (ամբողջ ՄՀԲ) չունի V, այլ կը սկսի յաջորդով՝ ՄՀԴ: — ՄՀԴ, 179, 21 “Իսկ այն՝ որ ընտրեալն լիցի (թագաւոր), պահեսցէ զԱրիդէոսի իշխանութիւնն, եւ հարկ տայցեն Մակեդոնացիք Արիդէոսի հանդերձ թագաւորաւն ըզկարգեալ սովորականս. եւ առանձինն եղիցի Ողոմպիադայ մօրն Աղեքսանդրի բնակել ի Հռովդոսէ Բեհովեոսի:„ A թերի է հոս. Ὁ δὲ αἱρεθεὶς, διαφυλαττέτω τὴν . . . αδων ἀρχὴν, καὶ συντελείτωσιν Μακεδόνες ἀργ . . . μετὰ τοῦ βασιλέως τὰ νομιζόμενα. ἐ . . . ἔσται Ὀλυμπιάδι

*τῇ μητρὶ Ἀλεξάνδρου κατοικεῖν ἐν Ῥόδῳ, ἐὰν Ῥόδιοι συνδοχήσωσιν.* ուրեմն «Ընհոմէցայոց» անհեթեթ բառն աղաւաղութիւն է փխ. «Թէ Հռոդացւոց կամք իցեն:»

ՄՀԳ, 179, 30 «Սիւանէ» անուան վրայ տես էջ 197: — Այս տեղ Հ պակաս մ'ունի մեծ, վասն զի AV ուրիշ շատ մը կարգադրութիւններ ալ ունին. այսպէս թէ Լիւսիմաքոս ըլլայ պետ Թրակիոյ եւ իւր կինը Թեսաղոնիկիա դուստր Փիլիպպոսի. Հեղեսպոնտեայ պետ ըլլայ Լէոննատոս (անուանքս աղաւաղած են յA. V Փիլոտաս կ'անուանէ պետը), որուն կին կը տրուի Ողկեայ Կղէոնիկէ քոյրը: Եւմենէս կ'առնու Պափղագոնիա եւ Գամիրք. կղզիներն անկախ կ'ըլլան, որոնց խնամածու կ'ըլլան Հռոդացիք (V չունի վերջինս.) Անտիգոնոս կ'առնու Պամփիւլիա, Կիլիկիա եւ Կարիա (միայն վերջինս կը յիշէ V, որ կը յաւելու՝ թէ Կասանդրոս ալ Բէոտիան կը ժառանգէ, եւ ասոնց աւագ պետը կ'ըլլայ Անտիպատրոս:) Սելեւկոս կ'ըլլայ տէր Բաբելոնի եւ շրջակայից եւ Մելէագրոս՝ Փիւնիկիոյ եւ Կղեսուրի եւն: Հոս կու գայ Պտղոմէոսի յիշատակութիւնը, զոր ունի նաեւ Հ (179, 31:) — Էջ 179, 31—180, 2 տարբերութիւնը մեծ է: Հ «Եգիպտոսի» պետ կ'ըսէ զՊտղոմէոս, AV Պերդիկկաս կ'ըսեն նոյնին տէրն (հմմտ. Հ էջ 180, 15), ու զՊտղոմէոս՝ «Լիբիոյ:» Բաբելոնական աշխարհէն անդին եղող երկրին հայը «Պերդիկաս» կը դնէ տէր եւ անոր կին՝ զՀռոքսիանէ, ուր AV «Փանակրատէս» կը կոչեն վերջինս, որուն տրուեցաւ Հռոքսիանէ: — Էջ 180, 4 եւն Աղեքսանդրի դագաղն 200 քանքար ոսկի պիտի կշռէր (= A), ուր V «վեց տաղանդ» կ'ըսէ. իսկ Մակեդոնացւոց ծեր զինուորաց տրուելիքը Հ անորոշ կը թողու «իւրաքանչիւր ինչս ըստ արժանւոյ» գրելով. հոս A «երեք տաղանդ» կ'որոշէ, (V: tria milia drachmarum.) AV չեն յիշեր Աթէնքի տրուելիք «տեառ եւ ոսկի

աթոռ Աթենայ, որ ի գեղեցիկն ի վեր ի կուսանոցն„ . (180, 8—10։) — Էջ 180, 10 Աղեքսանդրի սպառազինութիւնը “Արգոս„ պիտի երթայ (= V), այլ A “Եգաս„ (Αἰγὰς, զոր Հ “Այծք„ թարգմանած էր.) նոյն քաղաքին տրուելիք 150 քանքարը չունի A (որ անընթեռնլի է հոս), իսկ V միայն 50 կ'ըսէ։ AV կը յաւելուն նաեւ որ Միլեսացւոց ալ 108 (V:150) տաղանդ տրուի եւն. ինչպէս նաեւ Աղեքսանդրիայի յիշատակութեան ատեն (180, 15—20) սահմաններ կը դրուին տօնախմբութեանց եւ քրմապետին նկատմամբ, զորոնք չունի հոս Հ։

Էջ 180, 22 “Պիթոն„ անուան տեղ A: Πῶρον կ'ըսէ, V: Apoctronum, զոր Հռոքսիանէի հօրեղբայր կը դնէ. բայց AՀ հօրեղբօր անունը կը դնեն “Ոքսիդարկէս„ (A: Ὀξυδράκην), որուն իշխանութեան տակ կը դրուի ըստ Հ “Պարապամենիսադաց„ աշխարհը, (A է՝ ἐπὶ δαλιδῶν, զոր M Παροπαμίσῳ կը գրէ.) Փիլիպպոսի կը տրուի “Արաքովսիա (A: Δραχουσῖαν, զոր M Ἀραχωσίαν կ'ուղղէ. V: Racusiam . . . regionem), Բակտրիա եւ “Շուշանաստան„ (V: Susiam, A: Σουσιανὴν, զոր M կ'ուղղէ Σογδιανὴν ոչ նման հայոյն։) — Հայը “Շուշանաստան„ անուան կը կցէ (180, 26) “եւ զՊարթեւաց աշխարհն զառ ի հարաւոյ կոյս„. խօսք մ'առանց անուան։ AV կր յաւելուն բաց ի Պարթեւաց աշխարհէն (A: παρουδίαν, զոր M կ'ուղղէ Παρθυαίαν, V չի յիշեր զայս) նաեւ Հիւրկանիան (A: Συρταμίαν կը գրէ, զոր կ'ուղղէ M Ὑρκανίαν = V), որոնց վրայ տէր կը դրուի Ատրափերնէս (A: Ἀτραφέρνην, V: . . . Atraphernae. M զA կ'ուղղէ Φραταφέρνῃ.) Կարմանայ (A: χαρδανίαν, M Καρμανίαν) վրայ տէր կը դրուի Տղեպողեմոս, (զոր V չի յիշեր), եւ Պարսից՝ Պեւկեստէս. A միայն կը յաւելու՝ որ Մարաց վրայ ալ Ոքսինտոս (A: Ὀξύντην, M: Ὀξυδάτην) եղաւ։ Հ չունի զասոնք։ — Էջ 180, 27 “ի

Լիւրիա„ պէտք է “Իլլիւրիայ„ կարդալ (*A*: τῆς Ἰλλυρίδος), որուն արքայն էր “Ոկղիաս„ (*A*:... Ὀλχίαν, V: Orciam.) — **ՄՀԴ** հատածին վերջը Հ քանի մը տող թերի ունի. (հմմտ. էջ 181, ծն. 1։) Կտակը կը լմնայ V բնագրի մէջ այս խօսքով Haec quidem summa voluntatis Alexandri est acceptio. Իսկ A կտակ լմննալուն կից կը դնէ անմիջապէս ամենավերջին կտորը՝ **ՄՁԽ**։

*17.* (III, *33—35=ՄՀՆ—ՄՁՁ:*) *Այս վերջին մասն, ուր Աղեքսանդրի մահն ու թաղումը կը պատմուի, շատ այլայլութիւն կրած է բնագրաց մէջ: A, ինչպէս ըսինք, չունի ՄՀԾ—ՄՁԴ (181, 6—185, 24) հատածները.* BC *երկար յաւելուածներուն փոխարէն բաց կը թողուն ՄՀԾ—ՄՁ հատածները. Նոյնպէս* V.

**ՄՀԽ**, 181, 6։ Այս տեղ L ունի այն նամակը, զոր միայն Համառօտք ունին: Տես վերը՝ էջ 168: — C, որ կտակը չունէր, հոս երկար յաւելուած մ'ունի եւ կը պատմէ՝ թէ զուարակագլուխ ձին եկաւ արտասուեց։ Աղեքսանդր նամակ կը գրէ մօր, որուն մէջ կը պատմէ իւր տեսած նորանշան իրերը եւն։ Նամակէն ետքը կը բաժնէ Աղեքսանդր երկիրն իւր զօրավարաց, եւ երբ մահամերձ էր՝ կ'ըսէ ողբ մը (8 տող։) Երբ դեղատուն ներս կը մտնէ՝ զուարակագլուխ ձին կը մեռցնէ զայն: Այսպէսով չունին ABCV ամբողջ թղթէ մ'աւելի, այսինքն՝ **ՄՀԽ—ՄՁ** հատածները էջ 181, 6—183, 25։) — **ՄՁԱ** (183, 26 “Իսկ„ — 184, 10) հատածն, որ Աղեքսանդրի մահուան առթիւ օդոյ երեւոյթները կը նկարագրէ, ունին BCV: V համեմատ AՀ շարունակուելով մինչեւ **ՄԿԶ**, 174, 25, կը սկսի **ՄՁԱ**, 184, 1—9 օդի երեւոյթները պատմել, առոր անմիջապէս կից կը յաջորդէ **ՄԾԲ**՝ Աղեքսանդրի թաղման խնդիրը եւ կը հասնի մինչեւ **ՄՁԴ**, 185, 25։ Անկէ ետքը կու գայ Կտակը (**ՄՀԳ**, 179, 11 — **ՄՀԴ**, 181, 5։) Ի վերջոյ կը դրուի վերջին հատածը (էջ 185—186։) — **ՄՁԲ**, 184, 11 —

ՄՁԴ, 185, 25 հատածները՝ որ Աղեքսանդրի թաղման մանրամասնութիւնքը կը բովանդակեն, չունի A, այլ միայն BCV:

ՄՁԲ, 184, 17—23 Աղեքսանդրի թաղման համար տրուած պատգամն աղաւաղութեան օրինակ կրնայ ըլլալ. BC շատ կարճ են, միայն V նման է շատ տեղ հայոյն: Այս խնդրական կտորն է. (184, 18) “Է քաղաք ի Նեղոս առ Ովկիանոսի յորձանսն, (V: Urbs colitur Nili propter umbrosa fluenta. ուստի “Նիեա„ աղաւաղութիւն է “Նեղոս„ անուան.) Ընդ գաղտ թագաւորական առնել բազմափարթամ մերձ ի յերկիրն Ամազոնեայց՝ անուն Մեմփիս. (Հ հոս շատ խնդրական է. V: Aequoris in gremio, cereali dives anona, Nomine Amazonidos quae dicitur inclita Memphis. այսինքն՝ “ի միջի դաշտին, բազմափարթամ բերովք ցորենոյ„ եւն) . . . զինքն թագաւոր եղջերաւոր խնդութեան պատճառ.„ (V: cornigero genitus etc.) եւն: — ՄՁԳ, որ Աղեքսանդրի մարմնով զմուսուիլը կը նկարագրէ, միայն Համառօտք ունին. տես վերը՝ էջ 141: “Մեղը Ռեփեփլարական եւ հալուէ Եգիպտական„ սասութեանց վրայ՝ տես էջ 208 ծ.: Ճիշդ այս տողը՝ ուստի այն բառերու համապատասխանող մասերը չունին BCV: Թէ Աղեքսանդրի մարմինը դրուած էր “ի վերայ կառաց Ջորւոց„ (185, 3) հայոյն սեպհական է. (յոյնը պարզ՝ ἐπὶ ἅμαξαν կ'ըսէ. V: vehiculoque regali.) նոյնպէս նաեւ “իբրեւ հասին ի Պեղուսիոն„ նախադասութիւնը միայն V ունի (ad Pelusium), իսկ “Մեմփացիք„ կը նշանակէ Մեմփիսի բնակիչք (οἱ Μεμφῖται). — ՄՁԴ, 185, 13 “եւ անդ„ — 25 հատածը չունին հոս ABCV. այլ սակայն այս կտորը AV ունէին ուրիշ տեղ՝ Աղեքսանդրի կտակին մէջ, եւ հոն դրված էր Հ. (հմմտ. ՄՀԴ, 180, 15 - 20. տես վերը՝ 265.) Միայն խնդրական է (185, 19) քրմին համար ըսուածը՝ թէ պիտի առնու “փարթիարական, որ է քանքար մի.„

յոյնը կ'ըսէ “առցէ ամ ըստ ամէ փողանք մի.„ (λαμβάνων ἐνιαύσιον τάλαντον. Թերեւս այս τάλαντον բառէն “տարթորական„ աղաւաղած է։)

**ՄՁԵ**, 185, 26 կը սկսին ամէն բնագիրք. բայց դեռ սկիզբները (մինչեւ՝ 185, 33) լոկ AV ունին. BC կարճ խօսքով լմնցուցած են։ Աղեքսանդրի 33 տարի ապրիլն (ABC՝ 32) եւ 18 տարեկան պատերազմելու սկսիլը (A:15 տարեկանէն կ'ըսէ. Հ համեմատ V բնագրի.) բայց հայոյն սեպհական է ըսելը՝ թէ 7 տարի պատերազմեցաւ մինչեւ որ 25 տարուան եղաւ, ապա խաղաղ թագաւորեց 8 տարի. ըստ A պատերազմեցաւ 17 տարի եւ 12 տարի խաղաղ մնաց (= BC). V մինչեւ 25երորդ տարին պատերազմեցաւ կ'ըսէ (= Հ)։ Հ բնագիրն Աղեքսանդրի նուաճած ազգաց թիւը 22 բարբարոս (= ABCV) եւ 12 հելլենական (BC:14, A:10, V:16)։ — **ԷՁ** 186, 2—13 Աղեքսանդրի շինած 12 քաղաքաց անունները չունի B. իսկ ACV բաւական տարբերութիւն ունին։ Այս կտորն՝ որ հայ բնագրին աղաւաղմանց օրինակ կրնայ ըլլալ, այսպէս է. Աղեքսանդր կանգնեց “զԱղեքսանդրիա որ է ղարաչաֆլախ ձին շինեաց (Հ չունի սոյնը. հմմտ. էՁ 186, ծ. 2. *A*: Ἀλεξάνδρειαν τὴν ἐπὶ Βουκεφάλῳ ἵππῳ = V. այլ C իբր իններորդ. իսկ հոս՝ Ἀλεξ. τὴν κατ' Αἴγυπτον = Հ, որ ամենէն վերջը կը դնէ “զԱղեքսանդրիա զառ ի յեգիպտոս.„ զոր A դարձեալ ունի ամենէն վերջը եւ V այլուր.) զԱղեքսանդրիա զկատափխան (C ունի միայն իբրեւ երրորդ՝ Ἀλεξ. τὴν εἰς Κράτιστον ձեւով, մինչ իբրեւ երկրորդ՝ Ἀλεξ. τὴν ἐν Ὄρπηοῦσαν կ'ըսէ, զոր չունին ՀA, միայն V շատ ետքը Alexandria apud Origala կ'ըսէ. V այս տեղ “կատախան„ անուան տեղ Alexandria montuosa ունի.) զԱղեքսանդրիա զ'է Պօվրոյ (*A*: Ἀλεξ. τὴν ἐπὶ Πώρῳ, զոր C իբրեւ տասներորդ ունի, V: Al. apud Porum.) զԸնդրանէկոյ զԱղեքսանդրիա (միայն V: Al. apud

Granicum, ուրեմն գրի սխալ մ'ունի Հայը եւ պիտի ըլլայ "զԸնդ Գրանիկեայ զԱղեքսանդրիա„. = ἐν Γρανίκῳ) զԱղեքսանդրիա զՍկիւթեայ (A: Ἀλεξ. τὴν ἐν Σκυθίᾳ, = C, V: Al. in Scythia.) զՄէջագետաց զԱղեքսանդրիա (զայս չունին այլք. բայց սոր տեղ ուրիշ անուններ ունին, զոր օր. A իբրեւ երկրորդ կը յիշէ "Պարսից Աղեքսանդրիա.„ Ἀλεξ. τὴν πρὸς Πέρσας = C իբրեւ ութերորդ. եւ C իբրեւ հինգերորդ՝ Ἀλεξ. τὴν ἐπὶ Κρηπίδος ποταμοῦ, զորոնք չունին այլք.) զԱղեքսանդրիա զ'ի վերայ Տիգրիս գետոյ (A: Ἀλεξ. τὴν ἐπὶ τοῦ Τίγριδος ποταμοῦ. = C իբրեւ մետասաներորդ. V: Al. apud Tigridem fluvium.) զԱղեքսանդրիա զԲաբելոնի (A: Ἀλ. τὴν ἐπὶ Βαβυλῶνος, = C իբրեւ եօթներորդ. V: Al. Babylonis.) զԱղեքսանդրիա զՏրովադենն (A: Ἀλεξ. τὴν πρὸς Τρωίδα, = C իբրեւ վեցերորդ. V: Al. apud Troadem.) զԱղեքսանդրիա զ'ի Մասսագետս (A չունի. C իբրեւ երկոտասաներորդ՝ Ἀλεξ. τὴν ἐπὶ Μεσεγγίστα, որ աղաւաղութիւն է. V: Al. apud Massagetas. ուստի Հ գրի սխալ մ'ունի եւ պիտի ըլլայ "զ'ի Մասսագետս.„) զԱղեքսանդրիա զառ ի Քանանէ.„ (A չունի, այլ իբրեւ վերջընթեր ունի ուրիշ մը "Շօշայ Աղեքսանդրիա.„ Ἀλεξ. τὴν ἐπὶ Σούσοις. միայն V ունի Al. apud Sanctum.) զԱղեքսանդրիա զառ ի յԵգիպտոս.„ (զոր այլուր ունին այլք, եւ միայն A հոս վերջը:) — Ինչպէս տեսնուեցաւ քաղաքաց անուանց կարգը բաւական տարբերութիւն ունէր:

ՄՁԶ վերջին հատուածը թէեւ ունին ABC. այլ A միայն այսչափ՝ թէ Աղեքսանդր ծնաւ "յամսեան Տուբիլ յառաջնում աւուր՝ յարեւելս„ (= A: . . . Τυβίου τῇ νεομηνίᾳ κτλ. BC: . . . μηνὸς Ἰαννουαρίου νεομηνίᾳ κτλ.) եւ թէ մեռաւ "ի Փարմութի որ օր չորս էր՝ յարեւմուտս կոյսո (= A: ἐντελεύτησε δὲ Φαρμουθὶ τετράδι, δυσίας.

 

* * կը պակսի մնացեալը, որով հոս կը լմննայ A. իսկ հոս BC: . . . μηνὸς Ἀπριλλίου νεομηνίᾳ կ՚ըսեն։) V ամբողջ այս հատածին տեղ կ՚ըսէ պարզապէս այս խօսքը . Obitus autem ejus diem etiam nunc Alexandriae sacratissimum habent. որ ըստ իմիք կրնանք ըսել Հայոյն այս խօսքին տեղն է. “եւ կոչեաց զօրն զայն Նաւերած (Հմմտ. վերը՝ էջ 197) վասն զԱղեքսանդրոս որ մանուկ վախճանեցաւ.„ (Հմմտ. վերը՝ էջ 209 Ծ.։) Հայոյն մէջ այս խօսքէն ետքը միայն վերջաւորութիւն մը կայ. („Եւ այս է կատարումն . . . կենաց նորա եւ ծննդեանն եւ յառաջադիմութեանն„ եւն։) Իսկ BC կը յաւելուն թէ Աղեքսանդր 113դ ողոմպիադին վերջը մեռաւ, եւ թէ իւր մահուանէն մինչեւ Քրիստոսի ծնունդն անցաւ 324 տարի։ — Ամենէն վերջը C բնագրէն առեալ դրեր է M քանի մը տող ալ։ Նախ հաշիւ մը կայ ժամանակագրական, որուն համեմատ՝ աշխարհքիս ստեղծմանէն մինչեւ Աղեքսանդրի մահն անցած է 5217 տարի, եւ անկէ մինչեւ Քրիստոսի մարդեղութիւնը՝ 299, ամբողջը՝ 5508 տարի։ — Անկէ ետքը կու գայ 27 տող ոտանաւոր մ՚Աղեքսանդրի վրայ, եւ ի վերջոյ Յիշատակարան մը C բնագրին, ուր Եւստաթէոս անուն եկեղեցականը կ՚իմացընէ՝ թէ գիրքը գրուած է 7075 թուին, այսինքն՝ 1567 Յ. Ք։



# ՑԱՆԿ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ . . . . . ֆր. 1.25

Բ. ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ ՏԻՒԶԵԱՆՑ . . . . . . . ֆր. 1.—

Գ. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ . . . . . . . . ֆր. 1.25

Դ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ ֆր. —.85

Ե. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ՍՏՈՑՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ . . . . . . . . . . . . . ֆր. 3.—

